# ՄԻԼՏՈՎՆԻ

## ԱՆԳՂԻԱՑՒՈՑ

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

# ՄԻԼՏՈՎՆԻ

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

*Թարգմանութեամբ յԱնգղիականէն*

*ի ձեռն*

Հ. ՅԱՐՈՒԹԻՒՆ Վ. ԱՒԳԵՐԵԱՆ



Ի ՎԵՆԵՏԻԿ

*Ի Վանս Սրբոյն Ղազարու*

1824

TO

LORD GEORGE WILLIAM RUSSELL

*LIEUTENANT COLONEL IN THE ARMY OF HIS BRITANNIC MAJESTY*

AND

MEMBER OF THE BRITISH SENATE

This translation of MILTON'S PARADISE LOST into the Armenian Language is humbly dedicated with the deepest feelings of grati-

tude for the generosity manifested by his Lordship in forwarding its publication,

*BY*

*HIS LORDSHIP'S*

*obliged and very obedient*
*humble servant*

Paschal Aucher.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հրաշալին, և յաւէտ պիտանին ՚ի Բանաստեղծական քերթուածս՝ է ըստ հասարակաց կարծեաց Դիւցազնականն, որպիսի է Հոմերոսին ՚ի Յոյնս. Վիրգիլեայ ՚ի Հռովմայեցիս, Տասսոսի յԻտալացիս, և Միլտոնի յԱնգղիացիս. յորմէ ցարդ վրէպ գտաւ Հայաստանեայցս աշխարհ։ Եւ թէպէտ մեծ էր ՚ի նմա անուն Հոմերոսի՝ մինչև Հոմերական անուանել զամենայն բան չափաբերական, սակայն ոչ էառ նա տիրապէս զճաշակ քաղցրութեան Դիւցազնական բանաստեղծութեան նորա, և կամ թարգմանութիւն նորին ոչ ժամանեաց առ մեզ։

Նմին իրի կամեցեալ մեր և յայսմ կարևոր մասին չթողուլ զազգ մեր անճաշակ՝ յերևելի և յաշխարհաքարոզ Դիւցազնական Բանաստեղծութեանց անտի չորեցունց ազգացդ՝ զՄիլտոնի Անգղիացւոյ զԴրախտն Կորուսեալ քաջադէպ ևս համարեցաք ընծայել զառաջինն ՚ի Հայկական բարբառ. զի է նա քերթուած յաւէտ սրբազան, և չունի ինչ հակառակ ողջախոհ լսելեաց։

Առանձին իմն յորդոր եղև մեզ ՚ի թարգմանութիւն սորին ամենայնաւ Սեպուհն Անգղիացի Կուլիէլմոս Րուսէլեան (1). որոյ առեալ սակաւուք զճաշակ Հայկազեանս բարբառոյ՝ կամեցաւ տալ զայն ընծայել ՚ի լոյս իւրովք արդեամբք յօգուտ Հայկազանցս, և ՚ի յիշատակ ազնուական տան իւրոյ։

Արդ՝ արժան է մեզ տալ զյետագայ ծանօթութիւնսդ՝ զանձնէ Միլտոնի, զԴիւցազնական բանաստեղծութենէ նորա, և զմերս թարգմանութենէ յԱնգղիական բնագրէ անտի։

(1) Lord William Russell.

# ՎԱՐՔ ՄԻԼՏՈՎՆԻ

Յովհաննէս Միլտոն ազնուական Անգղիացի ծնաւ 'ի Լոնդոն մայրաքաղաքի յամի Տեառն 1608. Անդստին 'ի մանկական տիոց գտաւ նա կարի ուսումնասէր, և անխոնջ պարապէր 'ի գիրս ցհասարակ գիշեր. յոյր սակս սաստացաւ զառաջինն զանհնարին ցաւ գլխոյ, և ապա զկուրութիւն աչաց։

'Ի հասակի հնգետասան ամաց չոգաւ յուսումն 'ի Համալսարանն Կանտաբրիկիոյ (1) և եկաց անդ ամս եւթն, և ապա դարձեալ՝ ետ զանձն 'ի վարժութիւն համօրէն գիտութեանց։

Զկնի մահուան հօր իւրոյ (2) շրջեցաւ 'ի Գաղղիա և յԻտալիա 'ի մարզս հմտութեանց։ Եւ Թարգմանեաց յանգղիական բարբառ զընտիր ընտիր հատուածս իտալական քերթուածոց Դանտեայ, Արիոստեայ և Պետրարքայի։ 'Ի Նէապոլիս քաղաքի սեպուհն Մանսոս՝ պաշտպան Տասսոյի, յորդոր եղև նմա 'ի յօրինումն Դիւցազնական բանաստեղծութեան յանգղիական բարբառ. կամ ըստ այլոց՝ վերծանութիւնն քերթուածոց Մարինոսի շարժեաց 'ի նոյն։ Կամէր անցանել յԻտալիոյ 'ի Յունաստան, այլ 'ի սակս խռովութեանցն յուզելոց յԱնգղիա փութացաւ դառնալ 'ի Լոնդոն զկնի հնգետասան ամսոց մեկնելոյ անտի։ Ուր և փոխանակ զինուց՝ գրովք սկսաւ զինել ընդդէմ Թագաւորական և Եպիսկոպոսական իշխանութեանց, զի էր աղանդոյն Երիցական, և խնդրէր զՀասարակապետական իշխանութիւն յԱնգղիա։

'Ի հասակի երեսուն և հինգ ամաց ամուսնացեալ՝ ծնաւ երիս դստերս, որոց և ուսոյց ընթեռնուլ յայլեայլ լեզուս. և 'ի ժամանակի կուրութեան իւրոյ նոքա վերծանէին յուանկն

(1) Է մին 'ի կրկին երևելի Համալսարանաց Անգղիոյ։

(2) Որ էր նորաղանդ Երիցական կամ Մատրական, որպէս և ինքն Միլտոն. բայց հաւ նորա էր Հռովմէական։

նորա առանձին ըՆ զԵսայի մարգարէ յԵբրայական բարբառ, զՀոմերոս 'ի Յոյն, և զՈվիդիոս 'ի Լատին ։

'Ի խաղաղիկ խռովութեանց առ ժամանակ մի՝ կարգեցաւ Քարտուղար ատենին. և գրեաց մատեանս 'ի պաշտպանութիւն ազատութեան Անգղիացւոց. յոյր սակս ընկալաւ պարգև հազար լիտր Ստեռլին, որ է՝ երկու հազար ոսկի Վէնէտիկոյ ։

'Ի մեռանել կնոջ իւրոյ՝ մինչչև էր ամուսնացեալ վերստին, կորոյս զտեսութիւն միոյ ական. և 'ի Թագաւորել անդ Կարոլոսի երկրորդի՝ ընկեցաւ նա 'ի պաշտօնէ ատենի Քարտուղարութեան, և մեռաւ ևս երկրորդ կին իւր ։ Եւ ապա երրորդ անգամ ամուսնացաւ. բայց ընդհուպ մեռաւ և երրորդ կինն. և ինքն կորոյս զտեսութիւն միւսոյ ական ևս ։

Եւ այնպէս 'ի ժամանակի խապառ կուրութեան իւրոյ ետ զանձն յաշխատասիրութիւն Դիւցազնական բանաստեղծութեան Դրախտին կորուսելոյ՝ ձեռնտու ունելով զբարեկամս և զդստերս իւր ։ Զոր և ընծայեաց 'ի լոյս յամի Տեառն 1667 կամ 1669, գոլով ինքն 'ի հասակի վաթսուն և մի ամաց. զորոյ զնմանն ցարդ ոչ ետես Անգղիա ։ Յօրինեալ էր Միլտոնի յառաջագոյն և զայլ քերթուածս, որպէս և զկնի յօրինեաց միւս ևս Դիւցազնական բանաստեղծութիւն կոչեցեալ Դրախտ Վերստին Գտեալ ։ Այլ Դրախտ նորա կորուսեալ գեր 'ի վերոյ է քան զամենեսին, մինչև ասել ոմանց 'ի քննչաց նորա, թէ „ Միլտոնն գտանի 'ի Դրախտին կորուսելոյ, այլ ոչ 'ի վերստին գտելոյ “ ։

Յառաջին տպագրութեան անդ Միլտոնն բաժանեալ էր զԴրախտ իւր կորուսեալ 'ի տասն գիրս, այլ զկնի բաժանեաց զայն յերկոտասան ։

Մեռաւ նա 'ի հասակի վաթսուն և վեց ամաց յամի Տեառն 1674. և թաղեցաւ 'ի գաւթի եկեղեցւոյն՝ որ կոչի Սէյնդ Ճայլս (1) առընթեր Լոնդոնի ։ Բայց յամին 1793 կանգնեցաւ մահարձան նորա 'ի նմին եկեղեցւոջ ստորին համառօտ արձանագրութեամբ „ Յոհաննէս Միլտոնն յօրինող Դրախտին Կորուսելոյ “ ։ 'Ի ներքոյ արձանագրութեանս քանդակեալ կան Օձ և Խնձոր 'ի վերայ Բոցեղէն սրոյ ։

(1) Saint Giles.

Բայց 'ի բազմապատիկ լեզուաց ուսեալ էր նորա և զերաժշտութիւն, զպատմութիւն, զուսումնականութիւն, զիմաստասիրութիւն և զաստուածաբանութիւն։ Զկնի Աստուածաշունչ գրոց յաւէտ իմն սիրելի էր նմա Հոմերոս, զոր գոգցես ողջոյն առեալ էր 'ի բերան։

Զամս ինն աշխատ եղև 'ի յօրինումն Դրախտին կորուսելոյ։ Մթերք գիտութեանցն 'ի կուրութեան անդ առաւել ևս զօրացուցին զկարողութիւնս մտաց նորա. որով և երևակայութիւն նորա ազատ գոլով յարտաքին առարկայից՝ արձակ արձակ խաղաց յաշխարհս իմանալի։

## ՔՆՆՈՒԹԻՒՆ ԴՐԱԽՏԻՆ ԿՈՐՈՒՍԵԼՈՑ

Բազումք գտան յԵւրոպացւոց անուանի քննիչք և թարգմանիչք Դիւցազնական բանաստեղծութեանն Միլտոնի. ոմանք գեր 'ի վերոյ, և ոմանք ստորին դասեցին զայն քան զքերթուածս Հոմերոսի, Վիրգիլեայ և Տասսոսի. թէպէտև ամենեքին առհասարակ սքանչանան ընդ գիտս և ընդ վսեմութիւն իմաստից նորա։ Արդ՝ չկամեցեալ մեր ինքնին լինել դատաւոր, 'ի միջոյ Անգղիացի, Գաղղիացի և Իտալացի քննչաց նորա՝ զթարգմանութիւնն անաչառ բանից Ճօնսընի Անգղիացւոյ (1) դիցուք աստանօր. որ թէպէտև սակաւ մի երկայնաձիգ է, այլ քանզի բովանդակէ 'ի կարճոյ և զկարևոր տեղեկութիւնս 'ի սակս Դիւցազնական բանաստեղծութեան, թերևս ախորժալուր գտցի ընթերցանելեաց։

„ Մատիցուք արդ (ասէ Ճօնսըն) 'ի քննութիւն Դրախտին կորուսելոյ, այնր բանաստեղծութեան՝ որում ըստ նիւթոյն կամ ըստ գաղափարին մերձ է ունել զառաջին տեղին 'ի ծնունդս մարդկեղէն մտաց, և ըստ եղանակի յօրինուածոյն կամ ըստ ճարտարութեանն զերկրորդն։ Ըստ հասարակաց հաւանութեան զնախկին գովեստ բնական հանճարոյ կամ ախորժակի արժան է ընծայել գրչի Դիւցազնական բանաստեղծութեան. զի պահանջէ նա զբովանդա-

(1) Samuel Johnson.

կութիւն համօրէն կարողութեանց մտաց՝ որք յայլ քերթուածս շատ ցիր են առանձինն :

» Բանաստեղծութիւնն է արուեստ զօդելոյ զզուարճութիւն ընդ ճշմարտութեան՝ կոչեալ զերևակայութիւնն յօգնութիւն բանին : Դիւցազնական բանաստեղծութեանն է աւանդել զկարևոր վարդապետութիւնս ճշմարտութեան ամենավայելուչ կանոնօք, և պատմել զերևելի անցս ազդազդագոյն իմն օրինակաւ : Վասն որոյ՝ պէտք են պատմութեան ընծայել գրչի նորա զսկզբունս վիպասանութեան, զորս ունի նա յօրինել և չքեղազարդել ընտիր արուեստիւ, կենդանացուցանել թատրոնական նկարագրութեամբ և ազդուութեամբ, և պէսպէս յեղափոխել յիշատակս անցելոցն և ապառնեաց : Պէտք են բարոյական վարդապետութեան ուսուցանել նմա զանվթար կանոնս, և զբազմադիմի յեղանակս առաքինութեանց և մոլութեանց : 'Ի քաղաքականութենէ անտի և 'ի կենցաղավարելոյ ընդ մարդկան ունի նա ուսանել զպէսպիսութիւնս բուսոց բարուց, և զհակամիտութիւնս կրից՝ առանձինն, կամ զուգորդեալ 'ի միասին : Եւ բնախօսութեան պէտք են ընծայել նմա զլուսաբանութիւնս պատկերաց :

» Առ 'ի կիր արկանելոյ զայդոսիկ ըստ օրինաց բանաստեղծութեան՝ պէտք են ևս նմա քաջայարմար երևակայութեան 'ի կենդանագրել զբնութիւնն, և ընծայել կեղծեաց զկերպարանս ճշմարտութեան : Եւ տակաւին ոչ է նա բանաստեղծ տիրապէս, եթէ չիցէ ժամանեալ 'ի ծագս իւրում լեզուի, և 'ի միա առեալ զվայելուչ եղանակս խօսից և զոճ բառից, և ունեալ ևս զյարմարութիւնս այլ և այլ հնչմանց նոցա ըստ պէսպիսութեան չափաբերական ներդաշնակութեան :

» Ըստ Բոսսուայ (1) առաջին ճարտարութիւն Բանաստեղծին է գտանել զիմաստ բարոյական, զոր զկնի պարտ է առասպելաց նորա մեկնաբանել և հաստատել : Այս միայն թուի լինել միտք բանաստեղծութեանն Միլտոնի : Բարոյական իմաստք բանաստեղծութեանց այլոց են պատահական և հետևորդ. Միլտոնին միայն է գոյացական և ներ-

(1) Bọssu կրօնաւոր Գաղղիացի 'ի ճառն Գիւցազնական բանաստեղծութեան :

քին ։ Նպատակ նորա էր կարի իմն կարեւոր, ընդ նմին և դժուարին յոյժ. իմա՛ արդարացուցանել զճանապարհս Աստուծոյ, ցուցանել զբանաւորութիւն կրօնին, և զկարեւորութիւն հնազանդութեան աստուածային օրինաց ։

„ Առ 'ի յառաջադէմ ընծայել զիմաստն բարոյական՝ պէտք են առասպելաց և արուեստակեալ պատմութեան 'ի զարթուցանել զհետաքննութիւն և զզարմանս ։ Յայսմ մասին արժան է խոստովանել զքերթուածն Միլտոնի զուգահաւասար բանաստեղծութեանց այլոց ։ 'Ի պատմութեան անդ անկմանն Ադամայ բովանդակեաց նա զանցեալս և զհանդերձեալսն ։ Եւ զիմաստս Աստուածաշունչ գրոց այնպիսի իմն վայելչութեամբ գեղեցիկս հիւսեաց, մինչև համօրէն մասանց նորա երեւիլ կարի իմն կարեւոր, և չունել պէտս համառօտութեան յերագութիւն ընթացից երեւելի գործողութեան ։

„ Նիւթն Դիւցազնական բանաստեղծութեան է անցք ինչ երեւելի ։ Միլտոնին ոչ է կործանումն քաղաքաց, ոչ առաջնորդութիւն գաղթականի, և ոչ հիմնարկութիւն ինքնակալութեան. այլ՝ տեսչութիւն աշխարհաց, վտարանջութիւնք յերկինս և յերկրի, ապստամբութիւն երեւելի արարածոց յԱրարչէն իւրեանց, պարտութիւն զօրաց նոցա, և պատիժ յանցանաց. արարչութիւն նորոգ բանաւորաց, երջանկութիւն նոցա և անմեղութիւն. անկումն նոցա 'ի վիճակէ անմահութեան, և վերստին կանգնումն 'ի յոյս, և հաշտութիւն ընդ Արարչին ։

„ Պատմութիւնն երեւելի անցից ունի զարագութիւն իւր և զյամրութիւն 'ի գործոց անտի արանց մեծամեծաց. առաջի մեծութեանն նկարագրելոյ 'ի Միլտոնեան բանաստեղծութեան տեղի տան ամենայն աւագութիւնք ։ Ե՛ւս տկարագոյնքն 'ի նոսա են բարձրագոյնք և ազնուականագոյնք 'ի մարդկեղէն արարածս, և նախածնողք մարդկան ազգի ։ Ընդ գործս նոցա կամակից լինին տարերք, և զուղղութենէ կամ զխոտորնակութենէ կամաց նոցա կախեալ կան հանգամանք երկրաւոր բնութեանս, և հանդերձեալ վիճակ համօրէն բնակչաց երկրի ։

„ Երեւելիքն յայլոց գործողաց 'ի բանաստեղծութեանս՝ են այնպիսիք ոմանք, զորս չէ արժան 'ի մէջ բերել 'ի դուզնաքեայ աւիւթս ։ Իսկ մնացեալքն են ստորին զօրութիւնք. բայց վերջնոյն 'ի նոցանէ մարթ է շարժել զտարերքս, և

արկանել զանձամբ զտպաւորութիւն նոցա։ Եւ զօրութիւնք այնպիսիք՝ զորս միայն հրամանն Ամենակալին կալեալ ունի յապականելոյ զամենայն արարածս . . . Բացատրութիւնն պատճառաց և գործոց այսպիսի բարձրագոյն արարածոց՝ որչափ ինչ մարթ էր մարդկային բանի քննել զնոսա, գտաւ առաջարկութիւնն՝ զոր յանձին կալաւ Միլտոն բանաստեղծ քաջ, և տարաւ ՚ի գլուխ։

„ ՚Ի քննութեան անդ Դիւցազնական բանաստեղծութեան մանաւանդ պէտք են զննութեան հանգամանաց կամ բնաւորութեան անձանց։ Անձինք արժանի զննութեան ՚ի Դրախտին կորուսելոյ՝ են Հրեշտակք և Մարդն. հրեշտակք բարի կամ չար, և մարդ ՚ի վիճակի անդ անմեղութեան և յանցանաց։ Ցառաքինութիւնս անդ հրեշտակաց Ռափայէլ հեզահամբոյր է, քաղցրագութ, դիւրանսաց և ինքնամատոյց. Միքայէլ արքայակերպ և վեհափառ . . . Աբդիէլ և Գաբրիէլ ըստ պատեհիցն երևին և գործեն։ Առանձին հաւատարմութիւն Աբդիէլի գեղեցիկ իմն ցուցանի։ Այլ տուեալ ևս պէսպիսութիւն տեսանի ՚ի բնաւորութիւնս անդ հրեշտակացն չարաց։ Որպէս յուշ առնէ Ադդիսոն (1) այնպիսի իմն ընծային իմաստք Սատանայի, որպիսի քաջադէպ են բարձրագոյն և յաւէտ ապականեալ բնութեան։ Կղարքոս (2) ստգտեաց զՄիլտոն ՚ի սակս հայհոյութեանցն՝ զորս արկանէ նա երբեմն ՚ի բերան Սատանայի. զի ըստ ծանուցանելոյ նորա գտանին ՚ի նոսա խորհուրդք այնպիսի՝ զորս չէ մարթ արդարացուցանել, և ոչ ոք յերկիւղածաց կարէ ներել նոցա անցանել ընդ միտս իւր, թէպէտև հարևանցի ևեթ։ Բայց գտնել բանս ՚ի բերան Սատանայի՝ իբրև ապստամբի յԱստուծոյ առանց այսպիսի դժոխային իմաստից՝ էր արդարև մին ՚ի մեծագոյն դժուարութեանց բանաստեղծութեանն Միլտոնի։ Եւ թուի ինձ նա քաջ իսկ զերծուցանել զանձն յայնմանէ, զի ՚ի բանս անդ Սատանայի սակաւ ինչ գտանի անըմբերելի բարեպաշտ լսելեաց։ Եւ չէ հնար լեզուին ապստամբութեան նոյն լինել ընդ լեզուին հպատակութեան։ Զօրութիւնն Սատանայի փրփուրս արձակէ յամբարտաւանութեան անդ և ՚ի կամակորութեան, բայց բանք նորա չունին ինչ սոնանել առ ա-

(1) Addison Անգղիացի։ (2) Clarke Անգղիացի։

պիրատութեան իւրեանց ։ Այլք 'ի գլխաւորաց անտի յապս-տամբացն երկնից քաջ ցուցանէին յառաջին և յերկրորդ գիրս ։ Եւ մոլեգին կատաղութիւնն Մողոքայ նոյնօրինակ երևի 'ի մարտի անդ և 'ի խորհրդեան ։

” 'Ի վիճակի անդ անմեղութեան այնպիսի ընծային իմաստք Ադամայ և Եւայի, որպիսի քաջավայելուչք են նոցա ։ Սէր նոցա է անարատ, և լի մեծարանօք. կերակուր նոցա անպաճոյճ, և վաստակ նոցա անաշխատ ։ Բանք նոցա ընդ Արարչին՝ զարմացման ևեթ են և գոհութեան ։ Վայելք նոցա չունին զայլ ինչ խնդրել, և անմեղութիւն նոցա աներկիւղ յամենայնէ ։ Այլ յանցանօքն մտանեն 'ի նոսքա կասկած և երկպառակութիւն, չարախօսութիւն զմիմեանց, և կամակոր պաշտպանութիւն անձին ։ Հային ընդ իրեարս սարտուցեալ մտօք, և երկնչին յԱրարչէն իբրև 'ի վրէժխնդրէ դատաւորէ յանցանաց իւրեանց ։ Այլ զկնի 'ի խընդիր լինելն ապաւինել 'ի գթութիւն նորա, և քաղցրացուցանել անձանց զարտասուս ապաշխարութեան ։ Նախապատուութիւնն Ադամայ առանձին իմն ցուցանէ յառաջքան զանկումն և զկնի ։

” Յաղագս հաւանականին և զարմանալւոյն՝ որք են կրկին մասունք Դիւցազնական բանաստեղծութեանն . . . սակաւ բանից պէտք են 'ի Դրախտին կորուսելոյ ։ Բովանդակէ նա զպատմութիւն սքանչելեացն արարչութեան և փրկագործութեան. և յանդիման առնէ զզօրութիւն և զգթութիւն գերագոյն Հաստչին ։ Նմին իրի հաւանականն 'ի նմա է զարմանալի, և զարմանալին հաւանական. և բովանդակ պատմութիւնն ճշմարտութիւն ։ Եւ զի չեն պէտք ընտրութեան ճշմարտութեան, յայն սակս հարկաւ գեր 'ի վերոյ գտանի նա քան զամենայն կանոնս ։ Եւ թէպէտ 'ի պատահական և յարտաքին մասունս նորա գտանին ինչ ինչ արտաքոյ կանոնի՝ որպէս և յամենայն ինչ մարդկային, սակայն բարձրութիւն շինուածոյն ողջոյն արձանացեալ կայ գեղեցկայարմար և անշարժ ։ Որպէս քաջ ծանուցանէ Ադդիսոնն, այս բանաստեղծութիւն տուեալ գտանի ըստ նիւթոյն քան զամենայն քերթուածս, զի է պիտանի ընդհանրապէս և միշտ. քան զի համօրէն ազգք մարդկան ծնունդք են Ադամայ և Եւայի, և հաղորդք գտանին բարեացն կամ չարեաց՝ զոր ձգեն յանձինս 'ի նոցանէ ։

” Յաղագս պատահական մտից գերբնական զօրութեան

'ի բանաստեղծութիւն անգր՝ որ է միւս եւս բազմաբեղուն տեղի քննողական ծանօթութեան, չեն պէտք նոյնպէս բազմապատիկ բանից 'ի սմա։ Զի ամենայն ինչ կատարի անմիջական և ակներև ուղղութեամբն Աստուծոյ. բայց այնպիսի օրինակաւ, մինչև և ոչ միոյ մասին գործողութեան բանաստեղծութեանս այլազգ ելանել 'ի գլուխ։

„ Միջագրութիւնքն կրկին թուին ինձ լինել 'ի բանաստեղծութեանս։ Առաջինն բովանդակի 'ի պատմութեան անդրպատերազմին յերկինս՝ զոր նկարագրէ Ռափայէլ, և երկրորդն 'ի մարգարէական տեսիլս փոփոխութեանցն յաշխարհի՝ զորս ցուցանէ Միքայէլ Ադամայ։ Երկոքեան եւս անբաժ են 'ի գլխաւոր գործողութենէ բանաստեղծութեանս։ Մինն կարևոր էր 'ի զգուշութիւն Ադամայ, և միւսն 'ի քաջալերութիւն նմին։

„ Առ ամբողջութիւն գաղափարի բանաստեղծութեանս չէ մարթ առարկել ինչ. զի ունի որոշակի և յայտնապէս զսկիզբն, զմէջն և զկատարածն՝ որոց պէտք են ըստ Արիստոտէլի։ Զի՞ք թերևս քերթուած երկայնաձիգ՝ յորմէ մարթ իցէ սակաւ ինչ 'ի բաց առնուլ առանց յայտնի կրճատութեան, որպէս 'ի սմանէ։ Ո՛չ գոն 'ի սմա հանդէսք յուղարկաւորութեան մեռելոց, և ո՛չ մանրապատում նկարագրութիւն վահանի։ Այսպէսն մարթ էր զանց առնել զհամառօտ զարտուղութեամբքն 'ի սկզբան երրորդ, եւթներորդ և իններորդ գրոցն, բայց ո՞ ոք կամիցի 'ի բաց թողուլ զայնչափ գեղեցիկ աւելորդս, և ո՞չ իսկ փափաքիցէ, զի և յօրինողն Եղիականին զնոյն արարեալ էր շնորհս ապառնեաց փոքու իմն ծանօթութեամբ զանձնէ։ Եւ թերևս ոչ այնչափ յաճախակի և մտադիւր ընթեռնումք զայլ մասունս բանաստեղծութեանս, որպէս զայդոսիկ արտաքին յաւելուածսդ։ Եւ զի վախճան բանաստեղծութեան զուարճութիւնն է, որ ինչ միանգամ զուարճացուցանէ՝ չկարէ լինել առանց արուեստի բանաստեղծութեան։

„ Խնդիրքն՝ թէ ո՛րդեօք գործողութիւնն բանաստեղծութեանս իցէ՞ մի ճշգրտիւ, կամ ո՛րդեօք մարթ իցէ սահմանել զսա որպէս Դիւցազնական, և ո՞ իցէ Դիւցազն նորա՝ յառաջ եկին 'ի վերծանողաց անտի, որք զսկզբունս դատման ձգեն յաւէտ 'ի գրոց քան 'ի բանէ անտի։ Միլտոն՝ թէպէտև մակագրեաց զբանաստեղծութիւն իւր Դրախտ կորուսեալ, բայց կոչէ զայն Երգ Դիւցազնական։ Դրի-

դէն (1) ապառումս և տարապարտուց ժխտեալ զԴիւցազ-նութիւնն Ադամայ 'ի սակս պարտութեան նորա ։ Բայց միթէ չիցէ՞ արժան Դիւցազնի Թշուառականոյն՝ Թէպէտև ար-տաքոյ սովորութեան Բանաստեղծից, զի յաջողուած և առաքինութիւն ոչ են միշտ զուգընթաց միմեանց ։ Կա-տոն (2) է Դիւցազն Լուկանեայ (3) Թէպէտև ըստ Կուին-տիլեանոսի (4) օրինակն նորա չունի ինչ հաստատել ։ Այս եթէ պէտք են յաջողութեան, ահա պատրողն Ադամայ նկուն գտաւ 'ի վախճանի, և Ադամ դարձաւ 'ի շնորհս Արարչի իւրոյ . . .

„ Զկնի գաղափարի և շինուածոյ բանաստեղծութեանն արժան է քննել զբաղկացուցիչ մասունս նորա, զիմաստ-սանս և զոճ խօսից ։ Իմաստք բանաստեղծութեանս՝ իբրև յայտարարք բնաւորութեան անձանց, են արդարև առա-ւելագոյն մասամբ ընտիրք ։ Գեղեցիկ հատուածք բարոյա-կան իմաստից կամ կանոնաց խոհեմութեան գուն ուրեք ընդ առաջ ելանեն 'ի սմա . զի հիմն բանաստեղծութեանս ոչ կարէ ընդունել զեղանակ մարդկային, վասն որոյ և սա-կաւնպաստ մարթ է նմա ընծայել ընթացից կենաց մարդ-կան ։ Եւ նպատակ նորա է ամբառնալ զմիտս յերկրաւորացս աստի ։ Սակայն և այնպէս գովեստն առաքինի քաջութեանն՝ զոր եցոյց Աբդիէլ առանձինն ընդդէմ նախատանաց բազ-մութեան, 'ի դէպ գայ ամենեցուն ։ Եւ ստգտանքն Ռա-փայէլի՝ զոր եցոյց նա ընդ խուզարկութիւնն Ադամայ ըզ-շարժմունս մոլորակաց, քան՝ մարթին ունել զտեղի 'ի կա-նոնս կենաց՝ զոր միանգամ ետուն Բանաստեղծք ։

„ Իմաստքն՝ որք ըստ դիպաց ընդ առաջ ելանեն 'ի յա-ռաջատութեան անդ բանաստեղծութեանս, այնպիսի իմն են՝ որոց մարթ էր յառաջ գալ միայն 'ի կարի իմն եռան-դուն և 'ի զօրաւոր մտաց Միլտոնի ։ Որում ձեռնտու-եղեն անդադար ուսումն, և խորին հետաքննութիւն . . . Լած նա զմտաւ զարարչութիւնն յընդարձակութեան անդ իւրում, յոյր սակս և նկարագրութիւնք նորա են բազմա-հանճար ։ Սովորեցոյց զերևակայութիւն իւր յանխափան

(1) Dryden բանաստեղծ Անգղիացի ։
(2) Cato Ճծանուն Պարքէյ Հռովմայեցի ։
(3) Lucanus բանաստեղծ Լատին ։
(4) Quintilianus ճարտասան Լատին ։

թուիչս, նմին իրի և ծնունդք մտաց նորա են լայնածաւալ:
Ամենայն յատկութիւն բանաստեղծութեանն Միլտոնի
է վսեմութիւն: Եւ թէպէտ իջանէ նա երբեմն յընտիրն,
այլ ոչ թողու զմեծն: Արկանէ զանձամբ զվայելչութիւն,
բայց բնիկ ընթացք նորա են հսկայակերպ՝ ուղղեալ 'ի բար-
ձունս: Զուարճացուցանէ ըստ տեղւոյն, այլ առանձին քա-
ջութիւն նորա է կրթել 'ի զարմանս: Թուի լինել քաջա-
ծանօթ բնաւորութեան իւրումն մտաց, և ձրից բնութեանն՝
զոր ունէր առաւել քան զայլս. որ էր կարողութիւն ընդ-
արձակելոյ զլայնածաւալն, պայծառացուցանելոյ զլուսա-
ւորն, ստուերացուցանելոյ զմթինն, սաստկացուցանելոյ զա-
հեղն, և մեծացուցանելոյ զահաւորն: Նմին իրի և զայնպի-
սի ընտրեաց նիւթ իւրումն բանաստեղծութեան, յորում
չէր հնար բազմաբանել, և մարթ էր նմա ցուցանել զհան-
գէս իւրումն հանճարոյ՝ առանց սպառանաց և անտեղու-
թեան: Երևոյթք բնութեանն, և ընթացք կենաց ոչ լինէին
զախորժակ մեծութեան նորա. 'ի նկարագրել զարարածս
ըստ բնութեան պէտք են մանրախոյզ զննութեան, և յիշո-
ղութեան յաւէտ քան մտաց: Զուարճութիւն Միլտոնի
էր խաղալ յընդարձակ սահմանս կարելեաց: Թատրոն գոյիցս
անձուկ իմն էր մտաց նորա. նմին իրի արձակեաց զկարո-
ղութիւն իւր 'ի խնդիր անծանօթ աշխարհաց՝ յորս մարթ
էր երևակայութեան նորա հատանել զճանապարհ: Եւ այն-
պէս եգիտ զզբօսանս անձին 'ի ձևացուցանել անդ զնորոգ-
եղանակս գոյութեան, յընծայել զիմաստ և զգործս բար-
ձրագոյն արարածոց, 'ի հետազօտել զգաղտնիս դժոխոց, և
'ի մտանել 'ի պարակցութիւն երկնաւորաց: Բայց անմարթ
էր նմա մնալ միշտ յօտար աշխարհս, այլ հարկ էր երբեմն
իջանել վերստին յերկիր, և բանս 'ի մէջ ածանել զերևե-
լեացս և զծանօթից: 'Ի չկարել անդ զարթուցանել զզար-
մանս վսեմութեամբ մտաց իւրոց՝ ընծայէ զբերկրութիւն
արգասաւորութեամբ նորա:

» Յամենայն բանս իւր երբեք ոչ տկարանայ 'ի լինել ըղ-
միտս: Բայց պատկերք նորա, և նկարագրութիւնք տեսա-
րանաց կամ գործոց բնութեան ոչ երևին լինել միշտ գա-
ղափարեալ 'ի նախագծէ անտի, և չունին զնորութիւն և
զազդուութիւն անմիջական տեսութեան: Տեսանէ նա ըղ-
բնութիւնն՝ որպէս յուշ առնէ Դրիդէն, ընդ ակնոցս գրոց.
և բազում անգամ կոչէ զուսումն յօգնականութիւն ան-

ձին ։ Դրախտն Եդեմայ յուշ ածէ նմա զձորն Եննայ՝ յորում Պերսեփոնէ հաւաքէր զծաղիկս ։ Ճանապարհ առնէ Սատանայ ընդ տարերսդ ընդդիմամարտ , որպէս Արգոս ընդ Կիւանեան ժայռս , կամ Ոդիսևս ընդ կրկին յորձանուտս Սիկիլիոյ՝ 'ի խուսափել անդ յերեսաց Քարիւբդեայ առ ձախակողմամբ նաւին ։ Դիցաբանական ակնարկութիւնք Միլտոնի իրաւամբք եղեն ստգտեալ , զի ոչ միշտ յիշատակին իբրև զառասպելս մնոտեաց ։ Բայց ընծայեն նոքա պատմութեանն զպէսպիսութիւն , և կրթեն փոփոխակի զյիշողութիւն և զմիտս ։

„ Օրինակք նորա սակաւաթիւք են , և կարի իմն տարբեր 'ի նմանութեանց անտի Բանաստեղծից՝ որք յառաջ ընթաց գտան նմին ։ Եւ ոչ իսկ կան փակեալ ընդ ճիշդ սահմանաւ համեմատութեան ։ Յաւէտ իմն գերազանցութիւն Միլտոնի է ընդարձակութիւն , ձգէ նա զպատկերն եկամուտ անդր քան զսահմանն՝ զոր տեղին պահանջէ ։ Սովին օրինակաւ համեմատեալ նորա զվահանն Սատանայի ընդ սկաւառակին լուսնի՝ լնու զերևակայութիւնն գիւտիւ գիտական , և սքանչելեօքն՝ որք ցուցան նովաւ ։

„ Առաւելութիւն բարոյական իմաստից նորա քան զայլոց բանաստեղծից՝ ինքնին իսկ քաջայայտ է , և գովութեան արժանի ․ զի ունի զայն 'ի ծանօթութենէ անտի Աստուածաշունչ գրոց ։ Նախնի Դիւցազնական Բանաստեղծք վրէպ գոլով 'ի լուսոյ Աստուածային յայտնութեանն՝ կարի իմն անհանճար գտան 'ի վարդապետութիւնս անդ առաքինութեանց ։ Մարթ է լինել բանից նոցա սքանչելի , այլ ոչ ցանկալի ։ Մարթ է ուսանել 'ի քերթուածոց նոցա զբարձրագոյն աստիճանս արիութեան և խոհեմութեան , բայց զաւկաւս 'ի կանոնաց անտի արդարութեան ․ իսկ զգթութեան և ոչ զմի ։ Քաջայայտ իմն է 'ի Բանաստեղծից անտի իտալացւոց , թէ մարթ է վարել յումպէտս և զօգուտն Քրիստոսական ծանօթութեան ։ Խոտորնակութիւնն Արիոստեայ յայտնի է ամենեցուն ։ Եւ թէպէտ մարթ է Սրբազան առդնել զազատութիւնն Երուսաղեմի (1) , սակայն քերթողն նորա Տասսո կարի իմն ուխշտ գտաւ 'ի բարոյական մասին ։ Իսկ 'ի Միլտոնի ամենայն տողք նորա բուրեն զմաքրութիւն

(1) Gerusalemme liberata, Երուսաղէմ ազատեալ ․ այսպէս կոչի բանաստեղծութիւնն Տասսոյի Իտալացւոյ ։

խորհրդոց․ և ղանդարտութիւն վարուց․ քաջ 'ի միջարկութեանց անտի բանից հոգւոյն աստուածայնոց։ Սակայն և նոքին իսկ բանագատին խոստովան լինել զհաստատութիւն նորեանց առ Աստուած․ և այն՝ այնպիսի օրինակաւ, մինչև ծնանել 'ի միտս զյարգութիւն, և զզարմացումն լինել աստուածպաշտութեան։

„ Կրկին միայն են մարդիկ 'ի բանաստեղծութեանս, այլ նոքին են ծնողք մարդկան ազգի։ Յառաջքան զանկումն մեծարոյք 'ի սակս արժանապատուութեան և անմեղութեան իւրեանց, և զկնի անկմանն սիրելիք 'ի սակս ապաշխարութեան և հնազանդութեան իւրեանց։ 'Ի նախկին վիճակի անդ սէր նոցա է կաթոգին, այլ ոչ կնոտ․ աստուածպաշտութիւն նոցա վսեմ, այլ ոչ յանձնապաստան։ Իսկ զկնի յանցանաց ցուցանեն զհակառակութիւնն մտանել 'ի նոսա, և զաւարտ նոքին 'ի համբերութիւն միմեանց․ զկարգաւոր վստահութեան 'ի շնորհն Աստուծոյ, և ապա զյոյսն թողութեան 'ի ձեռն ապաշխարութեան և աղօթից։ Զվիճակն անմեղութեան մաօք ևեթ ըմբռնեմք՝ եթէ արդարև իցէ հնարաւոր յառաջիկայ թշուառութեանս, բայց [illegible] և զպարզամիտն [illegible] անկելոյ և մեղանչական վիճակի մարթ է մեզ ուսանել 'ի Բանաստեղծութեանս, զի կարեւոր են մեզ։ Վէհ է բանաստեղծս յամենայն բանս իւր։ Դրախտհայրք մեր 'ի նախկին վիճակի անդ վարին ընդ հրեշտակս․ և զկնի անկման անմտութեամբ և յանցանօք իւրեանց՝ տակաւին 'ի նուաստութեան անդ ոչ ունին զերդանակ նկուն աղաչաւորաց․ և զտանեն [illegible] զշնորհս, զի աղօթք նոցա եղեն լսելի։

„ Մարդկային կիրք զկնի անկմանն մտին յաշխարհ, նմին իրի սակաւ բանից ազդուութեան պէտք են 'ի Դրախտին կորուսելոյ։ Սակայն և այնպէս ոչ պակասին 'ի նմա։ Սեպհական կիրք բանական բնութեանս, տագնապ խղճի մնաց 'ի սակս պատուիրանազանցութեան, և երկիւղ դատաստանի աստուածային արդարութեան՝ գեղեցիկ իմն նկարագրին, և ազդողագոյնս ցուցանին 'ի նմա։ Բայց մի միայն է առիթն շարժման կրից։ Վսեմութիւնն է ընդհանուր և առաջին յատկութիւն այսր բանաստեղծութեան․ որ և՝ է զի նկարագրական է, և է զի տրամաբանական։

„ Զթերութիւնս Դրախտին կորուսելոյ՝ զի չէք ինչ մարդկային առանց վրիպանաց, գործ է ցուցանել անաչառ

քննութեան ։ Սակայն՝ որպէս յառաջին դնել անդ զգերազանցութիւն Մէլանիէի, ոչ ածի 'ի մէջ զօրինակս 'ի բանաստեղծութեանս, զի ընտրութեան գեղեցկութեանց նորա ոչ լինէր վախճան, նոյնպէս ընդհանրապէս եւեթ յիշատակեցից զորս արժանի երևին ստգտանաց 'ի նմա ։

„ Գաղափարն կամ առաջարկութիւնն Դրախտին կորուսելոյ ունի զայս անպատշաճութիւն, զի ոչ բովանդակէ յինքեան զարարս և զեղանակս մարդկան ։ Ադամ և Եւայ գտանին յայնպիսում վիճակի՝ զորոյ զփորձ չէ հնար առնուլ ումեք 'ի մահկանացուաց. նմին իրի և վերծանողն բանաստեղծութեանս սակաւուք եւեթ գտանէ 'ի նմա զհետաքննութիւն և զախորժակ անձին ։ Արդարև առնումք ամենեքին յանձինս զփորձ զանհնազանդութեանն Ադամայ, մեղանչեմք ըստ օրինակի նորա, և պարտիմք ապաշաւել զյանցանս մեր, ունիմք հանապազ դարանակալ թշնամիս զանկեալ հրեշտակս, և պահապանս և բարեկամս զերանեալ հոգիս ; 'ի փրկութեան անդ մարդկայինս ազգի ակն ունիմք լինել բաժանորդ, և նկարագրութիւնքն երկնից և դժոխոց անշուշտ 'ի մեր սակս են, զի զնոյն ունիմք կալ՝ կամ յաղէտս, և կամ յերանութեան. բայց այսոքիկ ճշմարտութիւնք չունին պէտս նորոգ գիտութեան ։ Անդստին 'ի մանկական տիոց ուսանիմք զդոսա, մտանեն յառանձին խորհուրդս մեր և յընտանի զրոյցս, և կից են սովորութեամբ ընդ համօրէն ընթացս կենաց մերոց ։ Զոր միանգամ գիտեմք յառաջագոյն, ոչ ևս ուսանիմք. և որ միանգամ ոչ է անակնկալ, ոչ տայ զարմանս ։ Յօմանց 'ի գաղափարաց անտի՝ զորս յանդիման առնեն ահարկու տեսարանքս, խոյս տամք յարգանօք, թողեալ զնոսա միայն կարևոր ժամու ։ Եւ յայլոց խուսափեմք երկիւղիւ, և կամ տեղի տամք միայն իբրև պիտանի խրատուց յուղղութիւն անձանց ։ Բերկրութիւն և երկիւղ են արդարև տիրապէս ծնունդք բանաստեղծութեան. բայց այնպիսի պարտի լինել բերկրութիւնն, զի հնար իցէ մարդկային մտաց գէթ ըմբռնել զայն. և երկիւղն այնպիսի՝ զի մարթ իցէ մարդկային զօրութեան կամ քաջութեան 'ի դիմի հարկանել նմին ։ Երջանկութիւնն և թշուառութիւնն յաւիտենական կարի ծանրակշիռ գտանին թևոց հանճարոյ, նմին իրի տեղի տուեալ մտաց 'ի նոցանէ՝ շատանայ անդորր հաւատովք, և խոնարհ երկրպագութեամբ ։

» Բայց սակայն մարթ է ծանուցեալ ճշմարտութեանց զգենուլ զայլ կերպարանս, և յանդիման լինել մտաց նորոգ խառն միջնորդութեամբ պատկերաց: Եւ ահա զայս եղանակ յանձին կալեալ Միլտոնն, և տարեալ զայն ՚ի գլուխ անզուգական բեղնաւորութեամբ և քաղցրութեամբ մտաց իւրոց: Որ միանգամ ՚ի միտ առնու զսակաւութիւն բանիցն՝ զոր էառ նա յԱստուածաշունչ գրոց, ունի զզարմանալ՝ թէ զիարդ ազդողագոյնս ձգեաց նա զնոսին յայնչափ ընդարձակութիւն, և ՚ի պէսպէս յեղանակս. զգուշացեալ ևս յանչափութենէ կեղծեաց ՚ի մեծարանս Կրօնին: Գտանի ՚ի բանաստեղծութեանս ճշգրիտ հանդէս միացեալ զօրութեան ուսման և բնական հանճարոյ, որպէս և բազմամթեր կուտակութիւն նիւթոց եղելոց ՚ի կարգի քաջ դասմամբ, և զօդելոց ընդ միմեանս հզօր երևակայութեամբ: Միլտոնն ճարտար գտաւ յընտրել անդ ՚ի բնութենէ, ՚ի պատմութենէ, ՚ի նախնի առասպելաց և յարգի գիտութեանց զկարևորսն ՚ի պայծառացուցանել կամ ՚ի պճնազարդել զխորհուրդս իւր: Համբաւք ծանօթութեանցն բեղնաւորեցին զմիտս նորա՝ որ յառաջ իսկ մակարդեալ էր ուսմամբ, և ուռճացեալ երևակայութեամբ: Վասն որոյ խրատամբք ասաց մի ոմն ՚ի գովչաց նորա, թէ ՚ի վերծանել անդ զԴրախտն կորուսեալ՝ ընթեռնուք զմատեան համօրէն գիտութեանց: Սակայն չէք հնար զարման մատուցանել սկզբնական թերութեան նորա . . . (1)

» Միւս ևս անպատշաճութիւն բանաստեղծութեան Միլտոնին է անկարութիւնն նկարագրելոյ զգործողութիւնս հոգւոց: Ցեսեալ նորա, զի աննիւթականութիւնն ոչ ընծայէ նմա պատկերս, և ինքն ոչ կարէ յանդիման առնել զգործս Հրեշտակաց՝ եթէ ոչ ՚ի ձևան գործարանաց, զգեցուցանէ նոցա զմարմին և զեղանակ . . . Բայց ոչ քաջ միաբանէ նա զբանաստեղծութիւն իւր ընդ իմաստասիրութեան: Դժոխային և երկնային զօրութիւնքն է զի հոգիք են անմարմինք, և է զի մարմինք հոգեկիր: Այն ինչ Սա-

(1) Անփութութիւն ճաշակի վերծանողաց (առ Ճօնսըն, համծանօթարար նորա) որք առանէին ընթերցել զանհամութիւնս առասպելաց հին աշխարհութեան Դրախտին կորուսելոյ, չկարէին ինչ նուաղեցուցանել զփառս նորա: Առ ՚ի փորձելս իմանալ զայն՝ պէտք էր գէթ ըստ ինքեան ժողովրդեան, վերմութեան և լուսաւորութեան մրոց՝ որովհետ էր Միլտոնն:

տանայ նիզակ 'ի ձեռին ընթանայ 'ի վերայ կիզանողական կաւոյն, է նա մարմին. և այն ինչ յանցանել իւր ընդ մէջ գծոխոց և նորոյ աշխարհիս՝ կայ 'ի վտանգի ընկղմելոյ 'ի դատապարտութեան անդ, և շողիքն ամբարձեալ 'ի վեր ունին զնա, ունի դարձեալ զմարմին. իսկ 'ի կենդանացուցանել անդ զգործն՝ թուի լինել հոգի, որում մարթ է ընդմտանել 'ի նիւթն ըստ հաճոյս. և յընդոտանուլ նորա 'ի նոյն կերպարան՝ պարտ է ունել զձև մարմնոյ: Եւ 'ի յանդիման լինել նորա Գաբրիէլի՝ ունի 'ի ձեռին զնիզակ և զվահան, զորս և մարթացաւ թագուցանել 'ի գործն. սակայն զէնք հրեշտակացն չարաց էին նիւթական: Խուժանն Պանտեմոնի՝ թէպէտև անհամար բազմութեամբ, սակայն գոլով անմարմին՝ կան յընդարձակի 'ի միջոցի անդ. բայց 'ի պատերազմին 'ի պարտիլ նոցա յերեսաց լերանց՝ ապառաժինութիւն նոցա պատճառ եղև վնասու, և զէնքն գտեալ յանցանօք՝ մտին 'ի մարմինս նոցա յանցանօք: Զնոյն է տեսանել և 'ի սուրբ հրեշտակսն՝ որք պարտեցան 'ի սակս զինուց իւրեանց. զի անզէն գոլով դիւրաւ մարթ եղև նոցա իբրև հոգւոց խուսափել՝ ամփոփեալ կամ տեղի տուեալ: Սակայն և այնպէս տակաւին ոչ են հոգեղէն. զի ամփոփումն կամ տալ զտեղի՝ պատկերք են նիւթոյ... Ուրիէլ յընթանալ իւրում 'ի ճառագայթի անդ արեգական՝ է նիւթեղէն. նոյնպէս և Սատանայ յերկնչել անդ յերեսաց զօրութեան Ադամայ... Շփոթութիւնն հոգւոյ ընդ մարմնոյ 'ի պատմութեան անդ պատերազմին յերկինս՝ ունի զանպատշաճութիւն իւր 'ի բանաստեղծութեանս...

" Զկնի գործոց աննիւթական անձանց՝ զորս չէ մարթ յանդիման առնել, մնայ մեզ քննել զայլաբանութիւն անգոյից: Մեծացուցանել զպատճառսն յարարողս անդ, կերպարանել զվերացեալ գաղափարս, և կենդանացուցանել զնոսա ազդուութեամբ իմն՝ են գործք բանաստեղծութեան: Բայց այսպիսի այլաբանութիւնք զկնի կատարման պաշտաման իւրեանց պարտին տեղի տալ փութանակի: Օրինակ իմն՝ Համբաւն պատմէ մեզ զառասպելս, և Յաղթութիւնն հովանի լինի զօրավարին, և բազմեալ կայ 'ի վերայ դրօշակի նորա. բայց երկոքին ևս չկարեն աւելի ինչ գործել: Վասն որոյ ընծայել նոցա զպաշտօն կամ զգործ նիւթական՝ ոչ է այլաբանել զնոսա, այլ յաւէտ տագնապեցուցանել զմիտս վերծանողին: Եւ թէպէտ տեսանեմք 'ի Պրոմէթէոսն

Եսքիւղեայ 'ի Թատրոն ածեալ զբռնութիւն և զզօրութիւն, և յԱսկէստեան Եւրիպիդեայ զմահ իբրև գերասան, սակայն օրինակն այլոց ոչ կարէ արդարացուցանել զանպատշաճութիւնն: Այլաբանութիւնն Մեղաց և Մահու 'ի բանաստեղծութեանս է արդարև արժանի ստգտանաց: Մեղքն է անշուշտ ծնող Մահու, և մարթ է զերկոսին զնոսա ստուգընել բարապանս դժոխոց: Բայց 'ի խափանել անդ նոցա զճանապարհն Սատանայի՝ որ նկարագրի իբրև նիւթական, և 'ի մարտնչել Մահու ընդ նմա՝ ոչ ևս միայն այլաբանութիւնն: Մարթ է Մեղաց և Մահու ցուցանել զճանապարհն դժոխոց, բայց ոչ դիւրացուցանել զանցս նորա՝ կամուրջ արկեալ 'ի վերայ անդնդոց. զի դժուարութիւնն անցից Սատանայի նկարագրի իբրև իրական և զգալի, իսկ կամուրջն է այլաբանական . . . Անհեթեթ այլաբանութիւնն թուի ինձ լինել մի յերևելի թերութեանց անտի բանաստեղծութեանս. և առ այս չունիմք զայլ ինչ պատճառ, բայց զբանաստեղծին կարծիս ընդ գեղեցկութիւն նորին:

„ Մարթ է առարկել ինչ և ընդդէմ ընթացից պատմութեան բանաստեղծութեանս: Սատանայ 'ի Դրախտի անդ ածեալ լինի առաջի Գաբրիէլի իբրև պատժապարտ, բայց անդէն արձակի անպատուհաս: Արարչութիւն Մարդոյն համարի լինել առ 'ի լնուլ զդատարկութիւնն թողեալ յերկինս զկնի մերժելոյ ապստամբացն. սակայն Սատանայ յիշատակէ զայն իբրև զհամբաւ հռչակեալ յերկինս յառաջ քան զմեկնիլ իւր անտի:

„ Գտանել զիմաստս 'ի միջակի անդ անմեղութեան կարի իմն դժուարին էր Միլտոնի, նմին իրի ուրեք ուրեք յառաջնութիւն բանից երևի 'ի բանաստեղծութեանս: Բանքն Ադամայ 'ի սակս երազոց ոչ թուին լինել նորաստեղծ մարդոյ . . . Զիմաստասիրական բանս՝ մանաւանդ զոչ հաւատս, լաւ ևս լինէր Միլտոնի թողուլ 'ի բաց: Հրեշտակն 'ի բաղդատութեան անդ բանս 'ի մէջ առնու զերկչոտութենէ եղջերուի, բայց ցայնժամ ոչ էր երկչոտ եղջերուն. և Ադամ ոչ կարէր խելամուտ լինել բաղդատութեանն:

„ Ցուց առնէ Դրիդէն, թէ Միլտոն երբեմն ցուցանէ զնուաստութիւն 'ի բարձրութեան անդ. և կամի ասել՝ թէ ամենայն մասունք բանաստեղծութեանս ոչ են միօրինակ: Սակայն յամենայն իրս մի մասն կարգեալ է 'ի պէտս այլոց: Պարտ է պալատան ունել զանցս, նոյնպէս և բանաստեղ-

ծութեան ։ Չէ արժան խնդրել միշտ զպայծառ փայլումն հանճարոյ, որպէս և ոչ միշտ զկայս արեգական 'ի միջօրէի անդ ։ Յերևելի գործս գտանի փոփոխութիւն իմն լուսանցոյց և գիմահար մասանց, որպէս և յաշխարհի փոխանակութիւն տունջեան և գիշերոյ ։ 'Ի շրջել անդ Միլտոնի 'ի հաստատութեան երկնից՝ արժան էր նմա իջանել ևս երբեմն յերկիր ։ Բայց ո՞ ոք 'ի քերթողաց անտի այնչափ 'ի բարձունս խոյացաւ, և կալաւ անդ ընդերկար զթռիչս իւր . . .

» Այսպիսի են երևելի թերութիւնքն սքանչելի բանաստեղծութեան Դրախտին կորուսելոյ . զորս եթէ ոք կամիցի 'ի կշիռ դնել ընդ գեղեցկութիւնս նորա, անդէն ցուցանէ զտխմարութիւն անձին . որ և 'ի սակս իւրումն անզգայութեան յաւէտ արժանի է ներողութեան քան կշտամբանաց ։

» Միակ պարծանք մտացն հանճարոյ է գիւտն ։ Միլտոնն ոչ է գտակ Դիւցազնական բանաստեղծութեան ։ Մեծի գովութեան են արժանի զօրութիւն և ընդարձակութիւն մտացն Հոմերոսի . որում պարտական են ամենայն ազինք 'ի սակս բանաստեղծականն արուեստի 'ի պատմութեան անդ, 'ի հիւսուածս առասպելաց, 'ի պէսպիսութեան անցից, 'ի միջադրութեան բանից, և 'ի համօրէն հնարագիտութիւնսն՝ որք կրթեն զամենեսին 'ի զարմանս, և յափշտակեն զմիտս ։ Սակայն յամենայն փոխառուաց նորա թերևս միայն Միլտոնն է սակաւուք նմին պարտական ։ Էր նա ինքնահանճար 'ի բնէ, և քաջավստահ ընդ բաւականութիւն անձինն . նմին իրի և չկամեցաւ ընդունել զօգնութիւն, կամ խափան լինել յայլոց . . . Զերևելի քերթուածս իւր աշխատասիրեաց նա 'ի ժամանակի անդ տառապանաց և կուրութեան իւրոյ, այլ 'ի մատչել նորա 'ի փորձ՝ դժուարութիւնքն բարձան 'ի միջոյ ։ Ծնեալ էր նա 'ի սակս դժուարընդել իրաց ։ Եւ բանաստեղծութիւն նորա յայն սակս միայն ոչ է գեր 'ի վերոյ քան զամենայն քերթուածս, զի ոչ գտաւ Միլտոնն առաջին բանաստեղծ « ։ Յայս վայր են բանք Ճօնսընի ։

# ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ՄԵՐ ՅԱՆԳԼԻԱ-
# ԿԱՆ ԲՆԱԳՐԷ

Ամենայն երեւելի ազինք Եւրոպիոյ 'ի սակս ճարտարութեան եւ վսեմութեան բանաստեղծութեանս յեղին զայն 'ի բարբառս իւրեանց յոտանաւոր եւ յարձակ բան, եւ այն բազում անգամ՝ առ 'ի կարող լինելոյ տիրապէս 'ի յայտ բերել զմիտս բնագրին։ Յայն սակս կամեցեալ եւ մեր հարազատ ընծայել ըստ կարի զհայկական Թարգմանութիւնն՝ ընտրեցաք զայն յայս առաջին նուագ յարձակ բան. զի բաց 'ի վսեմութենէ իմաստից բանաստեղծութեանս՝ եւ ոճ բանիցն Միլտոնի դժուարիմաց գտանի յանգղիական բարբառ։

Յայսմ աշխատասիրութեան՝ որ բազմաքիրտն եղեւ մեզ, ունէաք զառաջեաւ եւ զգաղղիական եւ զիտալական Թարգմանութիւնս նորին բանաստեղծութեան 'ի լուծումն հոմանուն իմաստից ինչ եւ տարակուսանաց. յորս առանձին իմն զհետ գնայաք 'ի զգուշալիան կամ 'ի սրբագրելիս անտեղիւր շաւղաց Յովհաննու Կունեոսի Իտալացի Թարգմանչի՝ տպագրելոյ 'ի Հռովմ յամին 1822.

Միլտոնն յօրինեաց զԴրախտ իւր կորուսեալ յանգղիական բարբառ յոտանաւոր տասնոտնեան անյանգ. զորոյ կամեցեալ տալ զճաշակ ինչ Հայկազանցս՝ ահա այս է սկզբնաւորութիւն նախերգանաց բանաստեղծութեանս՝ յանգղիական եւ 'ի հայկական բարբառ նովին չափմամբ։

Of Man's first disobedience, and the fruit
Of that forbidden tree, whose mortal taste
Brought death into the world, and all our woe,
With loss of Eden, till one greater Man
Restore us, and regain the blissful seat,
Sing, heav'nly Muse —

Երգեամ ըղձուած Մուսայդ երկնային
Նախկին յանցանաց նախատակած Մարդոյն,
Եւ պտղոյ ծառոյն արգելեալ նըմին.
Որոյ ընդ ճաշակ եմուտ մահ յաշխարհ,
Եւ աղէտք ցաւոց կորստեամբ Ադենայ.
Մինչ Աստուածորդին նորոգեաց ըզմեզ,
Եւ դարձոյց անդրէն յերջանիկ կայանն —

'Ի լուսաբանութիւն բանաստեղծութեանս 'ի տեղիս տեղիս՝ կարեւոր համարեցաք կարգել 'ի վախճանի զհամառօտ ծանօթութիւնս ։ Այլ եթէ 'ի նոսա, եւ եթէ յողջոյն ընթացս հարազատ թարգմանութեանս կալաք զոճ դիւրիմաց. զի անհնար էր մեզ պահել 'ի նմա զընտիր հայկաբանութիւն՝ 'ի սակս կարի խիթ տարբերութեան անգղիական բարբառոյ 'ի մերմէս ։ Եթէ թարգմանեալ էր մեր զայն յստակաւոր բան ըստ բնագրին, թերեւս առաւել քաղցրանայր բանաստեղծութիւնն Միլտոնի 'ի քիմս Հայկազանց. այլ թողաք զայն այլում ժամանակի, եւ այլոց ճարտարաց ։ Առ ժամս ակն ունիմք շատանալ նոցա իմաստիւքն եւեթ, եւ ընթեռնուլ զայն՝ ոչ միայն 'ի զբօսանս մտաց, այլեւ յարգասիս հոգւոյ ։ Ցոյր սակս եւ 'ի թարգմանութեան անգ. բանաստեղծութեանս թողաք 'ի բաց զհատուածս ինչ բանից՝ որք կամ արտաքոյ էին ողջամիտ վարդապետութեան, եւ կամ ոչ այնչափ 'ի դէպ մաքրասէր լսելեաց ։ Իսկ զայլ կեղծիս նորա դիւրաւ մարթ է ընծայել բանաստեղծական հոգւոյ ։ Եւ որպէս գեղեցիկս ասէ Հորատիոս (1) — 'ի բանաստեղծութեան անգ՝ որ լի է լուսափայլութեամբ, արժան է առ ոչինչ գրել զդուզնաքեայ բիծս — ։

Այսչափ ինչ 'ի յառաջաբանութիւն Դրախտին կորուսելոյ. զայլ կարեւոր գիտելիս գիցուք 'ի ծանօթութիւնսդ ։

(1) Horatius Լատին բանաստեղծ 'ի Գիրս Բանաստեղծական արուեստի ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ (1)

Առաջին գիրքն յանդիման առնէ նախ 'ի կարճոյ զնպատակն բանաստեղծութեանս, զՄարդոյն ասեմ պատուիրանազանցութիւն, և զկորուստ Դրախտին յայն սակս: Ապա անցանէ 'ի գլխաւոր պատճառն անկմանն Ադամայ, որ էր օձն, և յաւէտ Սատանայ 'ի նմա: Որոյ ապստամբեալ յԱստուծոյ, և ձգեալ զկնի իւր զբազմութիւն գնդից Հրեշտակաց՝ վտարեցաւ յերկնից յանդունդս ընդ խուժանին իւրոյ: Յառաջ ընթացեալ բանաստեղծութեանն՝ ցուցանէ զՍատանայ նորոգ անկեալ ընդ Հրեշտակացն 'ի դժոխս. զոր և նկարագրէ ոչ 'ի կենդրոնի երկրիս (զի համարի զայն տակաւին ոչ ստեղծեալ) այլ 'ի տեղւոջ ուրեք արտաքին խաւարի՝ իրաւամբք կոչեցեալ Անդունդք կամ Վիհ: Ուրանօր յորսայս անկեալ Սատանայի ընդ հրեշտակացն իւրոց 'ի վերայ կիզանողական լճին՝ շանթահարեալ և յաղթութիւն կրթեալ, զկնի սակաւուց դառնայ յուշ իւր ամօթալից: Ձայն տայ նմին՝ որ անկեալ կայր առընթեր, և էր երկրորդ նորա ըստ կարգի և ըստ պատուոյն: Բանս 'ի մէջ առնուն 'ի միասին յաղագս ողորմ կործանման իւրեանց: Զարթուցանէ ապա Սատանայ զամենայն զգունդս իւր՝ որք ցայնվայր տապաստ անկեալ կային նոյնօրինակ ամօթապարտ: Յառնեն նոքա. Թիւք, ճակատ մարտի, և անուանք երևելի զօրավարաց նոցա՝ ըստ անուանց Կռոցն յայտնելոց զկնի 'ի Քանան, և 'ի սահմանս նորա: Ուղղէ Սատանայ զբան իւր առ նոսա, և քաջալերէ 'ի յոյս վերստին դառնալոյ զերկինս: Իսկ ապա ծանուցանէ նոցա զհանդերձեալ արարչութիւն աշխարհի և նորոգ արարածոց՝ ըստ վաղնջուց մարգարէութեանն կամ համբաւոյ յերկինս (զի ըստ կարծեաց յոգունց 'ի նախնի Հարց՝ Հրեշտակք բազմօք յառաջագոյն ստեղծան քան զերևելի արարածս): Զստուգութիւն մարգարէութեանս, և զխորհուրդն 'ի նոյն սակս՝ ձգէ նա 'ի ժողով հասարակաց: Փոյթ պնդութեան միաբանելոցն ընդ նմա 'ի նոյն սակս: Կանգնի Պանդէմոն տաճար Սատանայի, յանկարծակի կառուցեալ յանդնդոց անտի: Բազմին անդ 'ի ժողով աւագանին դժոխոց:

(1) Նախադրութիւնք բանաստեղծութեանս են Անգղիացւոց:

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ.

## ԳԻՐՔ Ա։

Զմարդոյն զառաջին անհնազանդութիւն, և զպտուղ արգելեալ ծառոյն՝ որոյ մահաբեր ճաշակ եմոյծ յաշխարհ զմահ, և զհամօրէն աղէտս մեր կորստեամբ Եդենայ, մինչև ցնորոգել զմեզ Գերագունին [1], և վերստին ստանալ զվայրն երանաւէտ [2], նուագեա Մուսայդ [3] երկնային. որ 'ի գաղտնի գագաթան Քորեբայ կամ Սինայ [4] ազդեցեր հովուին [5], այնմ՝ որ ուսոյց զառաջինն ընտրեալ զաւակին [6], թէ զիարդ 'ի սկզբանէ երկինք և երկիր ելին յանդնդոց [7] 'ի վեր։ Կամ՝ եթէ լեառն Սիոնի [8] առաւել ըղձալի է քեզ, և գետն Սելովայ [9], որ հոսէր առընթեր պատգամացն Աստուծոյ՝ անդուստ կարդամ զօգնութիւն քո յանդուգն երգոյս, որ 'ի բարձրագոյն թռիչս ձգտի խոյանալ 'ի վեր քան զլեառն Աւոնեան [10], այն ինչ զհետ կրթի չև ևս փորձելոցն 'ի շարագիր կամ 'ի չափաբերեալ բանս։

Այլ դու յաւէտ սուրբ Հոգի՝ [11] որ առաւել քան զտաճարս ընտրես զսիրտ ուղիղ և մաքուր,

ուսո՛ ինձ, զի գիտակ ես ինքնին. դու 'ի սկզբանէ անդ էիր, և հզօր թևովք տարածմամբ աղաւնակերպ տածեցեր զանդունդս՝ ածեալ յարգաւաւորութիւն [12]: Որ ինչ միանգամ խաւարային է յիս, լուսաւորեա՛. և որ ինչ ստորին, ամբարձ 'ի վեր, և կալ. զի 'ի բարձրութեան անդ մեծի առաջարկութեանս կարող եղէց ճշգրտել զյաւիտենական նախախնամութիւնն, և արդարացուցանել մարդկան զճանապարհս Աստուծոյ [13]:

Ասա՛ նախ՝ զի երկինք չծածկեն ինչ յաչաց քոց, և ոչ սանդարամետք անդնդոց. ասա՛ նախ զպատճառն՝ որ 'ի վիճակի անդ անմեղութեան այնչափ խնամարկեալ յԱստուծոյ, գրգռեաց զՆախահարս մեր անկանել 'ի բաց յԱրարչէն իւրեանց. և ստունգանել կամաց նորա 'ի սակս միոյ և եթ պատուիրանին՝ թէպէտև կարգեալ էին իշխանք աշխարհի: Ո՞ զառաջինն ձգեաց զնոսա 'ի շամբուշդ վտարանջութիւն: Վիշապն անդնդային. որոյ խորամանկութիւն դրդեալ նախանձու և քէնախնդրութեամբ՝ պատրեաց զՄայրն մարդկան ազգի, յորժամ ամբարտաւանութիւն նորա ընկէց զնա յերկնից զօրօքն հանդերձ ըմբոստակացն ապստամբաց: Որոց օգնականութեամբ ցանկացեալ գերագոյն փառաց՝ եդ 'ի մտի գալ 'ի կշիռ ընդ Բարձրելոյն 'ի հակառակել նորա. և այնպէս փառասէր մտօք և ունայն ճգամբ յարոյց յերկինս զանօրէն մարտ և զյանդուգն պատերազմ ընդդէմ աթոռոյ և միահեծան տէրութեանն Աստուծոյ: Զնա Ամենակալն զօրութիւն ընկէց գահավէժ յեթերականն երկնից ահագին կործանմամբ և բոցակիզմամբ 'ի կորուստն անյատակ, կալ ան-

դանօր յադամանդեայ շղթայս և 'ի տանջողական հուր. փոխանակ զի իշխեաց գրգռել 'ի գէն զՄամենազօրն:

Ընդ իննեակ շրջան ժամանակի՝ որ չափէ մահկանացուացս զտիւ և զգիշեր [14], անկաւ նա ընդ սոսկալի խուժանի իւրում՝ յաղթահարեալ և ամօթալից, թաւալգլոր 'ի հրեղէն անդունդս, թէպէտև անմահ: Բայց դատակնիք նորա պահեաց զնա յառաւելագոյն կատաղութիւն. քանզի արդ տագնապեն զնա կրկնակի խորհուրդք երջանկութեանն կորուսելոյ, և մշտատև տանջանաց: Յածեցուցանէ շուրջանակի զտխրագին աչս իւր՝ որք ցուցանեն զանհնարին ցաւս և զզարհուրանս խառն ընդ կամակոր ամբարտաւանութեան և ոխերիմ ատելութեան: Նա ըստ բացահայեաց տեսութեան Հրեշտակաց անդէն նշմարէ զսոսկալի վայրն ամայի՝ բանտ ինչ ահագին և բոլորաձև իբրև զհնոց բորբոքեալ: Բայց 'ի բոցոյ անտի ոչ լոյս, այլ խաւար տեսանելի ձեռնտու լինի նմա 'ի նշմարել զտեսիլս աղետից, զսահմանս վշտաց և զստուերս ցաւոց: Չիք անդանօր տեղի խաղաղութեան և հանգստեան, և ոչ մուտք յուսոյ՝ որ ամենայն ուրեք ունի զտեղի, այլ տանջանք անվախճանս, և հեղեղ անծախական հրոյ պարարեալ մշտավառ ծծմբով տագնապեն զնա հանապազ: Զայսօրինակ պատրաստեալ էր տեղի արդարութիւնն յաւիտենական ապստամբացս այսոցիկ: Աստանօր կարգեալ զբանտ նոցա 'ի խաւարին արտաքին. և զբաժին նոցա եդեալ էր այնչափ հեռի յԱստուծոյ և 'ի լուսոյ երկնից, որչափ երիցս 'ի բացեայ է կենդրոն երկրիս 'ի վերջին բևեռէ անտի: Ո՛վ

քանզի տարօրինակ էր տեղին՝ յորմէ անկանին։ Ընդ դէմ և անդ տեսանէ նա զընկերս իւր կործանեալ և ընկղմեալ 'ի մրրկալից հեղեղ ալէտանջ հրոյն, և զոմն առընթեր իւր թաւալական՝ որ էր երկրորդ նորա 'ի զօրութեան և 'ի յանցանս, զկնի ժամանակաց յայտնեալ 'ի Պաղեստին, և կարդացեալ Բէեղզեբուղ [15]։ Ընդ որ սկզբնաչար թշնամին՝ յախմհեալ անուանեալ Սատանայ [16], լուծեալ զահագին լռութիւնն՝ սկսաւ ասել խրոխտ բանիւք օրինակ զայս։

Ո՜րդարև նոյն ինքն իցես դու. այլ աւա՜ղ՝ զի՜որդ կործանեալ, և զիա՜րդ այլափոխեալ յայնմանէ՝ որ յերջանիկ թագաւորութեան անդ լուսոյ շքեղազարդեալ գերապանծ փառօք՝ առաւել քան զբիւրաւորս 'ի լուսազգեստից արտափայլէիր։ Կամ նա ինքն իցես՝ զոր դաշնակցութիւնն ընդ միմեանս, միաբանութիւն խորհրդոց և մտաց, հաւասարութիւն յուսոյ, և դիմագրաւ շահատակութիւնն կապեցին երբեմն ընդ իս, և այժմ կապեաց թշուառութիւնն 'ի նոյնօրինակ կործանման։ Յո՞ր խորխորատ գտանիս, և յորմէ՞ բարձրութենէ անկեալ։ Մի՞թէ այսչափ հզօ՞ր ցուցանա 'ի շանթս իւր։ Եւ ցայնժամ ո՞ գիտաց զզօրութիւն ահագին զինուց նորա։ Սակայն ո՛չ վասն սոցին, և ոչ վասն այլոցն՝ զորս միանգամ մարթ է հզօր յաղթականին թափել յիմ վերայ 'ի սրտմտութեան անդ իւրում, ապաշաւեմ ես, կամ փոխեմ (թէպէտև փոփոխեալ ըստ արտաքին լուսափայլութեանս) զհաստատուն միտս իմ, և զանհնարին վրէժխնդրութիւնն՝ զոր յանձին կրեմ 'ի սակս զրկանաց իմոցս արժանեաց. որ և ետ ինձ

'ի վէգ գալ ընդ Մեմնադորին, և ձգեաց ընդ իւ 'ի գոռ պատերազմ զանթիւ բազմութիւն զօրաց սպառազինեացն Հոգւոց ։ Որք իշխեցին անգոսնել զԹագաւորութիւն նորա . և զիս նախամեծար ընտրեալ՝ 'ի դիմի հարան հակառակ զօրութեանց վերջին զօրութեան նորա 'ի կեղակարծ մարտի անդ ընդ դաշտավայրս երկնից, և սասանեցուցին զաթոռ նորա [17] ։ Եւ զի՞նչ, եթէ կորուսաք զճա-կատամարտն . ոչ կորեաւ ամենայն ինչ ընդ նմա ։ Տակաւին կան մեզ աննուաճելի կամք, փոյթ վրէժխնդրութեան, անմահ ատելութիւն, և քա-ջութիւն սրտի անընկճելի ։ Եւ զի՞նչ այլ իցէ ան-պարտութիւնն ։ Զայդասիկ պարծանս իմում ան-ձին՝ սրտմտութիւն նորա կամ զօրութիւն երբէք ոչ հանցէ յինէն ։ Իջանել 'ի ծունկս աղաչաւորս 'ի խնդիր թողութեան, և աստուածացուցանել զզօրութիւն նորա՝ որ սակաւիկ մի յառաջ խի-թաց ընդ ինքնակալութիւն իւր յերկեաց այսր բազկի, ապաքէն լինէր մեզ նուաստութիւն, նա-խատինք և ամօթ խոնարհագոյն քան զանկումնս ։ Այլ քանզի ըստ ճակատագրին [18] չէ՛ հնար կորն-չել զօրութեան Աստուածոց [19], և հրեղէն գոյա-ցութեանս . և զի 'ի փորձոյ անտի ահագին ելիցն չեմք ինչ 'ի զէնս վատթարագոյն, և առաւել քաջակիրթ եմք 'ի նախահայեաց զգուշութեան, մարթ է մեզ ապա բարեբաստիկ ևս յուսով հա-տատել զմիտս առ 'ի տալ քաջութեամբ կամ խո-րամանկութեամբ զմարտ պատերազմի անհաշտե-լի և յաւիտենական ընդ քաջազօր թշնամւոյ մե-րում՝ որ այժմս յաղթանակէ . և յառաւելու-թեան անդ իւրում խնդութեան թագաւորեալ

առանձինն՝ զլրաւեալ ունի զառնակալութիւնն երկնից [20]։

Այսօրինակ խօսեցաւ հրեշտակն ապստամբ, մեծամեծս պանծացեալ՝ թէպէտև 'ի տանջանս, և կարի իմն տագնապեալ յերեսաց անյուսութեան։ Եւ ընկեր նորա խրոխտապանծ՝ անդէն արար նմա զայս պատասխանի։

Ո՜վ իշխան և պետ բազմաց գահակալ զօրութեանց. որ առաջնորդեցեր Ճակատամարտ Սրովբէից ընդ քոյով ձեռամբ. և անվեհեր յահագին հանդիսի՝ արկեր 'ի վտանգ զմշտնջենաւոր արքայն երկնից, մատուցեալ 'ի փորձ գերագոյն գահակալութեան նորա, թէ արդեօք զօրութեամբ իցէ հաստատեալ, եթէ դիպուածով կամ Ճակատագրով։ Քա՛ջ տեսանեմ ես, և ցաւ է ինձ ընդանցս աղխտիցդ՝ որք եհուն մեզ ահագին կործանմամբ և սաստիկ հարուածովք կորուսանել զերկինս. և զհզօր զինուորութիւնս արկին յապականութիւն այնչափ ստորին՝ որչափ մարթ էր կորնչել Աստուածոց և երկնային գոյացութեանց։ Քանզի միտք և կամք մնան անպարտելի, և զօրութիւնն տկարացեալ անդրէն դառնայ փութանակի. թէպէտև ամենայն փառք մեր շիջեալ կան աստանօր, և վիճակն երանութեան ընկղմեալ յանեզրական աղէտս։ Բայց զի՞նչ, եթէ յաղթականն մեր՝ զոր արդ յակամայս խոստովանիմ լինել ամենազօր (զի ոչ նուազագոյն ոք կարող էր յաղթել այսպիսումն զօրութեան՝ որպիսի է մերս) եթող մեզ անթերի զհոգիս և զզօրութիւն՝ առ սաստկագոյնս կրելոյ զցաւս. զի սովին օրինակաւ յագուրդ ընծայեսցուք վրէժխնդիր բարկու-

թեան նորա . և կամ ուժգնակի արկցուք նմա զսպաս ծառայութեան իբրև զգերիս նորա կալեալ 'ի մարտի . և զամենայն հրամանս նորա կատարեսցուք աստանօր 'ի հուր 'ի սիրտ դժոխոցս . և լիցուք պատգամաբեր նմին 'ի խաւարազգած անդունդս : Արդ՝ զի՞նչ օգուտ է մեզ ունել տակաւին զաննուազ զօրութիւն, և զմշտատև գոյութիւն, եթէ անկեալ կամք ընդ յաւիտենական պատժովք :

Որում նախկին թշնամին ետ փութանակի զայս պատասխանի : Անկեալ Քրովբէ՝ տկարութիւն է թշուառութիւն յառնել անդ կամ 'ի կրել : Բայց լե՛ր հաւաստի, զի առնել զբարին չանի երբեք քաղցրանալ 'ի քիմս մեր, այլ միայն հաճութիւն մեր հանապազ հանդերձեալ է լինել գործել զչարիս, իբրև հակառակ ինչ կամաց նորա՝ որում հարկանիմք 'ի դիմի : Արդ՝ եթէ նախախնամ տեսչութիւն նորա խնդրէ յառաջ ածել 'ի չարեաց անտի մերոց զբարիս, վաստակոց պէտք են մեզ առ 'ի թիւրել զնպատակ կամաց նորա . և 'ի նոցունց իսկ 'ի բարեաց գտանել զեղանակս չարեաց : Որում մարթ է պատահել բազում անգամ . մինչև՝ եթէ ոչ վրիպիմ, երգիծուցանել զնա, և զգաղտնի միտս նորա խոտորեցուցանել 'ի նպատակէ իւրեանց : Բայց աղէ հայեաց, զի յաղթականն սրտմտեալ կոչեաց անդրէն 'ի դրունս դժոխոց զհետամուտ պաշտօնեայս իւրում վրէժխնդրութեան . կարկուտն ծծմբալից՝ հոսեալ մրրկախառն զկնի մեր, տեղի տուեալ՝ հանդարտեցոյց զհրեղէն կոհակսն, որք 'ի վիհից անտի երկնից ընկալան զմեզ զանկեալսս, և որոտումն՝

թեւազգեցին բոցակարմիր փայլատակմամբ և ան-
հնարին սրտմտութեամբ՝ գոգցես սպառեաց ըզ-
նետս իւր , և կայ աւաղին զաղարեալ 'ի մռնչե-
լոյ ընդ լայնածաւալ և ընդ անեզրական անդուն-
դըս : Արդ մի՛ թողցուք 'ի ձեռանէ զքաջադէպ
պատեհութիւնն, եթէ անհոգութիւն թշնամւոյս,
և եթէ յագուրդ սրտմտութեան նորա ընծայէ
մեզ զայն : Տեսանես յայն կողմն զսոսկալի վայրդ
ամայի և խոպանացեալ՝ զդաշտդ տապականու-
թեան , անմասն 'ի լուսոյ , 'ի վերայ տխուր և
ահարկու փայլմանն՝ զոր աղօտագին նշոյլ նսե-
մագգած բոցոյս արկանէ 'ի նա [21] : Անդր դիմես-
ցուք հեռագոյնս 'ի բաղխմանէ աստի հրեղէն ալ-
եացս . և հանգիցուք անդանօր , եթէ գտցի անդ
տեղի հանգստեան : Եւ վերստին ժողովեալ զվըշ-
տատես զօրութիւնս մեր՝ խորհուրդ կալցուք 'ի
միասին, թէ իւ մարթասցուք յայսմհետէ տառա-
պել եւս ստնանել մերում թշնամւոյ . զիա՞րդ գըտ-
ցուք զկորուստ անձանց . զի՞նչ հնարս հայթայ-
թեսցուք ահագին աղետիցս , և զո՞ր թիկունս օգ-
նականութեան յանձինս ձգեսցուք 'ի յուսոյ ան-
տի : Ապա թէ ոչ՝ զո՞ր ճանապարհ կալցուք յերե-
սաց անյուսութեան :

Մինչդեռ զայսօրինակ խօսէր Սատանայ ընդ
մերձակայ ընկերի իւրում՝ ունելով զգլուխն 'ի
վերոյ քան զալիսն, և զաչսն փայլակնացայտ, մնա-
ցեալ մասունք մարմնոյ նորա սփռեալ երկայնա-
ձիգ և լայնատարած ընդ բազում ասպարէզս 'ի
վերայ հեղեղին՝ կային 'ի տատանման : Ի վիթ-
խարութեան անդ ոչինչ ընդհատ էր նա 'ի նոցա-
նէ՝ զորս առ անհեթեթ մեծութեան հսկայիցն

առասպելքն կոչեն Տիտանեանս [22] կամ Երկրա-
ծինս [23], որք 'ի մարտ կռուեցան ընդ Արամազ-
դայ [24]. Բրիարիոս [25] կամ Տիւփոն' [26] զոր քարան-
ձաւն առերի նախնոյն Տարսոնի [27] ժողովեաց առ-
ինքն ։ Եւ կամ վիշապն ծովու Լեւիաթան [28], զոր
ստեղծ Աստուած մեծամարմին քան զամենայն
կէտս' որք լողան 'ի հոսանս Ովկիանու [29] ։ Զնա'
մինչդեռ ըստ դիպաց ննջեալ կայ 'ի վերայ Նոր-
վեգեան [30] Փրփրոյ [31], ղեկավարն գիշերատանջ
նաւակի համարեալ կղզի, բազում անգամ' որ-
պէս նաւաստիքն քարոզեն, խարիսխ արկեալ ընդ-
թեփալից պատեանիւքն' հանգչի առ կողիւք նորա,
պատսպարեալ յերեսաց հողմոյն' այն ինչ գիշերն
պատեալ ունի զծով, և առաւօտն ցանկալի անսա-
ղանէ ։ Զայսօրինակ տարածեալ կայր նախկին
թշնամին' պնդեալ շղթայակապ 'ի վերայ կիզանո-
ղական լճին ։ Եւ չէր երբէք կանգնեալ անտի,
կամ զգլուխ իւր ամբարձեալ, եթէ կամքն և վե-
րին հրամանն Ամենակալին չէր թողեալ զնա յա-
զատութիւն խաւարային խորհրդոց նորա. զի կրկ-
նապատկեալ զյանցանս' բարդեսցէ յիւր վերայ
զկնիքն դատապարտութեան, 'ի խնդրել անդ-
զչարիս այլոց ։ Եւ 'ի զայրոյթ սրտի իւրոյ գի-
տասցէ, թէ զխարդ չարութիւնք նորա ոչ յայլ
ինչ պէտս եղեն ձեռնտու, բայց յառաջ ածել
զամբաւ բարիս, զշնորհս և զողորմութիւն ցու-
ցեալ 'ի վերայ Մարդոյն' զոր պատրեաց. և յիւր
վերայ հեղան երրակի ամօթ, սրտմտութիւն և
քէն վրիժուց [32] ։

Կանգնէ փութանակի 'ի լճէ անտի զսոսկալի
հասակ իւր ։ Ընդ երկոքումբք ձեռօքն բոցքն ձըն-

շեալ՝ խոնարհեցուցանէն զչեշտակի բրգունս իւրեանց. և ոլորտացեալ 'ի կոհակս՝ Թողուն 'ի միջի զհովիտ ահագին։ Ուղղեալ ասլա Թևատարած զԹռիչս իւր 'ի վեր՝ բազմի 'ի վերայ խաւարամած օդոյն, որ յանձին զգայ զծանրուԹիւնն տարօրինակ. մինչև էջ նա 'ի վերայ ցամաքի՝ եԹէ արդարև էր նա երկիր ցամաք, զոլով մշտավառ անլուծական հրով՝ որպէս լիճն լուծականաւն։ Որ և ըստ գունոյն այնպէս իմն երևէր, որպէս լեառնն՝ զոր բռնուԹիւնն ստորերկրեայ հողմոյ առեալ տանի խլեալ 'ի Պեղորայ[33]. և կամ պատառեալ կողմն որոտընդոստն Էտնայ[34], որոյ կիզանուտ և ջերատած ընդերք ընկալեալ անդուստ զհուր, և ամբարձեալ 'ի վեր հանքային ուժգնուԹեամբ՝ ձեռնտու լինին հողմոց. և Թողուն զյատակն խանձողեալ՝ մածեալ համբոյն 'ի հոտ զարշուԹեան և 'ի ծուխ։ Զայսօրինակ գտին զտեղի ակաստանի զարշապարքն ոտից չուառականին։ Զկնի նորա չոգաւ ընկեր նորա երկրորդ. երկոքին ևս սպանծացեալ ընդ փախուստ իւրեանց 'ի Ստիւգեան[35] հեղեղէ՝ դոգցես աստուածանման և վերանորոգ զօրուԹեամբ իւրեանց, այլ ոչ ԹոյլտուուԹեամբ վերին զօրուԹեան։

ՄիԹէ այս իցէ գաւառն՝ ասաց յայնժամ Հրեշտակապետն կորուսեալ. միԹէ այս իցէ նահանգն և երկիրն, և այս տեղին՝ զոր պարտ է մեզ փոխանակել ընդ երկնից. և զայս տխրագին աղջամուղջ ընդ երկնայինն լուսոյ։ Այլ չէ ինչ. զի որ այժմդ իշխէ, կարող է հրամանս տալ ըստ հաճոյս կամաց իւրոց։ Սակայն որչափ հեռագոյն զտանի որք 'ի նմանէ, լաւ ևս վիճակի է հասեալ. զոր

բանն կացոյց հաւատար, և քաջութիւնն գերագոյն հանդիսացոյց քան զընկերս իւր [36]: Մնասջիք արդ խաղաղութեամբ դաշտավայրք երանութեան, ուրանօր բնակէ խնդութիւն անծերանալի: Ողջոյն արհաւրացդ, ողջոյն սանդարամետական աշխարհիդ. և դու անգնդայինդ դժոխք ընկալ ըզքոյդ նորամուտ ժառանգ՝ որ բարձեալ բերէ յանձին զմիտս անդրդուելի յերեսաց տեղւոյ կամ ժամանակի: Միտքն է իւր ինքեան տեղի. և յինքեան կարող է յեղափոխել զերկինս 'ի դժոխս, և զդժոխս յերկինս: Զի՞ փոյթ է ինձ վասն տեղւոյ, եթէ ես տակաւին նոյն եմ: Եւ զի՞նչ լինելոց էի յերկինս: Ամենայն ինչ. բայց խոնարհ քան զնա՝ զոր որոտումն իւր կարգեաց գերագոյն քան զիս: Գոնէ աստանօր լինիցիմք ազատ: Ամենակալն ոչ շինեաց զայս տեղի 'ի նպատակ իւրումն նախանձու: Ոչ մերժեսցէ նա զմեզ աստի: Աստանօր մարթ է մեզ թագաւորել աներկեւան: Եւ ըստ իմումս ընտրութեան՝ թագաւորութիւնն է պատուասիրութիւն իմն գովելի, թէպէտև 'ի դըժոխս: Լաւ է թագաւորել 'ի դժոխս, քան ծառայել յերկինս [37]: Բայց արդ ընդէ՞ր է մեզ թողուլ զհաւատարիմ բարեկամս մեր, զընկերս և զբաժանորդս մերումս կորստեան՝ կալ այնպէս յապշութեան 'ի վերայ անյուշ լճին [33]: Ընդէ՞ր ոչ կոչեմք զնոսա 'ի հաղորդութիւն ընդ մեզ թըշուառ բնակութեանս. և ընդէ՞ր ոչ մատչիմք միւս անգամ 'ի փորձ՝ ժողովեալ զզօրութիւնս, թէ զի՞նչ մարթ է մեզ տակաւին ստանալ յերկինս, և կամ զի՞նչ այլևս կորուսանել 'ի դժոխս:

Զայսօրինակ խօսեցաւ Սատանայ: Եւ Բէեղ-

զերթուղ ետ նմա զայս պատասխանի ։ Ուղաջնորդդ լուսապայծառ զօրաց՝ որոց չէր հնար ումեք յաղթել՝ բաց յԱմենակալէն ․ եթէ լսէին նորա առանգամ մի զայդ ձայն քո՝ զկենսատու գրաւական յուսոյ իւրեանց յերկիւղի անդ և 'ի վտանգի, զլուեալն 'ի քէն բազում անգամ 'ի վերջին աղէտս վատթարութեան, և 'ի կեղակարծ վիճակի անդ սաստկութեան մարտի յերկրին՝ զհաւատոյ նշանակ յամենայն յարձակմունս իւրեանց, ապաքէն անդէն վաղվաղակի զգենուին զնորոգ քաջալերութիւն, և զօրանային յանձինս իւրեանց․ թէպէտ և արդ անկեալ կան կորագլուխ յերեսս հրեղէն լճիդ, որպէս և մեք սակաւ մի յառաջ յապուշ և 'ի հիացումն կրթեալ ։ Եւ չէին ինչ զարմանք, զի անկան յայնպիսի ահագին բարձրութենէ ։

Մինչդեռ էր նորա դադարեցուցեալ զբանն իւր, և ահա սկզբնաչար թշնամին յառաջ խաղայր յափն կոյս լճին ։ Զծանրակշիռ վահան իւր եթերաշէն, ստուարամարմին, լայնալիճ և բոլորշի՝ արկ զթիկամբքն ։ Ընդարձակատարր շրջապատ նորա կախեալ կայր զուսոյն իբրև զլուսին, զորոյ զսկաւառակ զննէ ընդ ապակի տեսողական՝ [39] Տուսկեանն արուեստագէտ [40] ընդ երեկս 'ի գագաթանց անտի Փեսողայ [41], կամ 'ի Վաղդարնոյն՝ [42] առ 'ի գտանել 'ի բծակիր գնտի նորա զնորոգ երկիրս, զգետս և զլերինս [43] ։ Զնիզակ իւր՝ առ որով բարձրաբերձ սարոյն հատեալ 'ի Նորվեգեան լերինս առ 'ի պէտս կայմի ծովակալ նաւու, [44] էր դուզնաքեայ եւեթ գաւազան, առեալ 'ի ձեռին ընթանայր՝ առ 'ի հաստատել նուա

ղտաժանաքայլ գնացս իւր 'ի վերայ կիզանողա-
կան կաւոյն ։ Բայց գնացք նորա ոչ էին նման ըն-
թացից որ 'ի վերայ կապուտակին երկնից ։ Այն
զի և այրեցած կլիմայն հրակամար 'ի վերուստ՝
ահագին տագնապեցուցանէր զնա ։ Սակայն և
այնպէս ժուժկալեաց, մինչև եկն եհաս յեզր բո-
ցավառ ծովակին. և ձայն ետ հրեշտակատիպ զըն-
դիցն՝ որք թմբրեալ անկեալ կային խիտառխիտ
իբրև զտերևս աշնայնոյ սփռեալ 'ի վերայ վտա-
կացն 'ի Բաղոմբրոսա[45], ուրանօր Էտրուրեան[46]
հովանիք կամարացեալ՝ ձողաբարձ զարդարեն ։
Եւ կամ իբրև զկնիւն հոսեալ զերեսօք Ջուրց 'ի
տանջել անդ սպառազինին Հայկայ[47] սաստկա-
շունչ հողմով զեզերս Կարմիր ծովուն[48], որոյ ալիք
տապալեցին զԲուսիրիս[49], և զՄեմփեան[50] հե-
ծելազօրս նորա, այն ինչ նենգաժէտ ատելու-
թեամբ պնդեցաւ զհետ զպանդխտացն Գեսե-
մայ[51]. որք յանքոյթ ծովեզերէն տեսին զդիա-
կունս նոցա ծփեալ ընդ ալիս, և զանիւս կառաց
նոցա խորտակեալ[52] ։ Զայսօրինակ խտածաւալ,
վայրավատին և կորստական անկեալ կային նոքա
'ի վերայ ալեացն, ըմբռնեալ 'ի հիացումն ընդ
ահագին յեղափոխութիւն իւրեանց ։ Կարդաց
նա բարձրաբարբառ, մինչև համօրէն սանդարա-
մետք հնչեցին ։ Իշխանք, Պետք, Զօրու-
թիւնք, և Ծաղիկք երկնից. որ ձեր էր երբեմն,
և արդ կորուսիք ։ Միթէ հնար իցէ այսպիսումն
թմբրութեան կալեալ ունել զյաւերժական հա-
գիս ։ Միթէ զկնի ճգանց մարտի զայս տեղի ըն-
տրեցիք 'ի հանգիստ վաստակոց ձերումդ քաջու-
թեան, առ 'ի զքնով անկանիլ աստանօր իբրև 'ի

հովիտս երկնից ։ Այլ միթէ երդուարո՞ւք յայս վիճակ անարգութեան երկիրպագանել յաղթականին՝ որ այժմ տեսանէ զՔերովբէսդ և զՍերովբէս ընդ հեղեղ թաւալեալ, ցիրևցան զինուք և նշանօքն իւրեանց. մինչև անդէն և անդ 'ի միտ առեալ երագընթաց հետամտաց նորա 'ի դրանց անտի երկնից զքաջադէպ պատեհութիւնն՝ իջանել 'ի վայր առ 'ի կոխան առնել զնեղեալս, և կամ շղթայաշար կայծակամբք հարստել ընդ յատակն անդնդոցս ։ Արդ՝ զարթի՛ք կանգնեցարո՛ւք, կամ կացէք միշտ կործանեալ ։

Լուան նոքա զձայն նորա, և լի ամօթով կանգնեցան 'ի վերայ թևոց իւրեանց. որպէս յորժամ զիշերապահքն 'ի քուն մտեալ, 'ի հասանել 'ի վերայ ոստիկանացն՝ յառնեն խուճապաւ չև ևս քաջ քաջ սթափեալ ։ Զի անհնար էր նոցա չառնուլ 'ի միտ զվիճակն թշուառութեան՝ յորում կային, և չզգալ յանձինս զանհնարին աղէտս վշտաց ։ Սակայն և այնպէս անհամար բազմութեամբ լուան փութանակի ահագին ձայնի զօրագլխի իւրեանց ։ Որպէս յորժամ հզօր գաւազանն որդւոյն Ամրամայ [53] 'ի չարաշուք աւուրն Եգիպտական շողացուցեալ զափամբ գետոյն՝ կոչեաց 'ի վեր զթանձրամած ամպն մարախոյ ընդ հողմն արևելից. որ եկաց 'ի վերայ թագաւորութեան ամբարշտին Փարաւոնի, և նսեմացոյց զամենայն երկիրն Նեղոսի [54] ։ Զայսօրինակ անթիւ բազմութիւն հրեշտակացն չարաց ցուցաւ անշարժ կախեալ թևատարած ընդ խորանաւ դժոխոց 'ի մէջ վերին, ներքին և շրջապատ հրոյն. մինչև իբրև զնշան շողացեալ վերամբարձ նիզակի

իշխանապետոյն իւրեանց՝ առ՚ի ուղղել զընթացս նոցա, իջին կշռակի ՚ի վերայ ծծմբոյն հաստատունոյ. և լցին զդաշտավայրն ողջոյն, այնչափ յոգնաթիւ բազմութեամբ՝ զորոյ զնմանն ոչ թափեաց երբեք բազմամարդն Հիւսիս ՚ի սառուցեալ երկկամանց իւրոց [55] յանցանել անդ ընդ Հռենոս [56] և ընդ Դանայիս [57], այն ինչ խուժադուժ որդիք նորա ուղխօրէն խաղացին ՚ի Հարաւ, և սփռեցան ընդ Գիբրալտար [58] յերեսս Լիբիական աւազոյ [59]։

Ընդէն վաղվաղակի յիւրաքանչիւր գնդից և ՚ի դասուց պետք և զօրավարք փութացան անդր՝ ուր զտեղի էառ գերագոյն հրամանատար նոցա։ Կերպարանք և պատկերք աստուածանմանք գեր ՚ի վերոյ մարդկայնոյս։ Իշխանք վեհափառք, և դահակալ զօրութիւնք երբեմն յերկինս. թէպէտ և այժմ անուանք նոցա չգտանին ՚ի յիշատակարանս երկնից, զի եղծեալ ջնջեցան ՚ի դպրութենէ կենաց ՚ի սակս ապստամբութեան իւրեանց։ Այլ չէր իսկ նոցա ստացեալ զնորոգ անուանս ՚ի մէջ որդւոցն Եւայի, եթէ վտարանդի շրջեալ ընդ երկիր թոյլտուութեամբ վերին տեսչութեան առ՚ի փորձ մարդոյն՝ [60] չէին ապականեալ մատեօք և պատիր խաբէութեամբ զբազումս ՚ի մարդկանէ, թողուլ զԱստուած զարարիչ իւրեանց, և փոխանակել բազում անգամ զանեբեւոյթ փառս նորա ընդ պատկերի անասնոյ պաճուճազարդ կրօնիւք, և երկրպագանել դիւաց իբրև Աստուծոյ։ Զի յայնժամ եկին նոքա ՚ի ծանօթութիւն մարդկան ընդ այլևայլ անուամբք բազմադիմի Դրօշելոց ընդ հեթանոսական աշխարհն [61]։

Արդ՝ ասա՛ ո՞վ Մուսա [62] զանուանս նոցա ծանուցեալ յայնժամ։ Ո՞յք զառաջինն, և ո՞յք զկնի զարթեան 'ի քնոյ անտի 'ի վերայ հրեղէն մահճաց. և 'ի ձայն կոչման մեծի զօրավարին իւրև երկրորդք նորա ըստ արժանեաց եկին անդր՝ ուր դադարեաց նա յանբերրի ծովեզերին, մինչդեռ տակաւին խառնիճաղանջն կայր 'ի բացեայ։

Առաջինքն էին նոքա՝ որք 'ի խորոց անտի դժոխոց յածեալ 'ի խնդիր որսոյ ընդ երկիր, զկնի ժամանակաց իշխեցին կանգնել զծանակութիւն իւրեանց առընթեր տանն Աստուծոյ, և զսեղանս իւրեանց առ երի սեղանոյ նորա. Դիք վերառեալք 'ի պաշտօն յազգաց անտի շուրջանակի. և ժպրհեցին զդէմ ունել Եհովայ [63], որ որոտայն 'ի Սիոնէ՝ բազմեալ յաթոռ Քերովբէից [64]։ Տինս բազում անգամ կարգեցին 'ի սրբութեան անդ նորա զգզրոցս իւրեանց զգարշելիս. և նզովելովքն իւրեանց պղծեցին զսուրբ պաշտամունս նորա և զտօնս, և խաւարաւ իւրեանց յանդգնեցան աղօտացուցանել զլոյս նորա։

Նախկինն Մողոք [65] զարշատեսիլ արքայ՝ շաղախեալ արեամբ մարդանուէր զոհից, և արտասուօք ծնողաց նոցա. թէպէտև 'ի բարձրագոչ ձայնէ թմբկի և տաւղի ոչ լինէր լսելի աղաղակ մանկանցն՝ որք ընդ հուր անցանէին առ ժանտատեսիլ կուռսդ։ Առին զնա 'ի պաշտօն Ամմոնացիք 'ի Ռաբբա [66], և 'ի ջրարբի դաշտավայրս նորա. յԱրգոբ, և 'ի Բասան մինչև 'ի վտակն վերջնոյն Առնոնայ։ Սակայն ոչ շատացեալ նորա սահմանօքն՝ ձգեաց պատրանօք զիմաստնագոյն սիրտ Սողոմոնի 'ի շինութիւն տաճարի իւրոյ 'ի

ւերին անդ նախատանաց դէմ յանդիմանն տաճա-րին Աստուծոյ ։ Այս արար իւր անտառ 'ի զուարճալի հովտին Հիննոմայ՝ Տոփփէտ յայնմհետէ և սեաւ Գեհեան կարդացեալ 'ի տիպ դժոխոց [67] ։

Երկրորդն Ռամով՝ արհաւիրք զարշութեան որդւոցն Մովաբայ․ յԱրոյերայ ցՆեբոն, և ցա-նապատն հարաւաձիգն Աբարիմայ․ 'ի Հեսեբոն, և 'ի Հորոնայիմ 'ի Թագաւորութեան անդ Սե-հոնի՝ յայնկոյս ծաղկաւէտ հովտի որթազուարճն Սիբմայ [68] ․ և յԵղիալէ մինչև ցծովակն Ասփաղ-տեան [69] ։ Պէովր միւս ես անուն նորա, 'ի հրա-պուրել անդ զԻսրայէլ 'ի Սիտտիմ՝ այն ինչ խա-ղայր 'ի Նեղոսէ [70], ընծայել նմա զպաշտօնն պղ-ծութեան՝ զոր ողորմ տուժեաց [71] ։ Այլ նա ձգեաց անդուստ զպանդարապետական պաշտամունս իւր և 'ի բլուրն գայթակղութեան 'ի ձեռն անտառի մարդախոշոշն Մողոքայ, և քինախնդիր անառա-կութեան․ մինչև բարեպաշտն Յովսիա վտարեաց զնոսա 'ի դժոխս [72] ։

Ընդ սոսա եկին՝ որք 'ի սահմանակալ հոսանաց անտի Նախնոյն Եփրատայ մինչև ցվտակն որ բա-ժանէ զԵգիպտոս յերկրէն Ասորւոց, ընկալան առհասարակ զանուանս Բահաղիմայցն արուաց, և Աստարովթացն իգաց [73] ։ Զի մարթ է հոգւոց զգենուլ ըստ հաճոյս զանցնիւր և զերկոսին սեռս միանգամայն ։ Ահա այսչափ նուրբ է և պարզ՝ գոյ-ացութիւն նոցա անխառն ։ Ո՛չ յօդակապ կամ պնդեալ անդամօք, և ոչ 'ի տկար զօրութիւն ոս-կերացն հաստատեալ՝ իբրև զթանձրադանդաղ մարմին․ այլ յիւրաքանչիւր ձև անգայտ կամ խիտ, պայծառ կամ մթին՝ կարող են նոքա կա-

տարել զօդեղէն կամս իւրեանց, և յանձին բերել զգործս սիրոյ կամ ատելութեան [74]: 'Ի սակս սոցա զաւակն Իսրայէլի եթող բազում անգամ զկենդանի զօրութիւնն երկնից [75], և անտես արար զպաշտօնութեամբ սրբոյ սեղանոյ նորա՝ յերկիր խոնարհեալ անարգաբար առաջի աստուածոցն անբանից: Նմին իրի և գլուխ նորա կորացեալ 'ի պատերազմի՝ տուգեցաւ ընդ երկիր առաջի գեղարդեան թշնամեացն նուաստից: Խմբակից էր ընդ սոսա Աստորէթ՝ զոր Փիւնիկեցիք կոչեցին Աստարտ, Տիկին երկնից աճեցուն եղջերօք: Որոյ լուսափայլ պատկերի 'ի լուսնի անդ մատուցին Սիդոնեան կուսանք 'ի գիշերի զուխտս և զերգս իւրեանց: 'Ի Սիոնի ևս ոչ գտաւ նա անբաժին յերգոց, ուրանօր եկաց տաճար նորա 'ի լերին յանցանաց շինեալ յիգասէր արքայէն. որոյ սիրտ՝ թէպէտև լայնածաւալ, պատրեալ 'ի կռապաշտից գեղեցկաց՝ անկաւ առ կուռսն գարշելիս [76]:

Զկնի եկն Թամուզ. որոյ վէրք 'ի Լիբանան ամի ամի՝ շարժեցին զօրիորդս Ասորւոց առնուլ ողբս 'ի վերայ աղէտից նորա զօր մի ողջոյն յամարայնի 'ի ցուցս սիրոյ, այն ինչ հեզլիկն Ադոնիս [77] 'ի բնիկ քարաժայռէ իւրմէ բոսորատիպ [78] ընթանայ 'ի ծով. կարծեցեալ զայն գունակեալ արեամբն Թամուզայ վիրաւորելոյն ամ ըստ ամէ: Այլ առասպելքն սիրոյ հարին նոյնօրինակ տապով և զդստերս Սիոնի. զորոց զանառակ ցանկութիւնս ետես Եզեկիէլ 'ի սրբութեան տաճարի, այն ինչ տեսլեամբն առաջնորդեալ՝ ակնարկեցին աչք նորա ընդ խաւարին կռապաշտութիւնս օտարացելոյն Յուդայ [97]:

Սպա եկն նա՝ որ կարի իմն սուգ էառ, յորժամ տապանակն վարեալ 'ի գերութիւն ծայրաքաղ կրճատեաց զպատկեր նորա անքանական՝ հատեալ 'ի նմանէ 'ի բաց զգլուխն և զձեռս առ սեամբք նորուն իսկ տաճարի, ուր անկեալ նա գետնամած, և յամօթ արար զերկրպագուս իւր: Դագոնի անուն նորա՝ նհանգ ծովային. մարդ 'ի վերոյ քան զմէջս, և ձուկն առ ստորոտովն: Սակայն և այնպէս եգիտ նա զտաճար իւր կանգնեալ բարձրաբերձ յԱզովտոս, և ահարկու ընդ ծովեզերս Պաղեստինու, 'ի Գէթ, և յԱսկաղոն, յԱկկարոն, և 'ի գլուխս սահմանացն Գազայ [80]:

Զհետ նորա եկն Ռեմմոն [81]. որոյ զուարճալի բնակութիւն էր գեղեցիկն Դամասկոս՝ յարգասանդաբեր գետափունս ականակիտ վտակացն Աբբանայ [82] և Փարփարայ: Եւ նա ևս խրոխտապանծ գտաւ ընդդէմ տանն Աստուծոյ: Սորոյս երբեմն զբորոտ ոք [83], և ստացաւ զարքայն՝ զշամբուշ յաղթականն իւր զԱքաղ [84]. զոր և ձգեաց յարհամարհութիւն և 'ի կործանումն սեղանոյն Աստուծոյ՝ 'ի շնորհս բագնին ըստ պաշտաման Ասորւոց, առ'ի այրել 'ի վերայ նորա զնուէրս գարշութեան իւրոյ, և երկիրպագանել աստուածոցն՝ որոց գտաւ յաղթական:

Զկնի սոցա երևեցաւ խուժանն՝ որ ընդ անուամբ նախնի համբաւոյ Ովսիրիդեայ [85], Իսիդեայ [86], Ովրոսայ [87] և այլոց՝ պատրեցին այլանդակ կերպարանօք, և կախարդութեամբք իւրեանց զմոլեալն Եգիպտոս, և զքուրմն նորա՝ ելանել 'ի խնդիր վտարանդի աստուածոց յանքանական յաւէտ քան 'ի մարդկեղէն կերպարանս: Ոչ գը-

տաւ ազատ և Իսրայէլ 'ի ճարակմանէ աստի, այն ինչ ունկն նորա առեալ յանօթ՝ ձուլեաց զորթն 'ի Քորեբ[88] . և ապստամբն արքայ երկրորդեաց զնոյն յանցանս 'ի Բեթէլ և 'ի Դան[89] . 'ի նմանութիւն բերեալ խոտակեր եզին զարարիչ իւր Եհովահ՝ որ 'ի միում գիշերի յանցանել անդրընդ Եգիպտոս, 'ի մի հարուած սատակեաց զամենայն անդրանիկս նորա, և զբառանջող դիսն[90] :

Հուսկ յետոյ եկն Բելիար[91] . քան զոր զարշագոյն հոգի և զակատեալ զկնի մոլութեանց՝ ոչ անկաւ երբէք յերկնից : Տաճար ոչ կանգնեցաւ նմին, և սեղան ոչ ծխոտեցաւ : Ո՞վ առաւել քան զնա յաճախեալ 'ի տաճարս և 'ի սեղանս, 'ի կրթիլ անդ քահանային յանաստուածութիւն. որպէս որդիքն Հեղեայ՝ որք լցին զտունն Աստուծոյ անառակութեամբ և հարստահարութեամբ իւրեանց[92] : Թագաւորէ նա և յարքունիս և յապարանս և յապականեալ քաղաքս . ուրանօր աղաղակք շուայտութեանց և զրկանաց բարձրագոյնս ամբառնան քան զհոյակապ աշտարակս նոցա : Եւ 'ի նսեմացուցանել գիշերոյն զփողոցսն՝ որդիքն Բելիարայ շրջին արտաքոյ, սոնքացեալ անառակութեամբ և արբեցութեամբ : Ակայ են հրապարակքն Սոդոմայ[93], և գիշերն 'ի Գաբաա՝ յորում դուռնն հիւրընկալ եհան արտաքս զտիկինն մեծարոյ, առ'ի խոյս տալ յերեւսաց վատթարագոյն ևս յափշտակութեան[94] :

Սոքա են առաջինքն ըստ կարգի և ըստ իշխանութեան : Իսկ վասն այլոցն բանք երկար լինին յոյժ . թէպէտ և նոքա ոչ սակաւ անուանիք ժամանք էին : Որպէս Դիքն Յոնիական[95] կարծե-

ցեալք 'ի սերնդոցն Յաւանայ [96], բայց յետին խոստովանեալք քան զՈւրանոս [97] և զԴեմետր [98], զպանծալի ծնողս իւրեանց: Տիտան [99] անդրանիկն Ուրանեայ. զորոյ զբազմութիւն ծննդոց հանդերձ իրաւամբք անդրանկութեան անձին գրաւեաց կրտսերն Կռոնոս [100]: Այլ 'ի քաջէն Արամազդայ՝ որ էր որդի նորա և Հռեայ [101], զնոյն ընկալաւ նա չափ վրիժուց: Եւ այնպէս Թագաւորեաց Արամազդ բռնակալեալ: Սոքա զառաջինն ծանուցեալք 'ի Կրետէ [102] և յԻդա [103], ապա 'ի ձիւնապատ գագաթան անդ ցրտասառոյցն Ողիմպեայ [104] կալան զիշխանութիւն օդոյն՝ զբարձրագոյնն երկնից: Կամ 'ի քարաժայռին Դելփեայ [105], 'ի Դոդոնա [106], և յամենայն սահմանս Դորիկեան աշխարհի [107]: Եւ որք միանգամ ընդ ծերունւոյն Կռոնոսի խաղացին յայն կոյս Ադրիոյ [108] Հեսպերեան [109] դաշտս. և անցին 'ի կղզիս հեռաւորս [110] վտարանդեալ ընդ Կեղտիս [111]:

Ամենեքին սոքա, և առաւել ևս՝ եկին բազմագունդ. բայց կոր 'ի գլուխ, և ունելով զաչս 'ի խոնարհ առ ամօթոյ: Սակայն երևէր 'ի նոսա աղօտ իմն նշոյլ խնդութեան 'ի գտանել անդ զառաջնորդ իւրեանց արտաքոյ անյուսութեան, և զանձինս անկորուստ մնացեալ 'ի կորստեան անդ: Արկեալ ունէր Սատանայ զերեսօքն զգոյն վարանախառն, բայց զսովորականն իւր զամբարտաւանութիւն առ ինքն ժողովեալ վաղվաղակի՝ խրոխտապանծ բանիւք, որք զկերպարանս ևեթ ունէին ճշմարտութեան՝ քաղցրութեամբ իմն կանգնեաց զկործանեալ սիրտս նոցա, և փարատեաց զերկիւղն 'ի նոցանէ: Ապա հրաման ետ փութանակի

ամբառնալ 'ի վեր 'ի պատերազմական հնչիւն բարձրաբարբառ փողոյ և սրնգի զդրօշակ իւր անպարտելի ։ Օ՛ն այն պատիւ պանծալի անձին սեպհականեաց Ազազէլ[112] բարձրահասակ Քերովբէ՝ իբրև իրաւամբք իւրումն պաշտաման, և անդէն պարզեաց 'ի շողշողուն ընոյ անտի զնշանն կայսերական[113] ։ Որ և առագաստալըր խաղացեալ 'ի վեր՝ փայլեաց իբրև զմետէորայ հողմահոսան, ցուցեալ յինքեան նկարագիր ականակապ և ոսկեհուռն զարդուք զսրովբէական զէնս և զյաղթանակս[114], այն ինչ տակաւին պղինձն բարձրագոչ հնչեցուցանէր զպատերազմականն նուագ ։ Յորում վայրի զօրքն ամբարձին առհասարակ զձայն ցնծութեան. յորմէ պատառեցան խորոփիք դժոխոց, և յայն կոյս սասանեցաւ Թագաւորութիւնն Անդնդոց[115], և հինաւուրցն Գիշերոյ[116]։ Անդէն վաղվաղակի 'ի քթթել ական երևեցան 'ի մթան անդ բիւրաւոր դրօշակք օդապարիկ՝ ծածանեալ 'ի գոյն արևելից ։ Ընդ նոսին յարեաւ և անհեղ անտառ նիզակաց. և խուռն բազմութիւն սաղաւարտից և ասպարաց խիտառխիտ թանձրութեամբ ցուցաւ դասակարգեալ ։ Փութանակի յառաջ խաղացին յանթերի փաղանգս 'ի Դորեան[117] քաղցրահնչիւն եղանակս սրնգաց և նուագաց ։ Որպիսիք ոմանք հանէին երբեմն 'ի բարձրութիւն ազնուական հոգւոյ Դիւցազունս[118], սպառազինեալ զնոսա 'ի մարտ. և փոխանակ կատաղի յանդգնութեան ազդեցին 'ի նոսա զխոհական հոգի քաջութեան, անդրդուելի և անտեղիտալի յերեսաց վտանգուն փախստեան կամ յետագարձի առ երկիւղի մահուն ։ Այլ ոչ նուագ

էր նոցայն զօրութիւն 'ի դիւրել անդ և 'ի խա-
ղաղացուցանել արուեստական հնչմամբ զխառ-
վեալ միտս . և 'ի բաց փարատել զանձկութիւն ,
զտատամնութիւն , զերկիւղ , զտրտմութիւն և
զվիշտս 'ի մահկանացու և յանմահական սրտից [119] :
Զայս օրինակ միաբան քաղջութեամբ և անշարժ
խորհրդովք յառաջ խաղային նոքա անբարբառ
'ի հնչիւն քաղցրանուագ եղեգանց , որ զուարճա-
ցուցանէր զցաւագին զնացս նոցա 'ի վերայ բոցա-
կէզ երկրին : Եւ այնպէս ապա անցեալ 'ի հան-
դիսի՝ արձանացան կացին յահագին երկայնու-
թիւն . ահեղ ճակատու շողշողափայլ զինուքն իւ-
րեանց , վառեալ 'ի նիզակ և յասպար ըստ օրի-
նակի մարտկացն առաջնոց , և ակն կալեալ հրա-
մանի մեծի զօրագլխի իւրեանց : Իսկ նորա ձգտե-
ցուցեալ ընդ ճակատ զինելոցն զքաջակիրթ աչս
իւր՝ անդէն և անդ անցանէ տեսութեամբ ընդ
հանդէս ողջոյն զնդին , անվրէպ դասակարգու-
թեան նոցա , դիմաց և հասակաց գոգցես Աստ-
ուածոց . և ապա առնու զթիւ համարոյ նոցա :
Այլ յայնմ վայրի ուռուցեալ փքանայ սիրտ նո-
րա ամբարտաւանութեամբ , և առաւել ևս պըն-
դացեալ՝ պարծի ընդ զօրութիւն իւր : Վասնզի
յորմէհետէ ստեղծաւ մարդ , ոչ ոք կալաւ զնոյն
օրինակ զինուորութիւն , մինչև առ նոքօք կարող
լինել առաւել պանծալ քան զհետևակազօրան
Թագկաց՝ որք մարտեան ընդ Ասորդս , թէպէտև
միաբանեալ էին ընդ սկայաձև արանցն Փղե-
գրայ [120] , ընդ զարմից Պիւցազանց՝ որք եսուն
պատերազմ 'ի Թեբէ [121] և յԻղիոն [122] , երկոքին
կողմանք ևս խառն ընդ աջակից Պրիամու : Եւ որ-

չափ ինչ միանգամ համբաւի յառասպելս կամ 'ի կեղծիս որդւոյն Ութերայ [123], որ գօտէպնդեալն էր ընդ Բրիտանեան [124] կամ ընդ Արմորիկեան [125] Ասպետաց ։ Եւ ամենեքին առհասարակ հաւատացեալք կամ անհաւատք՝ որք միանգամ զկնի արդնընկէց եղեն յԱսպրամոնտ [126], 'ի Մոնտալբան [127], 'ի Դամասկոս [128], 'ի Մարոկ [129], և 'ի Տրապիզոն [130] ։ Կամ զորս միանգամ առաքեաց Բիսերտա [131] 'ի ծովեզերացն Ափրիկոյ, այն ինչ մեծն Կարոլոս [132] անկաւ ընդ աւագանւոյն 'ի սահմանս անդ Ֆոնտարաբիոյ [133] ։ Այսպիսի օրինակաւ անհամեմատ էին նոքա ընդ մահկանացուացս զօրութեան . սակայն և այնպէս հնազանդեալ կային հրամանի հզօր զօրագլխի իւրեանց ։ Իսկ նորա առաւելեալ քան զայլս 'ի սխրալի պատկեր և 'ի շարժուածս՝ եկաց կանգուն իբրև զաշտարակ ։ Տեսիլ կերպարանաց նորա տակաւին ոչ էր կորուսեալ բովանդակապէս զնախկին պայծառութիւն իւր . և ոչ իսկ դուզնաքեայ ոք երևէր նա քան զհրեշտակապետ կործանեալ ։ Միայն նսեմացեալ էր առաւելութիւն փառաց նորա ։ Զորօրինակ յորժամ արեգակն նորոգ ծագեալ՝ 'ի հորիզոնի անդ երևի ընդ օդն միգապատ յապաւեալ 'ի ճառագայթից անտի իւրոց ։ Եւ կամ 'ի Թիկանց անտի լուսնի 'ի մթագին խաւարմանն սփռի աղօտ լոյս չարագուշակ զկիսով մասամբ աշխարհի, 'ի վարանս արկեալ զինքնակալս յերեսաց երկիւղի արկածից [134] ։ Զայս օրինակ խաւարեալ հրեշտակապետին՝ տակաւին առաւել քան զամենեսին արտափայլէր ։ Միայն խորամուխ հարուած շանթին հատեալ ունէր զփոս զերեսօք նորա . և

հոգւ թանձրամած պատեալ կայր զայտիւքն: Այլ ընդ յօնիւքն անվեհեր քաջութեան, և կամակոր ամբարտաւանութեան նստեալ կայր քինախնդրութիւնն 'ի դարանի: Ահագնատեսիլ էին աչք նորա, բայց նշան ինն ցուցանէին գթոյ և կարեկցութեան յակնարկել անդ յընկերս իւր, մանաւանդ թէ՝ յաշակերտս իւրոց յանցանաց: Զորս կարի իմն տարօրինակ ետես երբեմն յերանութեան անդ. իսկ այժմ տեսանէ դատապարտեալս՝ առ ունելոյ ընդ նմա զբաժին իւրեանց յանվախճան 'ի տանջանս: Զի հազարք հազարաց տուժեցին զերկինս ընդ յանցանաց նորա. և 'ի սակս ապստամբութեան նորա տարագիր գտան 'ի մըշտնջենաւոր լուսափայլութենէ իւրեանց: Սակայն տակաւին զխո՞րդ կան նոքա հաւատարիմ ընդ նմա 'ի թարշամութեան անդ փառաց իւրեանց: Զոր օրինակ յորժամ հուր իջեալ յերկնից ապականէ զկաղնիս անտառի և զսարոյս լերանց, տակաւին բունք նոցա հաստարմատ՝ թէպէտև հոլանի, խանձողեալ գագաթամբք իւրեանց կան հաստատուն 'ի վերայ ազազուն գետնոյ: Արդ՝ մատեաւ նա յառաջ 'ի խօսել ընդ նոսա: Յայնժամ վայրի կապեցին նոքա զկրկին առաջս իւրեանց թևոց 'ի թևս. և կէս մասն 'ի նոցանէ պատեաց զնա շուրջանակի աւագանւոյն հանդերձ: Ունկնդրութիւն անշշունջ կալաւ զամենեսին: Երիցս փորձեաց նա, այլ արտասուքն՝ որպէս օրէն է հրեշտակացն արտասուել, երիցս յակամայ կամս զեղան յաչաց նորա: Սակայն բանք նորա հիւսեալ ընդ հառաչանս՝ գտին զկնի զելս իւրեանց:

Ով բիւրաւորքդ հոգւոցդ անմահից, ով զօ-

րութիւնքդ անզուգականք՝ համեմատք միայն ընդ Ամենակալին ։ Պատերազմդ՝ զոր մղեցաք յերկինս, ոչ էր անփառունակ, թէպէտ ելք նորա ցաւագին՝ որպէս ցուցանեն այս տեղի ; և այս յեղափոխութիւն ողորմ և անբերելի ։ Բայց որո՞ւմ նախատես և կանխագուշակ զօրութեան մտաց՝ ՚ի խորոց անտի անցելոց կամ առաջիկայից գիտութեան, մարթ էր կասկածել ընդ պարտութիւն այսպիսի միաբան և հաստատուն զօրութեանց Աստուածոց [135] ։ Եւ արդ խոկ զկնի կործանմանս՝ ո՞ւմ հնար է հաւատալ, թէ այս ամենայն լեգէոնք՝ որոց տարագրութիւն թափուր կացոյց զերկինս, տակաւին տկարանայցեն ՚ի կանգնել զանձինս, և վերստին ժառանգել զբնիկ աթոռ իւրեանց ։ Վասն իմ վկայ լիցին ամենայն զօրութիւնք երկնից, եթէ այլևայլ խորհուրդք, և վտանգն՝ յորմէ խուսափեցայ, ետուն կորուսանել զյոյս մեր ։ Բայց որ ինքնակալէն յերկինս, ցայն վայր նըստաւ աներկևան յաթոռ իւր՝ կալեալ զայն վաղնջուց մեծարանօք, հաւանութեամբ և կամ սովորութեամբ, և եցոյց լիով զմեծութիւն իւր․ բայց ոչ յայտնեաց զզօրութիւն իւր ։ Զորոյ կամեցեալ մեր առնուլ զփորձ՝ ածաք ՚ի վերայ անձանց զկործանումս ։ Այլ յայսմհետէ գիտեմք զզօրութիւն նորա, և չեմք անտեղեակ մերումս․ մինչև ոչ ևս յարուցանել մեզ նորոգ պատերազմ, և կամ ոչ երկնչել յերեսաց յարուցելոյն ՚ի վերայ մեր ։ Արդ՝ մնայ մեզ ընտրել զգործ գաղտնի՝ պատրանօք և կամ դաւաճանութեամբ, զոր ոչ կարացաք տանել ՚ի գլուխ զօրութեամբ ։ Զի որ յաղթէն զօրութեամբ, քաջ գիտասցէ ՚ի վախ-

Ճանի՝ թէ ոչ յաղթեաց նա տիրապէս իւրումն թշնամւոյ ։ Հնար է անսահման ընդարձակութեանն յառաջ բերել զնորանոր աշխարհս․ յոյր սակս համբաւ համատարած ընթանայր յերկինս[136], թէ ունի նա կամս արարչագործել զայն զկնի սակաւուց, և հաստատել 'ի նմա զսերունդն՝ զոր տեսչութիւն նորա հանդերձեալ է յաւէտ իմն խնամարկել ոչինչ ընդհատ յորդւոցն երկնից ։ Նաւ արդ՝ թերևս անդր, թէպէտև 'ի հետազօտութիւն ևեթ, լիցին առաջին արշաւանք մեր․ անդր կամ այլուր ։ Զի չէ հնար անդնդային խորխորատիս ունել զերկնային հոգիս 'ի կապանս, և ոչ ընդերկար ծածկել ընդ խաւարաւ ։ Բայց վասն սորին պէտք են մեզ միաբան խորհրդոյ ։ Չիք մեզ տեղի հաշտութեան․ զի՞ ոք կարէ ընդմիտ անգամ ածել զհպատակութիւն ։ Ապա պարտ է մեզ խորհրդով հասարակաց ձեռն արկանել 'ի պատերազմ, 'ի պատերազմ յայտնի կամ թագուցեալ ։

Խօսեցաւ նա․ և 'ի կնիք հաստատութեան բանից նորա անդէն վաղվաղակի զեղան արտաքս հազարք հազարաց բոցանշոյլ սուսերաց ձգելոց յազդերաց անտի քաջամարտիկ Քրովբէից ։ Յանկարծակի փայլումն նոցա բայագոյնս լուսաւորեաց զդժոխս ։ Որոտմնեցան նոքա յանհնարինս ընդդէմ Բարձրելոյն․ և զինուքն իւրեանց հնչեցուցին 'ի վերայ շռնչաձայն վահանաց զահագին շըռինդն զոռ մարտի, հրաւէր արձակեալ 'ի կամարն երկնից ։

Ոչինչ կարի 'ի բացեայ անտի կայր լեառն ահագին, որոյ գագաթն զգայուէր զհուր և զծուխ

ոլորտամած . և ողջոյն մարմինն ցոլանայր 'ի քոս փայլումն՝ առ 'ի նշանակ ծածկեալ ունելոյ յարգանդի իւրում զհանքս մետաղաց, զծնունդս ծծմբոյ ։ Ընդ որ ուղղեաց փութանակի գունդ ինչ բազմաձեռն զհապճեպ թռիչս իւր . որպէս յորժամ գունդն գործաւորաց զինեալ 'ի փայտատ և 'ի տապար՝ կարապետ լինի արքայական բանակին առ ամբառնալ զհողաբլուրս, և կանգնել զպատնէշս ։ Սամմոն[137] առաջնորդեաց նոցա, Սամմոն յաւէտ երկրաքարշ քան զամենայն հոգիս՝ որք անկան յերկնից ։ Քանզի և յերկինս անդ աչք նորա և միտք միշտ խոնարհեալ կային, պշուցեալ յաւէտ ընդ հարստութիւն ոսկեկուռ յատակի երկնից, քան զմայլեալ ընդ աստուածային ինչ և սուրբ յերանական տեսութեանն ։ Նովաւ և մարդիկ ուսան զառաջինն կողոպտել զկենդրոն երկրի, և անողորմ ձեռօք իւրեանց խլել 'ի բաց զաղիս մօր իւրեանց 'ի խնդիր գանձուցն՝ որոց թագնութիւն լաւ ևս լինէր նոցա[138] ։ Ամբոխն նորա անդէն փութանակի վէրս եբաց լայնաբերան 'ի լերին անդ, և պեղեալ եհան արտաքս զընդերս ոսկւոյ ։ Մի՛ ոք զարմասցի ընդ աճել ընչից 'ի դժոխս . քաջավայելուչ ընդունարան է տեղիդ ծանրագին թունիցդ[139] ։ Եւ աստանօր ուսցին որք միանգամ անցաւորօքս պարծին, և պատմեն զարմանս զԲաբելայ[140], և զթագաւորացն Մեմփեայ[141], թէ զիարդ մեծամեծ յիշատակարանք նոցա համբաւոյ, քաջութեան և արուեստի հեշտեաւ իմն նկուն եղեն 'ի ձեռն հոգւոցն անարգութեան 'ի միում ժամու՝ զորս հազիւ կարացին նոքա 'ի միում դարու[142] հանել 'ի գլուխ անդադար

աշխատութեամբ և անհամար ձեռօք ժրաջան ար-հեստաւորաց ։

Յառընթեր դաշտավայրի անդ 'ի բազմապատիկ պատրաստական խորշս՝ որք ունէին 'ի ներքոյ զերակս հոսանուտ ջրոյն խաղացելոյ 'ի լճէ անտի, միւս ևս բազմութիւն հալեաց ճարտար արուեստիւ զստուար զանգուածս հանքացն. և զիւրաքանչիւր ազգ զտեալ մաքրեաց 'ի կղկղանաց անտի ։ Իսկ երրորդ բազմութիւնն այնպէս փութանակի ձևացոյց 'ի գետնի անդ զայլևայլ կաղապարս ձուլից, և ելից զփապարս նոցա յեռանդուն խորշից ընդ սքանչելի անցս՝ որպէս յերգեհոնի հնչէ նուագարանն 'ի փչմանէ շնչոյն 'ի բազմապատիկ կարգս եղեգանց ։

Անդէն վաղվաղակի կանգնեցաւ յերկրի շինուածն ահագին գոլորշանման՝ 'ի հնչիւն քաղցրանուագ ձայնից. և կառուցեալ ամբարձաւ իբրև զտաճար ։ Յորում եղեալ կային շուրջանակի կամարակալք, և Կորնթեան [143] սիւնք ոսկի մակասեամբքն ծանրացեալք ։ Իսկ ոչ իսկ պակասեաց 'ի նմա պսակ շինուածոց, կամ զարդ քանդակաձև ։ Ձեղունն նորա էր ոսկեդրուագ ։ Ոչ Բաբելոն, և ոչ մեծն Աղկայիր [144] ցուցին երբէք մեծագործութիւն այնպիսի յամենայն փառս իւրեանց՝ 'ի դնել անդ 'ի գլրոց [145] զԲէլ [146] կամ զՍերապիս [147] աստուածս իւրեանց, և կամ 'ի նստուցանել յաթոռ զթագաւորս իւրեանց, այն ինչ Եգիպտոս ելևելս առնէր ընդ Ասորեստանի 'ի մեծութեան անդ և 'ի շռայլութեան ։

Հուսկ յետոյ շինուածն բարձրածայրեալ կալաւ զկատար իւր հոյակապ ։ Իսկ առժամ բացեալ

դղրանց զպղնձի փեղկս իւրեանց՝ ցուցանէին 'ի ներքս զընդարձակագաւիթ վայրն յողորկ և 'ի մանկաւասար յատակի։ Ի կամարաշէն ցուոց նորա կախեալ կային դիւթական արուեստիւ բազմագումար շարք աստեղանշոյլ ղամպարաց, և բոցաճաճանչ ջահից. որոց պարարեալ նաւթիւ և ձիւթով՝ ընծայէին զլոյս գոգցես յերկնից 'ի վերուստ։ Հապճեպ բազմութիւնն եմուտ 'ի ներքս։ Ոմանք զգործն գովէին, և ոմանք զճարտարապետ նորին։ Ձեռն նորա ծանուցեալ էր յառաջագոյն և յերկինս 'ի բարձրակառոյց շինուածս նորա՝ յորս գաւազանակիր [148] Հրեշտակք կալան զբնակութիւն իւրեանց, և նստան 'ի նոսա իբրև զիշխանս։ Զորս գերագոյն Արքայն բարձրացոյց յայն պատիւ, տուեալ նոցա իշխանութիւն 'ի վերայ լուսափայլ կարգաց՝ իւրաքանչիւր 'ի Քահանայապետութեան անդ իւրում։ Եւ ոչ իսկ անուն նորա անծանօթ էր և անպաշտօն 'ի նախնի Յունաստան։ Եւ բնակիչք Աւսոնեանն [149] երկրի կոչեցին զնա Մուղկիբեր [150]. և յառասպելս իւրեանց պատմեցին զանկումն նորա յերկնից, ընկեցեալ յԱրամազդայ սրտմտելոյ ընդ մարտկոցն բիւրեղեան։ Եւ նա վայրաբերեալ յառաւօտէ ցհասարակ օր, և անտի ցժամ ցօղապէն երեկոյի՝ օր մի յամարայնի. և ընդ արևուն մտանել հոսեցաւ 'ի զէնիթէ [151] անտի իբրև զաստղ անկեալ՝ 'ի Լեմնոս [152] կղզի Եգէացւոց [153]։ Այս է պատմութիւն նոցա անհարազատ։ Քանզի նա կարի իսկ յառաջագոյն կործանեցաւ ընդ ապստամբս խռովժանի իւրում։ Եւ ինչ ոչ օգնեաց նմա շինութիւն բարձրաբերձ աշտարակաց յերկինս։ Եւ ամենայն

մենքենայք իւր ոչ զերծուցին զնա. այլ վտարեցաւ գահավէժ ընդ հնարիմաց գլոհի իւրում 'ի գործ չինութեան 'ի դժոխս անդ:

Յայնմ վայրի քարոզքն թեւաւոր ըստ ակնարկութեան իշխանապետին յահեղ հանդէս և 'ի ձայն փողոյ հրատարակեցին ընդ զօրսն համօրէն զհանդերձեալ զանյապաղ խորհուրդն կարևոր 'ի Պանդեմոնի՝ [154] 'ի բարձրագահ և յաթոռանիստ տաճարի Սատանայի, և աւագորերոյ նորա: Հրաւէր նոցա կոչեաց զպատուականագոյնսն աստիճանաւ կամ ընտրութեամբ յիւրաքանչիւր գնդից և 'ի դասուց: Եկին նոքա փութանակի համախմբեալ ընդ հարիւրաւորս և ընդ հազարաւորս իւրեանց: Խռնեցան ընդ ամենայն տեղիս՝ առ դրունսն, 'ի լայնարձակ գաւիթս, և յաւէտ իմն յընդարձակատարր սրահի անդ (որ էր նման պարածածկեալ դաշտի՝ յորում բազմախրոխտ շահատակքն սովորեցան 'ի ձի աշտանակել վառեալ զինուք առընթեր գահապետի իւրեանց, և հրաւիրել զընտիրս 'ի Պանիմեան [155] հեծելազօրաց 'ի մարտ մահառիթ, և կամ 'ի խաղ նիզակաց). և գունդագունդ դիզացան 'ի գետնի անդ և յօդս՝ 'ի շչիւն բաղխման բազմաշառաչ թեւոց իւրեանց: Որպէս մեղուք 'ի ժամանակի անդ գարնայնոյ՝ այն ինչ արեգակն ընդ Ցուլն [156] ընթանայ, գունդագունդ հոսեն զբազմութիւն ձագուց իւրեանց առ բաճաւ, և ինքեանք յածին 'ի թռիչս ընդ ցօղ զովագին, և ընդ ծաղիկս. և կամ սփռեալ 'ի վերայ ողորկ տախտակի նորոգ օծելոյ բալասանաւ՝ որ է բացատ յարդաշէն միջնաբերդի իւրեանց, անդանօր խորհուրդ 'ի մէջ առնուն 'ի սակս գոր-

ծառնութեանց տէրութեան իւրեանց ։ Զայս օրինակ խիտառախիտ և բազմախուռն խռնեցաւ ամբոխն օդային ։ Մինչև զկնի նշանին՝ որ տուաւ նոցա, (ո՞վ սքանչելեացս, որք ցայնվայր թուէին զանցանել 'ի վիթխարութեան անդ զհսկայազուն որդւովքն Երկրի[157], յանժամ առաւել կարճահասակ գտեալ քան զթզուկսն) յանձուկ վայր ամփոփեցան անհամար բազմութեամբ իւրեանց[158]. ըստ օրինակի ծննդոցն Թզկաց՝ որ յայնկոյս լերինն Հնդկաց[159], և կամ այսոցն խօլականաց՝ զորոց զգիշերախառն խրախութիւն առընթեր անտառի կամ աղբերն տեսանէ գիւղականն տարաժամեալ, և կամ համարի տեսանել յանուրջս, այն մինչ լուսինն նստի դատաւոր 'ի վերայ գլխոյ նորա, և հուպ ընդ երկիր հոլովէ զահեղափայլ գնացս իւր ։ Իսկ նոքա ուշ եդեալ խրախութեան իւրեանց և պարու ևեթ՝ քաղցրանուագ երաժըշտութեամբ զերկրեցուցանեն զլսելիս նորա ։ Այլ սիրտ նորա զեղանի խնդութեամբ և երկիւղիւ միանգամայն[160] ։ Զայս օրինակ հոգիքն անմարմին 'ի դոյզն քանակ ամփոփեցին զվիթխարութիւն հասակի իւրեանց. և թէպէտ անթիւ էին բազմութեամբ, այլ կային յընդարձակի 'ի սրահի անդ անդնդային պալատան ։ Իսկ 'ի ներքսագոյն կողմն յառանձին ժողովարանի բազմեցան ըստ չափու և ըստ կերպարանաց իւրեանց յոսկեղէն աթոռս 'ի խորհուրդ մեծամեծ սրովբէական Տեարք[161] և Քրովբէք՝ բիւրաւոր Կիսաստուածք յոգնախուռն ։ Եւ ապա զկնի սակաւիկ մի լռութեան, և պատգամացն վերծանութեան՝ սկիզբն եղև մեծի խորհրդոյն[162] ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Սկսանի խորհուրդն ։ Խնդիր առաջի առնէ Սատանայ, թէ մրդեօք արժա՞ն իցէ նոցա 'ի նորոգ մարտ ձեռն արկանել՝ առ ընդ բռամբ ածելոյ վերստին զերկինս ։ Ոմանք հաւանին ընդ այդ, և ոմանք ոչ ։ Երրորդ առաջարկութիւնն յիշատակեալ յառաջագոյն 'ի Սատանայէ՝ ընտրելագոյն թուի նոցա, այն է՝ խնդրել զստուգութիւն մարգարէութեանն կամ աւանդութեան յերկինս, որ յաղագս հանդերձեալ արարչութեան նորոյ աշխարհի զայնու ժամանակաւ, և նորաստեղծ մարդոյն՝ որ ունէր լինել հաւասար նոցա, կամ սակաւ մի խոնարհագոյն ։ Յուզմունք խորհրդոց նոցա յառաջել զոք յայդ խնդիր դժուարաձեռն ։ Սատանայ առաջնորդ նոցին ինքնին յանձն առնու զայն ճանապարհ ։ Յոյր սակս ընդունի 'ի նոցանէ զպատիւ և զգովութիւն ։ Զայսօրինակ աւարտեալ խորհրդոյն՝ այլք ցանդրէն դարձ նորա տան զանձինս յայլ և այլ զբօսանս և 'ի գործս ըստ հաճոյս ։ Հասանէ Սատանայ զճանապարհայն առ դրունս դժոխոց ։ Գտանէ զայն փակեալ, և զպահապան նորին նստեալ առընթեր ։ Զկնի բազում դժուարութեանց բանայ նա զդրունսն, և ցուցանէ նմա զվիհն մեծ ընդ մէջ դժոխոց և երկնից ։ Զիա՞րդ էանց նա առաջնորդեալ յԱնդնդոց անտի՝ յիշխանութենէ վայրացն, 'ի տեսիլ նորոյ աշխարհի՝ որում ըղձեալ էր 'ի խնդիր ։

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

## ԳԻՐՔ. Բ։

Յաթոռ բարձրութեան արքայավայելուչ շըքոյ՝ որ առաւել արտափայլէր քան զմեծութիւնս Որմոսայ [1] և Հնդկաց [2], կամ ուրանօր շքեղապանծն Արեւելք [3] տեղայ ձոխաբար ձեռամբ զմարգարիտս և զոսկի ՚ի վերայ իւրոց խուժադուժ արքայից, ելեալ բազմեցաւ Սատանայ. ամբարձեալ յայն չարաշուք բարձրութիւն ըստ իւրոց արժանեաց։ Նա քաջալերեալ ՚ի վեր քան զյոյս իւր յերեսաց անհնարին յուսահատութեան՝ ցանկայ և ևս բարձրանալ, զհետ պընդեալ անյագաբար ունայնատակ մարտի ընդ երկինս [4]։ Նա տակաւին ոչ խրատեալ յելից անտի՝ զայս օրինակ ծանուցանէ զմիտս իւրում ամբարտաւանութեան։ Զօրութիւնք և Իշխանութիւնք՝ Դիւցազունք երկնից, փոխանակ զի անհնար է անդնդոցս կապեալ ունել ՚ի ծոցի իւրում զանմահական հոգիս՝ ես ոչ համարիմ կորուսեալ զերկինս։ ՚Ի ստորանկմանէս կանգնեալ ՚ի վեր երկնային արութեանցս՝ առաւել ևս պայծառա

ցին և ահեղ ցուցցին, քան եթէ չէր մեր կործանեալ։ Արդ՝ քաջ լերուք, և մի երկնչիք յերեսաց միւսանգամ արկածից։ Զիս՝ թէպէտև արդար իրաւունքն, և հաստատուն օրէնք երկնից կացուցին զառաջինն առաջնորդ ձեր, և ապա ազատ ընտրութիւն ձեր՝ թողեալ զքաջութիւնս 'ի խորհրդեան անդ կամ 'ի մարտի, սակայն այս կորուստ դէթ սակաւուք գտեալ վերստին՝ պնդեալ հաստատեաց յաթոռ աներկեւան յերեսաց նախանձու, շնորհեալ ինձ միաբան հաւանութեամբ հասարակաց։ Մարթ էր երանութեանն յերկինս զուգակցեալ ընդ աստիճանի պատուոյ՝ շարժել թերևս 'ի նախանձ զկարգեալսն ընդ ձեռամբ, բայց աստանօր ո՞ ոք նախանձեսցի ընդ նմա՝ զոր բարձրութիւն աստիճանին յառաջ մատուցանէ իբրև զպատուար ընդդէմ կամաց նորա՝ որ որոտայն, և մատնէ ևս առաւելագոյն մասին անվախճան տանջանաց։ Արդ՝ ուրանօր չիք ինչ նախանձելի, չիք անդ և տեղի ձգանց կամ հակառակութեան. քանզի արդարև ոչ ոք թէկն ածէ նախագահութեան 'ի դժոխս. և ոչ ոք առաւելագոյն մասին ցանկայ տանջանաց փառաւոր մտօք։ Սովին քաջադէպ միաբանութեամբ, անկեղծ հաւատարմութեամբ և անդրդուելի խորհրդով՝ քան զոր մարթ էր մեզ ունել յերկինս, դառնամք արդ 'ի խնդիր մերումս արդար ժառանգութեան 'ի սկզբանէ. գոլով մեր հաւաստի ունել զյաջողակ ելս՝ առաւել քան զոր մարթ է յաջողութեանն ինքնին երաշխաւորել մեզ։ Բայց թէ որո՞վ ընտրելագոյն օրինակաւ, անծածկո՞յթ արդեօք պատերազմաւ, եթէ գաղտնի

խորամանկութեամբ, ահա մատուցեալ եմք 'ի քննութիւն ։ Նմանուսցէ իւրաքանչիւր ոք զիւր խորհուրդ ։

Պատարեաց նա. և զկնի յարեաւ Մողոք զաւազանակիր արքայ 5. հոգի զօրագոյն և մոլեգին քան զորս մարտեան յերկինս, և արդ վերագագոյն յերեսաց անյուսութեան ։ Ըղձեալ էր նորա 'ի մտի լինել զուգահաւասար Յաւիտենականին 'ի զօրութեան անդ. և առաւել ցանկայր յոչինչ լինել, քան յետնեալ 'ի նմանէ ։ Սովին կորստական խորհրդով մերժեաց նա յանձնէ 'ի բաց զամենայն երկիւղ. գրեաց առ ոչինչ զԱստուած, զդժոխս, կամ զայլ ինչ չարագոյն քան զայն. և ապա խօսեցաւ օրինակ զայս ։

Իմ կարծիք են 'ի սակս անպատրուակ մարտի. ոչ գոլով իմ վարժեալ՝ չունիմ ինչ պարծիլ ընդ հնարս խորամանկութեան. որք միանգամ պէտս ունին այնմ, կամ կարեւոր տեսանեն, արկցեն զայն 'ի կիր. բայց ոչ այժմ ։ Քանզի մինչ արժա՞ն իցէ 'ի ժամավաճառ լինել առ 'ի գիւտ հնարից, հազարացս հազարաց՝ որք կան սպառազինեալ, և անձկանօք մնան ամբարձման նշանի՝ դեգերել աստանօր պարապորդ՝ փախստականք յերկնից. և ընդունել 'ի բնակութիւն իւրեանց զայս խորշ խաւարային ամօթոյ և նախատանաց, զբանտն բուռն իշխանութեան նորա՝ որ թագաւորէն 'ի սակս մերում դանդաղանաց ։ Ո՛չ, և մի լիցի. այլ յաւէտ ընտրեսցուք զինեալ առհասարակ 'ի բոց մոլեգնութեան դժոխոց՝ բանալ մեզ զճանապարհ անխափան 'ի վերոյ քան զբարձրաբերձ աշտարակս

երկնից , դարձուցեալ զտանջանս մեր յահագին զէնս ընդդէմ տանջողին ։ Յորում վայրի յելանել անդ ընդ առաջ ահագին ձայնից ամենազօր մանգղոնաց նորա՝ լուիցէ նա զորոտումն անդնդոցս . և փոխանակ շանթիցն տեսցէ զհուր տարտարոսական և զարհաւիրս հեղեալ 'ի վերայ Հրեշտակացն իւրոց նովին սրտմտութեամբ . և զխուրականն աթոռ թաթաւեալ 'ի ծծումբ և 'ի հուր անդնդային՝ որք են տանջանք նորուն իսկ հնարից ։ Բայց թերևս դժուարին և ափափայ թուիցի ոմանց ճանապարհն յելս անդ ուղղաձիգ թևօք ընդդէմ գերագոյն ոսոխին ։ Սակայն եթէ քնաբեր արբումն անյուշ լճին [6] տակաւին ոչ թմրեցուցանէ զնոսա , 'ի յուշ բերցեն՝ թէ մեք ըստ բնիկ շարժման մերում ելանեմք 'ի վեր յաթոռ մեր սեպհական . վայրաբերութիւն և անկումն հակառակ են մեզ ։ Ո՞չ դիտաց յելս անդ իրացն՝ այն ինչ ահեղ թշնամին անկաւ նախատանօք 'ի վերայ խորտակեալ կնդի վերջապահ զօրացն մերոց , և վարեաց հալածական ընդ խորս անդնդոց՝ թէ քանի՜ բռնութեամբ , և դժուարին իջմամբ վայրասուզեցաք ։ Ապա ուրեմն դիւրին են մեզ ելք ։ Բայց ելք իրացն խիթալի [7] ։ Զի եթէ վերստին գրգռեմք զհզօրագոյնն քան զմեզ , մարթ է սրտմտութեան նորա գտանել չարագոյն ևս եղանակ յեղծումն և յապականութիւն անձանց ։ Եթէ [8] արդարև կայցէ 'ի դժոխս երկիւղ յերեսաց ևս չարագունին . զի զի՞նչ մարթ է լինել առաւել վատթարագոյն քան ըզբնակութիւնն աստանօր՝ անկեալ արտաքս յերանութենէ անտի , և դատապարտեալ 'ի վերջին

տղէտս յայս վիրապ խոնհերական։ Ուրանօր տան-
ջանք անշէջ հրոյն հանդերձեալ են կրթել ան-
վախճան ընկերգեալքս ընդ ցասմամբ նորա, այն
ինչ հարուածն անողոքելի, և ժամն տանջողական
կոչէն զմեզ 'ի խոշտանգանս։ Եւ միթէ յայնժամ
յաւէտ իմն ապականեալ քան այժմ՝ ապա-
ստո՞ւռ ունիմք եղծանիլ և կորնչիլ։ Ապա յի՞նչ
իրաց երկնչիմք․ Հի՞մ կամք տարակուսեալ 'ի բառ-
բաքել զբարկութիւն նորա, որոյ յանհնարինս
սրտմտեալ՝ կամ ծախելոց է զմեզ բոլորովին, և
'ի չիք դարձուցանելոց զմերս գոյացութիւն (յա-
ւէտ իմն երանելի յայնժամ, քան այժմն թշուառ՝
'ի սակս ունելոյ զանմահ գոյութիւն) և կամ՝
եթէ գոյացութիւն մեր է երկնային, և չկարէ
կորնչիլ՝ չեմք ինչ վատթարագոյն յայն սակս․ զի
'ի փորձոյ գիտեմք զաւականութիւն զօրութեան
մերոյ 'ի խռովեցուցանել զերկինս, և անդուլ
յարձակմամբ դղորդեցուցանել զշանթառաք ա-
թոռ նորա՝ թէպէտև անմատոյց։ Եւ այս՝ թէ և
չիցէ յաղթութիւն, գէթ վրէժխնդրութիւն իմն է[9]։

Վախճանեաց նա զբան իւր, խոժոռեալ
զդէմս․ և տեսիլ նորա ծանոյց զանհնարին
վրէժխնդրութիւն, և զմարտ մահահրաւէր նո-
ցին՝ որոց 'ի ստորև են քան զԱստուածս։ Յար-
եաւ ապա յայնմ կողմանէ Բելիար՝ յաւէտ իմն
շնորհագեղ, և բարեհամբոյր 'ի ցոյցս։ Ոչ ոք
քան զնա գեղադէշ կորոյս զերկինս։ Թուէր իմն
կարգեալ յաստիճան պատուոյ, և յերևելի
գործս։ Բայց բովանդակն էր ստութիւն, և
պատիր խաբէութիւն։ Սակայն բերան նորա
բղխէր զմանանայ[10]․ և կարէր ցուցանել զվատ-

Թարագոյնն փառս կարի իմն գովելի՝ առ 'ի յերկ-
բայս արկանել, և աղաւաղել զխոհական խոր-
հուրդս. զի միտք իւր էին միշտ նուաստախոհ:
Ճարտար էր 'ի մոլութեան անդ, բայց վատ և
յոյլ յազնուական արարս: Սակայն և այնպէս
բանք նորա գտան հաճոյական լսելեաց. որ և
սկսաւ բարբառել օրինակ զայս:

Տէարք, կարի իմն հաւան ցուցանէի ես զանձն
իմ ընդ յայտնի պատերազմ (զի ոչինչ նուա-
զեալ գտանիմ յատելութեան անդ) եթէ բրո-
նադատականն կարծեցեալ փաստ առ 'ի տալ
զանձինս յանյապաղ մարտ՝ ոչ հրաժարեցուցա-
նէր զիս յայնմանէ յաւէտ իմն. և թուէր ինձ լի-
նել չարագուշակ զելից իրացն: Զի նա՝ [11] որ
գերազանցեալ գտանի 'ի զէնս, 'ի խորհրդեան,
և 'ի գայթագայթ պարծանս, հաստատէ զքաջու-
թիւն անձինն յանյուսութեան անդ, և 'ի վերջին
ապականութեան՝ իբրև 'ի կէտ նպատակի համօ-
րէն ձգանց իւրոց զկնի ոխերիմ վրէժխնդրու-
թեանն: Բայց նախ՝ զի՞նչ տեղի կայցէ մեզ խնդ-
րելոյ զվրէժ անձանց: Ո՞չ ապաքէն լի են աշ-
տարակքն երկնից սպառազէն պահնակօք՝ որք ան-
տեղիտալի ընծայեն մեզ զամենայն մուտս: Բա-
զում անգամ բանակեցուցանեն նոքա զլէգէոնս
իւրեանց առ եզերբք անդնդոց, և աներևակ
թևօքն [12] իւրեանց լրտեսեն 'ի բացուստ 'ի թա-
գաւորութեան անդ Գիշերոյ [13], զծագու եկեալ
զմերովք խաբանօք: Իսկ եթէ մարթ իցէ մեզ
բռնի հատանել զճանապարհ, և յարուցանել
զկնի մեր զխաւարային յուզմունս դժոխոց՝ առ 'ի
ստուերացուցանել զանաղօտ լոյսն երկնից, սա-

կաւլին հզօր ախոյեանն մեր՝ անտխեղծ բոլորովին, բազմեսցի յաթոռ իւր սրբափայլ։ Եւ տարրն եթերական՝ անընդդունակ արատոյ, վա՛ղ սրբեսցէ յանձնէ զանարգանսն․ և յաղթանակաւ վտարեսցէ ՚ի բաց զհուր տարտարոսի։ Զ այսօրինակ հալածեալ մեր՝ մնայ մեզ վերջին յոյս անյուսութեանն կորագլուխ։ Եւ այնպէս ունիմք առաւել ևս զայրացուցանել զյաղթականն մեր ամենազօր՝ ՚ի թափել խստառ զցասումն իւր ՚ի վերայ մեր։ Եւ ահա՛ այս է կորուստն մեր, և այն դարմանն մեր, դարմանն ցաւագին։ Զի ո՞ք կամիցի զկորուստն իմանալի գոյացութեանս՝ թէպէտև վըշտակիր, և մնացս՝ որ շըջի ընդ յաւիտենականութիւնն, և ընտրեսցէ կալ անշարժ և անզգայ, կլեալ և ՚ի կորուստ մատնեալ յանպարագիծ որովայնի անստեղծ Գիշերոյ [14]։ Եւ ո՞ իսկ գիտէ՝ թէպէտև ցանկալի իցէ մեզ, թէ ոսոխն մեր ծանրացասումն՝ կարէ՞ արդեօք շնորհել մեզ զայն, և կամ կամի՞ երբէք։ Զիարդն կարողութեան նորա խիթալի տեսանի, իսկ չկամելն երբէք՝ է քաջ հաւաստի։ Քանզի նա՝ որ ամենիմաստն է, կամիցի՞ արդեօք թափել միանգամայն զցասումն իւր․ կամ գէ՞թ առ տկարութեան, և կամ առ ՚ի խաբս ինչ կատարե՞լ զկամս իւրոց թշնամեաց՝ դարձուցեալ ՚ի չիք ՚ի սրտմտութեան անդ իւրում զնոսա՝ զորս սրտմտութիւն իւր ինքնին պահէ անկորուստ յանվախճան ՚ի տանջանս։ Ապակոյն խորհրդատուքն պատերազմի ասեն, ընդէ՞ր կամք դադարեալ․ ահա հատեալ է դատակնիք մեր, և կամք պահեալ և սահմանեալ ՚ի մշտնջենաւոր աղէտս․ զի՞նչ և գործեսցուք, չունիմք ա-

ռուել ինչ կամ վատթարագոյնս կրել։ Այլ մի՛թէ իցէ՞ այս վատթարագոյն ինչ, զի նստեալ կամք աստանօր 'ի խորհուրդ, և ունիմք պատրաստական զզէնս։ Բայց զի՞նչ անցք ահագին անցին ընդ մեզ, յորժամ 'ի փախուստ դարձաք։ Հալածեալ և հարուածեալ սաստկատանջ շանթիւն երկնից՝ խնդրեցաք զանդունդս 'ի պատսպարութիւն անձանց. թուեցան մեզ դժոխքս տեղի ապաւինի յերեսաց հարուածոց. և շղթայակապ արկաք զանձինս 'ի վերայ կիզանողական լճին։ Ո՞չ էր արդարև վատթարագոյնն։ Իսկ զի՞նչ արդեօք լինիցի, եթէ շունչն՝ որ փչեաց յայնժամ զհուրն ահագին, զարթիցէ արդ 'ի բորբոքել զայն եւթնպատիկ առաւել, և ընկղմեսցէ զմեզ 'ի բոց նորա։ Այլ կամ դադարեալ վրէժխնդրութիւնն 'ի վերուստ՝ վերստին զինեսցէ զհրաբորբոք աջ իւր առ 'ի հարկանել զմեզ։ Այլ զի՞նչ, եթէ բացցին շտեմարանք զինուց նորա. և յատակք դժոխոցս բղխեսցեն զհրեղէն հոսանս։ Անշուշտ յաւուր միում թօթափեսցին 'ի վերայ գլխոց մերոց յանկարծահաս արհաւիրք, և ահագին սպառնալիք, այն ինչ 'ի խորհել մեր, և 'ի յորդոր մատուցանել 'ի մարտ յաղթողական, ըմբռնեալ յերեսաց հրեղէն փոթորկի՝ անկցի իւրաքանչիւրք 'ի մէնջ, և հարստեսցի ընդ քարաժայռ իւր՝ 'ի խաղալիկ և 'ի զբօսանս քինախնդիր մրրկաց. և կամ ընկղմեսցի յաւիտեան յեռանդագին Ովկիանոս [15], առ 'ի կալ անդանօր յանդադար հեծութիւնս մշտատանջ, անկարեկից և կորստական ընդ դարս անվախճան։ Նուադիկ այս է վատթարագոյնն։ Վասն որոյ բարբառ բերանոյ իմոյ

տայ մեզ թողուլ 'ի բաց զխորհուրդ մարտի՝ եթէ յայտնի, և եթէ անյայտ ։ Զի զինչ զօրութիւն կամ դաւաճանութիւն կարող է ստնանել նմա ․ և կամ ո՞ւմ ումեք հնար է պատրել զմիտս նորա՝ որոյ աչք զամենայն ինչ տեսանեն միանգամայն ։ Որ 'ի բարձանց երկնից 'ի միտ առնու զամենայն մնոտի խորհուրդս մեր, և ծիծաղի զնոքօք ։ Ո՛չ նուազ ամենազօր է նա առ 'ի զդէմ ունել մերում զօրութեան, քան որչափ ամենիմաստ առ 'ի հանել 'ի դերև զմեքենայս մերում միաբանութեան ։ Իսկ արդ [16] կացցուք ծնունդքս երկնից այսպէս անարգեալ, այսպէս կօխան ոտից և վտարեալ՝ առ 'ի կրել սաստանօր զկապանս և զտանջանս ։ Ընտրելագոյն [17] են այսոքիկ ըստ իմում կարծեաց ․ զի ճակատագիրն անհրաժեշտ նուաճեցուցանէ զմեզ ընդ ձեռամբ ․ և կամքն յաղթականին է վճիռ նորա ամենազօր ։ Զօրութիւն մեր միօրինակ գտանի 'ի կրել անդ և յառնել ։ Իսկ օրէնքն՝ որ հրամայեն այսպէս, չեն ինչ անիրաւ ։ Զայս պարտ էր մեզ ընտրել զառաջինն, եթէ իմաստուն լինէաք յանձինս 'ի հակառակել անդ ընդ հզօր թշնամւոյն, և յանստուգութեան մերում զելից իրացն ։ Բայց ես 'ի ծաղր չարժիմ, տեսեալ զորս խիզախեն 'ի նիզակ, և դիմագրաւ լինին՝ 'ի վատթարանալ իւրեանց լքանիլ, և երկնչել յայնմանէ՝ զոր քաջ գիտեն զհետ գալ հաւաստեաւ, զյանձնառութիւն սաստ աքսորանաց, նախատանաց, կապանաց և տանջանաց՝ ըստ վճռոյ յաղթականին ։ Իսկ արդ՝ այս է աւադիկ դատակնիք մեր ։ Եթէ համբերութեամբ տանիմք այսմ, թերևս գերագոյն ոսոխն մեր զկնի ժամա-

նակաց զիջցի ոչ սակաւ ՚ի բարկութենէ իւրմէ. և ոչ ևս յիշեսցէ զմեզ ՚ի տարագրութեան մերում, եթէ ոչ յաւելցուք յանցանել առ նա վերստին, շատացեալ ընդ պատիժս՝ զոր էած ՚ի վերայ մեր ։ Եւ այնպէս շիջցի կատաղութիւն հրոյս, եթէ փչումն նորա ոչ բորբոքեսցէ զբոց նորա միւսանգամ ։ Եւ յայնժամ գոյացութիւն մեր մաքրափայլ՝ մերժեսցէ յանձնէ ՚ի բաց զգոլորշիս նորա ապականարար ։ Կամ զգեցեալ զպնդութիւն՝ ոչ ևս զգայցէ ։ Եւ կամ փոփոխեալ զկնի, և յարմարեալ զբնութիւն իւր ընդ տեղւոյն՝ ընտելասցի ընդ սաստկութիւն հրոյն, և ազատ գտցի ՚ի ցաւոց ։ Մեղմասցին արհաւիրքն, և լուսաւորեսցի խաւարն ։ Թողում զյոյսն՝ զոր մարթ է բերել մշտաշարժ թևոց աւուրցն ապառնեաց, որպէս և դիպուածոյ, կամ փոփոխութեան՝ արժանի ակնկալութեան ։ Քանզի և վիճակ մեր առաջիկայ զերանութեան ունի զտեղի. զի թէպէտև վատթար է, այլ ոչ վատթարագոյն, միայն թէ ոչ ելցուք մեք ՚ի խնդիր առաւելագոյն թշուառութեան անձանց [18] ։

Այսօրինակ սեթևեթեալ փաստիւք ետ խորհուրդ Բելիար ՚ի խնդիր լինել անարգ հանգստեան, և անդորր վատութեան, այլ ոչ խաղաղութեան ։ Եւ զկնի նորա խօսեցաւ Մամոն՝ օրինակ զայս ։

Կամ առ ՚ի ընկենուլ զարքայն երկնից յաթոռոյ իւրմէ՝ կամիմք զպատերազմն, եթէ իցէ ընտրելագոյն, և կամ առ ՚ի ստանալ զիրաւունս մեր՝ զոր կորուսաք ։ Բայց ընկենուլն զնա յաթոռոյ իւրմէ յայնժամ էր մեզ յուսալի, եթէ ճակատագիրն յաւիտենական տայր տեղի մշտափո-

փոխ դիպուածոյ, և Վիհն 19 լինէր դատաւոր մե-
րուած խնդրոյ: Վասն որոյ մնոտի յոյս առաջնոյն
ցուցանէ և զընդունայնութիւն երկրորդին: Ո՜վ
զի՞նչ տեղի մարթ է մեզ գտանել յերկինս, եթէ
ոչ նուաճեսցուք յառաջագոյն զգերագոյն Տէր
նորա: Դիցուք, թէ զկնի խոստանալոյ մեր վերս-
տին զհպատակութիւն՝ ունի նա զիջանել, և շնոր-
հել մեզ զյանցանս: Բայց որո՞վ դիմօք հնար է
ներգևելոցս կալ առաջի նորա, և առնուլ յանձն
զխստութիւն օրէնսդրութեան նորա 'ի բարձրա-
ցուցանել զաթոռ նորա գեղգեղաձայն բարբա-
ռովն օրհնութեան, և երգել նմին յակամից
կամս զերգս բարեբանութեան՝ այն ինչ բազմեալ
կայ նա իշխան և տէր նախանձարկու, և սեղան
նորա բուրէ զանուշահոտութիւնս ծաղկանց՝ ըզ-
մերս ծառայական նուիրաց: Այս եւեթ պարտ է
լինել գործ մեր յերկինս, և սոյն զուարճութիւն՝
թէ զիա՞րդ անցուսցուք զձանձրոյթ յաւիտենա-
կանութեան 'ի պաշտաման անդ ընծայեալ նմին,
զոր ատեամքս: Արդ՝ մի՛ անհնարաւոր զօրու-
թեամբ, և կամ անհաճոյ թոյլտուութեամբ ըզ-
հետ պնդեսցուք չքնաղ ծառայութեան՝ թէպէտև
յերկինս. այլ յաւէտ յանձանց մերոց խնդրես-
ցուք զբարիս, և կեցցուք անձանց՝ թէպէտև յա-
հագին խորխորատիս, ազատութեամբ, և առանց
տալոյ պատասխանի ումեք: Լաւել ընտրեսցուք
զխստութիւն ազատութեան, քան զանդորրու-
թիւն լծոյ ծառայական շքոյ: Մեծութիւն մեր
առաւել ևս շքեղ փայլեսցի, եթէ գիտիցեմք
հայթհայթել զմեծամեծս 'ի փոքունց, զպիտանիս
'ի չնաստակարաց, և զյաջողակս 'ի հակառակաց

անտի . և ամենայն ուրեք երջանկանալ ընդ թշ-
ուառութեամբքս , և գտանել զդիւրութիւն յե-
րեսաց վշտաց 'ի ձեռն վաստակոց և անդորութեան ։
Ո՛չ եթէ 'ի խաւարէ անտի տարտարոսական աշ-
խարհիս երկնչիմք ։ Ո՞չ ապաքէն ամենիշխան ար-
քայն երկնից բազում անգամ ընտրէ զբնակու-
թիւն իւր 'ի թխպագին բազմախիտ ամպս՝ առանց
մթացուցանելոյ երբէք զփառս իւր . և զաթոռ
իւր պարածածկէ մեծվայելչութեամբ խաւարի [20].
յորմէ ահագին որոտմունք գոչիւնս արձակեն 'ի
սրտմտութեան անդ . և երկինք համարին դժոխք ։
Ո՛չ եթէ որպէս նա զմերոյս խաւարի՝ ո՞չ կարեմք և
մեք բերել զնմանութիւն լուսոյ նորա , յորժամ
կամք են մեզ ։ Այս անապատ տեղի ոչ է թա-
փուր 'ի ծածկեալ չքնաղ մթերից իւրոց՝ յա-
կանց պատուականաց և յոսկւոյ . և մեք չեմք ինչ
անբաժին 'ի մտաց հանճարոյ և 'ի ճարտարութե-
նէ՝ առ 'ի երևեցուցանել զմեծագործութիւնս
մեր ։ Իսկ զի՞նչ առաւել մարթ է ցուցանել երկ-
նից ։ Հնար է վշտացս երկարութեամբ ժամանա-
կի անցանել 'ի բնութիւն . և թափանցանց հրոյս
մեղմանալ , և մերումս բնութեան փոխիլ 'ի նո-
րայն . և այնպէս ոչ ևս զգալ զցաւս ։ Արդ՝ ա-
մենայն ինչ հրաւէր լինի մեզ 'ի խորհուրդ խաղա-
ղութեան , և 'ի հանդարտութիւն՝ առ 'ի կարող
լինել դարման մատուցանել առաջիկայ չարեացս,
հայեցեալ 'ի վիճակն՝ յորում կամք , և էաք եր-
բեմն . և թողուլ 'ի բաց զամենայն խորհուրդս
պատերազմի ։ Այս են ահա իմ կարծիքք ։

Չև էր աւարտեալ նորա զբանսն , և ահա այն-
պիսի իմն շշնջիւն ելից զատեանն՝ որպիսի է տեսա

ճել 'ի սատակաշունչ հողմոցն հնչիւն յընդմիտանել
նորա 'ի բաւիղս քարանձաւաց: Որոյ զգիշերն
աղջոյն սաստիկ տանջեալ զծովն՝ 'ի կերկերեալ
յանգ իւր 'ի նինջ խոնարհեցուցանէ զնաւաստիս
յարթմնի, որոց նաւակ կամ մակոյկ զկնի ալե-
կոծութեանն խարսխեալ կայ 'ի լեռնապատ նա-
ւահանգստի անդ: Զայսօրինակ հնչիւն զովու-
թեան լսելի եղև 'ի վախճանել անդ Մամմոնի
զբանն իւր. և վճիռ բանից նորա ազդարար հան-
դարտութեան՝ գտաւ ընդունելի ամենեցուն. զի
խիթային առհասարակ՝ զուցէ միւս ևս ճակատա-
մարտ չարագոյն գտցի քան զդժոխս: Այսչափ
ահա՛ արհաւիրքն շանթի, և սուրն Միքայելի
մտեալ էին խորաթափանց 'ի սիրտս նոցա. և
տային նոցա անձկանօք 'ի խնդիր լինել թագա-
ւորութեան անդնդոց. որում մարթ էր զկնի
ժամանակաց ախոյեան հանդիսանալ հակառակ
երկնից:

Իբրև 'ի միտ էառ զայն Բէեղզեբուղ՝ որ զկնի
Սատանայի գահերէց էր ամենեցուն, եկաց յո-
տին՝ պատկառելի 'ի դէմս. և 'ի յառնել իւրում
թուէր լինել հզօր նեցուկ անդնդային տէրու-
թեան: Դրոշմեալ կային խորագոյն 'ի ճակատու
նորա քաջ կշռութիւն, և խնամք հասարակաց:
Իշխանականն խորհուրդ՝ թէպէտև խաթարեալ,
տակաւին երևէր վեհափառ 'ի դէմս նորա: Կայր
քաջ արձանացեալ Ատլանտեան 21 ուսովքն՝ որք
քաջադէպ էին 'ի բառնալ զբեռն ծանրութեան
հզօր ինքնակալութեանց: Տեսիլ նորա ձգեաց
զամենեսին 'ի հանդարտութիւն ունկնդրութեան՝
իբրև զգիշեր կամ զօդ միջօրեայ յամառային:

Եւ նա սկսաւ բարբառել առ նոսա՝ օրինակ զայս։

Աթոռք, ինքնակալ Տէրութիւնք, արփիական Զօրութիւնք, և Ծնունդք երկնից. արդ ար-ժա՞ն իցէ մեզ ողջոյն տալ հրաժարական այսոցիկ վերտառութեանցս, և փոխեալ զանուանս մեր՝ կոչիլ իշխանս դժոխոց։ Քանզի յայս խոնարհի ռամկականն իղձ կամաց՝ յարմանալ աստանօր, և կանգնել զինքնակալութիւն բարգաւաճ։ Եւ կարծ իսկ քաջ, եթէ կամք յանուրջս, և չառնումք 'ի միտ՝ թէ. արքայն երկնից սահմանեաց զայս վայր 'ի բանտ մեր, և ոչ յանքոյթ տեղի յերեսաց զօրութեան բազկի նորա՝ ազատ գոլով 'ի գերա-գոյն իշխանութենէ նորա, և կազմել 'ի նորոգ դաշնակցութիւն ընդ միմեանս հակառակ աթոռոյ նորա։ Այլ կարգեաց զմեզ՝ թէպէտև այնչափ հեռի 'ի նմանէ, կալ 'ի խիստ կապանս ընդ ան-հրաժեշտ կորանօք, և պահիլ յառաւելութիւն թուոյ գերեաց նորա։ Քանզի եթէ 'ի բարձրու-թեան անդ, և եթէ 'ի խորութեան՝ կամի նա տակաւին իբրև առաջին և վերջին արքայ թագա-ւորել առանձինն, և չկորուսանել զմասն ինչ յիւրմէ թագաւորութենէ մերովս ապստամբու-թեամբ։ Մանաւանդ զի խնդրէ ընդարձակել զիշխանութիւն իւր 'ի վերայ դժոխոցս, և հովուել զմեզ աստանօր գաւազանաւ երկաթեաւ՝ որպէս ոսկեղէն զօրս են յերկինս։ Արդ՝ զի՞ ևս կամք 'ի խորհուրդ հաշտութեան, կամ պատերազմի։ Պատերազմն խորտակեաց զմեզ անհնարին կորս-տեամբ, և նկուն արար. և ընդ խորհուրդն հաշ-տութեան տակաւին ոչ ոք հաւան գտանի, կամ խնդրէ զայն, զի զի՞նչ ակնկալութիւն կայցէ զե-

րեացս 'ի նմանէ, բայց խիստ պահպանութեան, հարուածոց և տանջանաց ըստ կամի։ Այլ զի՞նչ նշան հաշտութեան մարթ է մեզ ցուցանել նմա, եթէ ոչ զատելութիւն և զթշնամութիւն ըստ կարի, և զհակառակութիւն և զվրէժխնդրութիւն անողորքելի։ Այլ թէպէտ անագան, բայց միշտ սովին միաբան խորհրդով թէ և տացուք յաղթականին սակաւուք ևեթ ժողովել զարդիւնս իւրոց յաղթութեանց, և սակաւուք ուրախանալ ընդ պարտութիւն մեր։ Ո՛չ պակասեսցեն մեզ առիթք յայս սակս. և չե՛ն մեզ պէտք յանդուգն արշաւանաց յերկինս՝ որոյ բարձրաբերձ պարիսպք չերկնչին երբէք յերեսաց յարձակման, կամ պաշարման, և կամ դարանաց անդնդոցս։ Այլ զի՞նչ ապա, եթէ գտցուք զդիւրին իմն ձեռնարկ մերումն վրէժխնդրութեան։ Ահաւասիկ ըստ հին զրուցաց կամ մարգարէութեանց յերկինս [22] գտանի տեղի ինչ՝ միւս ևս աշխարհ, կարգեալ յերջանիկ բնակութիւն նորոգ զարմի՝ որ կոչի Մարդ. որ և հանդերձեալ է զայսու ժամանակաւ արարչագործիլ իբրև զմեզ։ Այլ թէպէտ նուազ գտանի նա 'ի զօրութեան անդ և յառաւելութեան, սակայն մեծապէս խնամարկեալ է 'ի նմանէ՝ որ ունի զիշխանութիւն 'ի բարձունս երկնից։ Այսպիսի էր ծանուցեալ կամք նորա 'ի մէջ Աստուածոց, և հաստատեալ երդմամբն՝ որ դողացոյց զերկինս։ Արդ՝ փութասցուք անդր առ 'ի գիտել, թէ զի՞նչ արարածք են 'ի նմա. զի՞նչ գոյացութիւն նոցա, զի՞նչ կերպարանք, զի՞նչ առաւելութիւն, և զի՞նչ զօրութիւն։ Յորում արդեօք կայցէ տկարութիւն նոցա. և ի՞ւ մարթ

իցէ մեզ քաջ ևս փորձել զնոսա՝ զօրութեամբ , եթէ հնարիւք ։ Թէպէտև փակեալ կայցեն երկինք առաջի մեր , և գերագոյն Տէր նոցա նստցի անքոյթ յաթոռ զօրութեան իւրոյ , սակայն մարթ է այսր անդրոյ բացեալ կալ առաջի մեր իբրև զվերջին սահման թագաւորութեան նորա , թողեալ 'ի պահպանութիւն նոցին որոց ունին զնա ։ Թերևս անդանօր հնար իցէ մեզ տանել 'ի գլուխ գործ ինչ երևելի՝ անակնկալ յարձակմամբ ։ Կամ կործանել զարարածս նորա 'ի հուր դժոխոցս , և կամ 'ի ձեռս բերել զնոսա իբրև զսեպհական ստացուածս մեր . և վտարել անտի ըստ մերումս օրինակի զդուզնաքեայ բնակիչսն ։ Ապա թէ ոչ՝ գէթ ձգել զնոսա առ մեզ ։ Մինչև թըշնամացեալ ընդ նոսա Աստուծոյն իւրեանց՝ ջընջեսցէ զարարածս իւր զղջացեալ ձեռօք ։ Նուաւել գտցի այս քան զսովական վրէժխնդրութիւն. և հատցէ զխնդութիւն նորա ընդ պարտութիւն անձանց մերոց . և ցնծութիւն մեր բարձրասցի 'ի նախատինս նորին , այն ինչ որդիք նորա սիրելիք գահավէժ անկեալ 'ի հաղորդութիւն ընդ մեզ՝ նզովեսցեն զտկարութիւն բնութեան իւրեանց , և զդիւրաթառամ կորուստ երջանկութեան իւրեանց ։ Արդ՝ աղէ քաջ 'ի միտ առէք , յայս արդեօք արժան իցէ մեզ ձեռն արկանել ; եթէ նըստեալ աստանօր 'ի խաւարի՝ տածել 'ի միտս զմնոտի թագաւորութիւնս ։ Զայսօրինակ ծանոյց Բէեղզեբուղ զդիւական միտս իւր . զոր և զառաջինն խորհեալ էր Սատանայի , և ծանուցեալ սակաւուք . զի յումմէ, բաց 'ի հօրէն ամենայն չարեաց , մարթ էր ծնանիլ այսպիսի խորհրդոց ապիրա-

տուԹեան 'ի կորուսանել զազգ մարդկան 'ի բնի իւրում, և վեր 'ի վայր շրջել զերկինս և զերկիր 'ի նախատինս արարչապետին ։ Բայց տակայն նախատինք նոցա տակաւին ձեռնտու լինէին յաճումն փառաց նորա [23] ։ Խորհուրդն յանդգնութեան հաճոյ գտաւ յոյժ յաչս սանդարամետական իշխանացն, և փայլումն խնդութեան բացածանուցաւ յերեսս նոցա ։ Ամենեքին ձեռն ետուն հաւանութեան. և նա վերստին կրկնեաց զբան իւր առ նոսա՝ օրինակ զայս ։

«Քա՛ջ խորհեցայք, և քա՛ջ լուծիք զխնդիրն երկարատև՝ ժողովդ Աստուածոց ։ Որ և 'ի նախատինս ճակատագրի հանդերձեալ է ամբառնալ զմեզ 'ի ստորին խորխորատէս հպաւորագոյնս առնախկին բնակութիւն մեր. Թերևս հանդէպ սահմանացն լուսոյ՝ ուստի մերթ իջէ մեզ առընթեր զինուքն, և բարեբաստիկ արշաւանօք դիմագրաւ լինել յանդրէն մուտ յերկինս. և կամ բնակել 'ի գօտի բարեխառն [24]. և առ երի պայծառ ճառագայթից ելիցն արևու փարատել յանձանց զմէգն մթութեան. և քաղցրութեան օդոյն զուարճութեան անդամոր շնչել զբալասան [25] 'ի բուժումն վիրացս յերեսաց կիզանող հրոյն ։ Բայց նախ՝ զո՞ առաքեսցուք 'ի խնդիր նորոյ աշխարհիդ. ո՞ գտցէ բաւական առ այս. ո՞ փորձեսցէ վտարանդի ոտամբն զաղջամղջին, զանյատակ և զանսահման խորս. և ընդ խաւար շօշափելի գտցէ զիւր ճանապարհ անփորձ ։ Եւ կամ անխոնջ թևօքն վեր ամբարձեալ՝ ձգեսցէ զօդային թռիչս իւր ընդ ընդարձակութիւն անդնդոցն, մինչև է նորա ժամանել 'ի կղզին երանութեան [26] ։ Եւ յայնժամ

որպիսի՛ զօրութեան, որպիսի՛ ճարտարութեան, և որպիսի՛ փախստեան հնար է բաւական լինել առ 'ի անցուցանել զնոսա աներկեւան ընդ անձուկ պահպանութիւնս, և ընդ խիտառախիտ կայանս հրեշտակացն պահանորդաց շուրջանակի: Ընդանօր պէտք են նմա կարի իմն զգուշութեան, և մեզ աստ քաջ ընտրութեան յարկանել անդ զքուեայս. զի բեռն ողջոյն ծանրութեան, և յոյս մեր վերջին եդեալ կան 'ի վերայ նորա՝ զոր առաքեմք:

Նա զայս ասացեալ բազմեցաւ. բայց ակնկալութիւնն ունէր 'ի կախ զդէմս նորա. զի մնայր տեսանել, թէ ո՛ հաւան գտցի, կամ զդէմ կացցի, և կամ յանձն առնուցու զփորձն բազմավտանգ: Սակայն ամենեքին կային անմռունչ, կշռեալ զվտանգն խորին խորհրդով: Նա ամենայն ոք յապուշ կրթեալ՝ վերծանէր զանձին երկիւղ 'ի դէմս այլոց: Ո՛ի ոչ ոք յընտրելոց անտի և յառաջնոց երկնամարտ նահատակաց գտաւ դիմագրաւ, և կամ յանձն էառ առանձինն զայն ճանապարհ ահագին: Մինչև զկնի Սատանայ՝ զոր մեծութիւն աստիճանին բարձրացուցեալ էր յայնժամ դեր 'ի վերոյ քան զընկերս իւր, ըստ արժանեացն խօսեցաւ անվեհեր՝ օրինակ զայս:

Ո՛վ ծնունդք երկնից, և Աթոռք հրեղէնք. կարի յիրաւունս ըմբռնեալ կամք 'ի խոր լռութիւն և 'ի տարակուսանս, թէպէտև եմք աներկիւղ. զի կարի երկայն է և դժուարակոխ ճանապարհն՝ որ 'ի դժոխոցս տանի 'ի լոյսն վերին: Բանտ մեր ամրափակեալ կայ. և ահագին կամարն մոլեգին և լափլիզող հրոյս պարիսպ արկեալ ունի

զմեօք յիննապատիկ․ և դրունք կիզանող աղամանդ-դիս փակեալ առաջի մեր՝ արգելուն մեզ զամենայն անցս։ Այլ թէ և անցցէ ոք ընդ սոսա, սակայն զկնի ընդունի զնա դատարկ խորութիւնն անդոյ Պոիշերի՝ [27] բացեալ ահագին զբերան իւր․ և սպառնայ նմին զվերջին սատակումն կորստեան՝ խորասուզեալ յանկերպարան անդունդս [28]։ Իսկ եթէ փախստեայ գնասցէ անտի յայլ աշխարհ կամ գաւառ անծանօթ, զի՞նչ նուազ մնայ նմին քան զվտանգն անծանօթ, և դժուարին քան զփախուստն։ Այլ ես՝ Տեա՛րք, ոչ ըստ արժանեաց ունէի զայս աթոռ ինքնակալութեան՝ շքեղազարդ-փառօք, և քաջազէն զօրութեամբ, եթէ յար-դարացի առաջարկութեան անդ կամ 'ի խորհր-դեան յօգուտ հասարակաց՝ առ դժուարութեան կամ վտանգի ցուցանէի զերկիւղ առ 'ի տալ զանձն դիմագրաւ։ Այլ ընդդէմ իսկ ընդունիմ զարքայականդ պատիւ, և ոչ հրաժարիմ 'ի թա-գաւորելոյ՝ եթէ չառնում յանձն զմեծութիւն վտանգին՝ որպէս զպատուոյն․ զի երկոքին ևս պատկանաւոր են արքայի․ և այնչափ առաւել մեծութիւն վտանգին, որչափ բարձրապատիւ նստի նա քան զայլս [29]։ Վասն որոյ՝ հզօր զօ-րութիւնք, և ահարկուք երկնից՝ թէպէտև կոր-ծանեալք, երթայք դուք, և մօտ դիք առ տնին՝ ցորչափ պարտ է լինել աստանօր մերումն բնա-կութեան, թէ զիարդ մարթ իցէ ձեզ նուազե-ցուցանել մասամբ զայժմու աղէտս, և դիւրատար ընծայել զդժոխս․ միայն թէ կայցէ դարման կամ թոյլչութիւն 'ի մեղմել, 'ի դիւրել և 'ի թեթևա ցուցանել զանտանելի վիշտս անդնդային բնակու-

թեանս ։ Մի՛ զանց առնէք զպահպանութեամբ ընդդէմ անքուն ականն, մինչդեռ ես շրջիմ արտաքոյ յամենայն վտանգս խաւարային կորստեան՝ 'ի խնդիր մերում ազատութեան ։ Յայս գործ մի՛ ոք լիցի ինձ օգնական ։

Զայս ասացեալ՝ յարեաւ յաթոռոյ իւրմէ ինքնակալն, և իմաստութեամբ ոչ եթող տեղի պատասխանւոյ նոցա. զի կասկածէր, գուցէ այլք 'ի գլխաւորացն շարժեալ յընտրութենէ նորա՝ անձնանուէր գտցին (թէպէտև չառնոյր նա յանձն) յայն ինչ, յորմէ երկեան զառաջինն ։ Այլ 'ի մերժել նորա զնոսա՝ 'ի նախանձ շարժեացին 'ի միտս իւրեանց. և այնպէս թերևս դիւրաւ ստացին զանուն քաջութեանն՝ զոր պարտ էր նմա գտանել յահագին վտանգս ։ Սակայն նոքա ոչ այնչափ երկնչէին 'ի վտանգաց անտի, քան որչափ 'ի բարբառոյ հրամանաց նորա ։ Վասն որոյ և յարեան միահաղոյն ընդ նմա ։ Այլ 'ի յառնել նոցա հնչիւն լսելի լինէր իբրև որոտման 'ի հեռաստանէ ։ Խոնարհեցան առ նա երկիւղալից յարգանօք, և իբրև զԱստուած մեծացուցին զնա հաւասար Բարձրելոյն յերկինս ։ Այլ ծանուցին ևս նմա զպատճառն այնչափ մեծարանաց իւրեանց. զի 'ի փրկութիւն հասարակաց առ ոչինչ գրէր նա ըզկեանս իւր ։ Քանզի դատապարտ հոգիք ոչ կորուսանեն երբէք բովանդակապէս զքաջութիւնս իւրեանց. զի մի՛ չարասէրք 'ի մարդկանէ պարծեսցին ընդ երևելի արարս իւրեանց յերկրի. առ որս փառքն կամ գաղտնի պատուասիրութիւնն յորդոր լինին նոցա՝ սեթևեթեալ արտաքուստ նախանձայուզութեամբ ։ Զայսօրինակ հանին 'ի

գլուխ զխիթալի և զխաւարային խորհուրդս իւր-
եանց՝ խորախացեալք ընդ անզուգական առաջ-
նորդ իւրեանց։ Որպէս յորժամ ամբարձեալ
մթագին ամպոց 'ի գագաթանց լերանց՝ այն ինչ
ննջեալ կայ հողմն հիւսիսոյ, ծածկեն զգեղա-
զուարճ երեսս երկնից, և օդն ստորանկեալ տե-
ղայ զձիւն և զանձրև 'ի վերայ տխրագին դաշ-
տաց՝ եթէ յանկարծակի լուսափիւռ արեգակն
քաղցր ողջունիւ տարածանէ զճառագայթս իւր
երեկորին, դաշտքն զուարթանան, թռչունք նո-
րոգեն զբարբառս իւրեանց, և խաշինք արձակեն
զխնդագին ձայնս մինչև հնչել լերանց և հովտաց
առհասարակ։ Նոյն ամաչեցեն մարդիկ, զի Սա-
տանայ պահէ ընդ դատապարտեալ Սատանայի
զանքակ միաբանութիւն. և մարդիկ միայն 'ի բա-
նաւորաց անտի ոչ միաբանին ընդ միմեանս,
թէպէտև կան ընդ յուսով երկնային շնորհաց։
Այս թէպէտ Աստուած՝ խաղաղութեան լինի նո-
ցին ձայնատու, սակայն և այնպէս կեան ընդ մի-
մեանս ատելութեամբ, թշնամութեամբ և հակա-
ռակութեամբ. և մղեն զանհնարին պատերազ-
մունս 'ի սատակումն իրերաց, և յապականութիւն
երկրի։ Որպէս թէ չունէր մարդն ըստ բաւակա-
նին զդժոխային թշնամիս իւր՝ որք զտիւ և զգիշեր
սպասեալ մնան կորստեան նորա։ Նոյն երանի թէ
սովին իսկ ձգեաք 'ի միաբանութիւն ընդ մի-
մեանս[30]։

Ժողովն Ստիւգեան[31] աւարտեցաւ զայսօրի-
նակ. և մեծամեծ աւագանին դժոխոց ելին ար-
տաքս զկնի միմեանց։ Գերագոյն իշխան նոցա
ունէր զմիջին տեղին. և գերապանծ փառօքն, և

աստուածակերպ վայելչութեամբ՝ զոր կերպարանեալ էր յանձին, թուէր առանձին ինն ախոյեան երկնից՝ ոչինչ ընդհատ յաւէտ ինքնակալէ դժոխոց ։ Պսակք ինչ հրեղէն Արուսեկից շուրջ պատեալ էր զնովաւ լուսաճաճանչ նշանակօք , և ահագնատեսիլ զինուք ։ Հրաման ետուն ապա հրատարակել 'ի ձայն արքայական փողոյ զյաջողակ եւս կատարման ժողովոյ իւրեանց ։ Զօրեքին երագընթաց Քերովբէք ուղղեալ զանձինս առ չորեսին հողմս՝ եդին 'ի բերանս իւրեանց զքաջահնչող փողսն , և ծանուցին զբարբառ քարոզին ։ Լուան զայն 'ի հեռաստանէ սանդարամետք անդնդոց . և համօրէն զօրութիւնք դժոխոց ետուն մեծաձայն զարձագանգս իւրեանց ։ Իսկ ապա զկնի ոչ սակաւ հանդարտութեան խորհրդոց իւրեանց , և քաջալերութեան ընդ մնոտի յոյսն յանդգնութեան՝ արձակեցան զօրքն ճակատեալ . և յածեալ աստ և անդ՝ կալան այր իւրաքանչիւր զիւր ճանապարհ , յոր կողմն և յօժարութիւն կամաց իւրեանց , կամ ցաւագին ընտրութիւնն ձգէր զնոսա . զի տարակուսեալ էին յանձինս , թէ ուրանօ՞ր արդեօք մարթ իցէ նոցա գտանել յաւէտ զհանգիստ մշտատագնապ խորհրդոց իւրեանց , և անձանձրոյթ անցուցանել զժամանակն՝ մինչև ցանդրէն դարձ իշխանապետի իւրեանց ։

Ոմանք 'ի դիւրի , կամ յօդս վերին՝ 'ի թռիչս և յերագութիւն ընթացից զմրմեամբք ելանէին , որպէս յՈղիմպիական [32] խաղս , կամ 'ի Պիւթեան [33] դաշտավայրս ։ Իսկ ոմանք զհրեղէն նժոյգս իւրեանց սանձակօծեալ մղէին . կամ երագընթաց անուօքն խոյս տային 'ի նպատակէ անուի ձիընթա-

ցից․ և կամ ճակատեալ խուժիւ կազմէին։ Որ-
պէս յորժամ առ ՚ի խրատ քաղաքացն ամբար-
տաւանութեան մրցմունք մարտից երևէին ՚ի խառ-
նակութեան անդ օդոց, և բազխմունք զօրաց
յամպս՝ յառաջքան զօղային ասպետս յառաջա-
պահ գունդքն շահատակեն, և արձանացուցանեն
զնիզակս իւրեանց՝ մինչև ցհասանել ՚ի վերայ
ստուար Լեգէոնացն․ և շարժմամբ զինուց իւ-
րեանց ՚ի ծագաց երկնից զեթերն բոցակիզեն [34]։
Նայք կարի իմն զայրացեալ անհնարին մոլեգնու-
թեամբն Տիւփեայ՝ [35] զքարաժայռս և զլերինս
հերձանէին․ և ընդ օդն մրրկախառն ընթանային․
և դժոխք չէին բաւական տանել աղաղակի նոցա։
Որպէս յորժամ Աղկիդէս [36] պսակեալ յաղթա-
նակաւ յՈխաղիա [37] էարկ զիւրև զպատմուճանն
թունաւոր, առ անհնարին ցաւոց անձինն խլեաց
յարմատոց զԹեսաղեան [38] սարոյս, և զԼիքաս [39]
ընկէց ՚ի գագաթանց Իտայ [40] ՚ի ծովն Եւբեան [41]։
Իսկ այլք յաւէտ հեզահամբոյրք մեկուսացեալ
յառանձին հովտի՝ ՚ի հնչիւն քնարաց և հրեշտա-
կային բարբառոյ նուագէին զդիւցազնական շա-
հատակութիւնս իւրեանց, և զողորմ կործանումն
զկնի կորստական մարտին․ և աշխարհէին զազատ
առաքինութեանն զգերութիւն ընդ բռնակալու-
թեամբ դիպուածոյ կամ ճակատագրի։ Երգ
նոցա էր յառանձին վայրի․ բայց երաժշտակա-
նութիւնն՝ որում անմարթ էր նուագ լինել յերգս
անդ անմահական հոգւոց, կալեալ ունէր զդժոխս,
և կրթէր ՚ի զարմանս զխուժանն ունկնդրաց։
Այլք առանձինն նստէին ՚ի վերայ բլրոյ՝ տուեալ
զանձինս ՚ի զուարճութիւն բանից․ զի երգք զզգ-

գայութիւնս ընկերեցուցանէին , իսկ քաղցրութիւն պերճախօսութեան զմիտս ։ Եւ կարի իմն նրբացեալ 'ի խորհուրդս իւրեանց՝ խորագոյն բանս 'ի մէջ առնուին յաղագս նախախնամութեան , յառաջգիտութեան , և նախասահմանութեան . որպէս և յաղագս անփոփոխ ճակատագրի , ազատութեան կամաց , և անհրաժեշտ նախագիտութեան ։ Եւ կորուսեալ 'ի բաւիղս մոլորութեանց՝ չգտանէին զելս խնդրոց իւրեանց [42] ։ Եւ ապա բազում ինչ խօսեցան յաղագս երջանկութեան , և յետին թշուառութեան . յաղագս կրից , և անկրականութեան . յաղագս փառաց , և ամօթոյ ։ Եւ էին բանք նոցա առհասարակ մնոտի ճարտարութիւն , և ընդունայն իմաստասիրութիւն [43] ։ Սակայն և այնպէս քաղցր թովչութեամբ ձեռնտու եղեն թմբեցուցանել առ վայր մի զվիշտս և զցաւս նոցա . զարթուցանել 'ի նոսա զյոյս մնոտեաց , և կամ պնդացուցանել զխստութիւն կամակոր սրտից նոցա երիցս կարծրակուռ քան զպողովատիկ ։ Եւ այլք յանդգնաբար դիմեալ խմբովին 'ի գիւտ ընդարձակ երկրի 'ի տարագնաց վայրս ( միայն թէ լինէր նոցա գտանել անդորր բնակութիւն ուրեք ) ընդ քառեակ ճանապարհ ձգեցին զթռիչս իւրեանց յերկայնութեան անդ չորեցունց սահմանաբաժանական գետոց՝ որք զժանտաբեր առաջս իւրեանց թափեն 'ի կիզանողական լիճ ։ Եւ են սոքա՝ Ստիւգս [44] զարշահոտ , հեղեղ մահաբեր ատելութեան ։ Աքերոն [45] վշտագին ցաւոց , խաւարչտին և անդնդախոր ։ Կոկիւտոս [46] ընկալեալ զանուն յողբոց անտի՝ որք մեծակական լսին 'ի վերայ հոսանացն

տղխտից ։ Նաև Փղեգեթոն [47] ամեհի հրոյն՝ որոյ հեղեղասասատ ալիք ուժգին բորբոքին ։ Լեթ՝ [48] գետ մոռացութեան, հեռագոյն հոսեալ 'ի սոցանէ լռիկ և հանդարտաձեմ՝ պատի ընդ ոլորտս իւր ջրեղէն ։ Նաև որ միանգամ ըմպէ 'ի նմանէ, անդէն և անդ 'ի մոռացօնս արկանէ զվիճակ իւր զառաջին և զկեանս, զուրախութիւն և զտրտմութիւն, զբերկրութիւն և զվիշտս ։ Յայնկոյս գետոյս անկեալ կայր երկիր սառնապատ՝ մխրատեսիլ և ամայի, մշտաբաղխ յերեսաց մրրկածին փոթորկաց, և ապականագործ կարկտի՝ որ ոչ հալի երբէք, այլ դիզացեալ 'ի վեր՝ զօգցես աւերակ ինչ երևի վաղեմի շինուածոց ։ Իսկ զայլ տեղիս պատեալ ունէր առհասարակ ձիւն և սառն բարձրադէզ և անդնդախոր՝ իբրև զՍերբոնեան[49] ճահիճ ընդ մէջ Դամիատայ [50], և Նախնի լերինն Կասեայ [51] յորում խորասոյզ եղեն բանակք զօրացն ։ Նոյն օդն սաստկասառոյց բոցակէզ տօչորէր, և ցրտութիւնն զհրոյ ունէր զօրութիւն ։ Օկնի ժամուց անդր փութացան դատապարտեալքն համօրէն՝ մղեալք յարագոտն Կատաղեաց [52], առ 'ի առնուլ փոփոխակի զփորձ անհնարին ծայրիցն, անցեալ յանկողնոց անտի բազմատագնապ հրոյն 'ի սառնամանիս անդր՝ առ 'ի զովացուցանել զջերմութիւն իւրեանց եթերականն. և կալ անդանօր առժամանակ մի անշարժ և սըլտասառոյց, և ապա վերստին փութալ անկանիլ 'ի հուր ։ Նաւանեն նոքա յայս կոյս և յայն կոյս ընդ Լեթեան անդունդս՝ յաւելուլութիւն ցաւոց իւրեանց. և յանցանել անդ ցանկան և նկըտին հուպ մատչել 'ի հրապուրող հոսանս, և 'ի

կաթիլ նորա ընկղմել 'ի քաղցր մոռացութիւն զամենայն վիշտս և զաղէտս իւրեանց 'ի միում վայրկենի ։ Եւ թէպէտ զափամբք նորա քերեն, այլ ճակատագիրն ոչ տայ նոցա թոյլ առնուլ զճաշակ ։ Եւ Գորգոնեանն Մեդուսա [53] յարգել ճգանց նոցին ահագինս ակնարկէ ընդ հուն ։ Եւ ջուրն ինքնին տեղի տայ 'ի ճաշակաց նոցա, որպէս երբեմն խոյս ետ 'ի շրթանց անտի Տանտաղեայ [54]։
Այսօրինակ վայրավատին յածեալ խուռն բազմութեանն՝ թառամեալ թօշնին սատակագոյն երկիւղիւ, և պակուցեալ հային ընդ ողորմ վիճակ իւրեանց ։ Եւ չգտեալ զհանգիստ՝ անցանեն ապա ընդ բազմապատիկ սառնապատ և հրեղէն Ալպեայս [55], ընդ բազում խաւարային և ահագին ձորս, ընդ տխրագին գաւառս, ընդ ափափայս, ընդ խորս, ընդ լիճս, ընդ ճահիճս, ընդ տղմուտս, ընդ փապարս, և ընդ ստուերս տխեղերաց մահու. զոր անէծքն այնպէս չարախտավատ հաստեցին, մինչև չարին միայն լինել 'ի նմա բարի ։ Այլ անդանօր մեռանին կեանք, և կենդանի է մահն ։ Եւ խեղաթիւր բնութիւնն ծնանի 'ի նմա զամենայն այլանդակ, տգեղ և զզարհուրելի հրէշս՝ վատթարագոյնս քան զԳորգոնս [56], զՀիդրայս [57] և զսոսկալի Եղջերուաքաղս [58], զորս միանգամ առասպելքն կեղծեցին, կամ ծնաւ երկիւղն [59] ։

Յայնմ վայրի Սատանայ՝ հակառակորդն Աստուծոյ և մարդկան, վառեալ 'ի խորհուրդս մեծի առաջարկութեանն՝ ամբառնայ 'ի վեր զարագաշարժ թևս իւր, և խնդրէ ուղղել զթռիչս իւր 'ի դրունս անդ դժոխոց ։ Ե՛ զի դիմէ յափն կոյս աջակողմեան, և է՛ զի ձախակողմեան ։ Մերթ

տարածեալ զթևս իւր՝ զերեսօք անդնդոցն քերէ, և մերթ սլացեալ 'ի վեր 'ի կամարն հրեղէն՝ աշտարակաձև արձանանայ ։ Որպէս յորժամ զումարտակք նաւուց 'ի ծովու նշմարեալ 'ի հեռաստանէ՝ կախեալ կան զամպոց, այն ինչ գիշերահաւասարին [60] հողմովք բացեալ զառագաստս միահամուռ 'ի Բենգալայ [61], կամ 'ի կղզեաց Տերնատայ [62] և Տիդովրայ՝ [63] ուստի բարձեալ բերեն վաճառականք զհամեմս և զդեղորայս իւրեանց 'ի վերայ վաճառաշահ ալեաց, սկսեալ 'ի լայնածաւալն Եթովպիոյ [64] մինչև ցԿայան՝ [65] փութան ուղղել զգիշերագնաց նաւարկութիւն իւրեանց 'ի բևեռ անդր [66] . այնպէս իմն սլացեալ երևէր Թշնամին ։ Երևեցան ապա սահմանք դժոխոց . որոյ ձեղուն հասանէր յահագին բարձրութիւն, և դրունքն էին երից եռափեղկեան . երեք փեղկք պղնձի, երեք երկաթի, և երեք ադամանդեայ 'ի կարծրակուռ վիմէ . և էին շրջափակեալ անծախական հրով ։ Առաջի դրանցն նստէին աստի և անտի կրկնակի սոսկալի տեսիլք ։ Մին ունէր զկերպարանս կնոջ մինչև ցմէջս, և էր գեղեցիկ . բայց բազմոլորտ թեփալից տտամբն աւարտէր 'ի վիշապ զարշատեսիլ երկայն և լայն՝ զինեալ 'ի խայթոց մահահրաւէր ։ Զմիջովք նորա մեծաբարբառ հաչիւն շանց սանդարամետից լայնատարր Կերբերեան [67] բերանովք լինէր լսելի հանապազ ահագինս ։ Եւ թէպէտ մարթ էր նոցա 'ի կամել իւրեանց, և կամ ստիպեալ 'ի լռութիւն՝ խուսափել յորովայն նորա, և անդ ոլջանալ, սակայն և անդադար մեծաձայն հաչէին անտեսաբար ։ Բայց ոչ էին նոքա այնչափ զզուելի, որչափ զարշելիքն

Սկիւղայ 68 լուացելոյն 'ի ծովն անդ՝ որ բաժա-նէ զԿաղաբրիա 69 'ի կերկերաձայն եզերացն Տրի-նակրայ 70 ։ Եւ ոչ այնչափ գարշագոյնս ընթա-նային զկնի գիշերական Վհկի, այն ինչ կոչեալ նորա գաղտ՝ սլանայ ընդ օդն, հրապուրեալ 'ի հոտոյ անուշ մանկանցն արեան՝ 'ի պարաւորու-թիւն վհկացն Լապլանտիոյ 71, և այն ինչ լուսինն խաւարի՝ վաստակաբեկ յերեսաց հմայից նոցա 72 ։ Երկրորդ տեսիլն՝ եթէ մարթ իցէ տեսիլ կոչել զանկերպարանն յանդամս և 'ի յօդուածս, և կամ գոյացութիւն զայն՝ որ ստուեր իմն երևէր (քանզի զերկոսին ևս յանձին ցուցանէր) կայր սևատեսիլ իբրև զգիշեր, զայրագին իբրև զտասն Կատաղիս 73, և ահագին իբրև զԴժոխս ։ Եւ ձօձէր զսոսկալի նիզակն՝ զոր ունէր 'ի ձեռին․ և բերէր 'ի գլուխ իւր զնմանութիւն իմն արքայա-կան թագի ։ Եւ ահա հուպ մատեաւ առ նա Սա-տանայ ։ Իսկ հրէշն ելեալ 'ի տեղւոջէն՝ չոգաւ փութանակի ընդ առաջ նորա մեծաքայլ և ահա-գին ոտամբ ։ Սասանեցան դժոխք ընդ գնացս նո-րա ։ Բայց անվեհեր թշնամին զարմացաւ ևեթ ընդ տեսիլդ, այլ ոչ երկեաւ ։ Զի բաց յԱստու-ծոյ, և յՈրդւոյ նորա առ ոչինչ գրէ նա զամե-նայն ինչ, և ոչ խուսափէ յումեքէ ։ Որ և զայրա-գին դիմօք սկսաւ ասել զառաջինն՝ օրինակ զայս ։

Ո՞ ես դու, կամ ուստի՝ Տեսիլդ գարշելի, զի իշխես՝ թէպէտև զարհուրատեսակ և ահարկու, ընդդէմ մատուցանել զչարաշուք ճակատ քո յարգել ճանապարհիս առ դրունսդ ։ Ծանի՛ր քաջ, զի կամք են ինձ անցանել ընդ դոսա առանց իսկ քումդ հրամանի ։ Կամ 'ի բաց կաց այտի,

և կամ առ զձաշակ քումդ անմտութեան՝ Դուժախածէն զու. և ուսիր արդեամբք չհակառակել ընդ հոգիս երկնից:

Որում ես պատասխանի տեսիլն մեծաւ սրտմտութեամբ: Մինթէ դու իցես հրեշտակն դաւաճանող՝ որ զառաջինն քակեաց յերկինս զխաղաղութիւն և զմիաբանութիւն ցայնվայր մնացեալ անքակտելի. և ձգեաց ընդ իւր 'ի գոռոզ զէնս ապստամբութեան զերրորդ մասն որդւոցն երկնից՝ երդուեալ ընդ նոսա հակառակ Բարձրելոյն: Յոյր սակս ընկեցեալ միահաղոյն յերեսացն Աստուծոյ՝ դատապարտեալ կայք աստանօր անցուցանել զանվախճան աւուրս յաղէտս և 'ի վիշտս: Սակայն դու՝ պարտապանդ դժոխոց, համարիս զանձն քո հոգի երկնաւոր. և իշխես չնչել քամահանս և խրոխտանս 'ի տեղւոջս՝ ուր թագաւորեմ ես իբրև արքայ. և յաւանել զայրոյթ սրտի քո՝ արքայ քո և տէր: Արդ՝ դարձիր անդրէն 'ի պատիժ քո՝ փախստականդ կեղծուպատիր. և յաւել յերագութիւն ընթացից քոց զթևս, գուցէ խարազանաւ կործանց պնդեցայց զհետ քումդ դանդաղանաց. և կամ 'ի մի հարուած նիզակիս կալցէն զքեզ միանգամայն երկիւղ տարօրինակ, և տագնապ անփորձ յառաջագոյն:

Այսպէս խօսեցաւ արհաւիրքն սոսկալի. և տեսիլ նորա յայն օրինակ բանից և սպառնալեաց՝ ցուցաւ տասնպատիկ առաւել տգեղ և ահարկու: Իսկ Սատանայ սրտմտեալ բարկութեամբ՝ եկաց աներկիւղ իբրև զԳիսաւոր բոցավառ, որ ընդ երկայնութիւն լայնատարածն Ովփիուքայ [74] յարջային բևեռի անդ արկանէ զհուր, և յահա

զլին գլխոց իւրոց թօթափէ զժանտամահ կամ զմարտ ։ Երկոքեան եւ ուղղեցին 'ի գլուխ միմեանց զմահացու նշանն ։ Ձեռք նոցա անվրէպ՝ ոչ մնան երկրորդ հարուածոց ։ Իսկ կնճիռն դիմաց՝ զոր արկին առ միմեանս, այնչափ ժանտատեսիլ էր՝ որպէս յորժամ կրկին թխպագին ամպք ծանրաբեռնեալ հրազինուք երկնից , հասանեն շառաչմամբ 'ի վերայ Կասպից [75] ծովուն , և կան յօդս ճակատ առ ճակատ անշարժ՝ մինչև հողմք փողեն զնշանն խաւարային բաղխման նոցա ընդ միմեանս ։ Նոյնպէս խեթիւ ակնարկեցին հզօր մարտադիրքն առ միմեանս, մինչև դժոխոց առաւել եւս ստուերանալ յերեսաց խոժոռադիմութեան նոցա ։ Զայսօրինակ կային նոքա զուգահաւասար միմեանց․ զի ոչ ոք 'ի նոցանէ կարող էր գտանել զհամեմատ ախոյեան, բայց միայն 'ի նմին ժամու ։ Եւ ահա հանդերձեալ էր նոցա մեծամեծ արհաւիրս գործել, և հնչեցուցանել զանդարամետս, եթէ վհուկն օձատեսիլ՝ որ նստէր առ դրան դժոխոց , և ունէր զմահառիթ փականս նորա , չէր յարուցեալ, և ահագին ճչիւքն անցեալ 'ի մէջ նոցա ։

Ո՜վ հայր՝ աղաղակեաց նա , զի՞նչ կամք են ձեռինդ ընդդէմ որդւոյդ․ և զի՞նչ կատաղութիւն՝ ո՜վ որդի, կալեալ ունի զքեզ 'ի ձգել զմահաբեր նիզակդ 'ի վերայ գլխոյ հօր քո ։ Գիտիցես արդեօք յո՞յր սակս ։ 'Ի սակս նորա՝ որոյ նստեալ 'ի բարձունս ծիծաղի զքև , այն ինչ պատուէր տայ գերւոյդ կատարել զկամս բարկութեան իւրոյ՝ զոր կոչէ նա արդարութիւն․ որ և հանդերձեալ է 'ի միում աւուր սատակել զերկոսեանդ 'ի միասին ։

Այսպէս ասացեալ լռեաց, եւ արգելեալ ժան-
տախտն այն դժոխային: Յայնժամ Սատանայ
յաւել ասել ցնա այսպէս: Անախի արկեր 'ի
մէջ ձիչ անլուր, եւ բան անակնկալ, մինչեւ արա-
գաշարժ ձեռին իմոյ զտեղի առնուլ. եւ տակաւին
խնայէ ծանուցանել քեզ արդեամբք զկամս իւր,
մինչեւ 'ի միտ առից նախ՝ թէ ո՞ ես դու յայդ կեր-
կին կերպարանս. եւ ընդէ՞ր համարձակեալ զառա-
ջինն յայս հովիտ սանդարամետական՝ կոչես զիս
քեզ հայր, եւ զտեսիլդ աստանօրէն՝ իմ որդի: Ես
ոչ ճանաչեմ զքեզ. եւ ցարդ չտեսի զարշագոյն
դէմս քան զնորայն, եւ զքոյդ:

Առ որ Բարապանին դժոխոց արար պատասխա-
նի: Միթէ մոռացար զիս. եւ միթէ այժմ այն-
չափ զարշատեսիլ թուիմ յաչս քո՝ որ երբեմն
կարի իմն գեղեցիկ համարեալ էի յերկինս, յոր-
ժամ 'ի ժողովի անդ եւ յանդիման Սրովբէիցն
միաբանելոց ընդ քեզ 'ի ժպիրհ դաշնակցութիւն
ընդդէմ արքային երկնից՝ կալաւ զքեզ յանկար-
ծակի անհնարին երկունք. մթագնեցան աչք քո.
եւ ցնորեալ 'ի միտս՝ ընկղմեցար 'ի խաւարի. եւ
գլուխ քո թօթափէր զթանձրախիտ եւ զարագ ա-
րագ կայծակունս. մինչեւ բացեալ ձախակողմեան
ընդարձակութեան նորա՝ ելի ես արտաքս 'ի նմա-
նէ Աստուածուհի սպառազէն [76], նմանօրինակ քեզ
'ի ձեւ կերպարանաց, եւ 'ի չքնաղ տեսիլ դիմաց՝
որ փայլէր յայնժամ երկնային գեղեցկութեամբ:
Զարմանք կալան յայնմ պահու զհամօրէն զի-
նուորութիւնս երկնից: Զառաջինն զարհուրեալ
նոցա յինէն՝ նահանջեցին յետս. եւ համարեալ զիս
ցնորք ինչ ահագին՝ կոչեցին Մեղք: Բայց ապա

յընտելանալ նոցա ընդ իս՝ գտայ հաճոյ և սիրելի յաչս նոցա ։ Եւ հրապուրանօք գեղեցկութեանս յաղթեցի որոց միանգամ այնչափ խորշէին յինէն. և մանաւանդ քեզ՝ որ բազում անգամ նկատեալ 'ի յիս զճշգրիտ նմանութիւն պատկերի քո, հաբար 'ի սէր. և գաղտ այնպիսի ինձ կալար ընդ իս ոգեխառնութիւն, մինչև զգալ իմումս որովայնի զծանրութիւն բեռինն ։ Յայնժամ յարեաւ պատերազմ, և ճակատամարտք եղեն 'ի դաշտավայրս երկնից. ուր և ամենազօր ախոյեանն մեր տարաւ զկատարեալ յաղթութիւն ( զի զինչ այլում իմիք մարթ էր ակն ունել ), և մեք զկորուստ և զխորտակումն ընդ ամենայն հրեղէն երկինս ։ Անկան այլք 'ի բարձրութենէ անտի երկնից, և խորասոյզ եղեն յանդունդս. անկայ և ես ընդ նոսա 'ի համաշխարհական կործանման անդ ։ Յորում ժամանակի տուան 'ի ձեռս իմ փականքս այսոքիկ. և պատուէր եղաւ 'ի վերայ իմ մշտափակ ունել զդրունսդ. ընդ որս չէ հնար ումեք անցանել, եթէ ես ոչ բացից ։ Նստայ առանձինն աստանօր, յառեալ 'ի խորհուրդս ։ Բայց զկնի սակաւուց որովայնն իմ յղացեալ 'ի քէն կարի ինձ աճեցեալ՝ զգաց զահագին շարժումն երկանց ։ Եւ ապա որդի քո ծնունդ գարշատեսիլ՝ զոր արդ տեսանես, բռնի բացեալ զճանապարհ՝ պատառեաց զաղիսն իմ. որոց ծամածռեալ յերեսաց երկիւղի և ցաւոց՝ զայսօրինակ այլափոխեցին զստորին մասն կերպարանացս ” ։ Բայց ընդաբոյս թշնամին իմ եկն արտաքս. և ճօճէր 'ի վերայ իմ զմահաբեր նիզակ իւր կարգեալ 'ի սատակումն ։ Յորմէ փախեայ՝ աղաղակեալ մեծաձայն Մահ։ Դղրդեցան

սանդարամետք յահագին անուանեալ. և 'ի քա-
րանձաւաց իւրեանց հառաչմամբ հնչեցուցին զար-
ձագանգս նորա: Խուսափեցայ ես 'ի նմանէ, այլ
նա պնդեցաւ զկնի իմ. և որպէս թուէր յաւէտ
բորբոքեալ անառակութեամբ, քան սրտմտու-
թեամբ. և անդէն եհաս առ իս առ մայր իւր՝ որ
կայր ողջոյն ահաբեկեալ: Եւ 'ի փարիլ նորա
զինև բռնութեամբ՝ ծնան ապա 'ի գարշութենէ
անտի հրէշք կաղկանձող: Որք որպէս և տեսա-
նես, պատին զինև անլռելի աղաղակաւ, յղա-
ցեալ ժամէ 'ի ժամ, և ժամէ 'ի ժամ ծնեալ՝
յանհնարին վիշտ անձին իմոյ: Զի յորժամ կա-
մին, դառնան անդրէն յորովայնն՝ որ ծնաւ զնո-
սա. և հաչեն՝ խածատեալ զաղիսն իմ 'ի կերա-
կուր իւրեանց: Եւ ապա վերստին արտաքս վա-
զեալ՝ խայթողական արհաւրօք մտացս խղձի չար-
չարեն զիս հանապազ. մինչև չգտանել ինձ երբէք
հանգիստ կամ դուլ յերեսաց նոցա [78]: Նստի 'ի
հանդիպոյ յանդիման աչաց իմոց Մահն ահագին՝
որդի իմ և թշնամի, և գրգռէ զնոսա: Որ և առ
'ի չգոյէ որսոյ անձինն՝ անդէն գիշատէր զիս զմայր
իւր ողջոյն, եթէ չգիտէր զկապ կենաց իւրոց ընդ
իմուսն, և փորձ նորա չլինէր նմին դառնագոյն
պատառ և թոյն: Զի այսպիսի են կամք ճակա-
տագրի: Բայց դու ով հայր՝ ահա ազդ առնեմ
յառաջագոյն, խոյս տուր 'ի մահաբեր նետից նո-
րա. և մի յուսար յանձն քո տարապարտուց՝
մնալ անխոցելի յերեսաց նորա պայծառափայլ
զինուքդ, թէպէտև իցեն երկնամուխ. զի բաց 'ի
նմանէ՝ որ թագաւորէն 'ի բարձունս, ոչ ոք կարէ
կալ առաջի մահախիթ հարուածոց նորա:

Սախճանեաց նա զբանն իւր. և խորամանկ Թշնամին ուսաւ անդէն վաղվաղակի զդաս իւր. և ողոք բանիւք արար նմա պատասխանի։ Պանուար իմ սիրելի՝ փոխանակ զի ընդունիս զիս 'ի հայր քո, և ցուցանես ինձ աստ զորդին իմ զգեղեցիկ՝ զվայելուչ զգրաւական իմում սիրոյ, զոր կալայ ընդ քեզ յերկինս, և անուշակ ուրախութեանցն երբեմն՝ որոց յիշատակ դառն է այժմ 'ի սակս ահագին յեղափոխութեանս, որ ժամանեաց մեզ յանդգնոտ և անակնկալ՝ ծանիր. զի ես ոչ գամ իբրև զթշնամի, այլ առ 'ի զերծուցանել 'ի խաւարէ, և 'ի տանէ ցաւոց զքեզ և զնա միանգամայն, և զհամօրէն զխոտորութիւնս հոգւոց՝ որք զլինեալ 'ի վրէժխնդրութիւն արդար իրաւանց մերոց, անկան 'ի բարձանց ընդ մեզ։ Հաճութեամբ նոցին մատչիմ ես յայս հանդէս անփորձ. և տամ զանձն իմ միայն ընդ միայն ընթացիւք 'ի զննութիւն անյատակ անդնդոցս. և վտարանդի հարցաքննութեամբ յանսահման դատարկութեան անդ՝ շրջիմ 'ի խնդիր նախաձայնեալ տեղւոյն, թէ ուրանօր արդեօք 'ի սահմանս երկնից կայցէ վայրն երանութեան՝ այժմէն իսկ ըստ նշանացն արարչագործեալ ընդարձակատարր և բոլորշի. և եդեալ 'ի նմա նորաստեղծ արարածոց՝ թերևս 'ի լնուլ զպակասութիւն մերումս բնակութեան. և այն՝ կարի ի՛մն 'ի բացեայ յերկնից, գուցէ ծանրացեալ նորա ահագին բազմութեամբքն՝ վերստին անցցէ ընդ փորձ նորոգ խռովութեանց։ Արդ՝ եթէ այս իցէ խորհուրդն երկնից, կամ այլ ինչ ծածկեալ, փութամ ես հասանել 'ի վերայ։ Օ՛կնի տեղեկութեանս դարձայց այսրէն փութանակի,

և տարայց զձեզ անդր՝ ուրանօր դու և Մահ ան-ցուսջիք զկեանս յանդորրու, և բաղխեսջիք լաւ-լեայն և աներևոյթ Թևօք զվերին և զներքին օդն զուարձալի և զմռայլից անուշահոտ խնկովք։ Ուտիջիք և յագեսջիք անդանօր լիուլի, և ամե-նայն ինչ լիցի ձեզ յորս։

Մախձաննեաց նա զբան իւր, զի երկոքին և-ս կարի իմն հաճ և հաւան ցուցին զանձինս։ Իսկ Մահն 'ի լսել անդ զհանդերձեալ յագուրդ իւ-րումն քաղցու, արձակեալ զծխծաղ մեծաձայն՝ երանեաց զորովայն իւր կարգեալ յայն բարե-բաստիկ ժամ՝։ Ոչինչ նուաղ զտաւ և խնդութիւն չարեացապարտ մօր նորա։ Որ. և խօսեցաւ ընդ հօր իւրում՝ օրինակ զայս։

Ունիմ ես զփականս անդնդային զբոյս իրա-ւամբք և 'ի հրամանէ ամենազօր արքային երկնից՝ որ արգել ինձ զբացումն աղամանդեայ դրանց նորա։ 'Ի բռնանալ ուրուք 'ի վերայ իմ՝ Մահն աներկեան և անպարտելի յերեսաց զօրութեան կենդանեաց, կայ 'ի պատրաստի արկանել ընդ մէջ զնիզակ իւր։ Բայց առ իմէ իցէ ինձ հնազանդել 'ի վերուստ հրամանաց նորա՝ որ ատէն զիս. և զմնակիչս երկնից և զերկնածինս տատանօր 'ի խաւարի տարտարոսական անդնդոցս հարտեալ կարգեաց յայս պաշտօն անբերելի, 'ի մշտնջենա-ւոր տագնապ և յահագին վիշտս յերեսաց ահի և աղաղակի իմոցս ծննդոց՝ որք աղեօքս մնանին։ Դու ես հայր իմ, դու ծնողն իմ, և դու ետուր ինձ զկեանս։ Արդ ում հնազանդեցայց ես՝ բայց 'ի քէն, և զո՞յր զհետ գնացից։ Դու հանդերձեալ ես տանել զիս փոյթ ընդ փոյթ յայն նորոգ աշ-

խարհ լուսոյ և երանութեան . ուրանօր ընկղմեալ՝ 'ի բերկրութիւնս ընդ հեշտակենցաղ աստուածոց՝ [79] Թագաւորեցից անվախճան ընդ աջմէ քումմէ, որպէս և վայել իսկ է դստեր քում, և սիրելւոյ :

Եւ զայս ասացեալ՝ եհան 'ի միջոյ իւրմէ զմահառիթ բանալին, զդժնդակ գործիս մերոց աղէտից : Եւ թաւալեալ զանասնեղէն ձեռս իւր 'ի դուռն անդր՝ ամբարձ 'ի վեր զահագին նիգս նորա, զոր չէր հնար համօրէն Ստիւգեան [80] զօրութեանց շարժել միանգամայն : Եւ ապա ընդ ծակ աղխիցն պտոյտքեալ զբազմամանուած բանալին՝ հեշտեաւ իմն ելոյծ զամենայն փականս և զկապանս 'ի կարծրակուռ երկաթոյ կամ յապառաժ վիմէ : Եւ ահա անդէն տեղի տուեալ ամրափակ դրանցն դժոխոց՝ բացեալ պատառեցան շառաչաձայն, և 'ի ծղխնեաց անտի ձայնք հնչեցին ահեղ որոտման, մինչև դղրդեցուցանել զամենդնդախոր յատակս Երեբեայ [81] : Եբաց նա զդրունսն, բայց փակելն զնոսա վերստին անցանէր ըստ կար զօրութեան նորա : Էին նոքա լայնարձակ յոյժ, մինչև կարող լինել անցանել ընդ նոսա դրօշակակիր զօրաց կառօք և երիվարօք՝ թևատարած խաղացեալ նշանօք պարզելովք և ցրիւ դասակարգութեամբ : Զայսօրինակ կային բացեալ, և իբրև զբերան հնոցի մեծի հոսէին արտաքս զծուխ բազմադէզ, և զբոց կարմրորակ : Յայնմ վայրի յանդիմանն եղեն աչաց նոցա գաղտնիքն հինաւուրց Անդնդոց՝ խաւարչտին, ահագնատեսիլ և անսահմանն Ովկիանու [82] : Ուրանօր սուզեալ կորնչին երկայնութիւն, լայնութիւն, և խորութիւն, ժա

մինակ և տեղի ։ Ուր և երիցագոյնն Գիշեր [83], և Վիհ՝ [84] նախահարք Բնութեան [85], յամենայն անդ անեզրական մարտից կալեալ ունին զմշտնջենաւոր անիշխանութիւն [86]։ Անդի ջերմ, ցուրտ, խոնաւ և չոր՝ քառեակ ոխերիմ թշնամիք, զմիմեամբք ելանեն անդանօր 'ի խնդիր իշխանութեան՝ համախմբեալ 'ի մարտ զանկերպարան հիւղէս [87] իւրեանց ։ Իւրաքանչիւր զօրք յայլեայլ գունդս՝ թեթևազէն կամ կուռ, ուժգնակի կամ թեթև, երագընթաց կամ յամրաքայլ՝ բազմամբոխ խռնին զդրօշակօք իւրեանց ․ և իբրև զանթիւ աւազ Բարկայ [88], կամ այրեցած երկրին Կիւրենայ՝ [89] ելանեն 'ի ճակատ մարտադիր հողմովք, արձակեալ զարագաթռիչ թևս իւրեանց ։ Իշխէ նա առժամանակ մի՝ զօրոյ զհետ երթան բազմութիւնք ։ Այլ նստի իշխանապետ Վիհն [90] ․ և դատաւոր կարգեալ՝ յուզէ զաղմուկ խռովութեան, որով և ինքնին թագաւորէ ։ Զկնի նորա Դիպուածն [91] ունի զդատաւորական իշխանութիւն 'ի վերայ ամենայնի ։ Այս ահագին անդունդս՝ որ է որովայն Բնութեան, և թերևս գերեզման նորա ․ և ոչ է ծով, ոչ երկիր, ոչ օդ, և ոչ հուր՝ սոքա ամենեքին խռովեալ յուզին 'ի բազմաբեղուն պատճառս իւրեանց [92] ։ Այլ ունէին մարտնչել հանապազ ընդ միմեանս, եթէ Արարիչն ամենակալ ոչ տայր հրաման աննշոյլ նիւթոյն ստեղծանել զբազմութիւն աշխարհաց [93]։ Այս վիհ սոսկալի եկաց հնարիմաց թշնամին առ շըթամբք դժոխոց, և դիտեաց առ վայր մի զճանապարհ իւր ․ զի ոչ ընդ անձուկ ինչ ունէր անցանել ընդ նեղուց ։ Այլ ականջք իւր ոչ նուազ

ունէին հնչել 'ի ձայնէ կործանմանն, քան 'ի մրրկել Բեղոնայ՝ [94] ուղղեալ զպատերազմական մանգղոնս իւր 'ի կործանումն մայրաքաղաքաց։ Կամ յանկանիլ անդ հաստատութեան երկնից 'ի վերուստ։ Եւ կամ 'ի կորզել տարերցս խռովութեան զհաստարմատ երկիրս 'ի կայից անտի իւրոց։ Ապա տարածեաց զառագաստաւոր թեւս իւր 'ի թռիչս. և ամբարձեալ 'ի ծուխ բազմակոհակ՝ անկուշեաց զերկիր։ Եւ այնպէս ապա զոգցես յամպեղէն նստեալ աթոռ՝ յանդուգն վազեաց ընդ բազում փարսախս։ Այլ 'ի լքանել զնա բազմոցին՝ [95] ընդհուպ եգիտ նա զդատարկութիւնն անդնդային։ Եւ 'ի շարժել անդ զթեւս իւր յանզգոյշս և տարադէպ՝ սուզաւ շեշտակի 'ի խորութիւն անդր գրկաչափս բիւր։ Եւ ունէր ողջոյն լինել խորասոյզ, եթէ ըստ ձախողակի բերման [96] ուժգին բաղխիւն մրրկայոյզ ամպոց վերեալ յերեսաց հրոյ և բորակի՝ ոչ մղէր զնա նոյնչափ մղոնս 'ի վեր։ Ի հանդարտել ապա խռովութեանն՝ զտեղի եառ նա յաւազակոյտ ինչ ձախձախուտ. որ ոչ ծով էր, և ոչ երկիր ցանկալի։ Յայնժամ կոխեալ նորա ոտամբ զպնդագոյն տեղին՝ զոգցես զայթ 'ի զայթ յառաջ վարեաց զընթացս իւր։ Եւ զի հետիոտս ընթանայր, և է զի 'ի թռիչս, և պէտք էին ևս նմա թիոց և առագաստի։ Որպէս յորժամ Արծուառիւծն [97] յանապատի անդ թեւաւոր ընթացիւքն ընդ լերինս և ընդ տղմուտ ձորս զհետ պնդի Արիմասպեայ՝ [98] որ յանքուն պահպանութեան նորա գողանայ զաղտ զոսկին զգուշութեան, այնպէս փութոյ պնդութեամբ վարեաց թշնամին զճանապարհ

իւր ընդ ճախճախուտս, ընդ առապարս, ընդ անձուկս, ընդ ափափայս, ընդ դիւր, ընդ թանձր, և ընդ անօսր՝ գլխով, ձեռամբ, թևովք և ոտիւք, լողացեալ, սուզեալ, ընդ հուն անցեալ, սողոսկեալ և թռուցեալ: Չուսկ յետոյ ժամանեաց ուժգնակի 'ի լսելիս նորա աղաղակ ինչ համաշխարհական և սոսկալի՝ բարձրացեալ խառնիխուռն հնչմամբ յանդնդոց անտի խաւարի: Դիմեաց նա անդր անվեհեր 'ի խնդիր անդնդային զօրութեան կամ հոգւոյ՝ առ 'ի հարցանել 'ի նմանէ, եթէ 'ի սահմանս անդ խաւարի կայցէ՞ ճանապարհ առ դրացի լոյսն: Այլ ահա անդէն ետես զաթոռն Սհի, և զխաւարային վրան նորա համափիւռ սփռեալ 'ի վերայ անդնդոց ապականութեան: Բազմեալ կայր յաթոռ ընդ նմա և սամուրազգեստն 99 Գիշեր, երիցագոյնն արարածոց՝ 100 թագաւորակից նմին: Այլ առընթեր նոցա Որկոս 101, և Ադէս 102, և ահեղանունն Դեմոգորգոն 103: Այլ զկնի նոցա Աղաղակ, Դիպուած, Աղմուկ, Շփոթ խառնափնդոր, և Երկպառակութիւն հազարբերանեան և բազմաբարբառ 104:

Առ որս համարձակագոյնս ուղղեալ Սատանայ զբան իւր՝ խօսեցաւ օրինակ զայս: Զօրութիւնք և հոգիք խաւարին անդնդոց՝ Սհդ, և հինաւուրց Գիշեր. ես ոչ եկի 'ի հետազօտութիւն և 'ի վրդովումն գաղտնեաց ձերումդ թագաւորութեան. այլ ակամայ յածեալ ընդ անապատդ խաւարչտին (զի ընթացք ճանապարհիս 'ի լոյս անդր ձգին) յընդարձակ ինքնակալութեան ձերում շրջիմ առանձինն, գոգցես մոլորական և անօգնական. և եմ 'ի խնդիր շաւղացն ընդ երկինս, եթէ

կայցեն 'ի սահմանագլուխս անդ տխրագին վայրացդ ։ Այլ կամ՝ եթէ արքայն երկնից գրաւեալ ունի զայլ սահմանս 'ի տէրութենէ ձերմէ, փութամ հասանել անդր՝ ճանապարհորդեալ ընդ խորս անդնդոցդ ։ Արդ՝ ուղղեցէք զգնացս իմ, զի ոչ դուզնաքեայ ինչ լինիցին վարձք ձեր և օգուտ՝ եթէ զգաւառսդ կորուսեալ, մերժեալ զբռնակալութիւնն՝ դարձուցից անդրէն 'ի նախկինն խաւար, և յիշխանութիւն ձեր ( որ է առաջին նպատակ իմում ճանապարհի ). և վերստին կանգնեցից անդանօր զդրօշակն հինաւուրց Գիշերոյ ։ Այլ յայնժամ ձեր լիցի օգուտն, և իմ վրէժխնդրութիւնն ։

Զայսօրինակ խօսեցաւ Սատանայ ։ Այլ հինաւուրց անիշխանն պապաջող բանիւք, և աղճատեալ դիմօք արար նմա զայս պատասխանի ։ Օտարական դու, քաջ ճանաչեմ զքեզ. զի դու ես հրեշտակն՝ հզօր հրամանատար զօրաց. որ սակաւ մի յառաջ գլուխ ամբարձեալ ընդդէմ արքային երկնից՝ կործանեցար ։ Տեսի ես և լուայ զանկումն ձեր. զի անհնար էր այնչափ բազմութեան զօրաց զանխուլ անցանել ընդ ահագին անդունդս՝ զկնի չարաչար կործանման, և ամօթալից խորտակման ։ Այլ դրունք երկնից հոսեցին արտաքս զբազմութիւն գնդից յաղթական զօրաց 'ի վանել զձեզ ։ Կամ ես աստանօր 'ի պաշտպանութիւն ըստ կարի փոքու սահմանիս՝ որ մնաց ինձ. և տակաւին նուազի յերեսաց խռովութեանց՝ որք 'ի ներքս մտանեն 'ի տկարացուցանել զգաւառան զօրութեան հինաւուրցն Գիշերոյ ։ Զառաջինն միայն դժոխքն՝ որ է բանտ ձեր, ձգեալ կայր

'ի ներքոյ լայն և ընդարձակ. իսկ այժմ՝ սակաւ ժամանակք են, զի հաստատութիւնն երկնից, և երկիր՝ միւս ևս աշխարհ, կախեալ կան 'ի վերայ թագաւորութեանս իմոյ, կապեալ ոսկի շղթայիւք յայնմ կողմանէ երկնից՝ ուստի անկան լեգէոնք ձեր : Արդ՝ եթէ գնացք քո ուղղեալ են ընդ այդ ճանապարհ, չես հեռի 'ի նմանէ. բայց վտանգ անձինդ հասեալ կայ մօտալուտ : Այլ երթ ողջամբ, և յաջողեսցի քեզ : Յափշտակութիւն քո, և աւար, և կործանումն լինիցին իմ բաժին:

Դադարեաց նա 'ի բանից անտի իւրոց. և Սատանայ ոչ ևս իշխեաց տալ նմա պատասխանի : Սակայն խնդացեալ ընդ մերձենալ ընթացից իւրոց 'ի ծովէ անտի 'ի ցամաք՝ նորոգ զուարթութեամբ, և հաստատեալ զօրութեամբ եկաց արձանացեալ յամայի ընդարձակութեան անդ իբրև զաշտարակ հրեղէն : Եւ 'ի միջի հարուածոց մարտաղիր տարերց շուրջանակի՝ եբաց զիւր ճանապարհ. սաստկագոյն ևս ըմբռնեալ 'ի վտանգս՝ քան Արգոս [105] յանցանել իւրում ընդ Վոսփորոն [106] 'ի մէջ ժայռից բաղխելոց ընդ միմեանս, և քան Ոդիսևս [107] 'ի խուսափել նորա ընդ ձախակողմն նաւուն յերեսաց Քարիւբդեայ [108], և 'ի ղեկավարել ընդ միւս յորձանուտն : Ահա այսպիսի նեղութեամբ, և բուռն ճգամբ յառաջեաց նա յընթացս իւր : Բայց զկնի անցանելոյ նորա միանգամ, և անկանելոյ Մարդոյն՝ ո՜վ սոսկալի փոփոխմանս, Մեղք և Մահ պնդագոյնս զհետ գնացեալ շաւղաց նորա՝ զի այս էին կամք երկնից [109], սալայատակ յօրինեցին ճանապարհ լայն և բազմակօխ 'ի վերայ անդնդոց խաւարի. որոյ

յորձնեռանողն խորութիւն տարաւ հեղութեամբ 'ի վերայ իւր զկամուրջն ահագին ձգեալ 'ի դժոխոց անտի 'ի մակերևոյթ անդր դիւրակործան աշխարհիս ։ Ընդ որ հոգիքն չարութեան դիւրաքայլ անցանեն յայս կոյս և յայն կոյս՝ 'ի փորձել կամ 'ի պատժել զմահկանացուս. այլ ոչ զնոսա՝ զորս Աստուած, և բարի հրեշտակք նորա պահեն առանձին շնորհօք ։ Հուսկ յետոյ նշմարէ նա զհրաման երկնային լուսոյն՝ որ 'ի պարսպաց անտի երկնից առկայծէր 'ի ծոց աղջամղջին Գիշերոյ զաղօտ իմն լուսափայլութիւն ։ Յայնմ վայրի զառաջինն սկսանի լայնատարած սահման Բնութեան. և Սիհն իբրև զթշնամի խորտակեալ՝ տեղի տայ վայրիք և ճչմամբ ։ Եւ անդ ապա Սատանայ սակաւ մի աշխատութեամբ 'ի սկզբանն, և հեշտեաւ զկնի՝ յառաջ խաղայ 'ի վերայ հանդարտագոյն ալեաց առ լոյսն կեղակարծ. և իբրև զնաւ զերծեալ 'ի բռնութենէ հողմոց՝ խնդագին փութայ հասանել 'ի նաւահանգիստ անդր, թէպէտև խզեալ պարանօք, և խորտակեալ կայմիւք ։ Եւ կամ 'ի դատարկութեան անդ օդանման և լայնածաւալ՝ ուղղէ նա զտարածեալ թևս իւր 'ի զննութիւն 'ի մօտոյ՝ եթերականն երկնից, որ էր ընդարձակատարր յանսահման շըրջապատի անդ քառակուսի կամ բոլորակ, զարդարեալ Ոպաղեան[110] աշտարակօք, և մարտկոցօք կենդանափայլ շափիւղայ ։ Առ նմին կախեալ կայր ոսկի շղթայիւ և աշխարհս զուգահաւասար ըստ չափու մեծութեան փոքունց աստեղաց առընթեր լուսնի ։ Անդր լի անհնարին վրէժխնդրութեամբ՝ աճապարեաց կորստականն 'ի չարաշուք ժամու[111] ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Պատեալ Աստուծոյ յաթոռ իւր՝ տեսանէ զՍատանայ, զի թռուցեալ մատնէ յաշխարհս՝ զոր նորոգ ստեղծեալ էր նորա յայնժամ։ Ցուցանէ զայն Որդւոյ իւրում՝ որ բազմեալ կայ ընդ աջմէ նորա։ Ծանուցանէ յառաջագոյն զյաջողութիւն Սատանայի 'ի խոտորեցուցանել անդ զազգ մարդկան։ Իրաւացուցանէ զարդարութիւն իւր և զիմաստութիւն՝ 'ի սակս ստեղծանելոյ զմարդն անձնիշխան, և կարող ըստ բաւականին առ'ի զդէմ ունել փորձողին։ Սակայն և այնպէս յայտ առնէ զխորհուրդն շնորհաց՝ զոր կամէր ցուցանել առ նա. զի ոչ անկանի նա առ չարութեան՝ որպէս Սատանայ, այլ պատրեալ 'ի նմանէ։ Որդին Աստուծոյ գոհանայ զհօրէ իւրմէ վասն յայտնութեան խորհրդոյն շնորհաց՝ զոր հանդերձեալ էր ցուցանել առ մարդն։ Այլ Հայր վերստին ծանուցանէ նմա, թէ անհնար է շնորհաց իջանել 'ի վերայ մարդոյն՝ առանց հատուցանելոյ զպարտս աստուածային արդարութեան։ Մարդն յանցեաւ ընդդէմ մեծվայելչութեան Աստուծոյ 'ի ցանկալ անդ Աստուածութեան, նմին իրի պարտական գոլով մահու համօրէն ծննդովքն հանդերձ՝ պարտ է նմա մեռանել, եթէ չգտցի ոք ձեռնհաս 'ի հատուցանել փոխանակ յանցանաց նորա, և կրել զպատիժս նորա։ Որդին Աստուծոյ մտադիւր ընծայէ զանձն իւր 'ի փրկանս մարդոյն։ Հայր ընդունի զայն։ Սահմանէ զմարդեղութիւն նորա. ծանուցանէ զբարձրութիւն նորա գեր 'ի վերոյ քան զամենայն անուն յերկինս և յերկրի. և հրաման տայ հրեշտակաց երկիր պագանել նմա։ Հնազանդին նոքա. և 'ի նուագս քնարաց իւրեանց օրհնեն միահամուռ զՀայր և զՈրդի։ Յայնմ վայրի իջանէ Սատանայ յանզարդ երեսս գնտոյ աշխարհիս. և յածեալ անդանօր՝ գտանէ նախ զտեղին կոչեցեալ զկնի Լիմբոս ունայնութեան։ Ո՛յք, և զինչ իրք դիմեն անդր։ Անդուստ անցանէ 'ի դուռն հաստատութեան երկնից՝ որ ունի զաստիճանս ելանելի. և 'ի ջուրսն 'ի վերոյ քան զհաստատութիւնն՝ հոսեալ առ նոքօք։ Ելանէ ապա 'ի գունտն արեգական։ Գտանէ անդ զՈւրիէլ զիշխան նորա։ փոխէ զանձն իւր 'ի կերպարանս միոյ 'ի ստորին Հրեշտակաց, և ցուցեալ զցանկութիւն բարենախանձ 'ի տեսութիւն նորոգ արարչութեան աշխարհի, և մարդոյն՝ զոր կարգեալ էր Աստուծոյ 'ի նմա, հարցանէ նմա զտեղի բնակութեան նորա. և նա ցուցանէ նմա։ Որ և իջանէ նախ 'ի վերայ լերինն Նիփատայ։

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

## ԳԻՐՔ Գ:

Ուրախ լեր աստուածայինդ լոյս՝ անդրանիկ ծնունդ երկնից, կամ մշտնջենաւորակից նշոյլ 'ի յաւիտենականէն՝ եթէ մարթացայց անստգիւտ զքեզ քարոզել[1]: Այլ քանզի լոյս է Աստուած, և 'ի լոյս անմատոյց բնակեալ 'ի յաւիտենից[2], 'ի քեզ են օթագայեալ լուսափիւռ և պայծառափայլ հոսանք անստեղծական էութեանն: Կամ՝ եթէ յաւէտ ախորժես, վտակ ես ականակիտ և արփիական. զորոյ զաղբերակն ո՞ պատմեսցէ[3]: Յառաջ քան զարեգակն, և յառաջ քան զերկինս գոյար դու. և 'ի ձայն հրամանին Աստուծոյ իբրև զօթոց ծածկեցեր զաշխարհս զեղխեալն 'ի ջուրց անդնդոց և խաւարի, և զյափշտակեալն 'ի ձեռաց անսահման և անկերպարան դատարկութեան[4]: Արդ՝ զկնի զերծանելոյ 'ի Ստիւգեանն լճէ[5], ժամ է ինձ վերստին դիմելոյ առ քեզ քաջաթռիչ ևս թևօք. թէպէտև ընդերկար դեգերեցայ յայնմ անանշոյլ վայրի. այն ինչ յածեալ 'ի թռիչս ընդ խաւարն ներքին և միջին[6] յայլ եղա-

նաև քան յՍրփեանն քնար [7] նուագեցի զՍիհ, և զյաւիտենականն Գիշեր . ուսեալ յերկնային Մուսայես [8] դիմագրաւ իջանել'ի խորս դժոխըմբեր և տարօրինակ խաւարի , և վերստին ելանել 'ի լոյսն վերին : Նմին իրի դարձեալ համարձակիմ մատչել առ քեզ՝ բարձեալ յանձին զկենդանական լապտեր քումդ իշխանութեան [9] : Սակայն դու ծածկեալ կաս յաչաց իմոց՝ որք վայրապար թաւալին'ի խնդիր թափանցանց ճառագայթիցդ, և ոչ գտանեն զարշալոյս : Ահա այսչափ յանկարծակի խափանումն տեսութեան [10] մթացոյց ըղգունտս նոցա , և քօղարկեաց զնոքօք լուսն ըստուերաձիգ : Այլ ես հարեալ'ի սէր աստուածային երգոց՝ ոչ դադարիմ 'ի շրջելոյ ընդ ականակիտ աղբիւրս , ընդ հովանաւոր անտառս , և ընդ արեգակնաճեմ լերինս՝ ուրանօր Մուսայքն [11] դեգերին : Սակայն յաւէտ զքև շրջիմ Սիոն [12] 'ի գիշերի անդ [13] և զծաղկազուարճ վտակօքդ 'ի խոնարհ [14], որք լուանան զոտս քումդ սրբութեան , և գետահոսեալ գնան գեղգեղաձայն : Եւ ոչ մոռանամ զկրկին զուգահաւասարսն ինձ ըստ բաղդի՝ ( երանի թէ և ըստ համբաւոյ ) զկոյրսն Թամիւրիս [15] և զՄէոնիդէս [16] , և զՏիրեսիաս [17] և զՓինէոս՝ [18] զհին Մարգարէս : Եւ այնպէս յածիմ 'ի խորհուրդս՝ որք ինքնակամ հարկանեն զներդաշնակութեան զոտս [19] . որպէս թռչունն անքուն երգեալ 'ի մթան , և ընդ ստուերաւ քօղարկեալ՝ յեղանակէ զնուագ իւր գիշերային : Զայսօրինակ դառնան եղանակք ընդ տարւոյ . բայց ոչ ինձ տիւն , կամ քաղցր գալուստ առաւօտու և երեկոյին . ոչ տեսիլ ծաղկանց գարնայնոյ

կամ վարդից ամարայնոյ. ոչ խաշանց և արջառոց, և կամ աստուածանման դիմաց մարդոյ։ Ինձ փոխանակ նոցին ամպ և խաւար մշտատևակ պատեալ զինև՝ զրկեն զիս 'ի զուարճութեանց անուշ կենցաղոյս մարդկան։ Եւ փոխանակ մատենից ցանկալի գիտութեան դնի առաջի աչաց իմոց տիեզերական թուղթն գործոց բնութեան անգիր և ջնջեալ. և դուռն իմաստութեան փակեալ կայ առաջի իմ։ Վասն որոյ՝ լոյսդ երկնային, [20] դու ինքնին ծագեա 'ի սրտի իմում. լուսաւորեա զմիտս իմ ընդ համօրէն զօրութիւնս նորա. տնկեա 'ի նոսա աչս. սրբեա և փարատեա 'ի նոցանէ զամենայն մթարս. զի կարող եղէց տեսանել և պատմել զաներևոյթս մահկանացուացս աչաց [21]։

Արդ՝ Հայրն ամենակալ 'ի բարձանց անուր հրեղէն երկնից՝ ուրանօր գերաստիճանեալ նստի 'ի վերոյ քան զամենայն բարձրութիւնս [22], խոնարհեցոյց զաչս իւր 'ի տեսանել զարարածս։ Ամենայն Սուրբք երկնից շուրջ կային զնովաւ՝ պարառեալ իբրև զաստեղս։ Ընդ աջմէ նորա բազմեալ էր Որդին միածին՝ ճառագայթաւէտ պատկեր փառաց նորա [23]։ Ետես նա զառաջինն յերկրի անդ զերկոսին Նախահարս մեր՝ կրկին միայն ցայն վայր 'ի մարդկային սեռի, և եդեալ 'ի Դրախտին փափկութեան. ուրանօր յերջանկութեան անդ կթէին զանմահական պտուղս զուարճութեան և սիրոյ, յարատևակ ասեմ զուարճութեան և աննախանձ սիրոյ։ Եւ ապա ածեալ զաչս իւր 'ի դժոխս անդր, և յանդունդս միջին՝ ետես զՍատանայ, զի բարձրացեալ յօդն ստուե‐

րամած յայնմ կողմանէ Գիշերոյ՝ [24] մերձենայր առ պարիսպն երկնից ։ Եւ վաստակաբեկ թեւօքն իւրովք, և յօժարընթաց ոտիւք կայր 'ի պատրաստի վայրաբերիլ յանզարդ երեսս աշխարհին՝ որ առանց հաստատութեան թուէր լինել երկիր հաստատուն . կանգնեալ՝ ոչ գիտեմ , արդեօք յՈվկիանոսի՞ անդ , եթէ ընդ օդս ։ Ակնարկեալ 'ի նա Աստուծոյ 'ի բարձանց անտի իւրումն տեսութեան՝ յորում ունի զառաջեաւ զանցեալսն , զայժմուս, և զհանդերձեալս, զայսօրինակ խօսեցաւ յառաջատեսութեամբ ընդ Որդւոյ իւրում միածնի ։

Տեսանես միածինդ իմ Որդի զմոլեգնութիւնն՝ որ կալեալ ունի զհակառակորդն մեր . մինչև ոչ սահմանացն եղելոց , ոչ փականաց դժոխոց , ոչ շղթայիցն բարդելոց 'ի վերայ նորա , և ոչ իսկ լայնատարր անջրպետութեան ահագին անդնդոցս՝ բաւական լինել ունել զնա ։ Ահա սովին օրինակաւ տուեալ է նորա զանձն յանյոյս վրէժխնդրութիւն՝ որ հանդերձեալ է հոսել 'ի վերայ ապստամբ գլխոյ նորա ։ Բայց արդ զերծեալ նորա յամենայն կապանաց՝ ոչինչ 'ի բացեայ յերկնից թեւապարէ զճանապարհ իւր յառընթեր սահմանս լուսոյ, դէմ եդեալ անխոտոր յաշխարհն նորաստեղծ , և առ մարդն կարգեալ 'ի նմա ։ Եւ կամի զփորձ առնուլ , թէ արդեօք մա՞րթ իցէ նմա բռնի կորուսանել զնա , և կամ չարագոյն ինչ անցուցանել ընդ նա պատիր խաբէութեամբ ։ Եւ անշուշտ ունի պատրել . զի մարդն ունկնդիր լեալ սուտակասալաս բանից նորա՝ անցանէ հեշտեաւ զմիակ պատուիրանաւն, որ է գրաւական հնազանդութեան նորա ։ Եւ

այնպէս կործանեցին նա, և ուխտադրուժ ծնունդք նորա ընդ նմա: Բայց նորա միայնոյ են յանցանքն. զի ընկալեալ նորա յինէն զամենայն բաւականութիւն՝ տակաւին գտանի երախտամոռաց: Քանզի ստեղծի զնա արդար և ուղիղ, և ձեռնհաս առ՚ի կալ հաստատուն՝ թէպէտև անձնիշխան յանկումն: Նոյնպէս ստեղծի և զերկնային զօրութիւնս՝ զորս միանգամ կացին, և զորս անկան անձնիշխանութեամբ իւրեանց: Զի եթէ չէին ազատ կամ անձնիշխան, զի՞արդ մարթ էր նոցա ցուցանել զանկեղծ հպատակութիւն իւրեանց, և զանդրդուելի մտերմութիւն սիրոյն. քանզի թուէր ինձ, թէ բռնաբար կատարեն ըզպարտիս իւրեանց, և ոչ ինքնակամ հաճութեամբ: Եւ յայնժամ զո՞ր գովութիւն մարթ էր նոցա գտանել յինէն. և կամ ինձ զո՞ր հաճութիւն ՚ի հնազանդութենէ նոցա, եթէ կամքն և բանն (երկոքին ևս բարի են) ոչ ունելով զանձնիշխանութիւն՝ վարկպարազի հպատակութեամբ ծառայէին հարկի, և ոչ ինձ: Արդ՝ ըստ արժանեացն ստեղծան նոքա: Եւ ոչ կարեն մեղադիր լինել Արարչի իւրեանց, արարչագործութեանն կամ ճակատագրի, որպէս թէ նախասահմանութեանն բռնացեալ ՚ի վերայ կամաց նոցա՝ հատեալ իցէ զանհրաժեշտ վճիռն վերնական: Նոքա ինքնին սահմանեցին զվտարանջութիւն իւրեանց, և ոչ ես: Եթէ յառաջատես գտայ յանցանաց նոցա, տեսութիւնն իմ չեղև ինչ ձեռնտու նոցին. զի առանց իսկ իմում յառաջատեսութեան հանդերձեալ էին արդիւնանալ: Յայն սակս առանց իմիք բռնադատութեան, կամ ստուերի ճակա-

տագրի, և կամ անփոփոխ նախասահմանութեան իմումս յառաջագիտութեան յանցեան նոցա, առաջնորդ գտեալ անձանց յամենայն խորհուրդս, և յընտրութիւն կամաց իւրեանց: Զի սոյնս անձնիշխանութեամբ ստեղծի ես զնոսա: Եւ նոյնպէս ունէին մնալ, եթէ չէր նոցա անձամբ մատնեալ զանձինս 'ի ծառայութիւն: Ապա թէ ոչ՝ պարտ էր ինձ փոխել զբնութիւն նոցա, և յետս դարձուցանել զվճիռն, զանփոփոխելի և զյաւիտենական վճիռն՝ որ սահմանեաց զանձնիշխանութիւն նոցա: Մասն որոյ ինքեանք սահմանեցին զանկումն իւրեանց: Հրեշտակք անկան ինքնահրապոյրք, անձամբ զանձինս փորձեալ և պատրեալ. այլ մարդն հանդերձեալ է անկանիլ նոցին պատրանօք: Նմին իրի արժան է նմա գտանել զշնորհս, այլ ոչ առաջնոցն: Սովին օրինակաւ ողորմութեամբ և արդարութեամբ բարձրասցի պատիւն իմ յերկինս և յերկրի. այլ յաւէտ փայլեսցի ողորմութիւնն իմ առաջին և վերջին [25]:

Մինչդեռ զայսօրինակ խօսէր Հայրն յաւիտենականն, անուշահոտ բուրումն անմահութեան [26] ելից առհասարակ զերկինս. և յերանելի հոգիս երջանկաց սփռեաց զքաղցրութիւն նորոգ և անճառելի խնդութեան: Զի տեսին զՈրդին միածին յանդուգական փառս իւր: Լիութիւնն Հօր համբուն արտափայլեալ էր 'ի նմա. և երեսք նորա յայտնեալ ցուցանէին զգթութիւն աստուածային, զսէր անվախճան, և զանչափ շնորհս: Որ և խօսեցաւ ընդ Հօր իւրում՝ օրինակ զայս:

Շնորհազարդ են բանք քո՝ ո՛ Հայր, որովք կնքեցեր զվճիռ քո տիրական, թէ՝ արժան է մար-

դոյն զտանել զշնորհս։ Վասն որոյ հանդերձեալ են երկինք և երկիր բարձրացուցանել զօրհնութիւնս քո անլռելի փառաբանութեամբ. և երկնայինքն շուրջ զաթոռովդ հնչեցուցանել զքեզ միշտ օրհնեալ։ Այլ միթէ տակաւին կորնչիցի՞ մարդն, վերջին արարած քո այնչափ սիրելի. և որդին քո կրտսեր զայսօրինա՞կ կործանեսցի՝ զաւաՃանեալ պատրանօք, թէպէտև կից ունելով զանմտութիւն իւր։ Քաւ 'ի քէն Տէր՝ որ դատաւորդ ես արարածոց, և ուղղութեամբ են դատաստանք քո։ Միթէ զայսօրինակ հասցէ՞ հակառակորդն իւրումն կամաց, և քոյդ 'ի դերև ելցէ։ Միթէ լցցի՞ չարութիւն նորա, և ունայն գտցի բարութիւն քո։ Միթէ դարձցի՞ նա անդրէն 'ի դատապարտութիւն իւր պանծանօք՝ թէպէտև յաւէտ ծանրաբեռն, այլ կշտապինդ վրէժխնդրութեամբ. և ձգեսցէ՞ զկնի իւր 'ի դժոխս զհամօրէն ազգ մարդկան ապականեալ նովաւ։ Իսկ կամ ինքնին իսկ կորուսանիցես վասն նորա զամենայն արարածս քո՝ զորս արարեր վասն փառաց քոց։ Իսկ յայնժամ ի՞ւ արդարասցին բարութիւն քո և մեծութիւն։

Որում Արարիչն ամենակալ ետ զայս պատասխանի։ Որդի իմ սիրելի, Որդի ծոցածին, Որդի, Բան, և Իմաստութիւն, և Զօրութիւն իմ էական. զամենայն ինչ ասացեր ըստ խորհրդոյ իմումս կամաց, և ըստ յաւիտենական վՃռոյս։ Ոչ կորիցէ իսպառ մարդն, այլ փրկեսցի. բայց ոչ 'ի ձեռն կամաց իւրոց, այլ 'ի ձեռն ազատապարգև շնորհացս։ Կամիմ նորոգել և կանգնել վերստին զկործանեալ զօրութիւն նորա՝ թէպէտ

և յանցաւոր է նա, և գերեալ ընդ մեղօք ցանկութեան և յիմարութեան: Զի զօրացեալ նորա ինև՝ միւսանգամ զդէմ կալցի իւրումն թըշնամւոյ 'ի մարտի անդ: Ինև ասեմ զօրացեալ՝ զի ծանիցէ զտկարութիւն իւր 'ի կործանման անդ. և ինձ խոստովանեսցի զփրկութիւն իւր, և ոչ այլում: Զոմանս ընտրեցից առանձին իմն շնորհօք: Այլք ձայնի իմում լուիցեն, և ստէպ խրատուցս՝ առ'ի խոյս տալ'ի ճանապարհաց իւրեանց չարաց, և հաշտիլ ընդ իս փութանակի, ցածուցեալ զարտմտութիւն իմ՝ 'ի հրաւիրել անդ զնոսա շնորհաց իմոց: Զի լուսաւորեցից զխաւար մտաց նոցա, և զխստութիւն սրտից նոցա կակղացուցից՝ առ'ի կարող լինել նոցա կալ յաղօթս, ապաշխարել զյանցանս, և մատուցանել ինձ ըզպարտուպատշաճ հնազանդութիւն: Յաղօթս նոցա, յապաշխարութիւն և 'ի հնազանդութիւն մի՛ գտցին ականջք իմ ծանրալուր, և ոչ աչք կափուցեալք: Կարգեցից 'ի նոսա իբրև զպահապան զխիղճ մտաց նոցա՝ զդատաւորն իմ միջնորդ: Եթէ լուիցեն ձայնի նորա, գտցեն զլոյս զկնի լուսոյ՝ քաջ 'ի կիր արկեալ զառաջինն. և այնպէս հասցեն անշուշտ 'ի վախճանն անվախճան: Իսկ որք միանգամ անփոյթ առնեն կամ արհամարհեն, ոչ վայելեսցեն յերկայնմտութեան իմում, և ոչ հասցեն աւուրն շնորհաց: Այլ խստասիրտքն առաւել ևս խստասցին, և կոյրքն յաւէտ կուրասցին. և այնպէս գթեալ նոցա՝ անկցին 'ի խոր խորատ: Ահա զայսպիսիս միայն զրկեմ 'ի շնորհաց իմոց: Բայց ոչ ամենայն ինչ վճարի սովաւ: Մարդն անհնազանդ ստունգանէ ուխտին հաւա-

տարմութեան. և ցանկացեալ աստուածութեան՝ յանցանէ ընդդէմ գերագոյն իշխանութեան երկնից. և այնպէս կորուսեալ նորա զամենայն ինչ՝ 'ի քաւութիւն իւրոց յանցանաց, և 'ի բարձումն անիծից՝ ոչ այլ ինչ մնայ նմա, բայց միայն պարտիք մահու ընդ իւրոց համօրէն ծննդոց: Եւ պարտ է մեռանել՝ կամ նմա, և կամ արդարոյ՝ [27] եթէ չգտցի ոք բաւական, և անձնանուէր 'ի ճիշդ-հատուցումն փոխանակ նորա, զմահ յանձն առեալ ընդ մահու: Արդ՝ ասացէք Զօրութիւնք երկնից, թէ ուրանօ՞ր մարթ է գտանել զսէր այսպիսի: Ո՞ 'ի ձէնջ յանձն առնու լինել մահկանացու 'ի քաւութիւն յանցանաց մահկանացուի, և իւրով արդարութեամբ կեցուցանել զմեղապարտն: Եւ միթէ կայցէ՞ յերկինս այսպիսի սէր անզուգական [28]:

Եհարց նա. բայց համօրէն դասք երկնաւորաց կային անբարբառ, և լռութիւն էր յերկինս [29]: Զի ոչ ոք գտաւ պաշտպան կամ միջնորդ ընդ մարդոյ. և ոչ ոք իշխեաց յանձն առնուլ զյանցանս նորա, ընդ նմին և զփրկանսն եդեալ 'ի վերայ նորա: Եւ այնպէս առաջի կայր մարդկան ազգի կորուստն անփրկանաւոր՝ դատակնքեալ անհրաժեշտ 'ի մահ և 'ի դժոխս, եթէ Որդին Աստուծոյ՝ յորում բնակէ լրումն աստուածային սիրոյն, ոչ էր ընծայեալ զարժանայարգ միջնորդութիւն իւր՝ օրինակ զայս:

Հա՛յր կնքեալ է բան քո՝ արժան է մարդոյն գտանել զշնորհս: Եւ միթէ չիցէ՞ մարթ շնորհացդ՝ որ գտանէ զճանապարհ իւր արագագոյն քան զթեւաւոր պատգամաւորս քո, և ժամանէ

տու ամենեւին կանխեալ եւ անխնդիր, գտանել հնարս առ 'ի հասանել 'ի Թիկունս արարածոց քոց ։ Երանի մարդոյն՝ որում ողորմիս դու սոյնն օրինակաւ ։ Գոլով նորա մեռեալ առ անգամ մի 'ի մեղս, եւ կորուսեալ՝ անմարթ է նմա խնդրել զօգնութիւն շնորհաց քոց . եւ ոչ ոք զկնի մահապարտութեան եւ կորստեան նորա կարող է մատուցանել ըստ արժանւոյն զնուէրս քաւութեան վասն նորա ։ Այլ արդ՝ աւասիկ կամ ես փոխանակ նորա . մատուցանեմ զկեանս իմ ընդ կենաց նորա . յիմ վերայ անկցի սրտմտութիւն քո . եւ համարեա՛ զիս փոխանակ ընդ մարդոյ ։ Կամիմ թողուլ զծոցդ հայրենի, եւ կամաւ այլակերպիլ 'ի փառացս՝ մարմնոյ զգեցմամբ . եւ այնպէս մեռանել հաճութեամբ փոխանակ նորա ։ Թափեսցէ մահ զցասումն իւր 'ի վերայ իմ . այլ ոչ նկուն եղէց, եւ մնացից ընդ երկար ընդ խաւարային իշխանութեամբ նորա ։ Տուր ինձ ունել զյաւիտենական կեանս յանձին [30] ։ Քե՛ կեցից, թէպէտեւ այժմ յանձն առնում զմահ որով մարթ է ինձ մեռանել . եւ պարտական կացուցանեմ զանձն իմ նմին ։ Այլ զկնի հատուցանելոյ զպարտս՝ ոչ թողցես ինձ լինել որս մահու 'ի գերեզմանի անդ ապականութեան . եւ ոչ անարատ հոգւոյս տացես մնալ անդ ընդ երկար ։ Այլ յարեայց վերստին յաղթական . եւ նուաճեալ զյաղթողն՝ կողոպտեցից 'ի նմանէ զպանծալի աւար նորա ։ Յայնժամ ընկալցի մահ զվէրս իւր . եւ խայտառակեսցի՝ մերկացեալ 'ի մահահրաւէր խայթոցէ իւրմէ ։ Յընդարձակութեան անդ վերին օդոյ վարեցից 'ի գերութիւն զդժոխս գերապանծ յաղթութեամբ՝ 'ի

նախատիպս նորուն իսկ դժոխոց . և ցուցից կալանաւոր զիշխանութիւն խաւարի ։ Դու քո հաճեալ ընդ տեսիլ հանդիսիդ՝ հայեցիս 'ի խոնարհ 'ի բարձանց երկնից . և զուարճացիս յանձն քո, այն ինչ յարուցեալ իմ քև՝ խորտակեցից զամենայն թշնամիս իմ, և զմահ . և լցից դիակամբք նոցա զգերեզմանն ապականութեան ։ Դու ապա բազմութեամբ փրկելոցս մտից յերկինս, վերստին դարձ արարեալ յերկրէ զկնի ընդերկար բացակայութեան՝ առ'ի լինել Հայր յանդիման երեսաց քոց . յորում ոչ ևս ցուցցի ամպ սրտմտութեան, այլ պարզութիւն անխռով խաղաղութեան . զի յանմահէ ոչ ևս գտցի տեղի ցասման առաջի քո, այլ կատարեալ ուրախութեան ։

Վախճանեաց նա աստանօր զբան իւր . այլ քաղցրագութ տեսիլ դիմաց նորա տակաւին խօսէր լռելեայն, և շնչէր զսէր անմահական առ մարդն մահկանացու ։ Նա առաւել ևս արտափայլէր 'ի նմա հնազանդութիւնն որդիական . որ և իբրև զպատարագ ինքնանուէր յընծայումն՝ ակն կալեալ մնայր կամաց Հօր իւրոյ ամենակալի ։ Զարմացեալ կային երկինք, և ոչ գիտէին ըզմիտս բանից նորա, թէ յինչ ակնարկեն ։ Բայց Հայրն ամենակալ անդէն արար նմին զայս պատասխանի ։

Դու միայն գտար հաշտութիւն յերկինս և յերկրի փոխանակ մարդոյն՝ որ անկեալն է ընդ բարկութեամբ ։ Դու միակ հաճութիւն անձին իմոյ ։ Դու ծանեար քաջ զանչափութիւն սիրոյս առ արարածս, և յաւէտ առ մարդն՝ զոր ստեղծի 'ի վերջոյ . մինչև 'ի սակս նորա թողուլ ինձ զքեզ 'ի

ծոցոյ և յաթոռակցութենէ իմմէ, զի հեռացեալ առժամանակ մի՝ կեցուսցես զկորուսեալ ազգ մարդկան։ Ընդ՝ միացիր ընդ քումդ բնութեան զնոցայն՝ զորս դու միայն կարող ես փրկել։ Եւ ինքնին 'ի մէջ մարդկան յերկրի անդ, առեալ զմարմին յիւրումն ժամանակի 'ի կուսական արգանդէ անճառելի ծննդեամբ։ Եւ գլուխ մարդկան ազգի փոխանակ Ադամայ՝ թէպէտև որդի ես նորա։ Որպէս ամենեքին կորնչին 'ի նմա, նոյնպէս 'ի քեզ յարմատդ երկրորդ կենդանասցին համօրէն փրկեալքը․ բայց ոչ ոք առանց քո։ Յանցանք նորա պարտաւորս կացուցանեն զամենայն որդիս նորա, այլ արդիւնք քո և փրկանք ազատեսցեն զորս միանգամ հրաժարեալ յանիրաւութենէ իւրեանց՝ կեան պատուաստեալ 'ի քեզ, և ընդունին 'ի քէն զնորոգումն կենաց։ Սոյին օրինակաւ արդարն հատուսցէ փոխանակ մարդոյն։ Դատեսցի, մեռցի, և յարուցեալ 'ի մեռելոց՝ յարուսցէ ընդ իւր զեղբարս իւր․ և փրկեսցէ զնոսա պատուական արեամբն իւրով։ Եւ այնպէս սէրն երկնային ընջեսցէ զատելութիւնն դժոխոց, տուեալ զանձն 'ի մահ 'ի փրկութիւն մարդոյն։ Եւ այնչափ ծանրագին փրկեսցէ զնա, որչափ դիւրագին կորոյս ատելութիւնն դժոխոց։ Եւ տակաւին ևս կորուսցէ զորս ոչ ընդունին զշնորհս նորա։ Եւ 'ի խոնարհիլ քո 'ի զգենուլ զմարդկային բնութիւն՝ ոչինչ նուազեցուցանես կամ անարգես զքոյդ․ զի տակաւին բազմեալ 'ի գերագոյն աթոռ երանութեան հաւասար Հօր քո՝ վայելես յաստուածեղէն փառս։ Սակայն և այնպէս առ'ի փրկել զաշխարհ 'ի վերջին կորստենէ

նորա՝ յանձն առնուլ թողուլ զամենայն ։ Որով
և վաստակօք յաւէտ քան իրաւամբք ծննդեան
գտանիս Որդի Աստուծոյ. արժանի եղեալ այնմ
յաւէտ բարութեամբ քո, քան մեծութեամբ փա-
ռացդ. զի քան զփառս սէրն առաւելեալ գտա-
նի 'ի քեզ ։ Վասն այնորիկ խոնարհութիւն քո
բարձրացուցէ ընդ քեզ և զմարդկութիւն քո
յայս աթոռ [31] ։ Նստցիս 'ի սմա մարմնացեալ. և
օծեալ միահեծան արքայ՝ թագաւորեսցես Աստ-
ուած և Մարդ, որդի Աստուծոյ և որդի Մար-
դոյ միանգամայն ։ Տաց 'ի ձեռս քո զամենայն իշ-
խանութիւն. թագաւորեա միշտ որպէս և վայել
է քեզ ։ Արկից 'ի ներքոյ քո՝ իբրև գերագոյն
Գլխոյ, զԱթոռս, զԻշխանութիւնս, զՊետու-
թիւնս և զԶօրութիւնս ։ Արկանեսցի քեզ ամե-
նայն ծունր երկնաւորաց, և երկրաւորաց, և սան-
դարամետականաց ։ Այն ինչ սպասահարկեալ
փառօք՝ ծագեսցիս 'ի հաստատութեան անդ երկ-
նից. և առաքեսցես զհրաւիրակս քո զհրեշտակա-
պետսն 'ի կոչումն յատեանդ ահաւոր. զի յամե-
նայն ծագաց երկրի կենդանիք և մեռեալք առ-
հասարակ յիւրաքանչիւր դարս՝ հապճեպ փու-
թասցին 'ի դատաստան քո տիեզերական ։ Ի ձայն
ահեղ կոչման զարթիցեն ամենեքեան 'ի քնոյ ։ Եւ
ընտրեալ քո զՍուրբսդ՝ դատեսցես զչարսն 'ի
մարդկանէ և 'ի հրեշտակաց. որք և զկնի հարցա-
փորձի իւրեանց՝ անկցին ընդ քումդ դատաստա-
նաւ ։ Յայնժամ լցեալ դժոխոց զթիւս իւր՝ կաց-
ցէ մշտափակ ։ Հրդեհեալ կիզեսցի աշխարհս. և
'ի մոխրոյ նորա բուսցին նոր երկինք, և նոր եր-
կիր՝ 'ի բնակութիւն արդարոց ։ Որք և զկնի բազ-

մաժամանակեայ նեղութեան իւրեանց վայելեսցեն յոսկեղէն դարս [32], լցեալք պտղովք ոսկեղէն գործոց, և խնդալից յաղթանակաւ սիրոյ և գեղեցիկ Ճշմարտութեան ։ Իսկ դու դիցես 'ի բաց զգաւազանդ արքայական, զի յայնժամ ոչ ևս լիցին պէտք գաւազանի. այլ Աստուած լիցի ամենայն յամենայնի [33] ։ Բայց արդ Դիւցազինքդ երկնից երկիր պագէք նմա՝ որ յանձն առնու ըզմահ առ 'ի լնուլ զայս ամենայն. երկիր պագէք Որդւոյն, և մեծացուսջիք զնա ընդ իս [34] ։

Մինչ չև էր աւարտեալ Ամենակալին զբանն իւր՝ և ահա համօրէն բազմութիւնք հրեշտակաց բարձրագոյն հնչմամբ բազմաձայն և քաղցրանուագ օրհնութեանց հնչեցուցին զերկինս յոբելինաւ [35], և լցին ովսաննայ [36] երգովք զաշխարհն վերնական ։ Խոնարհեցան յարգանօք յերկոսին աթոռոցն. և երկրպագեալ Հօր և Որդւոյ՝ եդին ընդ երկիր զպսակս իւրեանց, որք էին յօրինեալ յոսկւոյ և յանթառամ ծաղկէ, յանմահականէն յայնմանէ՝ որ երբեմն սկսաւ փթթել 'ի Դրախտի անդ առընթեր ծառոյն կենաց. բայց ապա 'ի սակս յանցանաց մարդոյն վաղվաղակի տեղի տուեալ յերկինս՝ ուր զառաջինն բուսաւ, անդ աճեայ. և ծաղկաւէտ բարձրացեալ՝ հովանի եղև 'ի վերայ աղբերն կենաց, և գետոյն երանութեան՝ որ պարայածէ յերկինս զբուրեղեան [37] վտակ իւր զԵղիսեան [38] ծաղկամբք ։ Եւ զի նոքա անթարշամ են միշտ, նոքօք կապեն ընտրեալ հոգիք զնշուլագեղ և զճառագայթափայլ բոլորս իւրեանց ։ Ընդ խիտառխիտ սփռումն նոցա լուսաճաճանչ սալայատակն երկնից իբրև զծով յասպիսանման

խնդացին զուարճանայր՝ ծիրանազգեստեալ երկ-
նային վարդիւք ։ Եւ ապա վերստին Թագազար-
դեալ նոցա՝ առին 'ի ձեռս զոսկի քնարս իւրեանց,
որք էին մշտայարմար, և կախեալ կային զմիջաց
նոցա իբրև զկապարճս պայծառափայլ. և այն-
պէս սկսան մատանել յերգս սրբութեան քաղցրա-
ձայն և զմայլեցուցիչ նախերգանօք սքանչելի ար-
ուեստականաց ։ Ամենայն ձայնք, և ընտիրք միայն
ունէին զտեղի յայն մեղեդի երաժշտական ։ Եւ
այս էր նուագ ներդաշնակութեան նոցա յերկինս ։

Օ՜ քեզ Հայր՝ (երգեցին զառաջինն) ամենա-
զօր, անփոփոխելի, անմահ, անսահման և մշտն-
ջենաւոր արքայ ։ Օ՜ քեզ հաստիչ համայնից, և
աղբիւր լուսոյ ։ Օ՜ քեզ անտեսանելի 'ի պայծա-
ռութեան անդ փառացդ՝ յորում կաս բազմեալ
յաթոռ անմատոյց ։ Բայց տակաւին 'ի ծածկել
անդ զլրութիւն փայլման ճառագայթիցդ՝ երև-
եալ նսեմ քղանցից քոց ընդ ամպն, որ շուրջ պա-
տեալ է զքև իբրև զտապանակ՝ առ անչափ պայ-
ծառութեան շլացուցանեն զերկինս. մինչև լու-
սազգեաց Սերովբէից ոչ իշխեցեալ հուպ մերձենալ՝
կրկնակի թևօքն պարածածկեն զաչս իւրեանց ։
Օ՜ քեզ (երգեցին զկնի) անդրանիկդ արարածոց՝
միածին Որդի, և կերպարան աստուածային ։ 'Ի
պայծառափայլ դէմս քո երևեալ անաղօտ Հօր
ամենակալի՝ տեսանի անտեսանելին եղականաց ։
Ծագումն փառաց նորա տպաւորեալ օթագայի
'ի քեզ. և զեղումն առատութեան Հոգւոյ նորա
համդուցեալ կայ 'ի վերայ քո ։ Քև՛ գոյացոյց նա
զերկինս երկնից, և զամենայն զօրութիւնս նորա.
և քև՛ կործանեաց զթիկնածու իշխանութիւնս ։

Գնաւ 'ի նմին աւուր ոչ անխայեցեր յահեղ շանթա Հօր քո. և ոչ արգելեր զբոցավառ անիւս կառացդ՝ որք դղրդեցին զյաւիտենական հիմունս երկնից, 'ի խաղաղ անդ 'ի վերայ պարանոցաց մարտադիր հրեշտակացն վատնելոց: Եւ զկնի վանելոյ քո զնոսա՝ զօրութիւնք քո մեծաձայն քարոզեցին զքեզ Որդի զօրութեան Հօր, և վրէժխնդիր 'ի թշնամեաց անտի: Այլ ոչ նոյնպէս և 'ի մարդոյ: Զի զանկեալն 'ի ձեռն պատրանաց նոցա ոչ արկեր՝ Հայր ողորմութեան և շնորհաց, խստագոյնս ընդ դատաստանաւ. այլ յաւէտ խոնարհեցար 'ի գթութիւն: Վասն որոյ՝ ընդ առնուլ 'ի միտ սիրելւ և միածին Որդւոյդ զկամս գթութեան քո 'ի վերայ դիւրակործան մարդոյն, 'ի զեղուն բարկութեան քո, և 'ի վախճան մարտի ողորմութեան և արդարութեան՝ զոր երեսք քո ցուցանէին, անդէն անտես արարեալ զերանութեամբն՝ յոր վայելէր ընդ քեզ, մատոյց զանձն իւր 'ի մահ փոխանակ յանցանաց մարդոյն: Ո՜վ անզուգական սիրոյս՝ որ անգիւտն է, և միակ աստուածային: Ուրախ լեր Որդի Աստուծոյ, և փրկիչ մարդկան: Յայսմհետէ երգեցից զանուն քո յորդառատ բանիւ, և քնարն իմ հնչեսցէ անմոռաց զօրհնութիւնս քո՝ անանջատաբար յօրհնութեանց անտի Հօր քո [39]:

Զայսօրինակ անցուցանէին նոքա յերգս ուրախութեան զերջանկաւէտ ժամն յերկինս 'ի վերոյ քան զհաստատութիւնն աստեղաց: Յայնմ վայրի իջեալ Սատանայի 'ի խոնարհ շրջէր 'ի վերայ հաստատուն և դիմահար գնտոյ բոլորակաձեւ աշխարհիս, որոյ կամար բաժանէր զստորին պա-

րունակս Յուսաւորաց՝ որք փակեալ կային յերեսաց Ս. Հի, և յարշաւանաց Հինաւուրցն աղջամիջի. Պոնտոս ինչ նշմարեաց զայն 'ի հեռաստանէ զառաջինն. այլ յայնժամ եղիտ երկիր անսահման, խաւարչտին, անապատ և ամայաբնակ՝ կարգեալ 'ի հանդիպոյ ժամանակաւորիլ ղիմաց անսատեղ գիշերոյ, և մշտասաստ մրրկաց Ս. Հի՝ որք բաղխէին յամենայն կողմանց 'ի խստութեան անդ հաստատութեան. Միայն յայնմ կողմանէ՝ որ հայի ընդ պարիսպն երկնից, ընդունէր նա 'ի բացուստ զնշոյլ իմն աղօտափայլ օդոյ՝ որ էր սակաւուք տանջեալ յերեսաց սաստկաբաղխ մրրկին. Զընդարձակութեան անդ լայնածաւալ դաշտին ազատաքայլ ընթանայր Թշնամին. Որպէս յորժամ անգղ ծնունդ Իմաուսայ՝[40] որոյ ձիւնապատ գագաթն բաժանէ զասպատակաւոր Թաթարն[41], տարագնաց եղեալ 'ի սակաւորս գաւառէ անտի 'ի լնուլ զորովայն իւր մսով գառանց և մատաղ ուլջից արօտականաց 'ի լերինս՝ Թռչի յակունս Գանգեայ[42] և Հիդասպայ[43], գետոցն Հնդկաց. այլ զճանապարհայն իջանէ յանբերրի դաշտավայրսն Սերիկանայ[44]. ուրանօր Չինեացիք[45] վարեն հողմալից առագաստիւք զեղեգնեայ զթեթեւընթաց կառս իւրեանց[46]. Զայսօրինակ շրջէր Թշնամին 'ի վեր և 'ի վայր 'ի հողմակոծեալ ծովու անդ ցամաք երկրի[47], պնդեալ զկնի որսոյ իւրոյ առանձինն, զի տակաւին ոչ գտանէր անդ արարած կենդանի կամ անկենդան. Բայց ապա՝ 'ի լնուլ անդ մեղաց զգործս մարդկան ունայնութեամբ, բազմութիւն յոյժ անցաւորաց և սնոտեաց վերասլացան անդր հանգոյն օդային գոլո-

շեաց ։ Անոտիք ամենայն, և որք միանգամ հաստատեցին 'ի մնոտիս զանենչալի յոյս իւրեանց զկնի փառաց, յաւերժական անուան կամ երջանկութեան յաստիս ։ Ամենեքին նոքա՝ որք ընկալան յերկրի զվարձս մնոտի պաշտաման իւրեանց, ըզվշտամբերութեան և զկոյր նախանձու՝ խնդրեալ միայն զփառս առ 'ի մարդկանէ, գտանեն անդ զարժանի հատուցումն ըստ մնոտի գործոց իւրեանց ։ Նոյնպէս և համօրէն ծնունդք բնութեան անկերպարան, վիժեալ, այլանդակ կամ օտարախառն՝ 'ի լուծանիլ իւրեանց յերկրի, ցնդեալ վերանան անդր, և վտարանդի շրջին ցլուծումն վերջին ։ Ոչ ոչ 'ի սահմանակից լուսնի անդ՝ որպէս երազեցին ոմանք[48] ։ Եկին անդր նախ[49] Հսկայքն ծնեալք 'ի յաւիտենից 'ի խառնազնաց ուստերաց անտի և 'ի դստերաց՝ անուանիք երբեմն մեծամեծ և բազմադղիմի գործովք ունայնութեան իւրեանց[50] ։ Ապա շինողքն Բաբելոյ 'ի դաշտին Սենաարայ[51] . որք և մնոտի խորհրդովք իւրեանց կամէին շինել զնորանոր Բաբելս[52], եթէ էր նոցա կարողութիւն ։ Զկնի եկին այլք առանձինն . որպէս Եմպեդոկղէս՝[53] որ 'ի համար աստուածութեան վազեաց կամաւ ընդ բոցն Էտնայ[54] . և Կղէոմբրոտոս՝[55] որ 'ի սակս վայելլից Պղատոնեան Եղիւսիոնի[56] ամաց զինքն 'ի ծով ։ Եւ այլք բազումք՝ որոց ոչ գոյ թիւ[57] ։

Եգիտ Թշնամին զճանապարհայն զայս գունտ[58] ողջոյն խաւարամած, և շրջեցաւ 'ի նմա ընդերկար . մինչև զկնի աղօտաձաձանչ իմն լոյս ձգեաց զբազմավաստակ ոտս նորա առ ինքն ։ Տեսանէր նա 'ի հեռաստանէ զշինուած ինչ մեծակառոյց՝

ամբարձեալ հոյակապ աստիճանօք առ պարիսպն երկնից: Ի գագաթան նորա նշմարէր զգաւիթն արքայական պալատի յարկեալ մեծագանձ: Ճակատ նորա զարդարեալ էր յադամանդ և յակնթ. և դուռնն ցոլանայր խիտառախիտ ճառագայթաձայն արևելեան գոհարօք: Որոյ զգաղափար կամ զատուերագիծ նմանութիւն չիք տեսանել յերկրի աստ: Ամենդուղքն բերէին զնմանութիւն սանդղոցն Յակովբայ, յորում՝ 'ի փախչել անդ յերեսաց Եսաւայ 'ի Միջագետս Ասորւոց [59], ետես 'ի տեսլեան գիշերոյ 'ի բացօթեայ դաշտին Լուզայ [60] զելևէջս հրեշտակաց՝ զլուսապայծառ պահապանացն կնդից, և զարթուցեալ աղաղակեաց. Ահա դրունք են երկնից: Նմանայն աստիճանք սանդղոցս ունէին զաւանձին խորհուրդ: Բայց ոչ կային միշտ առկախեալ, այլ ձգէին երբեմն անտեսաբար յերկինս: Ընդ ստորոտով նորա ծածանէր ծով յասպիս, կամ մաքրափայլ 'ի մարգարիտ հոսանուտ [61]: Որ 'ի վերջոյ ժամանեաց յերկրէ, էանց ընդ նա առագաստալից՝ նաւապետեալ 'ի հրեշտակաց անտի. և կամ որաթռիչ վազեաց, յափշտակեալ 'ի կառս՝ զոր ձգէին նժոյգքն հրեղէնք [62]: Ծողան ապա սանդուղքն 'ի խոնարհ. կամ 'ի հրապոյրս Թշնամւոյն յանաշխատ ելս, և կամ 'ի նախատինս ցաւագին աքսորանաց նորա 'ի դրանց անտի երանութեան: Ի հանդիպոյ նորա դէմ յանդիման երանաւէտ վայրաց Դրախտին փափկութեան բացան 'ի ստորև լայնատարր անցք ընդ երկիր, առաւել լայնարձակ քան զոր բացեալ եղև զկնի ժամանակաց 'ի լերին անդ Սիոնի յերկրին աւետեաց սիրելւոյն Աստուծոյ. ընդ որ 'ի

վերին հրամանաց բազում անգամ անցին Հրեշ-տակք յայս կոյս և յայնկոյս յայցելութիւն տոհ-միցն երջանկաց [63] ։ Իսկ աչք նորա ակնարկեցին ընտրանօք 'ի Պանեասայ յաղբերէն Յորդանա-նու մինչև 'ի Բերսաբէէ, որ բաժանէ զերկիրն սրբութեան յԵգիպտոսէ, և 'ի ծովեզերէն Արա-բացւոց [64] ։ Ահա այսչափ տեսանէր նա զընդար-ձակութիւն անցիցն . ուր և եդեալ կային սահ-մանք Խաւարի՝ որպէս և ալեացն Ովկիանու [65] ։ Արդ՝ անդուստ առ ոտս սանդղոցն՝ որ հանէր 'ի վեր ընդ աստիճանսն ոսկի առ դուռնն երկնից , ձգտեցոյց Սատանայ զաչս իւր 'ի խոնարհ , ըմբռ-նեալ 'ի հիացումն ընդ յանկարծակի և միահա-ղոյն տեսիլ համօրէն աշխարհիս ։ Ըստ օրինակի լրտեսի , որոյ գնացեալ զգիշերն ողջոյն ընդ ան-կոխ ճանապարհ բազմավտանգ՝ 'ի լուսանալ զը-ւարթարար առաւօտու ժամանէ 'ի կատար բար-ձու լերին՝ որ յանդիման առնէ աչաց նորա անակն-կալ զգեղեցիկ և զնորատեսիլ դէմս օտար երկրի , կամ մեծահռչակ մայրաքաղաքի պճնեալ լուսա-նշոյլ բրգամբք և աշտարակօք՝ զորս 'ի նմին պա-հու յոսկի հանմանէ ճառագայթարձակ ծագումն արեգական ։ Այսպիսի իմն կալան զարմանք զհո-գին չարութեան ( թէպէտև զկնի տեսանելոյ նո-րա զերկինս ), և յաւէտ նախանձ ընդ գեղաղէշ տեսիլ աշխարհիս ։ Ակնարկէ շուրջանակի ( և կա-րէ քաջ մարթ էր նմա 'ի տեղւոջն՝ ուր կայր յայն-ժամ ամբարձեալ 'ի վերոյ քան զշրջապատ վրանն համասփիւռ հովանւոյն գիշերոյ ) յարևելից կու-սէ Կշռոյն [66] մինչև ցաստղն գեղմնաբարձ [67] որ բարձեալ տանի զԱնդրոմեդ [68] հեռագոյն յԱտ-

լանտեան[69] ծովուց անդր քան զՀորիզոնն ։ Ապա
՚ի լայնութեան անդ ձգտեցուցանէ զաչս իւր ընե-
ռէ ՚ի ընեռ[70] ։ Նա անդէն հապճեպ արկանէ շեշ-
տակի զխուճապ թռիչս իւր ՚ի վերայ նախկին
սահմանի աշխարհիս ։ Որ և հեշտեաւ իմն ուղղէ
զմոլորաշաւիղ գնացս իւր ընդ լուսափայլ օդն
մարմարոնեայ ընդ մէջ բազմաթիւ լուսաւորաց ։
Զորս ՚ի հեռաստանէ համարէր աստեղս, այլ ՚ի
մօտոյ եգիտ աշխարհս[71] կամ կղզիս երանութեան՝
ըստ օրինակի Հեսպերեանն[72] պարտիզաց հուշա-
կելոց առ Նախնիս ։ Ո՞չ երջանիկ դաշտաց , և
անտառաց , և ծաղկաւէտ հովտաց , և երից եր-
ջանիկ կղզեաց ։ Զարմացաւ նա ընդ տեսիլ նո-
ցա , բայց ոչ եկաց ՚ի խնդիր բնակչացն ՚ի նոսա[73]։
Այլ առաւել քան զամենեսին՝ ոսկի արեգակն
հանգունատիպ երկնից ՚ի լուսափայլութեան անդ,
ձգեաց առ ինքն զաչս նորա ։ Առ որոյ և ուղ-
ղեաց առ նա զգնացս իւր ընդ հաստատութիւնն
մշտախաղաղ ։ Բայց թէ արդեօք ՚ի վե՞ր կամ խո-
նարհ , ընդ կենդրո՞ն կամ ընդ արտակենդրոն , և
կամ ընդ լայնութի՞ւնն՝ ուրանօր լուսաւորդ մեծ
բացական ՚ի բազմախիտ համաստեղութեանց ան-
տի հասարակաց , որք զվայելչականն ունին զհե-
ռաւորութիւն ՚ի տիրական աչաց նորա , մատա-
կարարէ զլոյս , դժուարապատում են բանքդ[74] ։
՚Ի բոլորել նոցա ոտիւք զաստեղանիշ պարս իւ-
րեանց՝[75] որք ՚ի թիւ արկանեն զաւուրս , զամիս
և զտարիս, դարձուցանեն արագ արագ զայլևայլ
շարժմունս իւրեանց առ լապտեր նորա ամենա-
զուարճ, և կամ թաւալին ՚ի ձեռն մագնիսեան
շառաւիղաց նորա ։ Որ իւրով քաղցրութեամբ

Ջերմացուցանէ զամենայն տիեզերս. և ընդմտեալ հեզիկ և անտեսաբար 'ի խորս համօրէն մասանց նորա՝ ազդէ զզօրութիւն իւր զաներևոյթ: Ահա այսչափ սքանչելի էին պայծառափայլ դիրք նորա: Ահաս անդր Թշնամին: Զբիծ նմանօրինակ նմին Թերևս ոչ ետես երբէք Աստեղաբաշխն 'ի լուսակիր գնտի արեգականն ընդ տեսողական խողովակ իւր ապակեզարդ [76]: Տեղին 'ի վեր քան զբանն պայծառափայլ՝ զոր եգիտ 'ի նմա, համեմատէր մետաղաց կամ պատուական քարանց յերկրաւորացս աստի: Թէպէտև համօրէն մասունք նորա ոչ էին նոյնօրինակ պայծառատեսիլ, այլ առհասարակ յօրինեալ էին 'ի ճառագայթարձակ լուսոյ իբրև զերկաթ արտաշիկացեալ 'ի հուր: Իբրև զմետաղ՝ մասամբ ինչ Թուէր ոսկի, և մասամբ արծաթ սպիտակափայլ: Իսկ իբրև զակն պատուական՝ էր յաւէտ կարկեհան կամ ոսկեքար, յակինթ կարմիր կամ տպազիոն. կամ երկոտասանքն իսկ՝ որք պայծառ փայլէին 'ի լանջանոցին Ահարոնի [77]. և կամ Թերևս քարն այն յաւէտ երևակայեալ քան գտեալ երբէք՝ որում 'ի ստորինս աստ վայրապար 'ի խնդիր ելին Փիլիսոփայք ընդ բազում ժամանակս [78]: Սակայն և այնպէս ճարտար արուեստիւն իւրեանց կապեցին զԹռչական Հերմէս [79]. և վերակոչեալ 'ի ծովէ զփոփոխականն յայլևայլ դէմս զհինաւուրցն Պրոտէոս՝ [80] դարձուցին զնա ընդ ցքահան [81] իւրեանց 'ի կերպարան իւր բնիկ: Արդ՝ զի՞նչ զարմանք են, եթէ դաշտք և երկիր շնչեն անդանօր [82] զմաքուր ոգի հեղանիւթոյ. և գետք խաղացուցանեն զոսկի ըմպելի, այն ինչ պետն Ալքիմիկոսաց [83] արե-

զակն՝ այնչափ 'ի բացեայ գոլով 'ի մէնջ, ազդու հպաւորութեամբն խառն ընդ հողեղէն հիւթոցս ածէ 'ի գոյութիւն 'ի խաւարի աստ մերում զայն չափ բազմապատիկ և զպատուական իրս՝ գեղեցիկ գունով, և անզուգական արգասեօք [84]։ Եդիտ անդ բանսարկուն զնոր տեսարան 'ի պշնուլ անթարթափ աչօք, և անխտիր յերեսաց լուսոյն։ Սամն որոյ և տայր հրաման աչաց իւրոց խաղալ արձակ արձակ ընդ երկայն և ընդ լայն. զի տեսութիւն իւր ոչ գտանէր անդ խափան ինչ կամ ստուեր. այլ ամենայն ինչ պայծառացեալ կայր յերեսաց արեգականն՝ որպէս յարձակել նորա զճառագայթս 'ի միջօրէի 'ի հասարակածէ անտի. Որք և յայնմ պահու ուղղակի սլանայինն 'ի վեր. նմին իրի և չէր հնար ստուերացն անկանել շուրջանակի 'ի դիմահար մարմնոյ անտի [85]։ Իսկ օդն յաւէտ իմն պայծառագոյն գոլով անդանօր՝ ևս քան զևս սրացուցանէր զտեսանողական շառաւիղս աչաց նորա 'ի տեսութիւն հեռաձիգ առարկայից [86]։ Սամն որոյ և անդէն ետես յանդիման աչաց իւրոց զհրեշտակն լուսապայծառ՝ որ կայր անդ, զնոյն ինքն՝ զոր ետես Յովհաննէս յարեգականդ [87]։ Դարձուցեալ ունէր նա զյետոյս իւր, այլ պայծառութիւնն կայր անթագուստ։ Խոյր ոսկի ճառագայթաձիգ արփիական ճառագայթիւք պատէր զգլուխ նորա. և զիսակք նորա յաւէտ պայծառափայլ՝ շուրջ անկանէին կոհակաձև զուսովք նորա և զփետրազարդ թևօքն։ Թուէր իմն կարգեալ 'ի պաշտօնատարութիւն երևելի. և կայր յառեալ 'ի խորհուրդս։ Ընդ տեսիլ նորա ուրախ եղև յոյժ այսն պիղծ. զի յուսայր գտա-

նել նովաւ զուղղութիւն վտարանդի ոտից իւրոց 'ի դրախտ անդր՝ յերանաւէտ բնակութիւն մարդոյն. որ և էր աւարտ իւրումն ճանապարհի, և սկիզբն մերոց աղէտից[88]: Բայց նախ յայլ կերպարան փոխեաց նա զանձն իւր. զի մի 'ի սկզբանն վտանգ ինչ հասցէ նմա, և կամ յապաղումն լիցի ընթացից իւրոց: Վասն որոյ և երևէր յանժամ զոգցես Քերովբէ մատաղատունկ: Եւ թէպէտ ոչ էր 'ի ծաղկի անդ հասակին, սակայն տակաւին խայտայր յերեսս նորա մանկութիւնն երկնային. և յամենայն անդամս իւր սփռեալ կային շնորհք վայելչութեան: Ահա՛ այսչափ գեղաղէշ էին կերպարանք նորա: 'Ի ներքուստ թագին հոսեալ գիսոցն 'ի խոպոպիս՝ ծածանէին յերկուսին այտս նորա: Թևս ունէր 'ի բազմագունեան փետրոց՝ սրսկեալ յոսկի: Կարճութիւն զգեստուն քաջավայելուչ էր յերագութիւն ոտիցն. և գաւազան արծաթի 'ի ձեռին ուղղէր զգնացս նորա: Ոչ մատեաւ նա լուելեայն ամենևին: Յառաջ քան զմերձենալ նորա՝ հրեշտակն լուսափայլ յազդմանէ անտի ականջացն դարձոյց առ նա ըզպայծառատեսիլ դէմս իւր: Որով և անդէն ծանոյց նմա զլինել իւր հրեշտակապետն Ուրիէլ[89], մի յեւթանց անտի՝ որք հպաւորագոյնս կան առաջի աթոռոյն Աստուծոյ պատրաստականք առ հրամանս նորա[90]: Եւ հանգոյն աչաց նորա ընթանան յերկինս 'ի վեր, և յերկիր 'ի խոնարհ 'ի պատգամաւորութիւն: Առ որ մատուցեալ Սատանայի՝ խօսեցաւ օրինակ զայս:

Ուրիէլ առաջինդ լուսապայծառ փառօք յեւթանց անտի 'ի հոգւոց՝ որք կան առաջի գերա-

տրձանեալ աթոռոյն Աստուծոյ. որ և իբրև ընդպատգամաւոր նորա տանիս յերկինս զհրամանս իշխանական կամաց նորա՝ ուրանօր սպասեալ մնան համօրէն որդիք նորա. և աստ 'ի նորուն հրամանաց կարգեալ կաս 'ի նոյնօրինակ պատիւ իշխանութեան. և հանգոյն աչաց նորա բազում անգամ շրջիս 'ի գնին նորաստեղծ արարածոց նորա. կարի իմն փափագ ցանկութեան ձգեաց զիս այսր 'ի դասուց անտի Սերովբէից յառանձին գնացս՝ 'ի տեսանել և իմանալ զսքանչելի գործս նորա, և յաւէտ զմարդն՝ որ է առաջինն 'ի շնորհս բարերարութեան նորա. և յոյր սակս կարգեաց նա զայս ամենայն սքանչելիս: Արդ՝ ասա պայծառափայլ Սերովբէ, թէ յորում 'ի լուսապատար գնտից [91] ունի մարդն հաստատեալ զբնակութիւն իւր. և կամ՝ եթէ չունելով նորա զբնակութիւն հաստատուն 'ի միումն, թողեալ իցէ կամաց նորա բնակել յիւրաքանչիւրումն ըստ հաճոյս:

Զի մարթացայց գտանել զնա. և զանխուլ կամ երբեմ առ երբեմ պշնուլ զարմացմամբ ընդ նա՝ որում Արարչապետն շնորհեաց զաշխարհդ, և առատաձեռնեաց 'ի նա զայնչափ շնորհս: Որպէս զի կարող լիցուք նովաւ հանդերձ և ամենայն արարածովքս փառս մատուցանել Արարչին ամենեցուն՝ որ իրաւամբք վտարեաց յանդունդս զապատամբս զթշնամիս իւր. և 'ի հայթհայթանս կորստեան նոցին ստեղծ նորոգապէս զբազմերջանիկ ազգ մարդկան առ 'ի լաւ ևս ծառայել նմա: Արդարև իմաստութեամբ են ամենայն ճանապարհք նորա [92]:

Զայսօրինակ խօսեցաւ կեղծաւորն խաբեբայ

յանձանօթս ։ Զի անհնար է Մարդոյ և կամ Հրեշտակի 'ի միտ առնուլ զկեղծաւորութիւնն՝ զմիակ Խանսարկուն. որ և շրջի զանխլաբար՝ այլ ոչ առ յԱստուծոյ, ընդ երկինս և ընդ երկիր՝ թոյլտուութեամբ կամաց նորա ։ Եւ կասկածն բազում անգամ յարթնութեան անդ իմաստութեան 'ի քուն կայ առ դրունս նորա. և տայ 'ի ձեռս պարզմտութեան զպաշտօն իւր. որ և բարեմտութեամբն համարի չլինել անդ չարի, ուր ոչ տեսանէ զչար ։ Նա ինքն պատրեաց առ անգամ մի և զՈւրիէլ, թէպէտև ոստիկան էր նա արեգական, և յերկինս համարեալ առաւել սրատես քան զամենայն Հոգիս[93] ։ Որ և զայս ետ պատասխանի առ պատրողն չարանենգ ։

Հրեշտակդ գեղեցկատեսիլ՝ ցանկութիւն փափաքանաց քոց զկնի գիտութեան գործոցն Աստուծոյ 'ի փառաւորութիւն Արարչապետին՝ ոչ ձգէ զքեզ յանչափութիւն ստգտանելի. այլ յաւէտ առաւելագունի է արժանի գովութեան. զի քեզ միայն առաջնորդեաց յեթերական բնակութենէ այսր, առ 'ի լինել ականատես վկայ այնմ՝ զոր ոմանք լսեն թերևս յերկինս, շատացեալ ընդ լուրն և եթ ։ Քանզի արդարև սքանչելի են գործքն Աստուծոյ, ցանկալիք գիտութեան, և կարի արժանաւորք երախտագէտ յիշատակաց միշտ ։ Բայց ո՞ր միտք արարածական կարող է գիտել զնոսին, և կամ 'ի միտ առնուլ զանբաւ իմաստութիւնն՝ որ գոյացոյց զնոսա, և թագոյց զգաղտնի պատճառս նոցին ։ Ընդ էի ես, յորժամ ընդ բան հրամանի նորա զանգուածն անկերպարան՝ նիւթական զաղափար աշխարհիս, եկն 'ի կուտակութիւն.

խառնակութիւնն լուաւ ձայնի նորա. աղմուկն ահագին տեղի ետ. և անբաւութիւնն անսահման փակեցաւ ընդ սահմանաւ: Մինչև յերկրորդ հրամանն նորա փախեաւ խաւարն, ծագեաց լոյսն, և ել կարգաւորութիւն յանկարգութենէ անտի: Յայնժամ տարերքն խառնիխուռն՝ հող, ջուր, օդ և հուր, փութացան արագ արագ յիւրաքանչչիւր կայանս իւրեանց: Եւ հինգերորդ գոյացութիւնն եթերական սլացեալ 'ի վեր՝ ձևացաւ 'ի պէսպէս կերպարանս, և յանթիւ բազմութիւն աստեղաց. որք թաւալին և շարժին գնտաձև՝ որպէս և տեսանես: Ամենեքին ունին զիւրեանց տեղի, և զառանձին ընթացս: Իսկ ոմանք շուրջ պարսպեն զընդհանուր տիեզերս [94]: Այլ դու հայեաց 'ի գունտդ խոնարհագոյն՝ որ յայսմ կողմանէ փայլէ ցոլացեալ լուսովն աստի: Նա երկիր՝ բնակարան մարդոյն, և լոյսն տիւ նորա: Եթէ ոչ ունէր զայն, գիշերն գրաւէր և զնա՝ որպէս զմիւս կիսագունտ նորա: Բայց դարձի Լուսինն (այս է անուն գեղեցիկ Լուսաւորին 'ի հանդիպոյ նորա) հասանէ նմա 'ի ժամու յօգնականութիւն. զի է զի սկզբնաւորեալ, և է զի աւարտեալ նորա զշրջան իւր ամսօրեայ յերկինս՝ 'ի ձեռն լուսոյն զոր աստուստ առնու 'ի փոխ, ընու և դատարկէ զերեքկերպեան դէմս իւր 'ի լուսաւորութիւն երկրի. և այնպէս սահմանհարէ զգիշերն 'ի խաւարային իշխանութեան իւրում: Բիծդ՝ զոր տեսանես 'ի նմա, է դրախտն բնակութիւն Ադամայ. և բարձրաբերձ ստուերքդ հովանի նորա: Անխոտոր ունիս զճանապարհդ առաջի քո. մնայ ինձ ճանապարհն իմ:

Զայս ասացեալ նորա՝ դարձոյց զերեսս իւր առ 'ի գնալ։ Եւ Սատանայի խոնարհեալ նմա ըստ գեղեցիկ քաղաքավարութեան գերագոյն հոգ-ւոց յերկինս՝ ուր ոչ անփոյթ առնեն զպատշաճ մեծարանօք և զյարգութեամբ առ միմեանս՝ [95] ընկալաւ 'ի նմանէ զողջոյն հրաժարական։ Եւ ապա փութացեալ 'ի գծէ անտի խաւարման՝ [96] յուսով յաջողակ ելիցն խաղացոյց զճեպշտապ թռիչս իւր բազմապատիկ եթերական անուօք յերկիր 'ի խոնարհ։ Եւ ոչ եառ զտեղի, մինչև էջ 'ի գլուխ գագաթան Նիփատայ [97] ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Կացեալ Սատանայի յանդիման Եդեմայ, և մերձ 'ի տեղին՝ ուր հանդերձեալ է մատչել 'ի փորձ յանդուգն ձեռնարկութեան, զոր ինքնին առեալ էր յանձն ընդդէմ Աստուծոյ և մարդոյն՝ անկանի 'ի տարակուսանս, և 'ի բազմադիմի կիրս՝ յերկիւղ, 'ի նախանձ և յանյուսութիւն. բայց զկնի պնդեալ հաստատէ զանձն 'ի չարութեան: Յառաջ խաղայ 'ի դրախտ անդր: Նկարագրութիւն արտաքին տեսլեան և դրից նորա: Անցանէ ընդոստ ընդ պարիսպ նորա. և 'ի կերպարանս հողամաղի նստի 'ի զննութիւն շուրջանակի 'ի վերայ ծառոյն կենաց՝ որ բարձրագոյնն է 'ի դրախտի անդ: Նկարագրութիւն պարտիզի նորա: Տեսանէ Սատանայ զառաջինն զԱդամ և զԵւայ: Զարմանք նորա ընդ գեղեցկութիւն կերպարանաց նոցա, և ընդ երջանկութիւն վիճակին. և չարիմաց միտք նորա 'ի կործանումն նոցին: Լսէ զանխլաբար զբանս նոցա. և 'ի միա ստանու 'ի նոցանէ զմահուչափ արգել հրամանին 'ի ճաշակմանէ ծառոյն գիտութեան եդեալ 'ի վերայ նոցա: Վասն որոյ և դնէ 'ի միտ հաստատել զփորձութիւն նոցա յայնր վերայ՝ հրապուրեալ զնոսա 'ի պատուիրանազանցութիւն: Բայց ապա թողու զնոսա առ վայր մի՝ յառաւել ծանօթութիւն վիճակի նոցա 'ի ձեռն հնարից: Յայնմ պահու իջեալ Ուրիէլ 'ի վերայ ճառագայթից արեգական՝ ազդ առնէ Գաբրիէլի պահպանապետի դրախտին զփախուստն հոգւոյն չարութեան 'ի գժոխոց անտի. և զմուտ նորա 'ի դրախտ անդր՝ անցեալ ընդ դուռն արեգական 'ի միջօրէի 'ի կերպարանս բարի հրեշտակի. զոր և ծանուցին զկնի մոլեգին շարժուածք նորա 'ի լերին անդ: Գաբրիէլ խոստանայ նմին գտանել զՍատանայ՝ մինչչև է ծագեալ առաւօտու: Հասեալ գիշերոյն 'ի վերայ՝ Ադամ և Եւայ պատրաստեն զանձինս առ 'ի գնալ 'ի հանգիստ քնոյ: Նկարագրութիւն հովանոցի նոցա. և պաշտօն երեկոյին: Հանէ Գաբրիէլ զգունդ իւր 'ի պահպանութիւն գիշերոյ առ սահմանօք դրախտին. և զերկուս 'ի զօրաւորաց անտի հրեշտակաց կարգէ 'ի զգուշութիւն հովանոցին Ադամայ և Եւայի. գուցէ մտեալ անդր հոգւոյն չարութեան՝ վնաս ինչ հասուսցէ նոցա 'ի ննջել անդ: Գտանեն նոքա զՍատանայ առ ունկամբք Եւայի, զի փորձէր զնա յանուրջս. և կալեալ ածեն զնա բռնի առ Գաբրիէլ: Յորմէ հարցեալ նորա՝ տայ պատասխանի յանդուգն, և կամի հակառակել: Բայց նշանն յերկնից արգելու զնա. և ինքն խոյս տայ 'ի դրախտէ անտի:

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ.

## ԳԻՐՔ. Դ։

Ո՜ լսելի առնէր յայնժամ զձայնն ազդարար՝ Վա՜յ բնակչաց երկրի, զորոյ զբարձրագոչ բարբառ լուաւ յերկինս տեսողն Յայտնութեան, այն ինչ զկնի երկիցս խորտակման անկաւ վիշապն 'ի խոնարհ 'ի վրէժխնդրութիւն 'ի մարդոյ անհնարին սրտմտութեամբ [1] ։ Զի թերևս զգուշացեալ յառաջագոյն Նախահարցն մերոց 'ի գալստենէ անտի զաղտնորոգայթ թշնամւոյն՝ խոյս տային, թերևս խոյս տային 'ի մահահրաւէր մեքենայից նորա ։ Քանզի ահա Սատանայ նորոգ բորբոքեալ սրտմտութեամբ՝ իջանէ յերկիր 'ի փորձել յառաջագոյն զազգ մարդկան՝ մինչչև է նորա չարախօս լեալ զնոցանէ [2]. և թափել 'ի վերայ անմեղութեան զդիւրակործան մարդոյն զվրէժ քինու կորուստեան նախկին մարտի իւրոյ յերկինս, և ակամայ փախստեան 'ի դժոխս ։ Սակայն մինչչև է նորա խնդացեալ ընդ յաջողուած անձինն, և ստացեալ պարծանս՝ խրոխտաբար իմն և անվեհեր սկիզբն առնէ ահագին հանդիսին, որ արդ յերկուսն հա-

սեալ՝ եռացեալ բորբոքի 'ի խռովայոյզ սրտի նորա, և իբրև զմեքենայ դիւական՝ առ ինքն ընկրկի: Արհաւիրք և կասկածք խռովեցուցանեն զաղմկեալ խորհուրդս նորա. և տատանեցուցանեն 'ի նմա 'ի հիմանց զդժոխս՝ զոր յանձին բերէ. և չէ հնար նմա փախչել 'ի նմանէ փոփոխութեամբ տեղւոյ: Յիշողութիւնն զարթուցանէ զխիղճ մտացն՝ որ 'ի քուն կայ. ընդ նմին և զդառն յիշատակ նորին՝ որ էր, և է, և հանդերձեալ է լինել վատթարագոյն ևս. զի չարաչար գործոց մնան չարաչար տանջանք: Տխրագին արձակէ զվշտատես աչս իւր, մերթ զի յԵդեմ՝ որ կայ յանդիման նորա զուարճատեսիլ, և մերթ զի յերկինս, և յարեգակն պայծառափայլ՝ որ ամբարձեալ կայ յաշտարակն միջօրեայ: Այլ զկնի ընդերկար խորհրդոց՝ սկսաւ ասել հեծութեամբ օրինակ զայս:

Ո՜վ արեգակն՝ որ կաս թագազարդեալ գերապանծ փառօք, և երևիս 'ի քում տէրութեանն իբրև Աստուած նորոյ աշխարհիս, և աստեղք համօրէն ծածկեն զանչքացեալ զլուխս իւրեանց յերեսաց քոց՝ առ քեզ բարբառիմ, այլ ոչ 'ի բարբառ մտերմական սիրոյ. զի գիտասցես, թէ քանի՜ ատելի են ինձ ճառագայթք քո՝ որք յուշ ածեն ինձ զվիճակն յորմէ անկայ. և զչքեղութիւն փառացն՝ զոր ունէի երբեմն առաւել քան զգունտորդ լուսափայլ. մինչև ամբարտաւանութիւն և հեգ փառասիրութիւն կործանեաց զիս 'ի մարտ անդ յերկինս՝ զոր յարուցի ընդդէմ Ամենակալին: Ո՜հ, ընդէ՞ր արդեօք: Ո՞չ է նա ստեղծ զիս 'ի բարձրութեան անդ չքեղաշուք պատուոյն՝ յորում կայի. բարութիւն նորա ոչ լինէր կշտամ-

բիչ. և ծառայութիւն նորա չէր ինչ ծանրալուծ։
Ո՛չ էր նա արժանի այսպիսի փոխարինաց յինէն։
Զի զի՞նչ մարթ էր լինել յաւէտ դուզնաքեայ
և դիւրագին տրիտուր՝ քան մատուցանել նմա
զփառս, և զարժանին շնորհս երախտեաց։ Սա-
կայն ամենայն բարութիւնք նորա համարեցան ինձ
չարիք. և գտին յիս միայն զչարութիւն։ Տարա-
պարտ հպարտացեալ՝ ոչ առի յանձն զհպատա-
կութիւն ծառայութեան. և համարեցայ գերա-
գոյն աստիճանին ամբառնալ զիս յե՛ս բարձրա-
գոյնն, և անդէն կացուցանել զիս ազատ 'ի պար-
տեաց անտի անսահման երախտեացն, որք առ ան-
չափութեան՝ 'ի վճարել անդ տակաւին մնան 'ի
պարտեաց համարի։ Այլ ես 'ի մոռացօնս ար-
կեալ զամենայն երախտիս նորա՝ ոչ ածի զմտաւ,
թէ միտք շնորհակալու 'ի խոստովանել անդ ըզ-
պարտիս անձին՝ ոչ ևս մնայ պարտական, այլ ան-
դէն հատուցանէ. և այնպէս ազատացեալ լնու
ևս զպարտս անձին։ Եւ զի՞նչ մարթ էր լինել
թեթևագոյն քան զայդ։ Ո՞վ երանի թէ կար-
գեալ էր զիս տեսչութեան Արարչին 'ի հրեշտակ
խոնարհագոյն. զի յայնժամ բարեբաստիկ լինէի,
և յանձնապաստանութիւնն ամենհի ոչ ամբառ-
նայր զեղջիւր փառասիրութեան։ Բայց զի՞նչ։
Մարթ էր և յայնժամ մեծագոյն ևս զօրութեան
քան զիս հետամուտ լինել այնմ, և զիս զստորինս
ձգել զկնի իւր։ Ո՛չ այդպէս։ Ահա և այլք 'ի
հզօր զօրութեանց անտի իմոց հաւասարից ոչ ան-
կան, այլ կացին անսասան՝ սպառազինեալ ներ-
քոյ և արտաքոյ ընդդէմ ամենայն փորձութեանց։
Մի՞թէ ո՞չ ունէիր դու զնոյն կամս ազատութեան,

և զնոյն զօրութիւն առ 'ի կալ հաստատուն։ Եւ եթէ ունէիր, ում և կամ իմ իմիք մարթ է քեզ մեղադիր լինել, եթէ ոչ անչափ սիրոյ ազատութեան՝ զոր նա հաւասար բաշխեաց ամենեցուն։ Արդ՝ անիծեալ լիցի սէրդ. զի սէր և ատելութիւն առհասարակ մատնեն զիս անվախճան աղէտից։ Տի՛նա անիծեալ լիջիր դու. զի կամք քո ընդդէմ կամաց նորա ընտրեաց ազատութեամբ զայն ինչ՝ ընդ որ յիրաւի ստրջանաս այժմ։ Աւաղ անձին իմոյ։ Ընդ ո՞ր ճանապարհ փախեայց յերեսաց անսահման բարկութեան, և անսպառ անյուսութեան։ Յո՞ր կողմն և փախեայց, գտանեմ զդժոխս, զի ինքնին եմ դժոխք։ Եւ 'ի խորխորատի անդ տակաւին խորագոյն ևս անդունդք բացեալ կան ահեղ սպառնալեօք, և կամին կլանել զիս։ Առ որովք դժոխքն՝ զոր յանձին կրեմ, համարին երկինք։ Աղէ ապաշաւեա՛ գոնեայ անսագան։ Միթէ չի՞ք այլ ևս տեղի ապաշխարութեան և շնորհաց։ Այո՛, բայց հպատակութեամբ և եթ։ Այլ զայն և յիշատակել անգամ ոչ ներեն ինձ ամօթն և երկիւղն նախատանաց 'ի մէջ հոգւոցն սանդարամետից՝ զորս խոտորեցուցի՝ ոչ խոստամամբ հպատակութեան, այլ մեծամեծս պանծացեալ յաղթահարել զԱմենազօրն։ Եղո՛ւկ ինձ, զի ոչ գիտեն նոքա զծանրութիւն տուգանացն՝ զոր յանձին կրեմ 'ի սակս մեծաբանութեանցս. և ոչ զտանջանսն՝ որք տան ինձ յոգւոց հանել 'ի ներքոյ, այն ինչ բազմեալ յաթոռ դժոխոց՝ ընդունիմ զերկրպագութիւն 'ի նոցանէ։ Պաոլով ամբարձեալ 'ի թագ և 'ի գաւազան՝ իջանեմ 'ի խորս անդնդոց, և գերազանցեալ կամ զնոքօք՝ միայն

'ի թշուառութեան : Ահա այս է փառաւորու-
թեանն փոխարէն : Բայց թէ և մարթ իցէ ինձ
ապաշաւել , և գտանել շնորհօք զվիճակն իմ զա-
ռաջին, սակայն վերստին բարձրութիւնն ոչ ապա-
քէն ընդհուպ հանդերձեալ է հրապուրել զիս 'ի
խորհուրդս ամբարտաւանութեան , և ժխտել
փութանակի զերդումն կեղծուպատիր հպատա-
կութեան : Դիւրութիւնն անդրէն գտեալ հրա-
ժարեցի յայնժամ յուխտէն՝ զոր արար 'ի վիշտս,
իբրև թէ լեալ իցէ ակամայ և յումպէտս : Ո՜հ
անհնար է անկեղծ հաշտութեան ունել անդ տե-
ղի , ուր խորագոյն են վէրք ոխերիմ թշնամու-
թեան : Որ և անշուշտ ձգեսցէ զիս միւսանգամ
'ի վատթարագոյն ևս անկումն , և 'ի կորուստ ան-
դարմանելի : Իսկ այնպէս մնայ ինձ գնել ծանրա-
գնի և կրկին ցաւօք զհանգիստն առժամանակեայ։
Ո՜վ այս քաջ գիտէ և նա՝ որ պատժէն զիս . վասն
որոյ այնչափ հեռի է նա յընդունելոյ զհաշտու-
թիւն , որչափ ես 'ի խնդրելոյ զայն : Որ և անյոյս
գոլով 'ի մէնջ՝ ահաւասիկ նորոգ հաճութիւն նո-
րա փոխանակ մերժելոցս և տարագրելոցս արար-
չագործեաց զազգ մարդկան . և 'ի սակս նոցա
զայս աշխարհ : Արդ՝ և ինձ ոչ ևս մնայ տեղի յու-
սոյ , և ընդ նմին երկիւղի , և ընդ երկոցունց խայ-
թի մտացս խղճի : Ամենայն բարիք կորուսեալ են
վասն իմ : Չարիքն միայն մնան ինձ բաժին : Գէթ
նոքօք կալայց զբաժանեալ ինքնակալութիւնն ընդ
արքային երկնից , և թերևս թագաւորեսցից 'ի վե-
րայ առաւելագոյն մասին . որպէս ծանիցէ զկնի
մարդն , և աշխարհն նորաստեղծ [3] :

Մինչդեռ զայսօրինակ խօսէր նա , համօրէն

կիրք անձինն արկլին զստուեր մթութեան զերեսօք նորա. և երիցս այլափոխեցին զայն սրտմտութեամբ, նախանձու և անյուսութեամբ. որք և մատն լինէին տգեղութեանն, եթէ ոք ակնարկէր 'ի դէմս նորա: Վասնզի երկնային միտք ազատ են յայնպիսի ժանտատեսիլ այլայլութենէ դիմաց: Զոր և անդէն ծանուցեալ Ճարտարապետին խաբէութեան՝ հանդարտեցոյց առ արտաքս զամենայն յուզմունս մտացն խռովութեան: Նա էարկ 'ի կիր զառաջինն զստութիւն ընդ կերպարանօք Ճշմարտութեան՝ 'ի ծածկոյթ խորին չարութեան, որ դարանեալ կայր 'ի սրտի նորա 'ի խնդիր վրիժուց: Սակայն մինչև էր նորա վարեալ զայն 'ի պատրանս՝ ծանոյց Ուրիէլ յառաջագոյն: Զի աչք նորա չոգան զկնի ճանապարհի նորա յերկիր 'ի խոնարհ. և 'ի լերին անդ Ասորուց [4] տեսին զանհնարին տգեղութիւն դիմաց նորա յերեսաց կրիցն, որում անմարթ էր վիճակել անմահական հոգւոյ: Նա անդէն քա՛ջ 'ի միտ էառ զմոլեգլին գնացս և զշարժուածս նորա, այն ինչ համարէր նա զանձն աննշմար յումեքէ, և անտես բոլորովին: Զայս օրինակ յառաջ խաղացեալ նորա՝ եհաս 'ի սահմանս Եդեմայ: Ուրանօր դրախտն փափկութեան յանդիման աչաց նորա պսակէր դալարազգեստ պատնշաւ իբրև ցանկով անդաստանի զդաշտականն գլուխ զառ 'ի վեր բլրոյն. որոյ թփալից կողմանք թարգաւաճեալ յանարուեստ և 'ի վայրի մացառս՝ անմատոյց ընծայէին զամենայն մուտս: 'Ի գագաթան նորա աճեցեալ յանյաղթ բարձրութիւն մայրի, սօճի, եղևնի և բազմաստեան արմաւոյ՝ լայնանիստ ստուերօքն իւ-

ըեանց կազմէին տեսարան իմն անտառազուարճ ։
Այլ ելք կարգաց նոցա 'ի վեր ընդ սատիճանեալ
հովանիս՝ Թատրոն իմն յօրինէին կանաչազեղ և
գեղեցկատեսիլ ։ Իսկ 'ի վերոյ քան զկատարս նո-
ցա ամբարձեալ կայր դալարազուարճ պարիսպն
դրախտին. որ և մատուցանէր Հօրն հասարակաց [5]
զպայծառ տեսիլ իւրումն ինքնակալութեան
'ի խոնարհ, և սահմանաց նորա շուրջանակի ։ Այլ
'ի վեր քան զպարիսպն շուրջ պատէին դասակար-
գութիւնք ընտիր ընտիր ծառոց ծանրաբեռն գե-
ղեցկատեսիլ պտղովք. որոց ծաղկեալ և 'ի տոհ-
մականս հասեալ ոսկեգոյն՝ զուարճախառն երև-
էին ընդ կիտուածոյ երանգաց ։ Արեգակն յաւէտ
հաճութեամբ տպաւորէր 'ի նմա զճառագայթս
իւր՝ քան 'ի զուարճագեղ ամպն երեկոյին, և 'ի
ջրարբի աղեղն [6] զկնի ոռոգելոյն Աստուծոյ զեր-
կիր ։ Ահա այսչափ զուարճալի էր տեսիլ նկարու-
տեղւոյդ ։ 'Ի պարզութեան անդ օդոյ՝ 'ի մատչել
նորա յառաջ, մաքրագոյն ևս օդ ելանէր նմա
ընդ առաջ. և հնչէր 'ի սիրտ նորա զգարնանա-
զուարճ բերկրութիւն, որ շատ իսկ էր 'ի փարա-
տումն ամենայն տխրութեանց նորա, այլ ոչ ան-
յուսութեան ։ 'Ի բաղխել անդ քաղցրասիգ հող-
մոց զանուշահոտ Թևս իւրեանց՝ բաշխէին զբնիկ
անուշունս իւրեանց. և 'ի շշնջիւն իւրեանց ծա-
նուցանէին զկողմանս սահմանացն՝ յորոց յափշ-
տակեալ էին զբալասանեան աւարս իւրեանց ։
Որպէս յորժամ 'ի նաւարկել անդ յայնկոյս դա-
րաւանդին Կապայ [7], և յանցանել ընդ Մոզամ-
բիկ՝ [8] բուրեն հողմք հիւսիսոյ և արևելից զՍա-
բէական[9] անուշահոտութիւնս իւրեանց 'ի հեռաս

տանէ 'ի ծովեզերէն համեմից երջանիկն Արաբիոյ [10] : Այլ նաւորդացն ընդ անագանութիւն ընթացից Ճանապարհի իւրեանց խնդամտեալ՝ թողացուցանեն զառագաստս, և այնպէս բազում փարսախս զուարճացեալ բերկրին ընդ քաղցրութիւն անուշահոտ բուրմանցն՝ որովք հինաւուրցն պաբարի Ովկիանոս [11] : Զայս օրինակ էառ թշնամին զհոտ բուրման անուշից դրախտին՝ զորս եկն նա 'ի թունաւորել : Սակայն և այնպէս յաւէտ հաճեցաւ նա ընդ նոսա, քան Ասմոդէոս [12] ընդ ձկանն ծուխ՝ որ հալածեաց զտարփածուն 'ի հարսնէ որդւոյն Տովբիթայ . մինչև առաքեալ նորա քինախնդիր վրիժու 'ի Մարացն կայից յԵգիպտոս՝ պնդեցաւ 'ի կապանս [13] :

Արդ՝ յառաջեաց Սատանայ յուշիկ և մտախոհ 'ի ստորոտ անդր զառ 'ի վեր և անտառազուարճ բլրոյն . բայց անտի և անդր ոչ եգիտ ըզՃանապարհ . զի այնպէս թաւացեալ էր, որպէս մացառք յաճել անդ թփոց և փշոց յանցս Ճանապարհին՝ խափան լինին ընթացից մարդոյ կամ անասնոյ : Ունէր զմի միայն դուռնն՝ որ հայէր ընդ արևելս : Զոր տեսեալ նախաչարին՝ ոչ արժան համարեցաւ անձին անցանել ընդ նա . այլ ընդոստուցեալ՝ վաղեաց անդր քան զսահման բըլրոյն կամ բարձու պարսպին, և համբուն իջեալ 'ի ներքս՝ եկաց կանգուն 'ի վերայ ոտից իւրոց : Որպէս յորժամ գայլ յափշտակող ելեալ 'ի խընդիր նորոգ որսոյ առ քաղցու՝ զգուշանայ անձին զվայրօքն, ուրանօր հովիւքն տաւարեն զհօտս իւրեանց 'ի ցանկապատ դադարս յանքոյթ դաշտի ընդ երեկս . և վաղեալ ընդ ցանկն՝ մտանէ 'ի

ներքս 'ի հօտն ոչխարաց: Կամ որպէս գող զհետ մտեալ մթերից գանձու մեծատան՝ որոյ ստուարափակ դրունք ամրացեալ կան քաջապինդ նգօք, և չերկնչին յերեսաց յարձակման, ելանէ 'ի վեր ընդ պատուհանն, կամ 'ի վերայ տանեաց, և այնպէս մտանէ 'ի ներքս: Զայսօրինակ եմուտ աւազակապետն 'ի փարախն Աստուծոյ զառաջինն, և նոյնպէս մտին զկնի յեկեղեցի նորա վարձկանքն անիրաւութեան [14]: Սլացաւ նա անդուստ 'ի վեր, և նստաւ իբրև զհողամաղ [15] 'ի վերայ ծառոյն կենաց՝ որ բարձրագոյնն էր 'ի դրախտի անդ: Բայց ոչ ձգեաց 'ի նմանէ յանձն իւր զճշմարիտ կեանս. այլ նստաւ անդ 'ի խորհուրդ մահուն կենդանեաց: Եւ ոչ իսկ յածեցոյց զմիտս իւր ընդ զօրութիւն կենսաբեր տնկոյդ. այլ կարգեաց զայն 'ի դիտանոց անձին: Զոր եթէ քաջ արկեալ էր 'ի կիր, լինէր նմին առհաւատչեայ անմահութեան: Սոյնպէս ամենայն որ ոչ քաջ ճանաչէ զյարգ առաջիկայ բարւոյն. և զպիտանին 'ի կիր արկանէ չարաչար, կամ յումպէտս [16]: Տեսանէ անդ 'ի ստորև նորոգ զարմացմամբ զամենայն մեծութիւնս բնութեան, մանաւանդ թէ զերկիրս յերկրի՝ կարգեալ յանձուկ սահմանի 'ի վայելս զուարճութեան մարդկային կենաց: Զի պարտէզ էր Աստուծոյ դրախտն փափկութեան տնկեալ 'ի նմանէ յԵդեմ ընդ արևելս: Որ և ձգէր զսահման իւր յԱւրանայ [17] մինչև ցարքունի աշտարակս մեծին Սելևկիոյ՝ [18] 'ի դաստակերտս թագաւորացն Յունաց. և կամ 'ի Տեղասար՝ [19] ուր որդիքն Եդեմայ կալան յառաջագոյն զբնակութիւն իւրեանց: Յայն երկիր սխրալի կար-

զեայ Աստուած զպարտէզ իւր ամենազուարճ։ Յորոյ արգաւանդաբեր հողոյ բուսոյց նա զամենայն ազգս ընտիր ընտիր և հաճոյական ծառոց 'ի տեսիլ, 'ի հոտ և 'ի ճաշակ։ Յորոց միջի բարձրացեալ կայր ծառն կենաց, և տայր զանուշակ պտուղս յոսկի բուսական։ Իսկ առընթեր կենացն աճէր մահ մեր՝ ծառն գիտութեան։ Յորմէ գիտութիւնն բարւոյ գտաւ ծանրագին չարին գիտութեամբ։ Ընդ հարաւակողմն Եդեմայ խաղայր գետ լայնանիստ՝ որ ոչ փոխէր զընթացս իւր, այլ անցեալ ընդ բլուրն անտառաշատ՝ անդնդանայր 'ի ստորև։ Վասնզի ձգեալ էր Աստուծոյ զբլուրդ իբրև զբարձրաբերձ դիտանոց իւրումն պարտիզի 'ի վերոյ քան զհոսանս ջուրց։ Որ և ընկլուզեալ հեզիկ ծարաւով 'ի բազմածակ երակս հողոյ՝ յառնէր զկնի աղբիւր զովարար. և բազում վտակօք ոռոգանէր զպարտէզն։ Իսկ ապա միացեալ՝ հոսէր ընդ զառ 'ի վայր բլրոյն, և ելանէր ընդ առաջ գետոյն՝ որ էր 'ի խոնարհ. և 'ի գնացս իւր կէր զի երևէր ընդ աղօտ, և կէր զի բաժանեալ 'ի չորս մեծամեծ առաջս՝ ընթանայր յայլևայլ կողմանս. և շրջէր պատէր զաշխարհս երևելի թագաւորութեանց՝ որոց աստանօր չեն պէտք պատմութեան։ Այլ յաւէտ պէտք են բանից՝ եթէ մարթ իցէ պատմել արուեստի, թէ զիարդ յաղբերէ անտի շափիւղայ՝ յածեալ բազմապտոյտ վտակացն ընդ մարգարիտ արևելեան, և ընդ աւազ ոսկի՝ յոլորտածաւալ գնացս իւրեանց ընդ հովանեաւ ծառոց՝ խաղացուցանէին զՆեկտար [20] յայցելութեան անդ առ իւրաքանչիւր տունկս. և դարմանէին զդրախտավայել ծա-

դիկս. զորս ոչ արտաքսումն ճարտար սփռեաց բազ-մառուատ յակօսամէջս կամ յընտիր շառաւիղս, այլ ընտելութիւնն մշտադալարծ 'ի լերինս անդ, 'ի հովտի և 'ի դաշտավայրս: Եւ միայն անդանօր՝ ուր արեգակն հարկանէ զառաջինն ջերմութեամբ իւրով զվայրն բացօթեայ, այլև ուրանօր անթա-փանցանց հովանեաց ստուերացուցանէ 'ի միջօրէի զծողաբերձ սարփինայս: Նա այսչափ զուարճա-լի էր դաշտայինն տեսիլ դրախտոփ փափկութեան: Բազմահարուստ ծառք անտառաց հովէին 'ի նմին զանուշահոտ խեժս և զբալասան: Եւ պտուղք ամենայն ոսկի պատենիւքն ոզորկափայլ կախեալ կային՝ գեղեցիկ 'ի տեսանել, և քաղցր 'ի կերա-կուր: Հնապերեանն 21 առասպելք՝ եթէ իցեն ճշմարիտ, անտանօր միայն ունին զտեղի: 'Ի մէջ անտառաց կային դաշտք կամ մարգագետինք պար առեալ շուրջանակի 'ի ծառոց անտի. և խա-շինք ճարակաւորք 'ի դալարիս փափկութեան. և բլուրք արմաւենեաց: Աւրանօր և նկարապաճոյճ գոգ Ջրարբի հովտին սփռէր զգանձս իւր՝ զբազ-մագունեան ծաղիկս, և զանուշ վարդս: Միւս կողմն նորա առաջի ընծայէր զծմակային փապարս և զզովացին քարանձաւս յառանձին վայրի. յո-րոց վերայ հովանացեալ որթոյն՝ տարածէր զծի-րանափայլ ողկոյզս իւր, և հանդարտաքայլ դու-ճանօք արկանէր զխիզաս: Եւ կարկաջահոսան ջուրք անկանէին 'ի խոնարհ ընդ զառ 'ի վայր լե-րինն, սփռեալ վտակացն, և կամ համահաւա-քեալ 'ի լիճ՝ որ զեկուրեղեան հայելի իւր առաջի տանէր եղերացն պճնելոց 'ի վերջաւորս, և թա-գաւորդից 'ի մրտենի: Աւաչուանքն անցեալ կային

անդամանօր 'ի պարերգութիւն ընդ միմեանս ։ ՝Լը-ւածք նոցա նուագ գարնայնոյ ։ Ընդ շուշանս անուշահոտ բուրմանց դաշտի և անտառի քաջ յարմարեցին նոքա զՀնչիւն դիւրաշարժ տերևոցն, այն ինչ Պան [22] պարագլուխ դասու բոլորէր ընդ Շը-նորհս [23] և ընդ Ժամս [24] զկաքաւ իւր յանմահական գարնան [25] ։ Ո՛չ գեղեցկադուարճ դաշտն Ենայ [26] (ուրանօր Պերսեփոնէ [27] 'ի հաւաքել զծաղիկս ինքնին ամփոփեցաւ 'ի գեղեցկագոյնն ծաղիկ ձեռամբ անդնդաբնակն Դիտայ [28] . յոյր սակս կրեաց իսկ Դեմետր [29] զայնչափ տառապանս՝ շրջեալ 'ի խնդիր նորուն ընդ տիեզերս) . ոչ քաղցրաշունչ անտառն Դափնեայ [30] առ երի Որոնտեայ [31] . և ոչ հոգեկիր աղբիւրն Կաստաղեան՝ [32] կարեն երբէք մրցանել 'ի պայքար ընդ դրախտին Եդեմայ ։ Որպէս և ոչ ՝Նիւսեյեանն [33] կղզի՝ զոր գետն պատէր Տրիտոն [34] . ուրանօր ծերունին Քամ [35] զոր հեթանոսք կոչեն Ամմոն կամ Արամազդ Լիբէացւոց, թագոյց զԱմալթէա [36], և զորդի նորա զծաղկապսակ մանուկն Դիոնիսիոս. [37] յերեսաց անհաշտ մօր նորա Ռեայ [38] ։ Եւ ոչ իսկ լեառն Ամարայ՝ [39] ուրանօր Աբասինք [40] արքայք պահէին զծնունդս իւրեանց ։ Թէպէտև ոմանք անդամանօր համարեցան լինել զդրախտն ճըշմարիտ ընդ Եթովպեան գծիւ առընթեր գլխոյն Նեղոսի՝ [41] զոր քարաժայռն պատէ պայծառափայլ՝ վերամբարձեալ աւուր միոյ ճանապարհ ։ Սակայն նա կարի հեռի 'ի բացեայ է 'ի պարտիզէն Ասորւոց՝ [42] ուր Թշնամին ետես անզուարճ՝ տեսիլ նոր և աքանչելի, զամենայն զուարճութիւնս, և զազգս կենդանեաց ։

Յորոց միջի զերկուս տեսանէր յաճախականս կերպարանս՝ ուղղորդս, բարձրահասակս և աս-տուածանմանս. և 'ի հրաշալի վայելչութեան անդ-ընական պատուոյն զարդարեալ իբրև, տեսարան ամենեցուն. Այլ կարծի իսկ արժանաւորք. զի յան-ձուգական դէմս նոցա տրամադրէր պանծալի պատկեր Արարչին. ընդ նմին և ճշմարտութիւն, և իմաստութիւն, և սրբութիւն անբիծ և անա-չառ. արդարև անաչառ, բայց հաստատեալ 'ի ճշմարիտ ազատութեան որդւոյ՝ յորմէ տիրապետէր իշխանութիւն 'ի մարդիկ։ Այլ չէին նոքա զա-հաւասար. զի և սեռք նոցա որոշեալ էին 'ի միմեանց։ Միոյն կերպարանք կարգեալ էին 'ի խոնարհութիւն և յարիութիւն, և միւսոյն 'ի քաղցրութիւն և 'ի շնորհս։ Մին պարարեալ էր 'ի սակս Աստուծոյ միայն, և միւսն 'ի սակս Աստու-ծոյ և ընկերին։ Միոյն ճակատ լայն և գեղեցիկ. և աչքն վսեմահայեաց՝ էին քարոզ գերագոյն իշ-խանութեան նորա։ Այլ կախեալ կային յակըն-թեան խոպոպիք շուրջանակի 'ի փունջս զանջա-տեալ հերաց նորա առնաբար, այլ ոչ խոնարհա-գոյն քան զլայնութիւն ուսոցն։ Իսկ միւսն զոսկի վարսս իւր անպաճոյճ և արձակ արկեալ էր իբրև զքօղ զմիջովքն 'ի խոնարհ. որք և կային կոհա-կաձև գալարեալ 'ի խոպոպիս իբրև զխիղս ոս-թոյ։ Այլ այն էր նշանակ հնազանդութեան՝ զոր մին ընծայէր, և միւսն ընդունէր ըստ արժանեաց իւրում իշխանութեան։ Բայց խոնարհ հպատա-կութեամբ, վեհանձն ակնածութեամբ, հեզա-համբոյր խուսափմամբ, և սիրալիր յապաղմամբ. Այլ ոչ իսկ ծածկեալ էին զաղտնախորհուրդ ան-

դաշտք նոցա. զի չէ եւս էր պատճառապարտ անձին, անձին առեալ անապատական գործոց բնութեան . . . Օ՛ այսօրինակ գնայլին նոքա, եւ ոչ խուսափելին յերեսաց Աստուծոյ կամ հրեշտակի. զի ոչ ան-ցանէր ընդ միտս նոցա խորհուրդ չարութեան։ Գնային ձեռն առեալ միմեանց անմեղքն խան-դակաթք (որոց նման ոչ գտաւ զինի յաջորդեաց-նութիւնս սիրոյ) Ադամ անձնալաւ քան զորդիս իւր զինի, եւ Եւայ անմնադեղեցիկ քան զդստերս իւր։ Այս զինի ասպատուք քաղցր մշակութեան 'ի պարտիզի անդ՝ բազմեցան ընդ հովանաւոր ծա-ռովն (որ 'ի դալարուոջ անդ քաղցրաստիճ շնչէր առընթեր զովացուցիչ աղբերն) առ 'ի սալ զան-ձինս քաղցրիկ հողմոյ, եւ զհանգիստս իւրեանց յա-ւէտ իմն ընծայել հեշտընկալ, եւ զքաղցրաձող ծա-րաւ իւրեանց եւ զախորժակ եւս քան զեւս քաղցր-անձանք։ Նա յետ ախորժելի մատուցման յընթրիս իւ-րեանց, որ էր կազմեալ 'ի Նեկտարեան 43 պտղոց՝ զորս ծանրաբեռն առաք ծառոց մատուցանէին նո-ցա առ ծագկենկար եւ փափկադալար ափամբ աղ-բերցն, ուր կային բազմեալ։ Կեղեւն զքաղցրաճա-շակ միս նոցա. եւ պատեանքն հանէին զջուր յոր-դառատ 'ի ծարաւս իւրեանց։ Ոչ պակաս գտան անդանօր եւ ցանկալի առաջարկութիւնք բանից, ծիծաղք քաղցրալիցք, եւ զուարճաբանութիւնք՝ որպէս վայել է ամոլոցն գեղեցկաց, զորս զուգեալ է միայն երջանիկ կապն ամուսնութեան։ Զայնմ վայրի պար առեալ զնոքօք՝ կայթս հարկանէին ամենայն անասունք երկրի, յայնմհետէ գազանք վայրի, եւ ամենայն բնակիչք անտառի, անապա-տի, պառակաց եւ մորեաց։ Առիւծն ընդ կատակս

ընդոստուցեալ՝ ծօծէր 'ի ծիրանս իւր զալքն դիւ-
ցին. Որջք, վագերք, յովազք և լինձք ցնծային
խայտային առաջի նոցա. Փիղն անարի 'ի մէջ առ-
նոյր զամենայն քաջութիւն 'ի պատառել զգա-
տիճ իւր առ'ի զբօսանս նոցին. Օձն խորամանդ-
մնեալ յարամբի 'ի ներքս 'ի Գորդեան [44] հիւս-
ոլորէր զոտս իւր անկուածոյ. և յանդէտս ցու-
ցանէր զհանդէս իւրում մահատուի պատրանաց [45].
Իսկ այլք զինի ծարաւելոյ ցյաղաւքոդ՝ պառա-
կեալ 'ի դալարուոյն որոճային. և անթարթափ ա-
չօք հայէին 'ի խշտիս իւրեանց. Զի յայնմ պա-
հու տարաժամեալ արևու՝ փութայր ընդ զառ'ի
վայր ընթացս 'ի կղզիս Ովկիանու [46]. և աստեղք
կարապետք գիշերոյ՝ ելանէին 'ի վեր ընդ աստի-
ճանս սանդղոցն երկնից. Յայնմ վայրի Սատանայ
դեռ ևս 'ի զարմացման զոլով և 'ի թաղծութեան
իբրև զառաջինն՝ հագիւ ուրեմն եղիտ միւսան-
գամ զմոլորեալ շաւիղ իւրոյն բանից՝ օրինակ
զայս.

Ով դժոխք, զի՞նչ է զոր տեսանեմս ցաւագին
աչօք. 'Ի տեղւոջ անդ մերումս երանութեան
կարգեալ կան արարածք յայլ ձևս կերպարանաց.
Թերևս երկրածինք ոմանք, այլ ոչ հոգեղէնք.
սակայն փոքու իմն խոնարհ են նոքա քան զլու-
սապայծառ հոգիս երկնաւորաց. Խորհուրդք իմ
'ի հիացումն կրթեալ՝ ընթանան զկնի նոցա. Ամ-
երանելի թէ կարող լինէի սիրել զնոսա. Զի պայ-
ծառ փայլէ 'ի դէմս նոցա նմանութիւն աստուա-
ծային. և ձեռն Արարչին եհեղ 'ի կերպարանս
նոցա զայնչափ շնորհս. Ահ ամոլք դու ցանկալի՝ ոչ
գիտէք դուք զյեղափոխութիւն ձեր եկեալ հա-

սեալ. զի ընդ հուպ ունայնասցին ամենայն զուարճութիւնք ձեր, և դուք մատնեսջիք յաղէտս. այնչափ առաւել՝ որչափ այժմդ վայելէք 'ի լիուլի ուրախութեան: Ո՞վ երջանիկքդ. բայց տևողութիւն ձերումդ երջանկութեան ոչ է աներկևան. և 'ի պահպանութիւն պանծալի բնակութեանդ՝ որ է երկինք ձեր, ոչ քաջ զգուշացան վերինք. մինչև բաւական լինել նոցա մերժել անտի զթըշնամին՝ որ արդ մտեալ է 'ի նմա: Սակայն ես ոչ գամ առ ձեզ 'ի կամս թշնամութեան. այլ ողորմիմ լքելոցդ անտէրունջ, թէպէտ և ես անմասն եմ յողորմութենէ: Դաշն խնդրեմ հաստատել ընդ ձեզ, և բարեկամութիւն ընդ միմեանս՝ այնչափ սերտ և անձուկ, մինչև յայսմհետէ բնակել մեզ 'ի միասին: Բնակութիւնն իմ թերևս ոչ գտցի ձեզ այնչափ հաճոյ, որչափ դրախտդ գեղեցկազուարճ: Սակայն ընկալարուք զգործս Արարչին ձերոյ: Նա ետ ինձ զայս, և ես ձեզ կամիմ տամ: Դժոխք յընդունելութիւն ձեր համդերձեալ է բանալ զընդարձակ դրունս իւր, և յղել ձեզ ընդ առաջ զհամօրէն իշխանս իւր: Անդ գոյջիք ընդարձակագոյն ևս տեղի 'ի բնակութիւն յոգնաթիւ ծննդոցդ: Ապա եթէ չիցէ այն տեղի ընտրելագոյն, շնորհս կալջիք նմա՝ որ հարկեցոյց զիս ակամայ յայս քէն վրիժուց առ 'ի ձէնջ անմեղացդ 'ի սակս զրկանաց նորա: Եւ թէպէտ մարթ է ինձ շարժիլ 'ի գութ ընդ անպարտ անմեղութիւն ձեր՝ զոր և զգամ յանձին իմում, սակայն արդար իրաւունքն, ընդ նմին և պատիւն և ինքնակալութիւնն ընդարձակեալ քինու 'ի գրաւել փոխարատեղծ աշխարհդ, բռնադատեն զիս

յայն ինչ, յորժամ պարտ էր ինձ խորշել՝ Թէպէտև դատապարտեալ 'ի դժոխս [47]:

Զայսօրինակ խօսեցեալ Թշնամւոյն՝ 'ի չքմե-ղութիւն դիւական գործոց իւրոց էառ 'ի ձեռին զհարկն՝ որ է պատճառանք բանաւորի: Եւ ապա 'ի կայից անտի բարձրաբերձ ծառոյն իջեալ 'ի խո-նարհ՝ խառնեցաւ ընդ դասակս չորքոտանեաց: Է՛ր զի ձևանայր իբրև զմին, և էր զի իբրև զմիւսն 'ի նոցանէ՝ որպէս և զի արդ կերպարանք նոցա լաւ ևս ձեռնտու լինէին նմա 'ի նշմարել 'ի մօտոյ զորս իւր, և գաղտ իմանալ՝ Թէ որով հնարիւք մարթ էր նմա առաւել ինչ ուսանել յաղագս վիճակի նոցա 'ի բանս կամ 'ի գործս նոցա: Մերթ իբրև զառիւծ սիգաձեմ շրջէր զնոքօք՝ ունելով զաչսն փայլակնացայտ. և մերթ պառակեալ դարանէր 'ի գետնի իբրև զվագր, որոյ տեսեալ իցէ յան-կարծակի զերկուս գեղեցիկ մատաղատունկ եղ-ջերուս խաղալ 'ի դաշտի անդ առ եզրի անտառի: Եւ ապա յարուցեալ՝ ստէպ փոխէր զդիրս պա-ռակաւոր զգուշութեան իւրոյ, որպէս Թէ կամէր ընտրել զտեղին՝ յորժամ մարթ իցէ նմա անվրէպ յարձակիլ 'ի վերայ նոցա, և արկանել 'ի ճիրանս իւր զերկոսին միանգամայն: Եւ յայնմ վայրի Նախահայրն Ադամ ուղղեալ զբան իւր առ Նա-խամայրն Եւայ՝ շրջեաց յունկնդրութիւն զԹըշ-նամին՝ որ էր ողջոյն ականջացեալ զկնի անլուր զրուցաց նորա:

Մ՛իակ օգնականն իմ, և հատոր անձին իմոյ՝ ա-ռաւել սիրելի ինձ քան զամենայն զուարճութիւնս դրախտիդ. անշուշտ պարտ է զօրութեանն՝ որ ստեղծ զմեզ, և 'ի սակս մեր զայս աշխարհ մեծա-

մարմին՝ լինել անսահման բարի, և ըստ իւրումն բարութեան առատաբաշխ և ինքնիշխան ։ Զի նա գոյացոյց զմեզ 'ի հողոյ, և կարգեաց յայսոսիկ վայելս երջանկութեան, զմեզ՝ որք չունէաք ինչ արժանիս, և չեմք ձեռնհաս լինել իւիք պիտանացու նմին ։ Սակայն նա ոչ այլ ինչ խնդրէ 'ի մէնջ տրիտուր, բայց միայն զպահպանութիւն այսր դիւրատար պատուիրանիս . այն է՝ յամենայն ծառոց դրախտիս, որք բերեն զայնչափ բազմապատիկ և քաղցրաճաշակ պտուղս, չուտել միայն 'ի պտղոյ անտի ծառոյն գիտութեան՝ որ անկեալ է առընթեր ծառոյն կենաց ։ Նոյնպէս ահա առընթեր կենաց բուսանի մահ . որ զինչ և իցէ այն, անշուշտ է խիթալի ։ Գիտես քաջ, զի Աստուած վճռեաց զմահ ընդ ճաշակ ծառոյդ . զոր և եթող միակ նշանակ մերում հնազանդութեան յայնչափ բազմապատիկ բարեաց միջի՝ զոր ընկալաք 'ի նմանէ, և իշխանութեանն՝ զոր ետ մեզ 'ի վերայ ամենայն արարածոց, որք կալեալ ունին զերկիր, զծով, և զօդն վերին ։ Արդ՝ վայելողքս յայնչափ ընդարձակ իշխանութեան, և յազատ ընտրութեան բազմապատիկ վայելչից՝ մի խիստ համարեսցուք զմիակ դուզնաքեայ պատուիրանն . այլ շնորհս կալցուք նմին, և օրհնեսցուք զնա՝ ուշ եդեալ զուարճալի վաստակոցս 'ի հատանել զաւելորդ աճումն տընկոցդ, և 'ի դարմանել զծաղկունս ։ Որ թէ և լինէր բազմաջխատ, սակայն ընդ քեզ հեշտալի իմն է ինձ ։

Որում եւ պատասխանի Եւայ օրինակ զայս ։ Ո՛վ առաջնորդ իմ և գլուխ՝ յորմէ, և յոյր սակս կազմեցայ ես՝ մարմին 'ի մարմնոյ քումմէ, և առանց

քո յոչինչ եմ պիտանացու. զամենայն ինչ ար-
դար և ուղիղ ասացեր. զի պարտ է մեզ մատու-
ցանել նմա համատարած զփառս և զգոհութիւն ։
Մանաւանդ ինձ՝ որ վայելեմն 'ի գերերջանիկ մի-
ձուկ՝ 'ի վայելել անդ զքեզ զգերազանցեալդ ան-
դուզական պարգևօք. և չէ հնար քեզ գտանել
զկենակից նմանատիպ անձինդ ։ Յիշեմ ես բա-
զում անգամ զօրն՝ յորում զարթեայ 'ի քնոյ
զառաջինն. և գտի զանձն իմ հանգուցեալ 'ի վե-
րայ ծաղկանց ընդ հովանեաւ ծառոյն ։ Ուր և
կացի զարմացեալ յոյժ, թէ ովինչ եմ, ուրանօր
գտանիմ, և ուստի կամ զիարդ ածայ անդր ։
Եւ ոչինչ կարի 'ի բացեայ անտի հնչիւն լսելի
լինէր 'ի քարանձաւէ կարկաջահոս ջուրց. որ և
սփռեալ տարածանէր 'ի դաշտ հոսանուտ. և կայր
անշարժ և ջինջ իբրև զպարզութիւն երկնից ։ Զու-
գայ անդր անփորձ 'ի խորհուրդս անձինս, և կացի
'ի վերայ դալարագեղ գետեզերն՝ որ թուէր ինձ
միւս ևս երկինք ։ Ի խոնարհել իմում 'ի զննու-
թիւն՝ տեսի 'ի լուսափայլութեան անդ ջրոյն կեր-
պարան ինչ զոգցես 'ի հանդիպոյ, որ նոյնպէս խո-
նարհեալ հայէր ընդ իս ։ Յայնմ վայրի ընկրկե-
ցայ ես յետս, և նա ընկրկեցաւ ։ Բայց հաճեալ
իմ ընդ տեսիլդ՝ դարձայ անդրէն փութանակի.
և նա նոյնպէս դարձաւ հաճութեամբ՝ ցուցեալ 'ի
դէմս իւր զհամանման բարս և զսէր[48] ։ Եւ ցարդ
անդր մնայի՝ կառուցեալ զաչս իմ, և նուաղէի
վարկպարազի հաճութեամբ, եթէ ձայնն յայն-
ժամ ոչ առնէր ինձ ազդ՝ օրինակ զայս ։ » Տեսիլդ՝
զոր տեսանես, արարածդ գեղեցիկ, դու ինքն ես.
ընդ քեզ եկն նա, և ընդ քեզ չոգաւ ։ Եւ դու

Եկ զկնի իմ, զի տարայց զքեզ անդր՝ ուր ոչ ըն-տուեր նորա, որոյ ես դու նմանութիւն, ստա-նալ մնայ քումդ գալստեան և ոգեխառնութեան: Վայելեսցես զնա անանջատաբար 'ի քէն. և բեր-ցես ընդ նմա զբազմութիւն քումդ նմանեաց. և յայնժամ կոչեսցիս Մայր ազգի մարդկան«: Իսկ ես չէի ձեռնհաս այլ ինչ առնել, բայց միայն գնալ անյապաղ զկնի նորա՝ որ առաջնորդէր ինձ յաներևոյթս: Մինչև եկեալ գտի զքեզ ընդ սօ-սեաւուդ: Եւ էիր արդարև վայելչատեսիլ և բար-ձրահասակ, այլ որպէս թուեցաւ ինձ՝ ոչ սակաւ նուազեալ 'ի գեղեցկութեան անտի և 'ի շնորհս քան զպատկերն, զոր տեսի յողորկափայլ մաք-րութեան անդ ջրոյն: Այլ ես դարձուցի և յայնժամ զերեսս իմ յետս: Բայց դու բարձրա-ձայն աղաղակեցեր զկնի իմ՝ ասելով: » Դարձիր աւ իս գեղեցիկդ Եւայ: Յումմէ փախչիս. փախ-չիս 'ի նմանէ՝ յորմէ դու ես, մարմին և ոսկր նո-րա: Առ 'ի տալ քեզ զկեանս՝ ես ինքնին ետու յանօթ զմին 'ի կողից՝ զմերձաւորն սրտիս կենդա-նութեան արմատոյ, զի յայնմհետէ կալայց զքեզ անմեկնելի յուրախութիւն իմում սրտի: Հատոր հոգւոյ իմոյ՝ խնդրէի զքեզ, և արդ կամիմ ունել զքեզ միւս ևս կէս անձին իմոյ«: Եւ զայս ասա-ցեալ՝ կալար զձեռանէ իմմէ, և ես գտայ քեզ հա-ւան: Եւ յայնմհետէ ծանեայ զառաւելութիւն այրական շնորհաց և իմաստութեան՝ որ է տիրա-պէս գեղեցկութիւն [49]:

Օ այսօրինակ խօսեցեալ հասարակաց Մօր մե-րում՝ 'ի նշանակ անպարսաւ սիրոյ լծակցութեան, և խոնարհ ակնածութեան՝ զիրկս արկ Նախահօրն

Ադամայ։ Իսկ նորա զուարճացեալ և ընբերկրեալ ՚ի հոգւոյ իւր ՚ի սէր անզուգականն՝ որպէս յարգա տաւորել անդ Արամազդայ[50], և Հերայ[51] զծաղկահոտան ամպս ՚ի Մայիսի, եւ տիկնոջ իւրում զհամբոյրն սրբութեան[52]։ Յայնժամ վայրի նախանձեալ Սատանայի ընդ նոսա՝ դարձոյց յայն կողմն զերեսս իւր. բայց տակաւին չարասէր մտօք ակնարկեալ ՚ի նոսա՝ խօսեցաւ յանձն իւր օրինակ զայս։

Ո՜վ անբերելի և չարատանջ տեսլեանս։ Ահա երկոքին սոքա ՚ի դրախտի անդ փափկութեան վայելեն և զերջանկութիւն սիրոյ, այն ինչ ես մատնեալ կամ ՚ի դժոխս։ Ուրանօր չիք գտանել զբերկրութիւն կամ զսէր, այլ միայն զցանկութիւն՝ ոչինչ նուազ դժնդակ քան զայլ տանջանս. սակայն և այնպէս անյագուրդ յերեսաց վշտաց անվախճան ցաւոց։ Այլ ես տակաւին ոչ մոռացայց զոր ՚ի նոցունց իսկ լուայ բերանոյ։ Որպէս ինձ թուի, ոչ են նոքա ինքնիշխան տեարք յամենայնի։ Տնկեալ կայ աստանօր մահաբեր ծառն՝ կոչեցեալ ծառ գիտութեան, յորմէ ոչ ունին նոքա զհրաման ՚ի ճաշակել։ Եւ զիա՞րդ լինիցի այդ։ Միթէ մա՞րթ իցէ արգելուլ զգիտութիւնն։ Արդարև կեղակարծ են իրքդ, և լի անտեղութեամբ։ Ընդէ՞ր է Տեառն նոցա խանդալ զայն։ Միթէ հնա՞ր իցէ գիտութեան լինել յանցանք, կամ աւիթ մահու։ Միթէ նոքա՞ միայն կայցեն ՚ի տգիտութեան անդ։ Եւ միթէ ա՞յդ իցէ վիճակ երջանկութեան նոցա, և հանդէս հնազանդութեան նոցա և միամտութեան։ Ո՜վ գեղեցիկ հիմանս՝ որ եդեալ կայ առաջի իմ ՚ի հաստատել ՚ի վերայ

նորա զշնչնուածն կործանման նոցա ։ Յայսմանէ սկսայց թեւլադիր լինել մտաց նոցա 'ի գիտութիւն կարի իմն ցանկութեամբ . և 'ի մերժումն յանձանց 'ի բաց նախանձաբեկ հրամանին՝ որ եդեալ է 'ի վերայ նոցա 'ի նուաճումն նոցին . զորս մարթ էր գիտութեամբն բարձրացուցանել հաւասար Աստուածոցն ։ Եւ այնպէս ցանկացեալ նոցա լինել յայնպիսեաց սակի՝ ճաշակեսցեն 'ի ծառոյ անտի, և մահու վախճանեսցին ։ Եւ զի՞նչ կայցէ առաւել դիւրահնար քան զայդ ։ Սակայն արժան է ինձ շրջիլ նախ 'ի պարտիզիս առանձին իմն խուզողութեամբ, և հետազօտել զամենայն վայրս նորա . գուցէ ըստ դիպաց մարթացայց գտանել յառաջնորդութիւն անձին իմոյ զմի ոք յերկնաւորաց անտի՝ որք շրջին զաղբերաւ, կամ հանգչին ընդ հովանեաւ ծառոց . զի կարող եղէց աւելի ինչ ուսանել 'ի նմանէ ։ Այլ դուք ամոլքդ երջանիկ՝ մինչդեռ հնար է ձեզ, կացջիք տակաւին, և վայելեսջիք զկարճաժամանակեայ զուարճութիւնսդ՝ մինչ չև ցդարձն իմ անդրէն . զի երկարատև մնան ձեզ աղէտք [53] ։

Զայսօրինակ խօսեցեալ նորա՝ դարձոյց անհեկիւղ զոտս ամբարտաւանութեան իւրոյ 'ի գնացս, բայց խորամանկ զգուշութեամբ . և այնպէս սկսաւ շրջիլ ընդ անտառն, ընդ դաշտս, ընդ լեառնս, և ընդ ձորս ։ Յայնժամ պահու գոլով արեգական 'ի մուտս իւր 'ի վերջին երկայնութեան՝ ուրանօր երկինք ընդ առաջ ելանեն երկրի և Ովկիանու [54], իջանէր հանդարտաքայլ 'ի խոնարհ, և ձգէր ուղղակի զերեկոյին ճառագայթս իւր յարևելեան դուռն դրախտին . Որ էր քարաժայռ աղաբաստր՝

արձանացեալ յամենայն 'ի տեսիլ բացական. և ունէր զմի միայն ոլորտապատոյտ շաւիղ առ բարձրաբերձ մուտս իւր յերկնիէ անտի: Իսկ այլ կողմանք նորա ուղղորդ կային 'ի զահաւէժ վախս, ընդ որս չէր հնար ումեք ելանել 'ի վեր: Ընդ մէջ սեանց քարաժայռախս նստէր Գաբրիէլ՝ պետն հրեշտակացն պահապանաց, ակն կալեալ գիշերոյ: Կացեալ առ նովաւ մանկտւոյն երկնից անզէն՝ կըրթէին զանձինս 'ի մարզս դիւցազնական[55] խաղուց. բայց կախեալ կային առ նոքօք 'ի բարձու երկնային սպառազինութիւնք նոցա՝ ասպարք, գեղարդունք և սաղաւարտք՝ յադամանդ և յոսկի բոցավառք: Ուրիէլ սլացեալ ընդ ճառագայթ արեգականն՝ եկն անդր ընդ երեկս այնպէս փութանակի, որպէս աստղ անկեալ 'ի գիշերայնն պահու աշնայնոյ՝ այն ինչ հրավառ գոլորշիքն դրոշմեն զօդն, և ցուցանեն նաւաստուցն՝ թէ յորմէ կողման իւրեանն հողմնացուցի առ ժամն իցէ նոցա զգուշանալ 'ի բռնութենէ անտի մրրկաց: Որ և սկսաւ խօսել շտապ բանիւք՝ օրինակ զայս:

Գաբրիէլ՝ անկաւ քեզ վիճակաւ 'ի վերուստ պաշտօն քաջ պահպանութեան երջանիկ վայրացդ, զի մի չար ինչ մերձեսցի կամ մտցէ անդր: 'Ի սերտեան աւուր 'ի բարձրութեան անդ միջօրէի եկն առ զունտն իմ[56] մի ոմն 'ի հոգւոց անտի. և որպէս թուեցաւ ինձ; կարի իմն հետաքննին գործոց Ամենակալին, և յաւէտ մարդոյն՝ որ է վերջինն արարածոց, և պատկեր նորա: Տեսի ես, զի ճանապարհ նորա ուղղեալ էր շտապաւ. և նշմարեցի զօդայինն գնացս նորա: Այլ 'ի լերինն անդ՝ որ ձգի յէդեմայ 'ի հիւսիս, ուր և էջ նա զառաջինն,

եցոյց անդէն զդէմս իւր կարի իմն տարօրինակ յերկնաւորաց, զի աղտեղեալ էր գարշութեամբք հրոց [57]: Աչք իմ չոգան զկնի նորա անընդհատ. այլ ընդ հովանեաւ ծառոյն ծածկեցաւ տեսիլ նորա յինէն: Նման որոյ կասկածիմ, դուցէ ոք 'ի տարագիր խուժանէն արձակեալ իցէ յանդընդոց, և կամիցի յարուցանել զնորոգ խռովութիւնս: Արդ՝ պէտք են քում փութոյ 'ի գտանել զնա:

Որում զօրավարն թևազգեցիկ արար պատասխանի: Չեն ինչ զարմանք՝ Ուրիէլ, եթէ անտաղօտ տեսութիւն աչաց քոց 'ի պայծառափայլ գընտոյդ արեգական՝ յորում բնակես, հեռագոյնս և ընդարձակագոյնս ակնարկէ: Այլ ընդ դուռնդ զգուշացեալ աստանօր՝ չէ հնար անցանել ումեք, բայց միայն որոց գան յերկնից, և են քաջածանօթք մեզ: 'Ի ժամէ անտի միջօրէի ոչ ոք եկն անդուստ այսր: Իսկ եթէ օտար ոք հոգի վազեալ իցէ ընդ հողեղէն սահմանսդ, քաջ գիտես զայն՝ զի դժուարին իմն է մարմնաւոր խափանօք մերժել 'ի բաց զհոգեղէն գոյացութիւնս: Ապա եթէ ընդ կերպարանօք թագուցեալ կայցէ 'ի շրջապատի վայրացս նորա՝ զորմէ դուդ ասես, գիտասցես 'ի լուսանալ առաւօտու:

Զայս ասաց նա. և Ուրիէլ դարձաւ անդրէն յիւր պաշտօն ընդ պայծառափայլ ճառագայթն որոյ ծայր ելեալ յայնժամ 'ի վեր՝ տարաւ զնա ընդ զառ 'ի վայր ճանապարհ առ արեգակն, որ յայնմ պահու անկեալ կայր խոնարհագոյն քան զԱզովրէս [58]: Ուրանօր կամ պարունակն մեծ տունջեանային սաստիկ արագութեամբն անդր հոլովեալ, և կամ յամբաթաւալ երկիրս արագ ընդ

արեւելս թուեցեալ՝ թողեալ էին զնա՝ որ պճնեա-զարդէր 'ի կարմրափայլ ծիրանի եւ յոսկի զամպս, որք սպասեալ մնային զալստեան նորա յաթոռ իւր արեւմտեան : [59] Յայնժամ վայրի տակաւին յառաջ խաղայր երեկոյն. եւ աղօտ լցման 'ի նմին նշանա-գրեալ իւր պատէր զամենայն : Այլ լռութիւնն լե-ներ նմին ուղեկից. զի ամենայն անասունք եւ թռչ-չունք մեկնեալ էին յայնժամ 'ի խշտիս եւ 'ի բոյնս իւրեանց. բաց 'ի սոխակէն զուարթնոյ՝ որ երգ-եաց զգիշերն ողջոյն զերգ իւր սիրատարփ. եւ լռութիւնն հաճեցաւ ընդ նա : Ի նմին պահու զա-լանայր հաստատութիւնն երկնից 'ի կենդանի շա-փիւղայս. եւ Գիշերավարն [60] նշուլազեղ ծիածա-նեալ՝ առաջնորդ լինէր աստղային զօրաց : Մինչեւ զկնի ելեալ լուսնի անպարզեալ փառօքն 'ի վեր, եւ ծանուցեալ դշխոյ՝ [61] յայտնեաց զանզուգական լուսափայլութիւն իւր, եւ սփռեաց 'ի վերայ խա-ւարի զօթոց իւր արծաթի :

Յայնժամ Ադամ խօսեցաւ ընդ Եւայի օրի-նակ զայս : Քաղցր կենակից իմ, մեկնեալ արդ գիշերային ժամուս, եւ ամենայն արարածոց 'ի հան-գիստ՝ 'ի նոյն հրաւիրեն եւ զմեզ : Զի Աստուած որպէս զտիւ եւ զգիշեր զկնի միմեանց, նոյնպէս կարգեաց եւ զաշխատութիւն եւ զհանգիստ 'ի պէտս մարդկան : Այս ահա քաղցրիկ ցօղոյ հանգստեանն անկեալ քնաբեր ծանրութեամբ 'ի վերայ աչաց մերոց՝ 'ի նինջ խոնարհեցուցանէ զարտեւանունս մեր : Այլք յարարածոց պարապորդ եւ անգործ շրջին զտիւն ողջոյն, վասն որոյ եւ սակաւ պէտս ու-նին հանգստեան. այլ մարդն կարգեալ է յօրըստ-օրէ աշխատութիւն մտաց եւ մարմնոյ՝ որ է նշա-

նակ մեծութեանն նորին, և հայելոյ Արարչին յամե-
նայն ճանապարհս նորա, այն ինչ այլք 'ի կենդա-
նեաց դատարկ շրջին, և Աստուած ոչ առնու զհա-
մար գործոց նոցա։ Արդ 'ի վաղիւն՝ մինչչև է զո-
ւարթարար առաւօտու խայտաճամուկ յօրինեալ
զարթեալս ընդ ծագումն լուսոյն, պարտ է մեզ վա-
ղայարոյց ելանել 'ի զուարճալի վաստակս մեր՝ 'ի
սրբել զծաղկաբեր սարփինայսող, և 'ի յարդա-
րել զդալարաւէտ շաւիղսդ՝ զճեմելիս մեր 'ի մի-
ջօրէի։ Որոց բուսաբերութիւն կարի իմն բարգա-
ւաճեալ՝ քամահանս առնէ զդուզնաքեայ մերոյս
աշխատութեանս. և քաջազոյն ձեռաց պէտք են
'ի հատանել զանչափութիւն աճմանն նոցա։ Նոյն-
պէս մաքրութեան պէտք են ծաղկանց, և կայլա-
կահոս խիժից՝ որք յանչափս սփռեալ 'ի գետնի՝
խառափան են ոտից, եթէ կամք են մեզ դիւրագնա-
լի ունել զճանապարհդ։

Որում Եւայ դարձդարձեալն անթերի գեղեց-
կութեամբ եւ պատասխանի։ Առաջնորդ իմ և
Տէր՝ մտադիւր հնազանդեալ կամ հրամանաց
քոց, զի այդ է պատուիրանքն Աստուծոյ։ Նա է
օրէնսդիր քո, և դու իմումս անձին։ Առ գիտել
ինչ առաւել քան զայս՝ է կատարեալ գիտութիւն,
և պարծանք կնոջ։ Յանցուցանել անդ զկեանս
ընդ քեզ՝ մոռանամ զամենայն ժամանակս, և
զփոփոխումն եղանակաց տարւոյն. և ամենեքին
հաճոյ են ինձ միօրինակ։ Քաղցր է շունչն առա-
ւօտու, և ելք նորա 'ի գեղգեղաձայն բարբառ վա-
ղայարոյց թռչնոց։ Զուարճալի է ծագումն արե-
գական, և սփռումն արևելեան ճառագայթից նո-
րա 'ի վերայ գեղեցկատեսիլ երկրի, և ցօղանշոյլ

դալարեաց , տնկոց , պտղոց և ծաղկանց ։ Նու-
շահոտ է բուրումն արգաւանդաբեր գետնոյ զկնի.
անձրևացն քաղցրութեան ։ Ցանկալի է քաղցրա-
շունչ գալուստ զովագին երեկոյի ։ Եւ զկնի նո-
րա ժամանումն լռութեան գիշերոյ ընդ իւրումն
սխրալի թռչնոյ , ընդ գեղեցիկ լուսնի, և ընդ գու-
հարացն երկնից՝ իւրոց աստղային ուղեկցաց։ Բայց
առանց քո և ոչ մի 'ի սոցանէ [62] , և ոչ ձեմք 'ի
լուսափայլութեան անդ լուսնի կամ աստեղաց՝
քաղցրանան ինձ ։ Այլ առ ի՞նչ փայլատակեն դո-
քա զգիշերդ ողջոյն . և յի՞նչ պէտս է տեսիլ նո-
ցա սխրալի՝ 'ի փակել անդ քնոյ զաչս հասարակաց ։
Որում ետ պատասխանի Նախահայր մեր ամե-
նեցուն ։ Դուստր Աստուծոյ և մարդկան՝ ամենա-
կատարդ Եւայ, պատեն դոքա զերկրաւ յընթացս
իւրեանց ցվաղուեան երեկոյ . և նահանգէ 'ի նա-
հանգ 'ի մուտս և յելս իւրեանց մատակարարեն
զլոյս , եւս և ազանց՝ որք չև են ծնեալ . զի մի խա-
ւարն տիրեսցէ ողջոյն 'ի գիշերի . և կալեալ զժա-
ռանգութիւն իւր նախկին՝ շիջուսցէ զկեանս բնու-
թեան , և ամենայն արարածոց ։ Զորս ոչ միայն
լուսաւորեն քաղցրահայեաց լուսաւորքդ, այլ հե-
զիկ ջերմութեամբ բազմապատիկ հոմանց իւ-
րեանց տածեն, բարեխառնեն և սնուցանեն ։ Եւ
կամ սփռեն մասամբ զաստղային զօրութիւն իւ-
րեանց զբուսականօքն յերկրի՝ առ 'ի քաջ յար-
դարել զնոսա յընդունելութիւն առաւելագոյն
ազդեցութեան հզօր ճառագայթիցն արեգական ։
Արդ՝ թէպէտև անծանօթ է մեզ զօրութիւն նո-
ցա , սակայն ոչ վայրապար փայլատակեն դոքա 'ի
խորութեան գիշերոյ ։ Եւ մի համարիր, թէ 'ի չլի-

նել մարդոյ՝ Թափուր գտցին երկինք 'ի հանդիսականաց , և Աստուած 'ի փառաց իւրոց ։ Հազարք հազարաց 'ի հոգեղինաց շրջին անտեսաբար յերկրի յարթնութեան և 'ի հանգստեան մերում · և ամենեքին անլռելի գոհութեամբ պշուցեալ հային ընդ արարածս Աստուծոյ զտիւ և զգիշեր ։ Ո՞չ ապաքէն մեք իսկ լուաք բազում անգամ զհասարակ գիշերաւ յանմատոյց ժայռէ բազմարձագանգ լերինդ , և կամ 'ի Թաւ անտառէդ զբարբառս երկնաւորաց յերգս Ամենակալ արարչին՝ առանձինն կամ միաձայն օրհներգութեամբ ։ Ո՞չ ապաքէն 'ի շրջել նոցա խմբովին 'ի պահպանութիւն գիշերոյ , բազում անգամ միաբանեալ 'ի միասին յերկնային նուագածութիւն՝ 'ի հրաշալի ներդաշնակութեան անդ բաժանեն երգովք իւրեանց ըզպահս գիշերոյն , և ամբառնան 'ի վեր զխորհուրդս մեր ։

Զայսօրինակ խօսելով նոցա 'ի միասին՝ անցին ապա յառանձին հովանոց իւրեանց երջանկաւէտ ։ Որ էր տեղի առանձին խնամով ընտրեալ յարարչագործ տնկողէն 'ի տնտեսել անդ զամենայն ինչ առ 'ի պէտս զուարճութեան նոցին ։ Յարկ ձեղուանն ծածկեալ կայր խիտ առ խիտ հովանաւորութեամբ դափնւոյ և մրտենւոյ , և այլոց բարձրաբերձ ծառոց՝ որ անթափ ունէին զանուշահոտ սաղարթս իւրեանց ։ Ականթ [63] և ամենայն քաղցրահոտ և բազմատերև բոյսք պատէին զորմս նորա շուրջանակի ։ Յորոց միջի ամենայն գեղեցկատեսիլ ծաղիկք՝ հիրիկ բազմագունեան , վարդ և յասմիկ , ամբառնային 'ի վեր զգլուխս իւրեանց , և յօրինէին զմուսիոնեան [64] նկար ։ Իսկ 'ի յատա-

կի անոյշ մանուշակ, և քրքում և յակինթ ծաղիկ ’ի պատուական անկուածս պճնէին զգետինն՝ առաւել գունազեղ և գեղեցկայօրէն քան զմեծագանձ դրուագս ակամբք պատուականօք : Եւ որք ’ի կենդանեաց անտի, ’ի թռչնոց, ’ի զեռնոց կամ ’ի ձկանց իշխէր մտանել անդր : Այնչափ այսչափ էր ակնածութիւն նոցա յերեսաց մարդոյն : Ի գաղտնածածուկ հովանոցի առաւել բազմաշուք քան զայն ոչ ննջեաց երբէք՝ թէպէտև յառասպելս, Պան [65] կամ Սիղուանոս [66], և ոչ երևեցաւ Յաւերժահարսն [67] կամ Փաւոնոս [68] : Յառանձին վայրի ’ի նմա յօրինեալ էր յառաջագոյն հարսնացեալն Եւայի զառագաստ իւր բոլորիւք ծաղկանց, և անուշահոտ դալարեօք : Եւ երկնաւորացն դասուց երգեալ զնուագ հարսանեացն նորա՝ յաւուր յորում պահպանապետն պսակի էած զնա առ Հայրն մեր, առաւել վայելչազարդ ընկի գեղեցկութեամբն, և յաւէտ տենչալի քան զՊանդորա՝ [69] զոր Դիքն [70] օժտեցին պարգեւօք իւրեանց : Այլ աւաղ կարի իմն համգունատիպ նմին ’ի ցաւագին անցս, այն ինչ ածեալ նորա ’ի Հերմեայ [71] առ անիմաստ որդին Յաբեթայ՝ [72] ’ի գեղ երեսաց իւրոց ձգեաց զազգ մարդկան ’ի քէն վրիժուց առ ’ի նմանէ, [73] որ զվաւերականն [74] գողացաւ հուր զԱրամազդայ [75] :

Հասեալ նոցա ’ի հովանաւոր բնակարան իւրեանց, և կացեալ առ վայր մի՝ դարձուցին զերեսս իւրեանց յերկինս, և երկիր պագին Աստուծոյ՝ որ արար զերկինս և զերկիր, զպայծառափայլ գունտն լուսնի, և զբևեռն աստեղազարդ՝ զորս տեսանէին յանդիման աչաց. և մատուցին զաղօթս

խուրեանց օրինակ զայս ։ Դու Տէր ամենակալ արարեր զգիշեր և զտիւ․ զոր ըստ հրամանի քում հանապազ 'ի գլուխ օժանդակութեամբ և սիրով ընդ միմեանս՝ որ է պսակ ամենայն օրհնութեանց տուելոց մեզ առ 'ի քէն ։ Այլ վայրս փափկութեան կարի իմն ընդարձակ է վասն մեր, եթէ բազմառատ ողորմութիւն քո ոչ գտցէ բաժանորդս ընդ մեզ․ զի յայնժամ ցրուեալ սփռեսցի ընդ երկիր ։ Սակայն խոստացար դու յարուցանել զաւակ յերկուցունց 'ի մէնջ․ որ և հանդերձեալ է լնուլ զերկիր, և օրհնել ընդ մեզ զանբաւ բարութիւն քո՝ եթէ՛ յարթնութեան անդ, և եթէ 'ի խնդրելն զքոյդ պարգև հանգստեան՝ որպէս մեք այժմ ժտեմք ։

Զայս ասացեալ՝ (մտին յառագաստ հովանոցին, և ննջեցին անդ․ որպէս ինձ թուի, ոչ հրաժարեալ 'ի խորհրդական օրինաց անտի ամուսնութեան) [76] ։ Յայնմ վայրի չափեալ էր գիշերոյ 'ի կոնոն [77] իւր ստուերական զլայնաձիգ կամարն ենթալուսնեայ 'ի կէս անդ ընդ զառ 'ի վեր ճանապարհին ։ Եւ Քրովբէքն 'ի սովորական ժամու իւրեանց ելեալ 'ի փղոսկրեայ դրանէն՝ կային սպառազինեալ ըստ օրինի մարտկաց 'ի պահպանութիւն գիշերոյ ։ Յորում պահու Գաբրիէլ խօսեցաւ ընդ երկրորդի իւրում յիշխանութեան անդ՝ օրինակ զայս ։

Ուզիէլ՝ [78] առեալ ընդ քեզ զկէս զօրացդ՝ կալ 'ի զգուշութիւն պահպանութեան զկողմն հարաւոյ ։ Այլք շրջեսցին զհիւսիսիւ ։ Իսկ մեք ընթասցուք 'ի կողմն արևմտից ։ Յայն բան նորա ամենեքին իբրև զբոց ընթանային՝ վառեալք յասպար և 'ի նիզակ ։ Այլ նորա կոչեալ զերկուս 'ի զօրա-

ւորաց անտի և յարագաշարժից՝ եւ Նոցա զայս
պատուէր հրամանի ։

Իթուրիէլ և Զեփոն՝[79] ելէք թեւազգեցիկ փու-
թով՝ի խնդիր ընդ պարտէզդ, և որոնեցէք յամե-
նայն անկիւնս նորա. և յաւէտ ՚ի տեղւոջն՝ ուր
կան արդ երկոքին գեղեցիկ արարածքդ ՚ի քուն,
թերևս անկասկածք յերեսաց չարեաց։ Զի յայսմ
երեկոյի ՚ի խոնարհել արեգականն եհաս առ իս մի
ոմն, և պատմեաց եթէ ետես նա զհոգին դժոխոց
դիմեալ յայս կոյս (և ո՞ւմ հնար էր լինել ՚ի կար-
ծիս), փախուցեալ յարգելանաց անտի, ունելով
անշուշտ յանձին խորհուրդ ինչ չարութեան ։

Զայս ասացեալ եհան նոցա արտաքս զնշուլա-
փայլ գունդ զօրացն՝ որք շլացուցանէին զլուսինն։
Որոց ընթացեալ փութանակի ՚ի հովանեաց անդր
՚ի խնդիր թշնամւոյն՝ գտին զնա, զի իբրև զգե-
ռուն[80] զազրատեսիլ և ահագին՝ կծկեալ կայր առ
ունկամբ Եւայի. և դիւական արուեստիւն խնդ-
րէր հուպ մատչել ՚ի զգայարանս մտաց նորա՝ առ
՚ի նիւթել ՚ի նմա զառաջօք տեսիլս, զխօլական
ցնորս և զանուրջս։ Կամ գէթ վարակել թունա-
ւոր շնչմամբ զկենսական ոգիսն՝ որ ելանէին ՚ի մա-
քուր արեանէ նորա իբրև զանօսր մղոխս ՚ի մաքրա-
փայլ գետոյ։ Եւ այնպէս ապա յարուցանել ՚ի նո-
սա զխեղաթիւր և զապստամբ խորհուրդս, զյոյս
մնոտեաց, զընդունայն յօժարութիւնս հոգւոյ,
զանկարգ ցանկութիւնս, և զփքացումն բարձրա-
մտութեան՝ որ է մայր ամբարտաւանութեան ։
Մինչդեռ կայր նա այնպէս մտադիր, Իթուրիէլ
փոքու իմն մերձեցոյց ՚ի նա զծայր նիզակի իւրոյ։
Եւ զի անհնար է խաբէութեանն կալ առաջի հա-

բուածոց երկնային զինուց, անդէն դարձաւ նա յակամայ կամս յառաջին կերպարան իւր. և եցոյց զանձն՝ ընդոստուցեալ զարմացմամբ։ Որպէս յանկանիլ կայծի 'ի շեղջ բորակային փոշւոյ պատրաստելոյ 'ի տակառս առ 'ի պէտս ահեղ մարտի՝ յանկարծակի ցոլացեալ սևորակ հատին՝ [81] բոցավառկիզու զօդն, այնպէս ընդոստեաւ Թշնամին, և դարձաւ 'ի բնիկ կերպարան իւր։ Ընդ անակնկալ տեսիլ զարհուրատեսակ արքային՝ [82] չոգան յետս երկոքին գեղեցկատեսիլ հրեշտակքն, և կային տարակուսեալք յանձինս. այլ զկնի քաջալերեալ՝ մատեան առ նա 'ի հարցափորձ, օրինակ զայս։

Ո՞ ես դու 'ի հոգւոց անտի ապստամբութեան դատապարտելոց 'ի դժոխս, և զաս զերծեալ 'ի բանտէդ յայլակերպս։ Եւ ընդէ՞ր նստիս աստ 'ի դարանի իբրև զթշնամի առ սնարիւք նոցա՝ որոց ննջեալ կան 'ի քուն։

Միթէ ոչ ճանաչէք զիս՝ ասաց ցնոսա Սատանայ լի ցասմամբ։ Միթէ ոչ ճանաչէք զիս դուք՝ որք երբեմն քաջ ծանեայք զեր 'ի վերոյ քան զձեզ բազմեալ անդանօր, ուր դուք ոչ իշխեցիք ամբառնալ զանձինս։ Այլ անգիտութիւն ձեր յայտ առնէ զնուաստութիւն ձեր և զարհամարհութիւն 'ի բազմութեան անդ։ Ապա եթէ ճանաչէք զիս, առիմէ՞ հարցանէք. և եկեալ էք 'ի սնոտի պատգամաւորութիւն՝ որոյ կատարածն նոյնպէս հանդերձեալ է լինել սնոտի։

Որում ետ պատասխանի Զեփոն նոյնօրինակ արհամարհութեամբ։ Հոգի՛դ ապստամբ՝ մի համարիր զանձն ունել զնոյն կերպարանս, որպէս երբեմն յերկինս 'ի վիճակի անդ մաքրութեան և

անարատութեան, և կամ սակաւուք և եթ նուազեալ զփառսդ՝ մինչև գալ քեզ վերստին 'ի ծանօթութիւն: Յանկղիտանալ անձինդ՝ մեկնեցաւ 'ի քէն պայծառութիւն շքոյ փառացդ. և այժմ խաւարային գոլով և գարշատեսիլ՝ նման ես մեղաց քոց, և տեղւոյդ դատապարտութեան: Այլ երթիցուք, զի ունիս տալ պատասխանի այնմ՝ որ առաքեաց զմեզ, և որում յանձնեալ է անվնաս պահպանութիւն տեղւոյս, և աներկեւանութիւն բնակչաց նորա յերեսաց արկածից:

Զայսօրինակ խօսեցաւ Քերովբէն. և սաստկութիւն կշտամբանաց նորա յաւել զանպարտելի շնորհս 'ի գեղեցկութիւն մանկութեան նորա: Եկաց բանսարկուն ամօթապարտ: Գիտաց յանձն իւր, թէ քանի՜ ահարկու է բարութիւնն. և քանի՜ սիրելի առաքինութիւնն 'ի կերպարանս իւր: Ծանեաւ, և սուգ էառ 'ի վերայ կորստեան անձին իւրոյ. մանաւանդ 'ի տեսանել անդ զնուազութիւն իւրումն պայծառութեան յայտնապէս ծանուցեալ անդանօր: Սակայն և այնպէս անվեհեր ցուցեալ զանձն՝ ասաց ցնա: Եթէ պարտ իցէ ինձ զդէմ ունել, հարայց 'ի դիմի քաջս ընդ լաւագունին, ընդ առաքողին, կամ ընդ ամենեսին միանգամայն՝ և ոչ ընդ առաքելոյդ. զի յայնժամ գտից առաւելագոյն պարծանս, կամ նուազ կորուսից: Երկիւղ քո՝ ասաց ցնա արին Զեփոն, ոչ տայ քեզ մատչել 'ի փորձ, և 'ի միտ առնուլ՝ թէ զի՞նչ մարթ է և խոնարհագունին 'ի մէնջ անցուցանել ընդ քեզ առանձինն. փոխանակ զի վատթարացեալ գտար առ չարութեան անձինդ:

Պարտեալ թշնամին 'ի սրտմտութենէ՝ ոչինչ

ետ պատասխանի. այլ իբրև զխստերախ նժոյգ սանձակոծեալ յառաջ ընթանայր խրոխտանօք, և խածատէր զսանձն. զի վայրապար համարեցաւ զընդդիմութիւն կամ զփախուստ։ Միայն ահն վերնական կալեալ ունէր զսիրտ նորա, և յայլմէ իմեքէ ոչ երկնչէր։ Հասին 'ի կողմն արևմտից [83]. և գտին անդ զպահապանսն՝ որոց հատեալ էր ըզկէս ճանապարհի պահպանութեան իւրեանց. և միացեալ ընդ նոսա՝ կացին 'ի հանդէս ճակատու, սպասեալք նորոգ հրամանին։ Առ որս զօրապետ նոցա Գաբրիէլ աղաղակեաց մեծաձայն, և ասէ.

Ահա ո՛վ բարեկամք լսեմ զձայն երագընթաց ոտից՝ որք փութան ընդ այս ճանապարհ. և 'ի փայլուսն լուսոյն ընդ աղօտ նշմարեմ զԻթուրիէլ և զԶեփոն։ Գայ ընդ նոսա և երրորդ ոմն 'ի տեսիլ արքայական. այլ շուք փառացն նուազեալ և թարշամեալ. որ և յընթացից իւրոց, և 'ի ժանտատեսիլ դիմաց երևի լինել իշխանն դժոխոց։ Թերևս ոչ եկեսցէ նա այսր առանց հակառակութեան։ Պինդ կացէք, զի զհրաւէր մարտի տեսանեմ ես 'ի դէմս նորա։

Մինչչև էր նորա աւարտեալ զբանսն՝ և ահա մերձեցան նոքա. և Իթուրիէլ և Զեփոն մատուցեալ յառաջ՝ կացուցին զՍատանայ առաջի նորա, և ծանուցին նմա 'ի կարճոյ թէ ուրանօր գտեալ էին զնա, յինչ գործ, և յոր կերպարանս։

Իսկ Գաբրիէլ խօսեցաւ ընդ նմա ահագին դէմօք՝ օրինակ զայս։ Ընդէ՞ր ելեր ո՛վ Սատանայ ըստ սահմանսդ՝ որք եդան քումդ յանցանաց. և ընդէ՞ր խռովեցուցեր աստ զպահապանսն՝ որք ոչ ա-

ուրն յանձն յանցանել ըստ քում օրինակի, և ունէին իշխանութիւն 'ի հարցանել զպատճառն յանդուգն մտից քոց յայս տեղի, որպէս Թուի՛ առ 'ի խռովեցուցանել զքուն, և զանձինս զորոց երջանկաւէտ բնակութիւն կարգեաց Աստուած աստանօր :

Որում ունչս տարբեալ Մատանայ` եւ պատասխանի : Դուարթէլ` ունէիր դու յերկիրս զանուն իմաստնոյ, և այնպէս համարեցայ զքեզ . այլ այս խնդիր քո արկանէ զիս 'ի տարակուսանս. զի՞ ոք է` որ հաճեսցի ընդ վիշտս . և ո՞ ոք 'ի գտանել հնարից ոչ կամիցի զերծանիլ 'ի դժոխոց, Թէպէտև դատապարտեալ իցէ անդանօր : Ապաքէն և դու յանդգնաբար յարձակէիր 'ի տեղին, ուր 'ի բացեայ գոլով 'ի դժոխոց` ակն ունէիր փոխանակել զտանջանս ընդ հանգստեանն, և փոխանակ վշտաց գտանել զանդորրութիւն` յորոյ 'ի խնդիր շրջիմ ես աստանօր : Գիտեմ, զի առ քեզ ոչինչ գնան փաստքս, քանզի ոչ առեր դու զփորձ չարեաց, այլ միայն զբարեաց : Եւ մի Թէ կամիցիս 'ի դէմս ածել ինձ զհամս այնորիկ` որ փակեացն զմեզ 'ի դժոխս : Պնդեսցէ նա և ևս զերկաթի դրունսդ, եթէ կամք են նմա ունել զմեզ հանապազ 'ի խաւարի անդ : Այսչափ ինչ առ հարցումնդ : Իսկ ուրանօր ասեն դոքա գտանել զիս, ստոյգ է. բայց զի՞նչ խռովութիւն կամ վնաս այտի :

Սովին օրինակաւ խօսեցաւ նա . իսկ քաջամարտիկ հրեշտակն յառաջ մատուցեալ` ժպտելով իմն, բայց խառն սպառնալեօք` արար զայս պատասխանի : Ո՛վ կորստականին յերկիրս . որ զկնի անկանելոյ անմտութեամբ` գիտէ ընտրել զիմաստունն.

և այժմ փախստական գոլով 'ի բանտէ դժոխոց՝ տարակուսեալ կայ յանձին, թէ արդեօք արժա՞ն իցէ նմա առ իմաստունս ունել զնա՝ որ հարցանէ զպատճառ փախստեան նորա: Այլ իմաստութիւն իմն համարի զփախուստն յերեսաց վշտաց, և զազատութիւն 'ի դժոխոց անտի: Տակաւին նոյնպէս համարեսջիր ո՞վ ապառուամ, մինչև սրտմտութիւն վերին բարկութեան՝ զոր յանձին ձգեցեր 'ի փախչել անդ, գտցէ եւթնապատիկ զփախուստ քո, և գաւազանաւ իւրով վարեսցէ անդրէն 'ի դժոխս զիմաստութիւն քո՝ որ դեռ ևս ոչ խրատեաց զքեզ, և ոչ ուսոյց քեզ՝ թէ անհնար է այլ ինչ վշտաց զուգահաւասար լինել անհնարին սրտմտութեան նորա բորբոքելոյ: Այլ ասէ սա, թէ ընդէ՞ր դու միայն եկիր, և ընդէ՞ր ոչ զերծան ընդ քեզ դժոխայինքն համօրէն: Մի՞թէ սակաւ իցեն տանջանք նոցա, և չունիցի՞ն պէտս փախստեան: Այլ կամ դու վատթարագո՞յն իցես քան զդոսա 'ի կրել անդ զտանջանս: Ո՞վ քաջ զօրավարին՝ որ առաջինն է 'ի փախչել յերեսաց վշտաց: Եթէ ուսուցեալ էր քո զէնընկեց զօրացդ զայդ կանոն փախստեան, ոչ էր քո եկեալ փախստական առանձինն:

Որում ետ պատասխանի խոժոռադէմ թշնամին: Հրեշտակդ թշնամանադիր՝ ոչ նուազ էր իմ համբերութիւն քան զայլոցն, և ոչ իսկ փախեայ այսր յերեսաց վշտաց: Բայց գիտես դու, զի ես կացի հզօր ախոյեան հակառակ քո, այն ինչ 'ի մարտի անդ յերկինս հասեալ քեզ յօգնութիւն կարեվէր շանթին՝ ձեռնտու եղև նիզակիդ: Սակայն անհանճար բանք քո՝ որպէս յառաջագոյն, նոյնպէս և այժմ յայտ առնեն զանհմտութիւն անձինդ,

որպէս թէ չիցէ արժան հաւատարիմ զօրավարի՝ որ քաջակիրթն է 'ի հանդիսի անդ դառնագին աղէտից, ոչ ևս լինել յանդուգն դիմագրաւ: Այլ՝ ևս միայն յանձին կալեալ հաստատել նախ առաջին 'ի թուիչս փախստեան զամայութեան անդունդս, և լրտեսել զնորաստեղծ աշխարհդ՝ զորոյ զհամբաւ և երկինք հնչեցուցանէին, 'ի յոյս ակնկալութեան գտանելոյ աստանօր լաւ ևս բնակութիւն, և հաստատելոյ զվշտատես զօրութիւնս իմ՝ կամ յերկրի աստ, և կամ յօդդ վերին: Այլ կամիմ 'ի փորձ մատչել միւսանգամ՝ թէպէտև արդէն իսկ գիտակ եմ, թէ զի՞նչ զօրութիւն կայցէ քո, և ընտիր լեգէոնացդ՝ հակառակ իմում զօրութեան: Որոց հեշտին ևս լինէր գործ ծառայել Տեառն իւրեանց 'ի բարձունս, փառաւորել զաթոռ նորա երգովք, և երկիրպագանել նմա 'ի հեռաստանէ, քան մարտնչել ընդ իս աստանօր:

Որում արար պատասխանի զօրավարն երկնից: Հաստատել ինչ, և ապա մերժել զայն. Ջանալ նախ ցուցանել իմաստութիւն զփախուստն 'ի վերտաց, և ապա յանձն առնուլ զլրտեսութիւն՝ ոչ են նշանք քաջ զօրավարի, այլ յայտնի ստախօսի: Ո՜վ Սատանայ զի՞նչ դիշխեցեր յաւելուլ 'ի նոյն և զհաւատարիմդ անուն, և պղծեցեր զկոչումն սուրբ: Այլ առ ո՞ գտար դու հաւատարիմ: Որ խուժա՞ն քո ապստամբք, և առ զօ՞րսդ չարութեան, որք են քաջադէպ մարմին վայելուչ գլխոյդ: Այս էր կրօնութիւն ձեր, և խոստումն հաւատարմութեան. և ա՞յս հպատակութիւն ձեր զինուորական. քակել զուխտն միաբանութեան ընդ խոստովանեալ արքային երկնից: Այլ ո՞վ խորամանկ կեղծաւոր՝ որ

որդ կամիս ցուցանել զանձնդ պաշտպան ազատութեան, ո՜ առաւել քան զքեզ խոնարհեցաւ երբեմն, և երկիր եպագ ծառայաբար ահաւոր և միահեծան Տէրութեանն։ Եւ յո՞յր սակս. եթէ ոչ՝ անկնկալութեամբ հանելոյ զնա 'ի ժառանգութենէ իւրմէ, և թագաւորելոյ փոխանակ նորա։ Արդ՝ միտ դիր բանիցս։ Գնա՛ աստի, և փութացեալ երագեա՛ անդր՝ ուստի փախեարդ։ Եթէ այլևս երևիս 'ի սուրբ սահմանսդ, ես ինքնին շղթայակապ վարեմ զքեզ 'ի տարտարոսդ. և այնպէս պնդեմ զքեզ անդանօր, մինչև ոչ ևս կարող լինել քեզ ծաղր առնել զդրամբքդ դժոխոց՝ որք ցարդ դիւրաբաց կային, և չէին ամրափակ։

Զայսօրինակ սպառնացաւ նա։ Բայց Սատանայ առ ոչինչ գրեաց զսպառնալիս նորա. այն զի յաւէտ ևս սրտմտեալ՝ արար նմա պատասխանի։ Խորոխտապանծդ Քերովբէ սահմանապահ՝ յայնժամ զրոյց 'ի մէջ արկջիր յաղագս շղթայից, յորժամ վարեսցես զիս 'ի գերութիւն։ Մինչ դու կա՛ց և մնա՛ զծանրագոյնն ընդունել կապանս 'ի քաջաղօր բազկաց իմոց՝ թէպէտև բարձեալ բերես զարքայն երկնից 'ի վերայ թևոցդ. և ընդ ընկերս քո՝ որք քաջակիրթ են 'ի լուծ, ձգես զյաղթական անիւս կառաց նորա յընթացս ճանապարհին աստղայատակ երկնից։

Մինչդեռ խօսէր նա զայսօրինակ, դունդն հրեշտակապետին ցուցաւ յաւէտ ևս պայծառազգեստ և կարմրափայլ. և սրացուցեալ զփաղանգս իւր 'ի լուսնաձև եղջիւրս՝ սկսաւ պատել զնա շուրջանակի արձանացեալ նիզակօքն. որք էին այնչափ թանձրախիտ՝ որպէս յորժամ անդաստանն Դե-

մետրի [84] հասեալ 'ի հունձս՝ ծածանէր մէտ 'ի մէտ զքիստս իւրոցն հասկաց, յոր կողմն և խոնարհեցուցանէր զնոսա հողմն. և արօրադիրն բազմախնամ ըմբռնեալ կայ 'ի տարակուսանս՝ թէ գուցէ որայք իւր յուսապատար՝ գտցեն զյարդ սին 'ի կալի անդ ցորենոյ։ Յայնմ վայրի խռովեալ Սատանայի յանձն իւր՝ ժողովեաց առ ինքն զամենայն զօրութիւնս. և եկաց արձանացեալ հսկայաձև իբրև զՏենէրիփ [85] և կամ զԱտլաս [86]։ Հասակ նորա ժամանէր յերկինս. և 'ի վերայ սաղաւարտին նորա տէր երկիւղն փետրազարդ։ Եւ ոչ իսկ 'ի ձեռին նորա պակասեաց նմանօրինակ ինչ գեղարդեան և ասպարի։ Յայնժամ հանդերձեալ էին լինել ահագին մրցմունք. և 'ի խռովութեան անդ՝ ոչ միայն դրախտն, այլ թերևս և աստղալից կամարն երկնից ունէր գնալ յապականութիւն յերեսաց անհնարին մարտին, եթէ Յաւիտենականն առ 'ի ունել զառաջս նորա՝ ոչ կախէր անդէն վաղվաղակի ընդ երկինս զկշիռ իւր ոսկի՝ զոր ցարդ տեսանեմք ընդ մէջ կենդանակերպից Աստղկան [87] և Կարճի [88]։ Յորում կշռեաց նա նախ զամենայն արարածս՝ զառկախեալն երկիր բոլորակաձև, և զօդ հաւասարակշիռ. և այժմ կշռէ զամենայն անցս յաշխարհի, զպատերազմունս, և զթագաւորութիւնս։ Եւ եդեալ էր 'ի նմա զկրկին կշռորդս. զմին 'ի բաժանումն, և զմիւսն 'ի մարտ։ Եւ ահա սլացեալ 'ի վեր երկրորդին՝ անկուշեաց զլուծն կշռոյ։ Զոր տեսեալ Գաբրիէլի՝ զայս օրինակ խօսեցաւ ընդ թշնամւոյն։ Ո՛վ Սատանայ՝ քաջ ճանաչեմ ես զզօրութիւն քո, որպէս և դու զանձին իմոյ. ոչ զմերն սեպհական, այլ զոր ընկալաք

յԱրարչէն։ Արդ՝ զի՞նչ անմտութիւն է պանծալ ընդ զօրութիւնս բազկաց։ Զի քոյդ ոչ կարեն աւելի ինչ առնել քան զոր թողացուցանեն երկինք. նոյնպէս և ոչ բազուկք իմ, թէպէտև զօրութիւն նոցա կրկնապատկեալ է այժմ առ 'ի կոխան առնել զքեզ ընդ ոտիւք։ Հայեաց 'ի վեր յերկինս, և ընթերցի՛ր զչափ անձին 'ի նշանոդ՝ յորում կաս կշռեալ. և ծանիցես, թէ քանի՛ թեթև ես և տկար առ 'ի զդէմ ունել իմում զօրութեանս։ Ակնարկեալ Թշնամւոյն 'ի վեր՝ ետես զամբարձումն իւրում կշռոյ [89]։ Վասն որոյ և ոչ այլ ինչ յաւելեալ՝ խոյս ետ մնտի քրթմնջելով. և խաւար գիշերոյն տեղի ետ ընդ նմա [90]։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

'Ի հասանել առաւօտու պատմէ Եւայ Ադամայ զխռովայոյզ անուրջն՝ զորս տեսեալ էր 'ի գիշերի։ Ոչ հաճի ընդ նոսա Ադամ, բայց քաջալերէ զԵւայ։ Ելանեն նոքա առտաքս յառօրեայ վաստակս իւրեանց։ Օրհնութիւն նոցա առաւօտեան առ դրան հովանոցին։ Աստուած յանպատասխանի առնել զմարդն՝ առաքէ առ նա զՌափայէլ ծանուցանել նմա զպարտս հնազանդութեան, զանձնիշխանութիւն իւր, և զԹշնամին եկեալ հասեալ. և թէ՝ ո՛ է նա, և ընդէ՞ր Թշնամի նորա, հանդերձ այլովք կարևորօք 'ի սակս գիտութեան Ադամայ։ Ռափայէլ իջանէ 'ի դրախտն։ Նկարագրութիւն երևման և կերպարանաց նորա։ Ադամ նստեալ առ դրուռն հովանոցին՝ տեսանէ 'ի հեռաստանէ զգալուստ նորա։ Գնայ ընդ առաջ, և ածէ զնա 'ի բնակութիւն իւր։ Պատուասիրէ ընտիր ընտիր պտղովք դրախտին՝ զորս քաղէ Եւայ։ Բանք նոցա 'ի սեղանի անդ։ Ռափայէլ ըստ պատգամաւորութեանն յուշ առնէ Ադամայ զվիճակ նորա, և զԹշնամին։ 'Ի խնդրոյ Ադամայ ծանուցանէ նմա զհանգամանս Թշնամւոյն՝ սկսեալ 'ի նախկին վտարանջութենէ նորա յերկինս, և զպատճառ նորին։ Եւ թէ զիա՛րդ ձգեաց նա զլէգէոնսն զկնի իւր 'ի կողմն հիւսիսոյ. և անդ յորդոր եղև նոցա յապստամբութիւն, որսացեալ զամենեսին՝ բաց 'ի Սերովբէէն Աբդիէլէ, որ 'ի խորհրդեան անդ ընդդէմ դարձաւ նմա, և ապա 'ի բաց եկաց 'ի նմանէ։

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ.

## ԳԻՐՔ. Ե:

Մինչդեռ յառաջ խաղացեալ առաւօտու 'ի վարդակարմիր գնացս իւր ընդ կողմն արեւելից՝ սփռէր զմարգարիտս ընդ երկիր, զարթեաւ Ադամ 'ի քնոյ իւրմէ ըստ սովորութեանն. զի քուն նորա թեթեւ էր իբրեւ զօդ՝ սնեալ դիւրածախ մարսողութեամբ, եւ բարեխառն արտաշնչութեամբ գոլորշեաց. զոր եւ ջնջիւն եւեթ տերեւոց, եւ շոգիք վտակին 'ի հովահարել անդ արշալուսի, եւ գեղգեղաձայն բարբառ թռչնոց յոստս ծառոց յառաւօտու՝ դիւրաւ փարատէին 'ի բաց յաչաց նորա: Այլ կարի եւս զարմացաւ 'ի գտանել անդ զԵւայ տակաւին 'ի քուն. որոյ եւ հերք խառնարեալ էին, եւ այտք կարմրացեալ՝ գոգցես յերեսաց անհանգիստ քնոյ: Կիսայարոյց լեալ, եւ յեցեալ յարմուկն առ կողիւք նորա՝ խոնարհեցոյց զանձն իւր առ նա խանդաղատանօք, եւ ետես ըզգեղ վայելչութեան նորա 'ի քուն անդ ոչինչ ընդհատ 'ի ժամէ արթնութեան: Եւ ապա կալեալ զձեռս նորա՝ 'ի ձայն քաղցր (որպէս 'ի շնչել

Զեփիւռայ [1] առ Փլորա [2]) բարբառեցաւ յա-կանջս նորա օրինակ զայս ։ Զարթի՛ր հա՛րսն իմ գեղեցիկ, ընտիր պարգեւդ երկնից գտեալ 'ի վեր-ջոյ, եւ բերկրութիւն իմ մշտագուարճ. զարթի՛ր, զի լուսապայծառ ծագէ առաւօտն, եւ դաշտն զո-վագին՝ կոչէ զմեզ 'ի վաստակս ։ Զարթի՛ր, զի անցանէ ժամն բարեվայելուչ 'ի զննել՝ թէ զիարդ բուսանին տունկքն մշակեալք առ 'ի մէնջ, զիարդ ուռճանայ անտառն կիտրոնի. ո՛ւր ոմանք հոսեն զզմուռն, եւ ո՛ւր զբալասան ։ Զիարդ բնութիւնն նկարէ զերանգս իւր. եւ զիարդ մեղուն նստեալ 'ի վերայ ծաղկանց՝ ծծէ 'ի նոցանէ զքաղցրու-թիւն հեղանիւթից [3] ։

Զայսօրինակ բարբառեալ՝ զարթոյց զնա ։ Եւ նորա յառեալ զաչս իւր յԱդամ, եւ ընդգրկեալ զնա՝ խօսեցաւ ընդ նմա օրինակ զայս ։

Ո՛վ փառք իմ եւ պարծանք, յորում միայն գտանեն զհանգիստ ամենայն խորհուրդք իմ ։ Ու-րախ եմ ընդ տեսութիւն երեսաց քոց, եւ նորոգ առաւօտուս. զի յայսմ գիշերի (գիշեր այսօրի-նակ) տեսի երազ՝ եթէ իցէ երազ, ոչ զքէն՝ որ-պէս բազում անգամ սովորութիւն է ինձ, կամ զվաստակոց երեկեան աւուր, եւ կամ զխնամոց վաղուեան առաւօտու, այլ զչարեաց եւ զվշտաց՝ զորս ոչ գիտացին միտք իմ մինչեւ ցայս գիշեր բազմատագնապ ։ Թուէր ինձ առընթեր ական-ջացս լսել զքաղցրաձայն բարբառ՝ որ կոչէր զիս արտաքս 'ի զբօսանս ։ Զքոյդ համարեցայ զայն ։ Որ եւ ասաց ցիս ։ » Ընդէ՞ր ննջես Եւա, զի արդ հասեալ է ժամն քաղցրագուարճ եւ խաղաղաւէտ ։ Լռութիւնն տեղի տայ միայն գիշերախօս թռչ-

նայն. որ և առող զարթուցեալ՝ քաղցրաձայն նուա-
գէ զերգ իւր տենչալի։ Լուսինն թագաւորէ կա-
րանկաձև. և 'ի գեղեցիկ լուսափայլութեան իւ-
րում ստուերազգեստ իմն ցուցանէ զերեսս արա-
րածոց. Բայց վայրապար, եթէ ոք ոչ ակնարկէ
'ի նոսա։ Ո՞չ երկնից յարթմնի կան 'ի տեսանել՝
զո՞ այլ ոք, եթէ ոչ զքեզ զցանկալիդ բնութեան։
Ընդ տեսիլ քո զուարճանան արարածք. և հի-
ացմամբ ձգին միշտ 'ի պշնուլ ընդ գեղ երեսաց
քոց «[4]։ Զարթեայ 'ի ձայնէս իբրև 'ի քումդ
կոչմանէ. բայց ոչ գտեալ զքեզ՝ ուղղեցի զգնացս
իմ 'ի խնդիր քո։ Թուէր ինձ անցանել առանձին
ընդ ճանապարհն՝ որ էած զիս անակնկալ առըն-
թեր արգելեալ ծառայն գիտութեան։ Գտի զայն
յայնժամ գեղեցիկ, բայց առաւել ևս գեղեցիկ
քան 'ի տունջեան անդ։ Եւ 'ի հայել իմում զար-
մացմամբ ընդ նա՝ տեսի առ նովաւ զոմն թևա-
զգեցիկ, և 'ի ձև կերպարանաց նոցա՝ զորս բա-
զում անգամ տեսանեմք իջանել յերկնից [5]։ Որոյ
դէմք ցոլատարափ հոսէին զանմահութիւն [6]. և
նա ևս պշուցեալ հայէր ընդ ծառդ։ Որ և խօսե-
ցաւ ընդ նմա օրինակ զայս։ « Ո՞վ գեղեցիկ ծառ՝
ծանրաբեռն պտղովք, ոչ ոք տաճարին յԱստուա-
ծոց [7] անտի կամ 'ի մարդկանէ հաճեցաւ թե-
թևացուցանել զծանրութիւն բեռինդ, և առնուլ
զճաշակ քումդ քաղցրութեան։ Մի՞թէ այսչափ
արհամարհեա՞լ իցէ գիտութիւնն։ Կամ նախանձ,
և կամ երկիւղ արգելու ճաշակել 'ի քէն։ Ոչ
ոք կամի՝ հրաժարեցուսցէ, բայց ոչ ոք կարէ ար-
գելուլ ինձ ընդերկար զպարգևս քումդ բարու-
թեան։ Եւ մի՞թէ վայրապա՞ր տնկեցար աստ

նորա ։ Զայս ասացեալ՝ ոչ ես յապաղեցայ, այլ
անդէն յառաջ մատուցեալ՝ ձգեաց զձեռն իւր 'ի
նա, էառ և ճաշակեաց ։ Յայնժամ արհաւիրք
կալան զիս ընդ անհնարին ժպրհութիւն բանից
նորա՝ որոց երաշխաւոր եղև մեծ ես յանդգնու-
թիւն գործոյն ։ Այլ նա խնդագին խօսեցաւ
ընդ նմա օրինակ զայս ։ « Ո՛վ աստուածայինդ
պտուղ՝ քաղցրաճաշակ ինքնին, բայց առաւել ևս
'ի կթել զքեզ սովին օրինակաւ ։ Թուի ինձ, թէ
արգելեալ կաս աստանօր իբրև Աստուածոց միայն
վայելչական ։ բայց քաջայարմար ես յընծայել
Աստուածս 'ի մարդկանէ ։ Եւ զխամրդ ոչ ։ զի բա-
րին հաղորդեալ առաւել ևս բազմանայ ։ և պար-
գևատուն՝ ոչ եթէ նուաստանայ, այլ առաւել ևս
պատուեալ մեծարի ։ Արարածդ բարերջանիկ՝
հրեշտակատիպ գեղեցիկդ Եւայ, լեր հաղորդա-
կից ընդ իս ։ զի թէպէտ երջանիկ ես, այլ մարթ
է քեզ լինել առաւել ևս երջանիկ, բայց ոչ յա-
ւէտ արժանաւոր ։ Ճաշակեա 'ի դմանէ, և լեր
յայսմհետէ Աստուածուհի 'ի մէջ Աստուածոց ։
Մի՛ մնար կապեալ միշտ ընդ երկիր ։ այլ եւ եր-
բեմն յօդս ըստ մերումս օրինակի, և երբեմն յեր-
կինս՝ ըստ քում արժանեաց ։ Եւ տես անդանօր
զկեանս Աստուածոց, և կեաց իբրև զմի 'ի նոցա-
նէ » ։ Զայսօրինակ խօսեցեալ նորա՝ մերձեցաւ
առ իս, և մատոյց ինձ՝ մանաւանդ թէ իմում բե-
րանոյ, զմասն պտղոյն՝ զոր եհատ 'ի ծառոյ անտի ։
Հոտ նորա ախորժակ և հեշտալի՝ այնպէս զարթոյց
զճաշակն իմ, մինչև ոչ ես կարող լինել ինձ հրա-
ժարել 'ի նմանէ ։ Եւ անդէն սլացայ յամպս ընդ
նմա ։ և տեսի 'ի ներքոյ զսահման տարածութեան

երկրի, սահման լայնածաւալ՝ և բազմապիսի։ Մինչդեռ զարմացեալ կայի ընդ խոյանալն իմ յայնչափ բարձրութիւն, և ահա առաջնորդն իմ մեկնեցաւ յինէն յանկարծակի. և ես համարեցայ զանձն իմ վայրաբերեալ, և ընկղմեալ ՚ի քուն։ Բայց քանի՞ խնդութեամբ զարթեայ՝ ՚ի գտանել անդ զամենայն ինչ երազ։ Զայսօրինակ պատմեաց Եւայ զանուրջս գիշերայն. և Ադամ խօսեցաւ ընդ նմա տխրագին օրինակ զայս։

Ամենալաւ պատկերդ իմ, և կէս անձին իմոյ ամենասիրելի՝ յուզմունք խորհրդոցդ ՚ի քուն գիշերոյս նոյնպէս տագնապեցուցանեն և զիս։ Ոչ եմ հաճեալ ընդ երազդ քստմնելի. խիթամ, զուցէ յառաջ գայցէ ՚ի չարէ անտի։ Բայց ուստի՞ իցեն մուտք չարի։ ՚Ի քեզ ՚ի ստեղծուածդ անարատ չէ՛ հնար նմա ունել զտեղի։ Այլ ծանի՛ր, զի բազմապատիկ են ՚ի հոգւոջ ստորին կարողութիւնք՝ որք արբանեկեն բանին իբրև գլխոյ իւրեանց։ Երևակայութիւնն զերկրորդ ունի զպաշտօն ՚ի նոսա։ Յամենայն արտաքին իրաց՝ զորս հնգեքին անխոնջ զգայարանքն յանդիման առնեն նմա, յօրինէ նա զգաղափարս՝ զօդեղէն պատկերս։ Զուգորդեալ բանին, կամ անջատեալ զնոսա՝ կազմէ զհաւանութիւն կամ զհերքումն ՚ի միտս, զորս կոչեմք գիտութիւն կամ կարծիք. և ապա խոյս տայ յառանձին սենեակ իւր՝ ՚ի հանգստարանն բնութեան։ ՚Ի մեկնիլ նորա՝ բազում անգամ արթուն կայ երևակայութիւնն, և խնդրէ բերել յանձին զնմանութիւն նորա։ Բայց յալովակի չարաչար անջատեալ զգաղափարսն՝ յանդիման առնէ՝ յաւէտ յանուրջս, զանհեթեթ և

զանտեղի բանս և զգործս՝ զանցեալս յառաջա-
գոյն [8]։ Զայսպիսի ինչ յարացոյց թուի ինձ տե-
սանել 'ի քում երազի 'ի բանից անտի մերոց ընդ-
միմեանս յերեկեան աւուր ընդ երեկս, այլ տա-
րադէպ յաւելուածովք։ Սակայն մի անկցի սիրտ
քո. զի մարթ է անցանել չարի ընդ միտս հրեշ-
տակի կամ մարդոյ առանց հաւանութեան, և
չթողուլ զկնի իւր արատ ինչ կամ ստգտանս։ Նաև
ես վստահ եմ 'ի քեզ, թէ յորմէ սոսկացար յե-
րազի անդ, չառնուս յանձն կատարել զայն յարթ-
նութեան։ Արդ՝ մի լքանիր, և մի մթագներ ըզ-
դէմսդ՝ որում արժան է զուարթագին եւս պայ-
ծառանալ, քան խնդագին և զուարճագեղ առա-
ւօտու ընդ երեսս երկրի։ Ելցո՛ւք անդրէն 'ի վաս-
տակս մեր ընդ անտառս, ընդ աղբերակունս, և
ընդ բուրաստանս ծաղկանց՝ որք արդ սփռեն ըզ-
գրկալիր անուշահոտութիւն իւրեանց պահպա-
նեալ յերեկաց գիշերոյ, և շտեմարանեալ վասն քո։

Զայսօրինակ զուարթացոյց նա զհարսն իւր
գեղեցիկ. և նա քաջալերեցաւ յանձն իւր։ Բայց
հոսեցոյց լռելեայն յաչաց իւրոց զքաղցր արտա-
սուս. զորս և հերովքն ջնջեաց։ Սակայն զերկու
սին պատուականս շիթս 'ի նոցանէ՝ որք կային պատ-
րաստականս 'ի բիւրեղեան սահմանս իւրեանց, մինչ
չև էին անկեալ՝ համբուրեաց Ադամ իբրև շնոր-
հաղորդ նշանս գեղեցիկ մտացն զղջի, և բարե-
պաշտ երկիւղի յերեւաց յանցանաց։

Զայսօրինակ անդորրացեալ՝ փութացան ապա
'ի դաշտ անդր։ Այլ մինչև էր նոցա ելեալ ար-
տաքս 'ի անկատարազարդ հովանոցէն՝ 'ի տեսիլ ծագ-
ման առաւօտու, և արեգական (որ տակաւին ոչ

ելեալ 'ի վեր, այլ հոլովեալ զանիւս կառաց իւ-
րոց. առ շրթամբք Ովկիանու՝ արկանէր 'ի համ-
գիպոյ երկրի զցօղագին ճառագայթս իւր, և 'ի
լայնածաւալ ընդարձակութեան անդ ցուցանէր
զամենայն արևելեան կողմանս երջանիկ վայրաց
դրախտին և Եդեմայ ) խոնարհեցուցին զանձինս
յերկրպագութիւն, և մատուցին զաղօթս՝ զոր
յամենայն առաւօտու նուիրէին յայլևայլ եղա-
նակս. զի ոչ պէսպիսութիւնք ձայնից, և ոչ յափշ-
տակութիւն միայն պակասէին նոցա յօրհնել անդ
զԱրարիչ բարեաց 'ի բարեվայելուչ և յինքնա-
բուղխ բանս կամ երգս: Ճարտարախօսութիւնն
ինքնին հոսէր 'ի շրթանց նոցա յարձակ կամ 'ի
չափեալ բանս. և այնպիսի իմն ներդաշնակու-
թեամբ, մինչև չլինել անդ պէտք վնի կամ քնա-
րի յառաւելութիւն ձայնից քաղցրութեան: Որ
և սկսան օրինակ զայս:

Այսոքիկ գործք քո են սքանչելի՝ Ամենակալ
ծնող բարեաց, քո՛ և համօրէն զարմանահրաշ յօ-
րինուածք տիեզերաց: Իսկ դու Անճառելի՛ քա-
նիո՞ն առաւել ես սքանչելի՝ որ նստիս 'ի վերոյ
քան զերկինս աներևս առ 'ի մեզ, և կամ ընդ ա-
ղօտ երևիս 'ի ստորին արարածքս՝ որք ցուցանեն
զբարութիւն քո և զզօրութիւն աստուածային՝ 'ի
վեր քան զմիտս: Այլ դուք որդիք լուսոյ Հրեշ-
տակք՝ որք լաւ ևս գիտէք, պատմեցէք զնմանէ.
զի դուք տեսանէք զնա, և 'ի միաբանութիւն եր-
գոց ձեռամբք պարու շուրջ պատէք զաթոռով նո-
րա խնդագին զտիւ անգիշեր: Դուք յերկինս
օրհնեցէք զնա: Իսկ 'ի վերայ երկրի արարածք
ամենայն միաբանութեամբ բարձր արարէք զնա՝

որ է առաջին, միջին, վերջին, և անվախճան։ Գեղեցկագոյնդ 'ի լուսաւորս [9], վերջին սպասահարկուդ գիշերոյ ընդ արշալուսի, և անշուշտ գրաւականդ տունջեան՝ թագազարդեալ զխնդագին առաւօտն 'ի շրջանակ քո պայծառափայլ, օրհնեա զՏէր 'ի քում պարունակի 'ի ծագել տունջեանս, և յելս քաղցրաստիգ առաւօտուս։ Արեգակնդ՝ ակն և հոգի մեծամարմին աշխարհիս, ծանիր զՏէր քո վերնական. և հնչեա զօրհնութիւնս նորա 'ի մշտնջենաւոր ընթացս քո յելս անդ, 'ի բարձրութեան միջօրէի, և 'ի մուտս։ Լուսինդ՝ որ է զի ընդառաջ ելանես արեգականն ծագման, և է զի խոյս տաս յերեսաց նորա ընդ աստեղացն հաստատութեան. և հնգեքին մոլորակք՝ [10] որք յօրինէք զխորհրդական պարս երգով, մատուցէք նմա զօրհնութիւնս՝ որ 'ի խաւարէն կոչեաց ըզ-լոյս։ Օդդ, և ամենայն տարերք՝ անդրանիկ ծնունդք բնութեան, որք ընթանայք 'ի քառեակ թիւ ընդ մշտնջենաւոր շրջանն բազմայեղանակ, և բարեխառնութեամբ դարմանէք զամենայն արարածս, յանդադար փոփոխման ձերում յեղանակեցէք Արարչին զնոր օրհնութիւնս։ Մէգք և գոլորշիք՝ որք արդ թանձր կամ անօսր արտաշընչեալ՝ ելանէք 'ի լեռնէ կամ 'ի լճէ, այն ինչ արեգակն ներկէ յոսկի զգեղմնաբարձ ստորոտս ձեր, բարձրացուցէք զպատիւ Արարչապետին՝ եթէ 'ի պճնազարդել ձեր ամպօք զհաստատութիւնն երկնից այլագունեալ, և եթէ յոռոգանել 'ի տարափս անձրևաց զերկիրն ծարաւի։ Եւ յամբառնալ ձեր կամ յիջանել՝ մատուցէք նմա զօրհնութիւնս։ Մատուցէք և դուք հողմք՝ որք հեզիկ

կամ ուժգին շնչէք 'ի չորից ծագաց երկրի ։ Սարոյք, և ծառատունկք ամենայն խոնարհեցուցէք զդողդոջուն գագաթունս ձեր յերկրպագութիւն նմին ։ Աղբերք, և ամենայն կարկաջուն հոսանք երգեցէք զմեղեդիս նորա 'ի ձայն քաղցրութեան ։ Եւ դուք համօրէն շնչունք կենդանիք հնչեցէք նմա միաբան զձայն օրհնութեան ։ Թռչունքդ՝ որք առ բառնայք երգով առ դրունս երկնից, համբարձէք 'ի թեւս ձեր զօրհնութիւնս նորա ։ Կայտառքդ 'ի ջուրս, չորքոտանիք և զեռունք 'ի վերայ երկրի՝ տուք վկայութիւն զմէնջ, եթէ դադարեալ իցեմք երբէք 'ի հնչեցուցանելոյ ընդ առաւօտս կամ ընդ երեկս յականջս լերանց, հովտաց, աղբերականց և զովագին հովանեաց զերգս մեր, և յուսուցանելոյ նոցա զօրհնութիւնս նորա"։ Զուարճացիր Տէրդ տիեզերաց, և հաճեսց տալ մեզ հանապազ զբարիս ։ Այլ եթէ ժողովեալ իցէ կամ թագուցեալ գիշերայս զչար ինչ, մերժեա զայն 'ի բաց ընդ փարատել լուսոյ զխաւարն ։

Զայսօրինակ մատուցին զամբիծ աղօթս իւրեանց. և անդէն հաստատեցան միտք նոցա յանդորր խաղաղութիւնն՝ զոր խնդրէին ։ Եւ այնպէս ապա ընդ քաղցրութեան ցօղոյ և ծաղկանց փութացան յառաւօտեան մշակութիւն իւրեանց՝ ուր շարք ինչ պտղաբեր ծառոց կարի իմն ուռճացեալ, հեռագոյնս արձակէին զստուարաստեղն ոստս իւրեանց. վասն որոյ և պէտս ունէին ձեռաց 'ի քշտել զանպտուղ զրկախառնութիւն նոցա ։ Եւ կամ պէտք էին պսակելոյ զորթն ընդ կնձնւոյ. որոյ զիրկս արկեալ նմին՝ բերէր վարձանս ընդ իւր զողկոյզս որդեգրութեան՝ առ 'ի

զարդ տերևոց նորա ամլութեան։ Յայսպիսի վա–տակս տեսեալ զնոսա բարեխնամ Արքայն երկ–նից՝ կոչեաց առ ինքն զՌափայէլ, զընկերասէր հոգին՝ որ յանձն էառ զուղեկցութիւնն Տուբի–թայ, և կացոյց յապահովի զամուսնութիւն նորա ընդ եւթնապսակ օրիորդին. և ասէ ցնա։

Ռափայէլ՝ տեսանես զաղմուկն, զոր յարոյց Սա–տանայ ’ի վերայ երկրի ’ի դրախտի անդ՝ փախու–ցեալ ’ի դժոխոց ընդ խաւարային անդունդս։ Որ–պէս տագնապեցոյց յայսմ գիշերի զամոլս մարդ–կութեան. և զիարդ հնարի կործանել ընդ նոսա զհամօրէն ազգ մարդկան։ Արդ՝ գնա և խօսեա՛ց ընդ Ադամայ իբրև բարեկամ ընդ բարեկամի՝ յո–րում և հովանաւոր վայրի գտանես զնա ’ի միջօ–րէի՝ մեկնեալ յերեւաց տօթոյ ’ի հանգիստ, և յառնուլ զկերակուր։ Յուշ արա նմա զերջան–կութիւն վիճակի նորա, զերջանկութիւն թողեալ յանձնիշխանս կամս՝ անձնիշխան, այլ ոչ անփոփոխ։ Ասա որոյ զգուշացո՛ զնա, զի մի խոտորեսցի կա–րի իւր յանձնապաստանութեամբ։ Յայտնեա՛ ևս նմա զվտանգն, և յումմէ՞։ Եւ որպիսի՞ հնարս հնա–րէ թշնամին անկեալ յառաջագոյն յերկնից՝ ’ի կոր–ծանումն այլոց ’ի նոյնօրինակ երջանկութենէ։ Եւ միթէ բռնութեամբ, ո՛չ երբէք՝ զի գիտէ զընդդի–մութիւնն, այլ պատրանօք և ստութեամբ։ Ծա–նո՛ նմա զայս ամենայն, զի մի կամաւ անցեալ ընդ պատուիրանսն՝ պատճառս առնուցու զդժուարա–նութիւնն, իբրև ոչ խրատեալ յառաջագոյն։

Զայսօրինակ խօսեցաւ Հայրն յաւիտենական. և ելից զամենայն արդարութիւն [12]։ Իսկ թևա–զգեստ Սրովբէն ոչ ևս յապաղեաց զկնի վերնա–

կան հրամանին. այլ 'ի միջոյ անտի հազարաց երկ-
նային ճառագայթից՝ [13] ուրանօր պարապեցեալ
կայր չքնաղափայլ թեւօքն, թեթեւ սլացաւ 'ի վեր։
Ընդ շառաւ խուճապման նորա յայս կոյս և յայն
կոյս բաժանեալ դասուց հրեշտակաց՝ արարին
նմա ճանապարհ ընդ համօրէն հրեղէն պաշտօնայն.
մինչև ժամանեաց նա 'ի դրունս երկնից. Որ և
ինքնին բացաւ լայնարձակ, ճռնչեալ 'ի վերայ սա-
կեղէն ծղխնեաց՝ զոր յօրինեալ էր գերագոյն Ար-
ուեստապետի աստուածահրաշ ճարտարութեամբ։
Անդուստ առ չլինելոյ խափան տեսութեան նորա
ամպոյ կամ անջրպետութեան աստեղ՝ ետես նա
զերկիր համգունատիպ այլոց լուսափայլ գնտոց,
թէպէտև փոքրիկ. ընդ նմին և զդրախտն Աս-
տուծոյ պատկառազարդ յօրինեալ եղեմնափայտիւք 'ի
վերայ քան զբլուրն։ Զորօրինակ նշմարէ 'ի գե-
շերի Գալիլեանն ապակի [14] 'ի Լուսնի անդ՝ թէ-
պէտև ոչ հաւաստեաւ, զկարծեցեալ երկիրս և
զսահմանս։ Կամ նաւուղիղն 'ի Կիւկղադայց [15]
միջի տեսանէ նախ զՆեղոս [16] և կամ զՍամոս՝ [17]
իբրև զբիծ ամպանև։ Ճանապարհեաց ապա ընդ
թռիչս իւր 'ի խոնարհ. և առաջադրեալ զքաջա-
ձիգ թեւս իւր ընդ լայնատարր եթերն վերին՝ նա-
ւարկեաց ընդ աշխարհս և ընդ աշխարհս [18]. Էր զի
'ի վերայ բեւեռական հողմոց, և էր զի արագ բաղ-
խեալ զօդն դիւրանսաց։ Մինչև 'ի սրաթռիչ խա-
յանս անդ արծուեաց երևէր նա ամենայն հաւուց
իբրև զփիւնիկ [19] թռչունն միածին, որ 'ի պահեստ
իւրոց նշխարաց 'ի չքնաղ տաճարի անդ արեգա-
կան [20] յԵգիպտականն ընթանայ 'ի Միւրէ [21].
Անդէն փութանակի իջեալ նորա 'ի վերայ արև-

ջեան պարսպի դրախտին՝ դարձաւ 'ի բնիկ կերպարան իւր Սերովբէ Թեւաւոր։ Վեց Թեւք էին նորա 'ի պարածածկել զպատկեր իւր աստուածանմանն։ Երկուք 'ի նոցանէ կարգեալ 'ի ծածկոյթ երկոցունց լայնանիստ ուսոց նորա՝ անկեալ կային զլանջօքն 'ի զարդ արքայական։ Երկուքն միջինն պնդէին զմէջս նորա իբրև գգօտի աստեղանշոյլ, և շուրջ պատէին զերիկամունսն և զազդերս յըստիր ոսկի և 'ի գոյն երկնաներկ։ Իսկ երկուքն վերջինն ծածկէին զոտս նորա փետրազարդ անդստին 'ի գարշապարաց՝ իբրև վերտիւք և երկներանգ կարմրով։ Կացեալ անդանօր 'ի վերայ ոտից իւրոց հանգունատիպ որդւոյն Մայայ՝ [22] Թօթափեաց զփետուրսն, որք լցին երկնային անուշահոտութեամբ զընդարձակութիւն վայրացն։ Անդէն վաղվաղակի ծանեան զնա հրեշտակացն գունդք՝ որք կարգեալ էին 'ի պահպանութիւն դրախտին. և 'ի պատիւ երեսաց նորա և պատգամաւորութեան կանգնեցան կացին յոտին։ Եւ նա անցեալ ընդ շողշողուն վրանս նոցա, և ընդ անտառս զմռսոյ, ծաղկանց անուշից, կասիայի, նարդոսի և բալասանի՝ եհաս 'ի դաշտավայրն երանաւէտ. զի բնութիւնն կոյս և առոյգ խայտայր անդ 'ի ծաղկի հասակին. և զուարձանայր յառաւելագոյն սփռումն քաղցրութեան անչափ առատութեամբ 'ի վեր քան զկանոնս և զարուեստս [23]։ «Նստեալ Ադամայ առ դրան զովագին հովանոցի իւրոյ՝ ետես զգալուստ նորա ընդ անտառն խնկենեաց. այն ինչ բարձրացեալ արեգակն՝ արկանէր շեշտակի զեռանդագին ճառագայթս իւր 'ի ջեռուցանել ըզխորս երկրի առաւել քան զպէտսն Ադամայ։ Եւ

Նուայ յայնմ քաղաքէդ ժամու պատրաստէր 'ի ներքս զճաշն 'ի համեղաճաշակ պտղոց անտի՝ որք քաղցր էին 'ի քիմս ընտիր ախորժակի, և յորդոր լինէին ծարաւոյ յարբումն՛ Նեկտարեան[24] ըմպելեաց 'ի կաթնաբուղխ գետոց անտի՝ 'ի հատապտղոց և 'ի խաղողոյ: Զոր և կոչեաց Մզամառտաքս՝ օրինակ զայս:

Փութեա՛ Նո՛ւայ, և եկ այսր 'ի տեսանել զլուսափայլ կերպարանն արժանի քումդ տեսութեան. որ և ուղղեալ զայս առ մեզ ընդ արևելեան կողմն անտառին: Թուի նա միւս ևս առաւօտ ծագեալ 'ի միջօրէի: Թերևս պատգամ ինչ կարևոր բերէ նա առ մեզ յերկնից, և կամի ընդունել այսօր զհիւրընկալութիւն առ 'ի մէնջ: Արդ՝ աճապարեա՛ հանն արտաքս զամենայն մթերս քո, և սփռեա՛ անխնայ յարժանի պատուասիրութիւն երկնաւոր իջաւորիս: Նա կարծ՛ իսկ արժան է մեզ ընծայել երախտաւորացն զշնորհս, և ճոխաբար մատուցանել զընծայեալ պարգևսն առատութեամբ. զի բնութիւնն առատացուցանէ զբերս իւր, և 'ի բաշխել անդ առաւել ևս պտղաբերէ. և վարդապետէ մեզ ոչ անխնայել:

Ասաց և պատասխանի Նուայ: Ադամ՝ բազմերջանիկ հողազանգուածդ աստուածազգեցիկ, սակաւ մթերից պէտք են անդանօր՝ ուր յամենայն եղանակս տարւոյն պտուղքն հասունացեալ կախին զծառոց վասն մեր. միայն պարտ է փոքու իմն մթերել զնոսա՝ որք 'ի շտեմարանել անդ՝ ստանան զառաւել զօրութիւն 'ի սնուցանել, և սպառեն զանչափութիւն հիւթոցն: Այսն որոյ փութացեալ կթեցից յամենայն ծառոց, անկոց և

բուսոց զմնայր ընտիր բազմահիւթ պտուղս՝ ընդ-
վայելչականացն ստամոքականութեան երկնայնոյն հիւ-
րոյս․ զի տեսեալ նորա՝ խոստովան լիցի, թէ որ-
պէս յերկինս՝ նոյնպէս և աստ աստուածեան է
Աստուած ՚ի բարութիւնս իւր ։

Զայս ասացեալ նորա՝ մեկնեցաւ փութանակի
ունելով ՚ի դէմս զխնամսն, և ուշ եդեալ հիւրա-
սէր խորհրդոցն թէ զորս արդեօք ՚ի պտղոց ընտրի
յաւէտ արժան իցէ նմա ընտրել ՚ի սակս ախոր-
ժութեան նոցա․ և յինչ կարգ քաղցրավայելուչ դա-
սել զնոսա, զի մի անպատշաճական գոլով, և ոչ քաղ
միաբանեալ ընդ միմեանս՝ խառնուրդ ինչ համոցն
գործիցեն․ այլ ախորժակ փոփոխմամբ ընծայես-
ցեն զհետ միմեանց զքաղցրութիւն ճաշակաց ։ Եւ
ապա յաւել մատուցեալ՝ յամենայն մատաղա-
տունկ ծառոց՝ զոր միանգամ երկիր մայրն համայ-
նապէս ընծայէ յարևելեան կամ յարևմտեան Հնդ-
կիկս [25], ՚ի ծովեզերեայն Պոնտոսի [26] և Պունիկայ [27],
և ՚ի թագաւորութեան անդ Ալկինոսեայ՝ [28] ժողո-
վեաց զընտրելագոյն պտուղս ՚ի կեղև անհարթ, ՚ի
փեճճեկ փայլուն, և ՚ի պարուսակ կամ ՚ի պատեան
քիստաւոր ։ Եւ անխնայ ձեռօքն կուտակեաց զնո-
սա ՚ի վերայ սեղանոյն ՚ի բազմահարկի պատուասի-
րութիւն ։ Իսկ ՚ի պէտս ըմպելեաց՝ ճմլեաց զխա-
ղողն ( քաղցու անմեղանչական ) և զբազմատեսակ
անուշակ հատապտուղս [29]․ յորոց և յօրինեաց ըմ-
քաղցրաճաշակ անուշունս․ և յընդունարան նո-
ցին ոչ կարօտացաւ նա քաղցրավայելուչ և մաքրա-
փայլ անօթոց ։ Եւ ապա սփռեաց ՚ի գետինն ըմ-
վարդ և զանուշահոտ բուրումն բուսոց և ծաղ-
կանց ։

Յայնմ վայրկենի նախահայրն մեր Ադամ չոգաւ ընդ առաջ աստուածանման իւրումն իջաւորի. և չունէր ընդ իւր զայլ ստորահարկս, բայց միայն զանթերի կատարելութիւնս անձին իւրոյ: Որք և յաւէտ շքեղաշուք էին քան զերկայնաձիգ համդէսս իշխանաց՝ այն ինչ մեծազգանձ ուղեկցութիւն պաշտօնէից նոցա և երիվարաց յոսկի համակեալ, խտտղէ զաչս ամբոխին, և յակնձիւս կացուցանէ զամենեսին առ հասարակ: Ո՛ստ հանդէպ Ադամայ առ նա՝ երկիր եպագ նմա խոնարհ յարգանօք այլ ոչ երկիւղիւ, 'ի պատիւ վերնական բնութեան. և խօսեցաւ ընդ նմա՝ օրինակ զայս: Բնակիչք երկնից (զի զայդ ցուցանէ չնաշխարհիկ կերպարանդ) փոխանակ զի հաճեցար իջանել 'ի վերին աթոռոց, և թողուլ առ վայր մի զկայանսդ երանութեան, հաճեաց ընդ մեզ ընդ երկրոսեանս միայն որք ցարդ ժառանգեմք տիրական պարգևօք ըզվայրդ ընդարձակ, հանգչել 'ի անկազուարճ հովանոցիս, և ճաշակել յընտրական պտղոց պարտիզիս. մինչև զովացի տօթն միջօրէից ընդ խոնարհել արեգականդ:

Որում ետ պատասխանի քաղցրութեամբ հրեշտակային զօրութիւնն: Ադամ ես իսկ յայն սակս եկի: Զի ոչ ստեղծար դու այնպիսի, և կամ բնակեցար յայս տեղի՝ մինչև չլինել քեզ մարթ հրաւիրել բազում անգամ ևս և զերկնային հոգիս յայցելութիւն անձին: Արդ՝ առաջնորդեա ինձ 'ի հովանոցդ, զի կամք են ինձ անցուցանել ընդ քեզ զմիջօրեայդ մինչև ցերեկոյ: Եւ այնպէս եկին նոքա 'ի տեղին հովանաւոր՝ որ խնդայր ծաղկազուարճ գեղեցկութեամբ, և անուշահոտ

բուրմամբ համադոյն վայրացն Պոմոնայ [30]։ Իսկ Եւայ վայելչութեամբ եւեթ անձին պճնազարդեալ, եւ յաւէտ գեղեցկատենչ գոլով քան զհարսըն անտառի, եւ քան զերեսին գեղաղէշ Աստուածուհին՝ որք ըստ առասպելաց մատեան հոլանի 'ի կռիւ 'ի լերինն Իդայ [31], եկաց 'ի սպասու ասպնջականութեան իշխանորէն երկնից։ Ոչ է 'ի հանդէս առաքինութեան իւրոյ չեղեն նմա պէտք ծածկոյթի, եւ ոչ տկարութեան խորհուրդք այլագունեցին զայտս նորա [32]։ Այս հրեշտակն մատոյց նմա զողջոյնն ընծայեալ զկնի ամենօրհնեալ Մարիամու՝ երկրորդն Եւայի. Ողջոյն լեր մայր ազգի մարդկան, զի պտղալից որովայն քո հանդերձեալ է լնուլ զերկիր յոգնաթիւ ծննդովք՝ առաւել քան զկուտակութիւն սեղանոյդ բազմատեսակ պտղովք ծառոցն Աստուծոյ։ Սեղան նոցա ուղղեալ էր 'ի դալարազգեստ հողոյ. եւ ունէր շուրջանակի զմամռապատ բազմոցս։ Իսկ 'ի վերայ նորա բազմեալ կայր դիզացեալ աշունն [33] ողջոյն, թէպէտեւ պարէին անդանօր գարունն եւ աշունն 'ի միասին՝ ձեռն 'ի ձեռն տուեալ միմեանց [34]։ Մինչ չեւ էր մատուցեալ նոցա 'ի կերակուր՝ բանս 'ի մէջ առին առ վայր մի ընդ միմեանս, զի ոչ գոյր երկիւղ ցրտանալոյ ճաշուն։ Այս Նախահայրն մեր սկսաւ ասել օրինակ զայս։ Հաճեաց հիւրդ երկնային ճաշակել 'ի բարութեանցս՝ զորս կերակրիչն մեր՝ յորմէ իջանեն անչափ առատութեամբ ամենայն պարգեւք կատարեալք, ետ մեզ յերկրէ 'ի կերակուր եւ 'ի վայելս։ Թերեւս իցեն դոքա անախորժ կերակուր 'ի քիմս հոգեղէն գոյացութեան, բայց մի է հայրն երկնաւոր որ տայ ամենեցուն։

Որում ետ պատասխանի հրեշտակն։ Նման այսորիկ զոր ինչ միանգամ պարգևէ նա (որոյ օրհնութիւնն քարոզեսցի 'ի յաւիտեան) մարդոյ մասամբ հոգեղինի, մարթ է լինել և ամենամաքուր հոգւոց կերակուր ախորժաճաշակ։ Զի նոյնպէս 'ի խնդիր են կերակրոյ մաքուր գոյացութիւնքն իմանալեաց, որպէս և բանականն ձեր։ Երկոքին եւս [35] բարձեալ բերեն յանձինս զստորին կարողութիւնս զգայութեանց՝ որովք տեսանեն, լսեն, հոտոտին, շօշափեն և ճաշակեն. ճաշակ քաջեփեաց, դիւրամարս և դիւրափոխիկ 'ի գոյացութիւն անդըր. որով մարմնականն փոխարկի 'ի մարմին։ Այլ ծանիր, զի ամենայն արարածք պէտս ունին սնընդեան և կերակրոյ։ Թանձրագոյնքն 'ի տարերց զնրբագոյնսն ունին իւրեանց 'ի կերակուր։ Հող զջուր, հող և ջուր զօդն, և օդ զհուրն եթերական։ Եւ նախկին լուսինն, զի կարի իմն խոնարհագոյն է նա. և յայն սակս կրէ 'ի բոլորշի դէմս իւր զբիծս՝ որք են թանձր գոլորշիք չև ևս փոխարկեալք 'ի գոյացութիւն նորա. որ և արտաշնչութեամբ իւրումն խոնաւութեան ընծայէ բարձրագոյն գնտոց[36] զմնունդ։ Նոյնպէս և արեգակն մատակարար լուսոյ համայնից՝ ընդունի յարտաշնչութենէ խոնաւութեան բոլորեցունց զսննդական վարձս իւր, և վայելէ զայն յերեկոյին ընդ Ովկիանու։ Եւ թէ պէտ յերկինս ծառքն կենաց բերեն զԱմբրոսեան[37] պտուղն, և որթք բղխեն զՆեկտար[38], և մեք յիւրաքանչիւր առաւօտու թօթափեմք յամենայն բուսոց զմեղրածորան ցօղն[39], և զյատակն երկնից գտանեմք ծածկեալ յերեսաց մարգարտեայ հատից՝ սակայն Աստուած զայնպիսի իմն պէսպիսու-

թիւն իւրոց բարութեանց եցոյց աստանօր 'ի դը-
րախտիս 'ի նորոգ վայելս զուարճութեանց, մինչև
մարթ լինել նմա համեմատիլ ընդ երկինս։ Վասն
որոյ մի համարիր զիս կարի իմն հրաժարեալ 'ի ճա-
շակելոյ ընդ ձեզ։ Եւ այնպէս ապա բազմեցան 'ի
կերակուր ... Յայնմ վայրի պաշտէր Եւայ 'ի սե-
ղանի անդ, և պսակէր զթաթաղուն բաժակսն յա-
նուշակ ըմպելիս ... Երբև յագեցան կերակրովքն
և ըմպելեօք առանց յափրանաց՝ յանկարծակի
խորհուրդք անկան 'ի միտս Ադամայ չթողուլ ըզ-
ժամն բարեպատեհ 'ի բանս անդ ընդ հրեշտակին՝
առ 'ի գիտել զորս 'ի վերոյ են քան զաշխարհս, և
զէութիւն բնակչաց երկնից՝ զորոց զգերազանցու-
թիւն առաւելեալ տեսանէր քան զիւրն. որոց լու-
սափայլ կերպարանք նշոյլք էին աստուածայինն,
և զօրութիւն նոցա առաւելեալ յոյժ քան զմարդ-
կայինս։ Վասն որոյ և պատկառանօք իմն զայս ա-
ռինակ ուղղեաց նա զբանս իւր առ պաշտօնեայն
հրեղէն։

Բնակիչդ ընդ Աստուծոյ՝ քա՛ջ ճանաչեմ զե-
րախտիս քո ցուցեալ առ իս յայս պատիւ, զի հա-
ճեցար մտանել ընդ յարկաւ իմում խոնարհու-
թեան, և ճաշակել յերկրային պտղոցդ՝ որք ոչ
են վայելուչ կերակուր հրեշտակաց։ Սակայն և
այնպէս հաճեցար յոյժ ընդ նոսա, մինչև ցուցանել
զանձնդ ոչ ճաշակեալ յերկինս առաւելագոյն հա-
ճութեամբ զվերին կոչունսդ։ Այլ միթէ կայցէ՞
ինչ համեմատութիւն ընդ մէջ երկոցունցդ։

Որում ետ պատասխանի 'Ահանայապետն թե-
ւաղզեցիկ։ Մի է, Ադամ, Արարիչն ամենակալ՝
յորմէ ելլին արարածք ամենայն, և 'ի նոյն դառ-

նան վերստին՝ եթէ ոչ խոտորեսցին 'ի բարւոյ ան-
տի : Եւ ամենեքին ստեղծան նովին կատարելու-
թեամբ : Մի է և նիւթն առաջին յօրինեալ յայլ
և այլ ձևս, և յայլ և այլ աստիճանս գոյացու-
թեան, և կենաց 'ի կենդանիս : Այլ առաւել
նուրբ են, և յաւէտ հոգեղէն և մաքուր, որչափ
հպատակագոյնս մատչին առ նա՝ հաստատեալ իւ-
րաքանչիւր 'ի ներգործական կոպարի իւրեանց.
մինչև մարմնոյն ազդել 'ի հոգի 'ի սահմանի անդ
համեմատութեան իւրաքանչիւր կարգի : Զայս
օրինակ յարմատոյ անտի ընձիւղի նախ շառա-
ւիղն դալարի, ապա տերևն օդանման, և ապա
լրացեալ ծաղիկն պայծառ՝ որ բուրէ զանուշահո-
տութիւնս : Ծաղիկք բուսոց, և պտուղք ծա-
ռոց՝ որք կարգեալ են 'ի կերակուր մարդկան, ձ-
գին ընդ աստիճանս նրբութեան առ կենսական,
առ կենդանական, և առ իմացական հոգիս. և ըն-
ծայեն զկեանս, զզգայութիւն, զբանականութիւն
և զմիտս : Յորմէ ընդունի հոգին զբանն. և բանն
է գոյութիւն նորա տրամաբանող կամ հայեցո-
ղական : Տրամաբանութիւնն յաւէտ անկ է ձեզ,
և հայեցողութիւնն մեզ. որք որոշին ըստ աստի-
ճանի և եթ, և նոյն են ըստ տեսակին : Արդ՝ մի
զարմանար, եթէ ոչ հրաժարիմ ես 'ի բարեաց ան-
տի՝ զորս կարգեաց Աստուած 'ի պէտս ձեր, այլ
ըստ օրինակի ձերում փոխարկեմ 'ի գոյացութիւն
անձինս : Եկեսցէ ժամանակ թերևս, զի հաղոր-
դեսցին մարդիկ ընդ հրեշտակս. և գտցեն զկերա-
կուրն ոչ անվայելուչ, և զդարմանս սննդեանն՝ կա-
րի անօսր : Եւ թերևս մարմինք ձեր նրբացեալ
ժամանակաւ մարմնական կերակրովքս՝ դարձցին

ապա ողջոյն 'ի հոգի . և ելցեն թևազգեստ յեթերն վերին ըստ օրինակի մերում, և կամ բնակեսցեն ըստ հաճոյս 'ի դրախտի աստ կամ յերկնայինն . միայն թէ լիջիք դուք հնազանդ, և կացջիք հաստատուն և անշարժ 'ի սէր նորա՝ որոյ էք սերունդ : Ադամ այժմ խնդութեամբ վայելեսջիք զերջանկութիւնն՝ զոր մարթ է ձեզ ունել յերանաւէտ վիճակիդ , և չէ՛ հնար հասանել առաւելագունին [40] :

Որում արար պատասխանի նախահայրն Ադամ: Ո՛վ բարեշնորհ հոգի՝ հիւրդ բազմերախտ, բարիոք ուսուցեր զճանապարհն՝ որ ուղղէ զընթացս մերումս գիտութեան . և զաստիճանս բնութեան ձգեցեր 'ի կենդրոնէ անտի առ շրջապատ նորին . ընդ որս 'ի զննութեան անդ արարածոց մարթ է մեզ ոտն առ ոտն ելանել առ Աստուած : Այլ զի՞նչ միտք էին զգուշութեանն՝ զոր յաւելեր զկնի ասելով, [illegible] հնազանդ : Միթէ մարթ իցէ մեզ անկանիլ 'ի հնազանդութենէ նորա, կամ մերժել յանձանց զսէր նորին՝ որ ստեղծ զմեզ 'ի հողոյ, և կարգեաց աստանօր 'ի լիութեան օրհնութեանց՝ որոց մարթ է մարդկայինս ցանկութեան 'ի խնդիր լինել կամ հասանել :

Որում ետ պատասխանի Հրեշտակն : Որդիդ երկնից և երկրի՝ [41] ունկն դիր բանից : Երջանկութիւնն զոր ունիս՝ խոստովանեա Աստուծոյ , և զհանապազորդութիւնն 'ի նոյն՝ անձինդ ես , այս է՝ քում հնազանդութեան , և կայց 'ի նմին . և այս էր զգուշութիւնն՝ զոր ետու քեզ : Այլ 'ի միտ առ , զի Աստուած ստեղծ զքեզ անթերի , բայց ոչ անփոփոխ . ստեղծ զքեզ բարի , բայց զհանա-

պագործութիւնն 'ի նոյն՝ եթող քումդ անձնիշխան ազատութեան. զի կարգեաց նա զկամս քո ազատ 'ի բնութենէ իւրմէ, և ոչ բռնակալեալ յանհրաժեշտ ճակատագրէ, կամ յանողոքելի հարկէ։ Արդ որոյ խնդրէ նա զհարկ մերում ծառայութեան կամաւ, և ոչ ակամայ. զի ոչ հաճի նա ընդ ակամայն, և կարէ իսկ ոչ։ Քանզի զիա՞րդ մարթ է անազատ սրտից ցուցանել զհանդէս կամաւոր կամ 'ի հարկէ ծառայութեան իւրեանց, յորժամ կատարեն միայն զհրամանս ճակատագրին, և չկարեն այլ ինչ ընտրել։ Այս իսկ, և ամենայն զինուորութիւնք հրեշտակաց՝ որք կամք առաջի աթոռոյն Աստուծոյ, ունիմք զվիճակ մերում երանութեան՝ որպէս և դուք զձերդ, ցորչափ հնազանդութիւն մեր կալեալ է զայն, և չիք մեզ այլ ապաստան։ 'Ի կամս ազատութեան մերոյ սպասահարկու եմք նմին, զի անձնիշխան կամօք սիրեմք զնա. և 'ի կամս մեր է սիրել զնա կամ ոչ։ Յայսմ կամք, և կամ անկանիմք։ Անկան ոմանք 'ի մէնջ, զի անկան յանհնազանդութիւն. և յայն սակս կործանեցան յերկնից յանդունդս դժոխոց։ Ո՞վ ահագին կործանմանս՝ յորպիսի՞ բարձրութենէ երանութեան յոր խորս աղէտից։

Առ այս ասաց ցհրեշտակն Նախահայրն մեր պանծալի։ Յաւէտ մտադիր և ախորժակ ունկնդրութեամբ լուայ զբանս քո՝ աստուածայինդ Ռափայէլ, քան զարձագանգս երաժշտականութեան Քրովբէական երգոց յօդս՝ զոր 'ի մերձակայ լերանց արձակեն 'ի գիշերի։ Այլ ոչ իսկ քա՞ջ գիտէի զանձնիշխան արարչութիւնն կամաց և գործոց։ Այլ զի չէ՛ պարտ մեզ մոռանալ զսէր Արարչին

մերոյ, և զհնազանդութիւնն առ նա՝ որոյ միակ պատուիրանն է կարի իմն արդարացի, զայն հաստատութեամբ երաշխաւորեցին ինձ միտք իմ, և երաշխաւորեն միշտ։ Սակայն բանք քո յաղագս անցիցն անցելոց յերկինս՝ զարթուցանեն յանձին իմում զտարակուսանս, և յաւէտ զփափաք ցանկութեան առ 'ի լսել՝ եթէ ոչ է քեզ անհաճոյ, զբովանդակեալ պատմութիւն նորին. որ և անշուշտ պարտ է լինել նորանշան, և արժանի խորհրդածու լռութեան առ ունկնդրութիւն։ Այն զի և երկայնութիւն տունջեան դեռ առաջի կայ մեր. զի չև ևս է աւարտեալ արեգական զկէս ընթացից իւրոց, և չև է սկսեալ զմիւս կէս նորին ընդ լայնածիր կամարն երկնից։

Այս էին խնդրուածք Ադամայ։ Եւ Ռափայէ-լը հաճեալ ընդ այն՝ զկնի սակաւ մի հանգստեան սկսաւ ասել՝ օրինակ զայս։

Զբարձրագոյն խնդիրս՝ զցաւագին և զդժուարին ձեռնարկութիւնս եդիր 'ի վերայ իմ, Օ՜ աղէկդ մարդկան ազգի։ Զի զի՞արդ պատմեցից 'ի մարդկային լսելիս զաներևոյթ մրցանս հոգւոցն մարտադրաց։ Զիա՞րդ առանց ողբոց յիշատակեցից զկործանումն այնչափ բազմութեան փառաւորաց և կատարելոց երբեմն 'ի հաստատութեան իւրեանց։ Եւ զիա՞րդ յայտնեցից զգաղտնիս վերին աշխարհի, զորս թերևս չէ՛ արժան հրատարակել։ Սակայն յօգուտ անձինդ շնորհեալ է քեզ։ Այլ զոր միանգամ 'ի վերոյ է քան զհասումն մտաց մարդոյ, այնչափ միայն նկարագրեցից՝ 'ի մէջ ածեալ զհոգեղէնսն 'ի մարմնական դէմս, որչափ մարթ իցէ ինձ քաջ ևս ցուցանել։ Բայց զի՞նչ, եթէ

երկիրս իցէ ստուեր իմն երկնից. ապա որք միան-
գամ գտանին 'ի նոսա, առաւել նմանատիպ են
միմեանց՝ քան զոր կարծեն երկրածինք[42]:

Արդ՝ մինչդեռ տակաւին ոչ էր արարչագոր-
ծեալ աշխարհի, և Սիհն անդնդային թագաւո-
րէր անդ՝ ուր այժմ երկինքդ թաւալին, և եր-
կիրս ծանրացեալ հանգչի 'ի վերայ իւրումն կեն-
դրոնի, յաւուր միում (քանզի ժամանակն թէ-
պէտև 'ի յաւիտենականութեան անդ, եթէ մեր-
ձեցուցի 'ի շարժումն՝ չափէ զտևողականսն 'ի ներ-
կայ, յանցեալ և յապառնի) յանպխտումն ա-
ւուր՝ զոր օրէն է ծնանել մեծի տարւոյն երկնից,
հրեղէն զինուորութիւնք Հրեշտակաց կոչեցեալք
յինքնակալ հրամանէն՝ եկին փութանակի յամե-
նայն ծագաց երկնից, և յանդիմանս եղեն առաջի
աթոռոյ Ամենակալին՝ անհամար բազմութիւնք 'ի
պայծառափայլ կարգս իւրեանց ընդ իւրաքանչիւր
Իշխանապետօք: Հազարք հազարաց չքնաղ
նշանաց յառաջ խաղային. և դրօշք և վառք 'ի
մէջոյ յառաջապահ և վերջապահ գնդիցն ընդ օդն
զեղանէին. և որոշեալ կային 'ի միմեանց առան-
ձին քահանայապետութեամբք, կարգօք և իշխա-
նութեամբ իւրեանց: Այլ 'ի փողփողեալ ոսկե-
հուռն դիպակս իւրեանց նկարակերտ կրէին զսուրբ
յիշատակարանս երանելի և հոյակապ գործոց իւ-
րեանց 'ի հանդէսս նախանձայուզութեան և սիրոյ.
Արդ՝ 'ի կալ նոցա 'ի բոլորակս բոլորակս անպա-
տում շրջապատին՝ Հայրն յաւիտենական՝ առ ա-
րում նստէր Որդին բազմեալ 'ի ծոցն երանու-
թեան, 'ի միջոյ նորա իբրև 'ի հրացայտ լեռնէ՝
զորոյ զգագաթն անտեսանելի ընծայէ պայծա-

ռափայլութիւն բոցոյն, խօսեցաւ օրինակ զայս ։

Որդիքդ լուսոյ՝ Հրեշտակք, Աթոռք, Տէրութիւնք, Պետութիւնք, Իշխանութիւնք և Զօրութիւնք, լուարուք ամենեքին զվճիռն իմ անդարձ 'ի յաւիտեան ։ Այսօր 43 ծնայ զՈրդին իմ միածին, զոր ցուցանեմ ձեզ ։ 'Ի վերայ սրբոյ լերինս օծի զնա՝ զոր տեսանէք նստեալ ընդ աջմէ իմմէ ։ Եդի զնա գլուխ ձեր. և երդուայ յանձն իմ, զի ամենայն ծունր կրկնեսցի նմա յերկինս, և խոստովանեսցի զնա Տէր ։ Կացէք յերանութեանդ ընդ գերագոյն իշխանութեամբ նորա, միացեալ ընդ նմա իբրև զմի մարմին ընդ գլխոյ ։ Որ միանգամ ոչ հնազանդի նմա, և ոչ ինձ հնազանդի, և հերձեալ բաժանէ զմիութիւնն. նմին իրի և անկեալ 'ի նմին աւուր յերեսացն Աստուծոյ, և յերանական տեսութենէն՝ խորասոյզ անկանի 'ի խաւարն արտաքին, որ է տեղի կարգեալ նմին անփրկանաւոր և անվախճան ։

Զայսօրինակ բարբառեցաւ Ամենազօրն. և ամենեքին հաւան ցուցին զանձինս ընդ բանս նորա. ցուցին, բայց ոչ էին ամենեքին ։ Սակայն զայն օր անցուցին ըստ աւուրց տօնից յերգս և 'ի պարաւորութիւնս զլերամբն սրբով ։ Պարաւորութիւն խորհրդական. առ որ յաւէտ իմն հուպ մատչի պարբերութիւնն մոլորակաց և հաստատնոց 44 յանիւս իւրեանց. շրջանք ոլորտաձև, արտակենդրոն և բազմամանուած. բայց յայնժամ առաւել կանոնաւոր, յորժամ երևին յաւէտ պարականոն ։ Եւ 'ի շարժուածս ոտից նոցա այնպէս քաղցրացուցանէր ներդաշնակութիւնն երկնային զաքանչելի եղանակս իւր, մինչև նոյն իսկ լսելեացն Ա-

տուծոյ զուարճութեամբ լինել ունկնդիր: Արդ՝ եհաս [45] երեկոյն ՚ի վերայ (զի գոյ և մեր երեկոյ և առաւօտ՝ ՚ի զուարճութիւն փոփոխութեան, և ոչ առ ՚ի պէտս). և անդէն փութանակի դարձան ՚ի պարաւորութեանց անտի ՚ի ճաշ քաղցրաճաշակ կերակրոց: Յակմբիլ նոցա՝ եդան սեղանքն առաջի, և լցան յանկարծակի համադամօք Հրեշտակաց: Յայնմ վայրի հոսէր և յակնթագոյն ՝Նեկտարն [46] ՚ի մարգարիտ, յադամանդ և ՚ի ձոյլ ոսկի՝ յանուշահամ քերս երկնաքոյս որթոց: Թաղմեալ նոցա ՚ի վերայ ծաղկանց, և պսակեալ նորաբողբոջ բոլորիւք՝ կերին և արբին. և ՚ի զուարթարար հաղորդութեան իւրեանց յաւէտ իմն ճաշակեցին զանմահութիւն և զխրախութիւն՝ աներկեան յերեսաց շուայտութեան (զի լիուլին չափ դնէր անդանոր անչափութեան) առաջի ամենապարգև Թագաւորին՝ որ լիաձեռն տեղայր առ նոսա, զուարճացեալ ընդ քերկրութիւն նոցին: Յայնմ վայրի արտաշնչեալ Ամբրոսեան [47] գիշերոյ ՚ի լեռնէն Աստուծոյ՝ յորմէ ելանէն լոյս և ստուեր, պայծառափայլ երեսքն երկնից փոխեցան յաղօտ լոյս զուարճախառն (զի գիշեր ոչ արկանէ անդ զիւրեաւ զքօղ խաւարազգեստ). և վարդալից ցօղն հրաւիրեաց ՚ի հանգիստ զարտեւանունս ամենեցուն՝ բաց յանքուն աչացն Աստուծոյ: ՚Ի լայնածաւալ դաշտի անդ՝ որ ընդարձակագոյն ևս էր քան զգնտաձև երկիրդ տափարակեալ (զի այսպիսի է արքայարանն Աստուծոյ) սփռեալ անթիւ բազմութեան Հրեշտակաց ՚ի խումբս և ՚ի դասակարգութիւնս՝ հարին զբանակս իւրեանց առ գետովքն կենդանութեան ՚ի մէջ

անմահական ծառոց ։ Նա ահա յանկարծակի 'ի վեր երևեցան բազմութիւնք յոյժ վրանաց , և երկնային տաղաւարաց ։ Յորս և ննջեցին ամենե-քին 'ի սուգ զովացին հողմոյ , բաց 'ի նոցանէ՝ որք փոխանակէին զքաղցրաձայն օրհնութիւնս զտե-րական աթոռոյն ըստ դասուց իւրեանց յերկայ-նութեան անդ գիշերոյ ։ Այլ ոչ ըստ օրինակի սոցա արթուն կայր Սատանայ (զոր այժմ յայս ա-նուն կոչեմ . զի առաջին անուն նորա ոչ ևս եղև լսելի յերկինս ) ։ Նա մի յերևելեաց անտի՝ թէպէտև ոչ առաջին հրեշտակապետ , առաւե-լեալ 'ի զօրութեան , 'ի շնորհս , և յիշխանական պատուի ։ Սակայն և այնպէս լցեալ նորա նախան-ձու հակառակ Որդւոյն Աստուծոյ՝ զոր 'ի նմին ա-ւուր[48] պատուեալ մեծարեաց Հայրն յաւիտենա-կան , և քարոզեաց Օծեալ արքայ , առ ամբար-տաւանութեան ոչ կամէր տեսանել զերեսս նո-րա , զի համարէր զանձն նուաստացեալ ։ Նմին իրի լցեալ անհնարին չարութեամբ և սրտմտութեամբ, 'ի հասանել անդ հասարակ գիշերոյ 'ի վերայ խա-ւարային ժամու՝ որ ցանկալին է քնոյ և լռութեան, կամեցաւ մեկնիլ անտի ընդ լեգէոնս իւր , թո-ղեալ արհամարհանօք զաթոռն վերին , և լքեալ զպաշտօն նորա և զհպատակութիւն ։ Վասն որոյ և զարթուցեալ զերկրորդ իւր յիշխանութեան՝ խօսեցաւ ընդ նմա լռելեայն՝ օրինակ զայս ։

Ննջե՞ս արդեօք ընկե՛րդ սիրելի , և մի թէ հնար իցէ քնոյ կափուցանել զարտևանունս ։ Յիշե՞ս զվճիռն՝ զոր յերէկեան աւուր ետուն շրթունք Ամենակալին ։ Սովորութիւն էր մեր հաղորդել միմեանց զխորհուրդս . յարթնութեան անդ միա-

քան էաք ընդ միմեանս , և զխառնդ լեցուք անմիա-
բան 'ի քուն : Սպասքէն լուար զնոր օրէնս եդեալ
'ի վերայ մեր 'ի Նմանէ՝ որ Թագաւորէն . սակայն
մարթ է ծնանել և 'ի մեզ նոր խորհրդոց և քննու-
թեան , թէ զինչ խիթալի իրաց մարթ է յառաջ
գալ յօրինաց անտի : Աւելի ինչ ասել աստանօր՝
ոչ է աներկեան : Արդ՝ ժողովեալ 'ի բիւրաւո-
րացդ՝ որոց եմք հրամանատար , զզօրագլուխս . և
ասա նոցա , թէ ես , և որք միանգամ ամբառնամն
զդրօշակ իւրեանց ընդ իմս , պարտիմք փութալ
օրաթուիչ ընթացիւք 'ի կողմն Հիւսիսոյ՝ [49] ուր ու-
նիմք զզօրանիստ մեր , 'ի հանդերձանս կարևոր
պատրաստութեան առ ընդունելոյ զարքայն մեծ
զՕծեալ՝ որ ընդ հուպ անցանելոց է փառօք ընդ
համօրէն Բռահմանայապետութիւնս , և ունի տալ
մեզ անդանօր զնոր օրէնս և զհրամանս :

Զայս օրինակ խօսեցաւ Հրեշտակապետն ստ-
տասաց . և եհեղ զհոսանս չարութեան իւրոյ 'ի
սիրտս իւրոց ընկերաց : Իսկ երկրորդ նորա կո-
չեաց զամենեսին 'ի միասին , և զբազումս 'ի զօ-
րապետաց անտի ընդ իւրով իշխանութեամբ՝ ա-
ռանձինն . և որպէս ուսաւ , ծանոյց նոցա՝ թէ զե-
րագոյն Իշխանապետ իւրեանց արդ իսկ՝ մինչև է
մթին գիշերոյ 'ի բաց բարձեալ յերեսաց երկնից
զպատրուակն ., հանդերձեալ է յառաջ խաղա-
ցուցանել զդրօշակ իւր Բռահմանայապետական :
Ծանոյց նոցա և զպատճառն՝ զոր թելադրեալ էր
նմա Իշխանապետին . և յաւել 'ի նոյն զերկդիմի
բանս նախանձու՝ 'ի փորձ կամ յապականութիւն
անարատ մտաց նոցա : Սակայն ամենեքին ըստ սո-
վորութեան իւրեանց անյապաղ հնազանդեցան

ակնարկութեան և հրամանաց գերագոյն իշխանի իւրեանց, զի արդարև մեծ էր անուն նորա, և բարձր աստիճան իշխանութեան նորա յերկինս։ Որոյ և երեւք նման աստեղն առաւօտու՝ [50] որ հովուէ խաշանցն աստեղաց [51], հրապուրեաց զնոսա, և ստութեամբ իւրով ձգեաց զկնի իւր զերրորդմասն զօրացն երկնից [52]։ Յայնմ պահու Ակն յաւիտենական՝ որ նշմարեալ տեսանէ և զգաղտնիս խորհրդոց, 'ի միջոյ անտի ոսկի ղամպարաց՝ որք վառեալ բորբոքին յանդիման նորա 'ի գիշերի, ետես և առանց իսկ լուսոյ նոցա զապստամբութիւնն յարուցեալ։ Եւ թէ ո՞ էր գլուխ նորին, զիա՞րդ սփռեալ յորդիսն առաւօտու, և քանի՞ են բազմութիւնք միաբանելոց ընդ նմա հակառակ իւրումն վճռոյ։ Եւ ծիծաղեալ ընդ այն՝ զայս օրինակ խօսեցաւ ընդ Որդին իւր միածին։

Որդի՛ իմ՝ յորում տեսանեմ զփառս իմ անթերի լուսափայլութեամբ, և ժառանգդ համօրէն զօրութեանց իմոց՝ ժա՛մ է մեզ արդ աներկեան կացուցանել զիշխանութիւն մեր ամենակալ, և ցուցանել զհանդէս զինուցն՝ որովք արժան է մեզ պաշտպան կալ իրաւանց Աստուածութեան և ինքնակալութեան մերոյ 'ի յաւիտենից։ Թշնամի յարուցեալ է 'ի միջի, և խնդրէ յընդարձակատարր սահմանի անդ հիւսիսոյ կանգնել զաթոռ իւր զուգահաւասար մերումն։ Եւ ոչ շատացեալ սովին՝ եդեալ է 'ի մտի զփորձ առնուլ 'ի մարտի մերումն զօրութեան և իշխանութեան։

Որում քաղցրահայեաց և պայծառատեսիլ դէմօք, և աստուածային անճառելի փայլմամբ արար պատասխանի Որդին։ Հա՛յր ամենազօր՝ իրաւամբք

առ ոչինչ գրես զթշնամիս քո, և անվեհեր ծառը առնես զմնոտի խորհրդովք և զխռովութեամբ նոցա: Թշնամութիւն նոցա առաւել ևս շքեղացուսցէ զփառս իմ, 'ի տեսանել նոցա տուեալ ինձ զամենայն արքայական իշխանութիւն առ 'ի խոնարհեցուցանել զամբարտաւանութիւն նոցա, և ցուցանել արդեամբք, թէ մրդեօք ձեռնհա՞ս իցեմ 'ի նուաճել զապստամբս քո յերկինս, եթէ տկարացեալ առաջի նոցա:

Զայսօրինակ խօսեցաւ Որդին. բայց Սատանայ կարի իմն յառաջ խաղացեալ էր 'ի հապճեպ թուիչս հանդերձ զօրօքն իւրովք: Որք և բազմաթիւ էին իբրև զաստեղս գիշերոյ. և կամ իբրև զաստեղս առաւօտու, զշիթս ասեմ ցօղոյ՝ զորս արեգակն մարգարտաշար տողէ 'ի վերայ տերևոց և ծաղկանց: Անցին նոքա ընդ սահմանս ահեղ իշխանութեան Սերովբէից, Տէրութեանց և Աթոռոց՝ ընդ երրակի դասակարգութիւնս նոցա. ընդ սահմանս՝ առ որովք Ադամ համօրէն տէրութիւն քո ոչ է առաւել քան զպարտէզդ համեմատեալ ընդ ամենայն երկրի և ծովու տարածելոյ յերկայնութիւն և 'ի լայնութիւն 'ի գընտական ձևոյ անտի: Իսկ այնպէս ապա հասին 'ի կողմն հիւսիսոյ: Ուրանօր Սատանայ բազմեցաւ յաթոռ իւր արքայական 'ի վերայ լերինն բարձու՝ որ լուսանշոյլ փայլէր 'ի բացուստ բրգամբք և աշտարակօք գոգցես հատեալովք 'ի մետաղաց անտի ադամանդի, և 'ի քարաժայռից ոսկւոյ: Իսկ էր նա պալատ Արուսեկին մեծի[53]: Յայդ անուն կոչեալ զշինուածդ 'ի բարբառ մարդկան: Զոր զկնի թեկն ածեալ նորա հաւասարութեան ընդ

Աստուծոյ, 'ի նմանութիւն լերինն՝ յորում քա-րոզեցաւ Օծեալն յանդիման երկնից, կոչեցաւ նա Լեառն միաբանութեան։ Զի անդր ժողովեաց նա զհամօրէն պաշտօնեայս իւր 'ի խորհուրդ ըն-դունելութեան մեծաշուք գալստեան Արքայի նո-ցա։ Ուր և չարարուեստ զրպարտութեամբ խար-դաւանեալ զճշմարտութիւնն՝ ձգեաց առ ինքն զունկնդրութիւն նոցա սովին բանիւք։

Աթոռք, Պետութիւնք, Տէրութիւնք, Իշխա-նութիւնք և Զօրութիւնք՝ այսպէս տակաւին կո-չեմ զձեզ, եթէ չքնաղ վերտառութիւնքդ ոչ են լոկ անուանք. զի ահա այլ ոք արկ վճռաւ զան-ձամբ զամենայն իշխանութիւն, և նսեմացոյց ըզ-մեզ ընդ անուամբ արքայի Օծելոյ։ 'Ի նորա սակս են զիշերախառն ճեպքս, և փութանակի հաւա-քումն մեր աստանօր 'ի խորհուրդ՝ թէ զիա՛րդ մար-թացուք պատուասիրաբար ընդունել զնա, որ գայ խնդրել առ 'ի մէնջ զհարկ երկրպագութեան՝ ցարդ-չև ևս ընծայեալ նմին [54]։ Միոյն և եթ շատ իսկ էր մեզ, իսկ զիա՛րդ տարցուք երկոցունցն՝ հօրն, և պատկերի նորա Օծելոյ։ Բայց միթէ չիցէ՞ հնար քաջ խորհրդոց ամբառնալ զմիտս մեր, և ուսու-ցանել մեզ զընկենուլն 'ի բաց զլուծ նորա։ Իսկ միթէ կամի՞ք իցեն ձեզ արկանել զպարանոցս ձեր 'ի ներքոյ նորա, և առնուլ յանձն զնուաստու-թիւն երկրպագութեանդ։ Ո՛չ արդարև, եթէ ես քաջ ճանաչեմ զձեզ, և դուք քաջ ճանաչէք զանձինս ձեր որդիս և բնակիչս երկնից՝ զոր ցարդ ոչ ոք անձին գրաւեաց։ Իսկ թէպէտ ոչ էք ամե-նեքին զուգահաւասար, այլ ազատ էք միօրինակ. զի դասակարգութիւնք և աստիճանք ոչ են հա-

կառակ ազատութեան, այլ քաջ միաբանին ընդ նմա ։ Արդ՝ ո՜ւմ հնար է վարել զմիապետական իշխանութիւն 'ի վերայ նոցա, որք հաւասար են նմին նովին իրաւամբք, և թէպէտ նուազեալք 'ի զօրութեան անդ և 'ի պայծառութեան փառաց, այլ զուգահաւասարք յազատութեան ։ Նա ո՜ւմ ումեք հնար է հրաման տալ մեզ կամ օրէնսդիր լինել՝ որք առանց իսկ օրինաց երբէք ոչ յանցանեմք ։ Նա՞ առաւել տիրապետել 'ի վերայ մեր, և խնդրել զերկրպագութիւն առ 'ի մէնջ, առ ոչինչ գրեալ զվերտառութիւնս ազատութեան՝ որք քաջ ցուցանեն զվիճակ մեր կարգեալ յիշխանութիւն, և ոչ 'ի ծառայութիւն [55] ։

Յայս վայր յանդգնութիւն բանից նորա կալաւ ընդերկար զունկնդրութիւն նոցա առանց ինչ հակառակութեան. մինչև 'ի միջոյ անտի Սերովբէից յարեաւ Աբդիէլ՝ որ էր յաւէտ իմն նախանձայոյզ երկրպագու Աստուածութեանն, և ունկնդիր հրամանաց նորա ։ Սա և 'ի բոց հրոյ անաչառ նախանձու իւրոյ զդէմ կալաւ զհոսանաց մոլեգնութեան նորա՝ օրինակ զայս ։

Ո՞վ ամպարշտութեան, ստութեան և ամբարտաւանութեան բանիցդ ։ Օ այդոսիկ ոչ ակն ունէին ականջք մեր լսել յերկինս, ևս առաւել 'ի քէն ապաշնորհ դու՝ որ յայնչափ բարձրութիւն ամբարձեալ կաս գեր 'ի վերոյ քան զընկերս քո ։ Նա արդ միթէ հնա՞ր իցէ քեզ անօրէն զրպարտութեամբդ դատապարտ առնել զարդարութիւն վճռոյն Աստուծոյ՝ որ երդմամբ ծանոյց, թէ Որդւոյ նորա միածնի՝ որ իրաւամբք կրէ զգաւազանն արքայական, պարտի կրկնիլ ամենայն ծունր երկ-

նաւորաց, և ամենայն հոգի ըստ արժանեաց պատուոյ նորա խոստովան լինել զնա արժանաժառանգ արքայ։ Ասացեր անիրաւ լինել զկապելն ընդ օրինօք զազատն, և զթողուլն հաւասարի թագաւորել 'ի վերայ ընկերի իւրոյ, միումն 'ի վերայ ամենեցուն մշտատև իշխանութեամբ։ Մի՞թէ օրէնսդի՞ր լինիցիս դու Աստուծոյ, և մի՞թէ 'ի խնդի՞ր մտանիցես 'ի սակս ազատութեան ընդ նմա՝ որ արար զքեզ որ ինչ եսդ, և կարգեաց զզօրութիւնս երկնից ըստ կամաց իւրոց, և սահման եդ գոյութեան նոցա։ Այլ մեք 'ի փորձոյ գիտեմք զբարութիւն նորա, և զարարչական խնամսն 'ի վերայ մեր. և զի՝ հեռի գոլով նորա 'ի խորհրդոց անտի նուաստացուցանելոյ զմեզ՝ յաւէտ իմն ձգի 'ի բարձրացուցանել զվիճակ մերում երանութեան, քաջ միաբանեալ զմեզ ընդ միով գլխով։ Բայց շնորհեալ եւս քեզ, թէ անիրաւ իցէ ինքնակալութիւնն 'ի վերայ հաւասար ընկերին, սակայն դու՝ թէպէտև մեծապատիւ ես և փառաւոր, համարիցի՞ս զանձն քո, կամ զհամօրէն հրեշտակային բնութիւնն միանգամայն հաւասար նմին, Որդւոյն միածնի՝ որով Հայրն ամենակալ իբրև բանիւ իւրով արար զամենայն արարածս, և զքեզ եւս. և զհամօրէն հոգիս երկնաւորաց կարգեաց 'ի լուսափայլ աստիճանս՝ պսակեալ զնոսա փառօք։ Նաև 'ի պարծանս նոցին կոչեաց զնոսա Աթոռս, Իշխանութիւնս, Տէրութիւնս, Պետութիւնս, և Զօրութիւնս։ Որք ոչ են նսեմացեալք յերեսաց թագաւորութեան նորա, այլ առաւել եւս պայծառացեալք։ Զի գոլով նորա գլուխ, 'ի մերում համարի է։ Օրէնք նորա՝ օրէնք մեր

ենս, և ամենայն պատիւ ընծայեալ նմին՝ առ մեզ դառնայ: Արդ՝ կարկեա՛ց 'ի մոլեգնութենէ ամբարշտութեանդ, և մի պատրեր զգոսա. այլ փութա՛ զիջուցանել զՀայրն բորբոքեալ, և զՈրդին սրտմտեալ՝ մինչդեռ մարթ է քեզ գտանել զթողութիւն խնդրեալ 'ի ժամու:

Զայսօրինակ խօսեցաւ Հրեշտակն եռանդնալից. բայց ոչ ոք գնաց զկնի նախանձու նորա, զի համարեցան զայն տարադէպ, ինքնակամ և յանդուգն: Ընդ որ զուարձացեալ Ապստամբքն, և առաւել ևս յեցեալ յամբարտաւանութիւն իւր՝ ետ նմա պատասխանի օրինակ զայս:

Ապա ըստ քումդ բանի ստեղծական եմք մեք, և արարածք երկրորդ ձեռաց՝ ըստ հրամանատրութեան Հօր առ Որդի: Աւշ անհեթեթ և անլուր բանիցդ: Այլ մեք կամիմք գիտել, թէ ուստի՞ արդեօք ուսար զվարդապետութիւնդ: Ո՞ ետես զարարչութիւնդ զայդ: Միթէ յիշե՞ս դու զքոյդ՝ 'ի տալ քեզ Արարչին զգոյութիւն: Մեք ոչ գիտեմք զժամանակ՝ յորում ոչ էաք որպէս այժմս. և յառաջ քան զմեզ ոչ ոք գիտաց զայն: Ինքնածին եմք և ինքնայարոյցք մերովս կենդանական զօրութեամբ. և 'ի կատարել ճակատագրին զընթացս իւրումն շրջանի՝ հասուցեալ սեպհական ծնունդք երկնից, և եթերական որդիք [56]: Մեր է զօրութիւն անձանց մերոց. և բազուկ մեր ուսուսցէ մեզ 'ի հանդիսի ճանաչել՝ թէ ո՞ է հաւասար մեզ: Յայնժամ ծանիցես, թէ ա՛րդեօք մատչիմք խոնարհութեամբ յերկրպագութիւն նմին, և պա՛ր առնումք զամենազօր աթոռով նորա 'ի պաղատանս, եթէ 'ի պաշարումն: Զայդ բան, և

զայդոսիկ պատգամս տայր արդ առ Արքայդ Օծեալ. և մեկնեայց աստի, մինչև իցէ կալեալ չարեաց զփախուստ քո :

Զայս ասաց նա. և անթիւ բազմութիւն զօրաց նորա 'ի կերկերաձայն աղաղակ ուրեանց իբրև 'ի կարկաջիւն անդնդահոսան ջուրց ետուն արձագանգս հաճութեան ընդ բանս նորա : Այլ Սերովբէն վառեալ ոչինչ վհատեալ յայն սակս՝ Թէպէտև առանձինն շրջապատեալ կայր 'ի թշնամեաց անտի, համարձակագոյն ևս արար նմա պատասխանի օրինակ զայս :

Ո՛վ օտարացեալդ յԱստուծոյ, հոգիդ անիծեալ, և լքեալ յամենայն բարեաց : Տեսանեմ հաւաստեաւ զկործանումն քո, և զչուառական զրոհդ Թաթաւեալ յորոգայթ անագորոյն՝ 'ի ճարակել անդ ժանտաբեր ախտի յանցանաց քոց և պատուհասի : Արդ՝ մի ևս տագնապիր 'ի խորհուրդս քո մերժել 'ի բաց զլուծ Օծելոյն Աստուծոյ. զի ոչ ևս տացին քեզ քաղցրագոյն օրէնք շնորհաց նորա, այլ ելցէ դատակնիք անհրաժեշտ : Գաւազանն ոսկի՝ զոր մերժեցեր, գտաւ արդ երկաթի 'ի ջաղխել և 'ի խորտակել զանսաստութիւն քո : Խրատիք ազդեցեր ինձ հեռանալ աստի. այլ ես ոչ 'ի սակս խրատուց քոց կամ սպառնալեաց մեկնիմ 'ի բաց. միայն խոյս տամ յանիծեալ վրանացդ չարութեան, զուցէ յանկարծահաս սրտմտութիւնն բորբոքեալ յանակնկալ բոց՝ և յիս ինչ ոչ խնայեսցէ : Զի ընդհուպ մնայ քեզ զփորձ առնուլ շանթի նորա զծախիչ հրոյն 'ի վերայ քումդ գլխոյ : Յայնժամ արտասուօք ծանիցես զԱրարիչն քո, տեսեալ զնա ձեռնհաս 'ի դար-

ձուցանել զքեզ յոչինչ և յապականութիւն կե-
նաց։

Օ՜ այսօրինակ խօսեցաւ Սերովբէն Աբդիել.
նա միայն գտեալ հաւատարիմ 'ի մէջ անհաւա-
տից [57]։ Յայնչափ բազմութեան անդ ստոց կա-
լաւ նա անյողդողդ, անսասան, անպատիր և ան-
վեհեր զհաւատարմութիւն իւր, զսէր իւր և զնա-
խանձ։ Ո՛չ թիւ բազմութեանն, և ոչ օրինակ նո-
ցին ազդեցին ինչ 'ի միտս նորա խոտորիլ 'ի ճշ-
մարտութենէ անտի, կամ փոխել զհաստատուն
միտս իւր, թէպէտ էր միայնակ։ Անց նա ընդ
մէջ նախատանաց թշնամեաց, զոր և տարաւ քա-
ջաբար՝ ոչինչ երկուցեալ 'ի բռնութենէ նոցա։
Այլ շրջեալ զնախատինս առ նոսա, և դարձու-
ցեալ զթիկունս իւր՝ խոյս ետ յաշտարակացն ամ-
բարտաւանութեան, որք դատակնքեալ կային յա-
րագ արագ կործանումն [58]։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Յաւուր մատուցեալ Ռափայելի 'ի բանս՝ պատմէ, թէ զի֊
մրդ առաքեցան Միքայէլ և Գաբրիէլ 'ի պատերազմ ընդ֊
դէմ Սատանայի և հրեշտակաց նորա: Նկարագրութիւն
առաջին ճակատամարտի նոցա: Սատանայ և համօրէն զօրք
նորա տեղի տան զխաւարաւ գիշերոյ: Կոչէ զնոսա 'ի խոր֊
հուրդ. և գտանէ հնարիւք զդիւական մանգղիոնսն՝ որք 'ի
մարտի աւուրն երկրորդի տագնապեցուցանեն զՄիքայէլ և
զհրեշտակս նորա. բայց նոցա խլեալ զլերինս՝ նկուն առնեն
զզօրութիւն և զմեքենայս Սատանայի: Սակայն յոչ հան֊
դարտել խռովութեանն՝ առաքէ Աստուած զՈրդի իւր զՕ֊
ծեալ՝ որում պահեալ էր զպարծանս յաղթութեան: Եկեալ
նորա զօրութեամբ Հօր իւրոյ 'ի տեղի ճակատուն՝ կարգէ
յաջմէ և յահեկէ զգունդս իւր. և մտեալ կառօք և որոտ֊
մամբ 'ի մէջ թշնամեաց՝ վանէ զնոսա սաստկութեամբ մին֊
չև 'ի պարիսպն երկնից՝ որ բանայ ինքնին: Գահավէժ թօ֊
թափին նոքա յանդունդս 'ի պատրաստեալ տեղի պատուհա֊
սի իւրեանց: Դառնայ Օծեալն յաղթանակաւ առ Հայր:

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

## ԳԻՐՔ Զ:

Հրեշտակն անվեհեր չունելով զոք հետամուտ զկնի՝ կալաւ զճանապարհ իւր զգիշերն ողջոյն ընդ լայնածաւալ դաշտն երկնից. մինչև զարթուցեալ Առաւօտու 'ի շրջապատեալ Ժամուց՝ եբաց վարդակարմիր ձեռամբն զդրունս լուսոյ: 'Ի լերին անդ Աստուծոյ կայ քարանձաւ առընթեր աթոռոյ նորա, յորում մշտնջենաւոր շրջանաւ օթագայեալ լուսոյ և խաւարի՝ տեղի տան միմեանց: Ընդ մի դուռն ելանէ արտաքս լոյսն, և ընդ միւսն մտանէ 'ի ներքս խաւարն դիւրանաց՝ մինչև ցժամ քօղարկելոյ նորա զերկինս. Թէպէտև մարթ է խաւարի անդանօր՝ համեմատիլ ընդ արշալուսի աստանօր: Արդ՝ ծագեաց առաւօտն ըստ սովորութեան իւրում 'ի բարձրութեան անդ երկնից, պճնազգեստեալ յոսկի հրափայլ: Եւ մերժեցաւ գիշերն յերեսաց նորա յարձակել նորա զարևելեան ճառագայթս իւր: Յայնմ վայրի տեսին աչք Աբդիելի զառաջինն, զի դաշտավայրն համօրէն ծածկեալ կայր խիտառխիտ ճակատուք

պայծառափայլ գնդից, բոցաձաձանչ կառօք և զինուք, և հրեղէն փայլակնացայտ երիվարօք։ Սամն որոյ և անդէն ծանեաւ զնշանն մօտալուտ մարտի, և ստուգեաց զոր լուեալ էր 'ի համբաւոյ։ Խառնեցաւ յայնժամ ուրախութեամբ ընդ մտերիմ զօրութիւնսն։ Որք և ընկալան զնա խնդագին և 'ի բարբառ ցնծութեան՝ իբրև զմի ոք, որ դարձեալ էր անկորուստ յայնչափ բազմութենէ թիւրաւորացն կործանելոց։ Եւ տարեալ զնա պարծանօք 'ի լեառնն սուրբ՝ կացուցին առաջի աթոռոյ վերնոյն։ Յորմէ ընդ ամպն ոսկեղէն ձայն եղև լսելի՝ օրինակ զայս։

Ծառայդ Աստուծոյ հաւատարիմ՝ բարւոք պատերազմեցար զպատերազմն, զի դու միայն պաշտպան կացեր ճշմարտութեանն դատի ընդդէմ ապստամբացն բազմութեան. և գտար անպարտելի՝ յաւէտ 'ի բանս, քան 'ի զէնս։ Եւ 'ի վկայութիւն նորին ճշմարտութեան տարար նախատանաց յամենեցունց՝ որ անտանելի ևս է քան զբռնութիւն. զի եդեալ էր քո 'ի մտի՝ ընտիր գտանիլ միայն առաջի Աստուծոյ, թէ և ամենեքին համարեսցին զքեզ յեսսամիտ և անհաւան։ Արդ՝ դիւրագոյն ևս մնայ քեզ յաղթութիւն։ Աջակցեալ զինուորացդ բարեկամաց՝ ունիս խաղալ անդրէն 'ի վերայ թշնամեաց քոց յաւէտ պանծանօք, քան 'ի դառնալ քում յետս 'ի նոցանէ արհամարհանօք. և բռնի նուաճել զնոսա՝ որք չառնուն յանձն ընդունել յօրէնս զբանն ուղիղ, և զՕծեալն յարքայ իւրեանց՝ որ իրաւամբք թագաւորէ ըստ արժանեաց։ Միքայէլ՝ իշխանդ երկնային զօրաց, և դու Գաբրիէլ՝ երկրորդ ըստ նմա

նէ 'ի զինուորութեան կարգի, երթայք առաջնոր֊
դեցէք 'ի պատերազմ խմոց անպարտելի որդւոց,
և սպառազէն սրբոց՝ ճակատեալ ընոսա 'ի մարտ
հազարս հազարաց ըստ թուոյ անաստուած խու֊
ժանի ապստամբացդ ։ Դիմեցէք 'ի վերայ նոցա
աներկիւղ 'ի հուր և 'ի զէն ․ և մտեալ զհետ մին֊
չև 'ի սահմանս երկնից՝ ընկեցէք զնոսա զահավէժ
յերեսացն Աստուծոյ, և յերանութենէ յան֊
դունդս տարտարոսի՝ 'ի պատրաստեալ տեղի պա֊
տուհասի նոցա ․ որ այժմէն բացեալ լայնարձակ
զվիհ իւր հրեղէն՝ սպասեալ միայն ընդունել զկոր֊
ծանումն նոցին ։

Օ այսօրինակ բարբառեցաւ ձայնն տիրական ․
և ամպք սկսան մթացուցանել զլեառնն ողջոյն ․
և ծուխն գալարէր 'ի թխպագին ոլորտս, և 'ի բոց
ականայ՝ 'ի նշան բարկութեանն բորբոքելոյ ։ Նու
յահարկութիւն ոչ սակաւ սկսաւ ևս գոչել 'ի
բարձանց բարձրաբարբառ փողն եթերական ։ 'Ի
ձայն գոչմանն նորա զինուորութիւնքն հրեշտակաց՝
որք կալեալ ունէին զսահմանս երկնից, համահա֊
ւաքեալ 'ի բանակ հզօր և անվանելի, խաղացու֊
ցին յուշիկ զչքնաղ լեգէոնս իւրեանց 'ի հնչիւն
երաժշտական նուագաց՝ որ ազդէր 'ի նոսա զդիւ֊
ցազնական եռանդն դիմագրաւ մրցանաց ընդ
աստուածանման զօրապետօք իւրեանց 'ի դատի
անդ Աստուծոյ, և Օծելոյ նորա ։ Գնային յա֊
ռաջ պնդակազմք ։ Ո՛չ ելք լերին ընդառաջ, ո՛չ
անձկութիւն հովտի, ո՛չ անտառ, և ո՛չ գետ՝ ան֊
ջատեալ ցրուէին զվայելուչ կարգ դասաւորու֊
թեան նոցա ․ զի չու նոցա էր 'ի վերոյ քան զեր֊
կիր ․ և օդն ստորանկեալ ամբառնայր 'ի վեր զթև֊

Թեւաքայլ ընթացս ոտից նոցա ։ Զոր օրինակ՝ յորժամ համօրէն ազգք Թռչնոց կոչեցեալք 'ի քէն՝ եկին կարգաւ 'ի Թուիչս իւրեանց , և կացին 'ի վերայ Ադեմայ՝ առ ընդունելոյ 'ի քէն զանուանս իւրեանց, նոյնպէս խաղային նոքա ընդ սահմանս երկնից , ընդ լայնածաւալ գաւառս՝ տասնապատիկ առաւել քան զընդարձակութիւն երկրիս ։ Աշմարեցին ապա 'ի հեռաստանէ առ հորիզոնաւ 'ի կողման անդ հիւսիսոյ զգաւառն հրեղէն՝ որ ողջոյն տարածեալ կայր 'ի հանդէս մարտի ։ Եւ 'ի մերձենալ իւրեանց տեսին՝ զի էր նա անտառացեալ յոգնախուռն բազմութեամբ արձանացեալ ընից ստուար նիզակաց , անթիւ սաղաւարտից , և անհամար ասպարաց՝ որք նկարագիր ունէին զմնոտիապանծ նշանակս ։ Եւ կրէին զնոսա համախմբեալ զօրութիւնքն Սատանայի՝ դիմագրաւ շահատակեալք յառաջագոյն ։ Զի եղեալ էր նոցա 'ի մտի գրաւել 'ի նմին իսկ աւուր մարտիւ կամ յարձակմամբ զլեառն Աստուծոյ , և նստուցանել յաթոռ նորա զնախանձաւորն իշխանութեան նորա՝ զխրոխտ ախոյեանն ։ Այլ խորհուրդ նոցա անդէն 'ի կէս ճանապարհին գտաւ խօլական և սնոտի ։ Եւ թէպէտ զառաջինն թուեցաւ մեզ օտարոտի իմն մարտադրութիւն հրեշտակաց ընդ միմեանս , և պատահումն նոցա միմեանց ահեղ պատերազմաւ ( որոց սովորութիւն էր միշտ գտանել զմիմեանս 'ի տօնս ուրախութեան և միաբան սիրոյ , և յօրհնութիւնս անդ Յաւիտենականին՝ իբրև որդիս միոյ Հօր գերագունի ) սակայն շըռինդն մարտի արդէն իսկ սկսեալ էր , և աղաղակն դիմագրաւ յարձակման խափանեալ զամե-

նայն խաղաղասէր խորհրդոս ։ Ամբարձեալ ապս-տամբին՝ 'ի մէջ նոցա իբրև զմի յԱստուածոց՝ կայր բազմեալ յարեգականափայլ կառս իւր, զոգցես նմանութիւն իմն մեծվայելչութեանն Աստուծոյ. և էր պար առեալ շուրջանակի 'ի բոցանշոյլ Քերովբէից, և յոսկիածոյլ վահանաց ։ Էջ ապա 'ի շքեղապանծ աթոռոյ անտի իւրմէ. զի 'ի մերձենալ երկոցունց զօրաց առ միմեանս՝ անձկագոյն ևեթ մնացեալ էր անջրպետութիւն 'ի միջի, անջրպետութիւն ահագին. և երկոքին ճակատքն արձանացեալ կային հանդէպ միմեանց յահեղ և յերկայնաձիգ դասաւորութիւն ։ Մինչև էր սկսեալ մարտի, յառաջ մատուցեալ Սատանայի 'ի մեծաքայլ և 'ի գոռոզաձեմ ընթացս՝ եկաց 'ի ճակատու անդ առաջի ամպանման յառաջապահացն իբրև զաշտարակ զինեալ յադամանդ և յոսկի ։ Ընդ տեսիլ նորա ոչ հանդուրժեաց Աբդիէլ՝ որ կայր 'ի մէջ հզօրագունիցն քաջաց պատրաստեալ 'ի հանդէս արիական մրցանաց. վասն որոյ և զայսօրինակ հանդէս արար նա յառաջագոյն իւրումն անվեհեր սրտի ։

Ո՜վ երկինք՝ միթէ մարթ իցէ այսպիսի նմանութեան Բարձրելոյ մնալ տակաւին 'ի նմա՝ յորմէ օտարացեալ են հաւատք և միամտութիւն ։ Ընդէ՞ր զօրութիւն և քաջութիւն ոչ տկարացի 'ի նմա՝ յորում կործանեալ է առաքինութիւն ։ Այլ ընդէ՞ր ոչ նկուն լիցի խրոխտապանծն յանչափս՝ թէպէտև տեսլեամբ երևեսցի անպարտելի ։ Կամիմ ապաւինեալ 'ի զօրութիւն Ամենակալին՝ զփորձ առնուլ քաջութեան նորա, զորոյ զբանսն փորձեցի յառաջագոյն, և գտի ապակա-

նեալ և սուտ ։ Կարծ իրաւունք են յաղթականին 'ի բանս ճշմարտութեան՝ յաղթել և 'ի զէնս, և յերկոսին միօրինակ հանդիսանալ անպարտելի ։ Իսկ թէպէտ անիրաւ իմն է և կարի շամբուշ հակառակութիւն զօրութեան ընդ բանի, սակայն յաղթութիւն բանին իրաւացի է յոյժ ։

Զայս օրինակ կշռեալ նորա 'ի միտս իւր, և յառաջ խաղացեալ 'ի միջոյ սպառազէն ընկերացն ընդդէմ խրոխտապանծ. Թշնամւոյն՝ եգիտ զնա 'ի կէս ճանապարհին կարի իմն սրտմտեալ ընդ կանխել նորա յառաջագոյն ։ Այլ նա անվեհեր սրտիւ հրաւիրեաց զնա 'ի մարտ՝ սովին բանիւ ։

Ո՞վ ամբարտաւան՝ իշխե՞ս դեռևս ելանել ինձ ընդառաջ ։ Յուսացեալ էր քո առանց ինչ ընդդիմութեան հասանել 'ի բարձրութիւն քումդ ցանկութեան, յաթոռն ասեմ Աստուծոյ գտեալ առանց պահպանութեան. և հուպ մատչել առ նա՝ որպէս թէ լինէր թողեալ յահ և յերկիւղ յերեսաց քումդ զօրութեան կամ ժպիրհ լեզուի ։ Ո՞վ անմիտ, ընդէ՞ր ոչ ածես զմտաւ, թէ քանի մնոտի է յառնել զինուք ընդդէմ Ամենակալի՝ որ կարողն է և 'ի տկարագունիցն յարուցանել միշտ զանչափ բազմութիւն զօրաց 'ի կորուսանել զանմտութիւն քո ։ Իսկ կամ ինքնին հասեալ անդր քան զսահմանս՝ 'ի մի և եթ հարուած սատակել զքեզ առանց ուրուք օգնականի, և զլէգէոնսդ ծածկել ընդ անդնդային խաւարաւ ։ Այլ դու տեսեր, զի ոչ ամենեքին գտան 'ի խուժանի քում՝ առաւել ընտրեալ ոմանց զհաւատ և զբարեպաշտութիւն իւրեանց առ Աստուած ։ Սակայն ան-

տես եղէն նոքա 'ի քէն. զի զիս միայն համարեցար 'ի մոլար ամբոխից օտարանալ յամենեցունց: Տեսեր դու զանձատումն իմ 'ի քէն, արդ՝ գոնեա անագան գիտասջիր, թէ զիարդ երբեմն հնար է սակաւուց 'ի միտ առնուլ զմոլորութիւն հազարաւորաց:

Արդ ահագնատեսիլ Թշնամին եւ պատասխանի՝ ակնարկեալ 'ի նա արհամարհանօք: 'Ի վնաս չարութեան անձինդ՝ բայց 'ի դէպ ժամու իմումս վրէժխնդրութեան խնդրեալ զաւաջինն, դարձար անդրէն 'ի փախստենէդ՝ Հրեշտակդ խռովարար, ընդունել զարժանիդ հատուցումն՝ զնախկին փորձ զանձդ ձեռին զայրացելոյ. զի այդ-լեզու հակառակաշունչ իշխեաց զաւաջինն ընդդէմ կալ երրորդ մասին Աստուածոցն՝ որք ժողովեալ էին 'ի խնդիր աստուածական զօրութեան իւրեանց. քանզի չէր հնար նոցա 'ի զգալ անդյանձինս զայնպիսի զօրութիւն՝ ընծայել ումեք զամենազօրն: Այլ դու բարւոք արարեր, զի յառաջագոյն եկիր քան զընկերս քո՝ ցանկացեալ հանել 'ի գլխոյս զցցունս իւր. զի կորուստ քո քարոզ լիցի սատակման այլոց: Բայց Թողում զքեզ առ վայր մի (առանց պատասխանւոյ, զի մի պարծիցես) առ 'ի գիտել, թէ ես եղեալ էի 'ի մտի զաւաջինն, եթէ ազատութիւն և երկինք նոյն են առաջի երկնաւորաց, սակայն այժմ տեսանեմ զբազումս 'ի նոցանէ ընտրել յաւէտ զգերութիւն առ վատութեան իւրեանց: Որք են հոգիք սպասաւորութեան քաջակիրթք 'ի հանդէս տօնի և յերգս: Օ այսպիսի երկնային երգեցիկս վառեցեր դու 'ի զէն՝ 'ի խնդիր ծառայութեան կից ընդ-

ազատութեան։ Զոր և հանդերձեալ է ցուցանել փորձն այսօր՝ համեմատեալ զգործս երկոցունց կողմանցս ընդ միմեանս։

Որում Աբդիէլ ետ պատասխանի ՚ի կարճոյ և ահագին դիմօք։ Ով ապստամբ՝ տակաւին մոլորեալ կաս, և հեռի ՚ի շաւղաց ճշմարտութեան. և ոչ կամիս գտանել զվախճան մոլորութեանդ։ Յանուն գերութեան յանիրաւի կամակորես զծառայելն նմա՝ զոր կարգեալ է Աստուծոյ և բնութեան. զի երկոքին ևս զնոյն հրամայեն, յորժամ նա՝ որ իշխէն, է յաւէտ արժանաւոր, և գեր ՚ի վերոյ քան զիշխեցեալսն։ Այն իսկ է գերութիւն՝ ծառայել անմտի, կամ ապստամբելոյն յարժանաւորէ քան զինքն։ Որպէս արդ քոյինքդ ծառայեն քեզ, ոչ ազատիդ՝ այլ գերւոյդ քումդ անձին։ Սակայն և այնպէս յանդուգն ժպրհիս մեղադիր լինել մերումս սպասաւորութեան։ Կալ դու ՚ի դժոխս զքոյդ թագաւորութիւն, և թող ինձ յերկինս զծառայութիւնն Աստուծոյ օրհնելոյն ՚ի յաւիտեան. և զհնազանդութիւն հրամանաց նորա՝ որք են կարի արժանաւորք։ Սակայն դու ՚ի դժոխս անդ ակնկալեալ մնա շղթայից, և ոչ թագաւորութեան։ Իսկ այժմ ընկալ ՚ի դարձելոյս անդրէն ՚ի փախստենէդ՝ որպէս ասացեր յառաջագոյն, զայս հարուած ողջունի ՚ի վերայ գագաթանդ։

Զայս ասացեալ՝ ամբարձ ՚ի վեր զհարուածն պանծալի. որ ոչ էառ զտեղի ընդ օդն, այլ փոթորկեալ արագութեամբ՝ էջ անդէն ՚ի վերայ գառոզացեալ գլխոյ Սատանային. մինչև ոչ տեսութեան աչաց նորա, և ոչ երագութեան մտացն

շարժման՝ թող թէ վահանի նորա, կարող լինել զգուշանալ յերեսաց նորա ։ Ընկրկեցաւ նա յետս տասն քայլ երկայնաձիգ, զտասներորդն 'ի գուճս՝ հաստատեաց նիզակ նորա ստուարաբուն ։ Որ օրինակ եթէ յերկրի բռնութիւնք ստորերկրեայ հողմոց կամ ջուրց յանցս իւրեանց խլեալ յարմատոյ զերկայնութիւն լեռնակողմանն՝ խորասոյզ առնէին զայն սոճւովքն հանդերձ ։ Ապշութիւն կալաւ, այլ յաւէտ իմն մոլեգնութիւն՝ զխուժանն ապստամբաց 'ի տեսանել անդ վատթարեալ ըզհզօրագոյնն քան զինքեանս ։ Իսկ մերքն լցան խընդութեամբ, և աղաղակեցին բարձրաձայն 'ի նշան յաղթութեան, և յօժարամտութեան իւրեանց ընդ պատերազմ ։ Յայնժամ Միքայէլ հրաման ետ հարկանել զփողն հրեշտակապետական ։ Ձայն նորա հնչեաց ընդ ամենայն սահմանս երկնից. և հաւատարիմ զօրքն գոչեցին ովսաննա Բարձրելոյն ։ Այլ լեգէոնքն հակառակորդաց ոչ կացին յակճիռս, և ոչ նուազ սաստկութեամբ ետուն զանձինս յահագին յարձակումն և 'ի մարտ ։ Յարեաւ յայնժամ սրտմտութիւն և գոչիւն անհնարին՝ որոյ նման չէր երբէք լսելի լեալ յերկինս ։ Շառաչեալ զինուց 'ի վերայ զրահից նոցա՝ շռնչաձայն հնչէին ահագինս. և կատաղի անիւք պղնձի կառացն ուժգինս զայրանային ։ Սոսկալի իմն էր թնդիւն բաղխման նոցա ընդ միմեանս ։ Ի շչիւն անհնարին՝ խաղային 'ի վերայ գլխոց նոցա թուիչք հրեղէն նետից բոցավառ յարձակմամբ, և կամար յօրինէին 'ի հրոյ 'ի վերայ զօրացն երկոցունց ։ Եւ այնպէս սաստկագոյնս կռուէին կողմանքն երկոքեան ընդ միմեանս՝ յարձակեալ 'ի վե-

րայ մահահրաւէր և անշէջ սրտմտութեամբ։ Հն-
չեցին երկինք առհասարակ. և եթէ լինէր յայն-
ժամ երկիր, ողջոյն սասանէր 'ի կենդրոնէ իւր-
մէ։ Եւ զի՞նչ զարմանք 'ի բաղխել անդ սաստ-
կութեամբ ընդ միմեանս այնչափ բազմութեան
Հրեշտակաց՝ որոց և միումն մարթ է շարժել զտա-
րերսդ ողջոյն, և սպառազինեալ զնոսա՝ ցուցա-
նել զզօրութիւն իւր։ Ապա քանիո՞ն առաւել
մարթ էր զօրութեան անթիւ բազմութեանն հա-
կառակ միմեանց յարուցանել զանհնարին աղ-
մուկ, և խռովեցուցանել՝ թէ և ոչ կործանել,
զբնիկ աթոռս երանութեան իւրեանց, եթէ ամե-
նազօր և յաւիտենական Արքային վերին իշխա-
նութեամբն յամրոցէ անտի երկնից չէր կալեալ
'ի չափու զզօրութիւնս նոցա։ Սակայն և այնպէս
այնչափ էր թիւ նոցա, մինչև իւրաքանչիւր լէգէո-
նացն առանձինն երևիլ բազմութիւն յոգնախումբ
զօրաց։ Իւրաքանչիւր ձեռն սպառազէն՝ էր մէն
մի լէգէոն 'ի զօրութեան անդ։ Ամենայն ոք 'ի
զինուորաց անտի՝ թէպէտև առաջնորդեալ 'ի
մարտ, սակայն թուէր առանձին զօրագլուխ քա-
ջահմուտ արուեստի զինուորութեան. որ գիտէ՝
երբ արժան է յառաջ խաղալ, կամ զտեղի առ-
նուլ, և կամ շրջել զեղանակ մարտին. և երբ
լայնել կամ ամփոփել զճակատն։ Ոչ խորհուրդ
փախստեան երևէր 'ի նոսա, ոչ դարձումն յետս,
և ոչ նշան վատութեան առ երկիւղի։ Ամենայն
ոք վստահ էր յանձն իւր՝ որպէս թէ պարծանք
յաղթութեանն կախեալ կային զբազկաց նորա։
Գործք քաջութեան արժանի յաւիտենական յի-
շատակի գործէին անդանօր, բայց ոչ առնուին

զվախճան. զի ցրուեալ էր մարտն, և բազմադի-մի: Որ զի 'ի գետնի անդ հետևակամարտ կըռուէին, և էր զի սլացեալ 'ի վեր յուժգին թռիչս՝ մըրկեալ յուղէին զօդն. յորմէ երևէր նա հուր պատերազմող: Եկաց մարտն ընդերկար յերկոցունց կողմանց անպարտելի: Մինչև զկնի Սատանայ՝ որ 'ի նմին աւուր եցոյց զմեծամեծ քաջութիւնս, և անզուգական գտաւ 'ի զէնս, յարձակեալ 'ի մէջ ամբոխի մարտիկ Սերովբէից՝ եգիտ զտեղին, ուրանօր հարկանէր սուրն Միքայէլի, և յերկիր կործանէր զգունդս միանգամայն: Զի ահագին սայր նորա շողացուցեալ 'ի վեր կորովի արութեամբ՝ իջանէր 'ի խոնարհ 'ի սատակումն համակործան: Փութացաւ նա անդր առ'ի ունել զառաջս նորա. և եդ ընդդէմ զվիմարդեան սկաւառակն տասնապատկեան ադամանդի՝ զասպար իւր ընդարձակածիր և լայնանիստ: 'Ի մատչել նորա առընթեր՝ զտեղի էառ Հրեշտակապետն մեծ 'ի ճգնութեանց մարտին. և խնդացեալ ընդ գալուստ նորա՝ զի ակն ունէր վախճան տալ յայնժամ պատերազմին յերկինս, ածեալ զբռամբ և շղթայակապ գերեալ զսկզբնաչար թշնամին, սկսաւ զառաջինն ասել ցնա 'ի խոժոռահայեաց և 'ի բոցավառ դիմն՝ օրինակ զայս:

Առաջնորդդ չարեաց՝ որք ցապստամբութիւն քո անծանօթ էին և անլուր յերկինս, և արդ՝ որպէս տեսանես, կարի իմն բազմացեալ 'ի դժնդակ մարտիդ, որ անբերելին է ամենեցուն, թէպէտև ըստ արդար իրաւանց յաւէտ ծանրացեալ 'ի վերայ քո, և միաբանելոցն ընդ քեզ: Զիարդ վրդովեցեր զերջանկաւէտ խաղաղութիւնն յեր-

կլինս, և մուծեր 'ի բնութիւն անդր զանգդոյ աղէտին ցժամ յանցանաց քումդ վտարանջութեան։ Զիարդ հեղեր զչարութիւն քո 'ի սիրտս հազարաւորաց՝ որք երբեմն ամբիծ էին և հաւատարիմ, և այժմ գտան ուխտադրուժ։ Սակայն մի համարիր զանձն քո ձեռնհաս յամբոխել աստանօր ըզհանգիստն սրբութեան։ Երկինք հանդերձեալ են հալածել զքեզ յամենայն սահմանաց իւրեանց. զի աթոռն երանութեան ոչ տանի բռնութեան և մարտի։ Արդ՝ գնա աստի ընդ չարեացն՝ ընդ քոյին ծննդոց, 'ի տեղին չարեաց 'ի դժոխս. դու, և անօրէն խուժանդ ընդ քեզ։ Եւ անդ յուզեսջիր զաղմուկս խռովութեանց՝ մինչչև է քինախնդիր սրոյս ձեռն արկեալ 'ի սատակել զքեզ. և կամ յաւէտ յանկարծահաս վրէժխնդրութեանն Թռուցելոյ յԱստուծոյ զահավէժ ընկղմեալ զքեզ յանդունդս ահագին տանջանօք։

Զայսօրինակ խօսեցաւ պետն Հրեշտակաց։ Որում հակառակորդն ետ պատասխանի։ Մի համարիր ահ արկանել հողմովք սպառնալեաց նմա՝ զոր ցարդ չեղեր ձեռնհաս երկեցուցանել արդեամբք։ Միթէ դարձուցեր 'ի փախուստ զմ՛ս նուաստագոյնն 'ի սոցանէ, և կամ ձգեցեր 'ի կործանումն։ Սակայն և այնպէս վերստին կանգնեալ նորա անպարտելի՝ դիւրաւ վճարեսցէ ընդ իս զոր եդեալ է քո 'ի մտի, իմա հալածել զիս աստի իշխանաբար և սպառնալեօք։ Մի խաբիր, ոչ նոյնպէս հանդերձեալ է լինել կատարած մարտիդ՝ զոր դու գրես 'ի չարիս, և մեք 'ի պարծանս անձանց։ Զի հաստատեալ է մեր 'ի մտի՝ կամ յաղթել քաջութեամբ, և կամ զնոյն ինքն զերկինս

դարձուցանել 'ի դժոխս ստայօդեալ 'ի քէն. և անդ որով և իցէ օրինակաւ կալ յազատութեան մերում, թէ և ոչ յարքայութեան։ Արդ՝ ոչ խուսափեմ ես յերեսաց քում զօրութեան, յաւէլ ընդ քեզ և զօգնականութիւն Ամենակալին, այլ պնդեալ կամ զհետ քո՝ 'ի բացուստ, և 'ի մօտոյ։

Սախճան տուեալ նոցա բանից՝ երկոքեան ևս պատրաստեցան 'ի ճակատամարտ, զոր չէ հնար ցուցանել բանիւ բերանոյ։ Զի ո՞ ոք՝ թէպէտև 'ի լեզու հրեշտակաց, կարող է պատմել զայն, և կամ իմ իմիք յերևելեացս համեմատել 'ի վերայ երկրի, որում հնար իցէ ամբառնալ զմիտս մարդկան յայնպիսի բարձրութիւն աստուածավայելուչ զօրութեան։ Քանզի և կարի իսկ նման Աստուածոցն երևէին նոքա 'ի կալ իւրեանց և 'ի խաղալ յառաջ, 'ի չափ հասակի, 'ի գնացս և 'ի զէնս. և քաջայարմարք յորոշումն վիճակի գերագոյն իշխնակալութեան երկնից։ Արդ՝ շողացուցեալ նոցա զհրեղէն սուսերս իւրեանց՝ ահագին ծիրս գործէին ընդ օդն։ Կրկին մեծամարմին արեգակունք ցոլացուցանէին 'ի հանդիպոյ զասպարս նոցա, մինչդեռ ակնկալութիւն ամենեցուն ըմբռնեալ կայր յերկիւղ։ Ընդէն փութանակի տեղի ետուն բազմութիւնք հրեշտակաց յերկոցունց կողմանց՝ ուր կայր զառաջինն թաւ ճակատ մարտին, և թողին 'ի միջի զդաշտ լայնարձակ. բայց ոչ աներկեան յերեսաց փոթորկի այնպիսի խռովութեան։ Զոր օրինակ կամեցեալ փոքումբք զմեծամեծս ցուցանել՝ եթէ քակտեալ բաժանէր միաբանութիւն բնութեանն, և յառնել պատերազմ 'ի մէջ հա-

մարտեղութեանց՝ կրկին մոլորակք յարձակեալ՚ի վերայ միմեանց չարախտավատ հայեցուածովք ոխերիմ թշնամութեան, մենամարտեալ կռուէին ՚ի հաստատութեան երկնից, և շփոթեալ խառնակէին զձռնչաձայն պարունակս իւրեանց։ Արդ՝ ամբարձեալ ՚ի վեր երկոցունց միանգամայն զբազուկս իւրեանց՝ որք էին երկրորդ զկնի Ամենակալին, զմի և եթ կշռեալ դիտէին զհարուած՝ որում հնար իցէ որոշել զյաղթութիւն մարտին առանց կրկնելոյ։ Որպէս ՚ի զօրութեան, նոյնպէս և յարագութեան անդ զուգահաւասարք էին նոքա միմեանց։ Բայց սուրն Միքայելի տուեալ ՚ի ձեռս նորա ՚ի զինարանէն Աստուծոյ՝ այնպէս քաջամուխ էր, մինչև ոչինչ սայրասուր կամ կարծրապինդ կարող էր կալ առաջի սրութեան նորա։ Նա ընդ առաջ սրոյն Սատանայի՝ որ իջանէր ահագին սաստկութեամբ ՚ի հարկանել, և անդէն կտրեաց զայն ընդ մէջ։ Բայց ոչ առեալ զտեղի՝ էանց յայն կոյս, և խորաթափանց ձեղքեաց զաջակողմն Սատանայի։ Յայնժամ զառաջինն զգիտաց նա յանձին զփորձ ցաւոց. և կարի իմն տանջեալ՝ սկսաւ թաւալել յայս կոյս և յայն կոյս։ Յորում վայրի էանց ընդ նա բազում անգամ հատանող սուրն կարեվէր։ Բայց եթերական մարմին նորա գոլով անբաժանելի ընդերկար՝ կցեցաւ անդէն. և ՚ի վերայ անտի նորա այնպիսի իմն բղխեաց վտակ Նեկտարեան[1] արիւներանգ հիւթոյ, զորպիսի մարթ է հոսել երկնաւորաց։ Յորմէ և շաղախեցան ամենայն կազմածք զինուց նորա՝ որք սակաւ մի յառաջ էին այնչափ պայծառափայլ։ Յայնժամ յամենայն կողմանց բազմու-

թիւնք քաջազօր հրեշտակաց նորա փութացան վաղվաղակի յօգնականութիւն նմին, և արկին զանձինս ընդ մէջ 'ի պաշտպանութիւն նորին ։ Յորում վայրի բարձեալ զնա այլոց 'ի վերայ ասպարաց իւրեանց՝ դարձուցին անդրէն 'ի կառս իւր ։ Յորում եկաց նա մեկուսի 'ի ճակատէ անտի ։ Անկեալ կայր 'ի նմա, և կրճտէր զատամունս իւր յերեսաց անհնարին տագնապի, նախատանաց և ամօթոյ. զի տեսանէր զանձն ոչ անզուգական, և զգոռոզութիւն իւր նուաստացեալ այնպիսի նախատանօք, և նկուն լեալ զյանդգնութիւն իւր 'ի լինել հաւասար Աստուծոյ 'ի զօրութեան ։ Սակայն վաղ ապաքինեցան վէրք նորա. զի հոգիք՝ որոց կենդանութիւնն է յիւրաքանչիւր մասունս նոցա, և ոչ իբրև զմարդկան յընդերս, 'ի սիրտ կամ 'ի գլուխ, 'ի լեարդ և յերիկամունս, անչքութեամբ ևեթ մեռանին ։ Եւ 'ի լուծական հիւսուածս մարմնոյ իւրեանց ոչ կարեն զառաւել մահացու վէրս ընդունել, քան որչափ մարթ է հոսանուտ օդոյն ։ Կեանք նոցա է բոլորովին սիրտ, բոլորովին գլուխ, բոլորովին աչք, բոլորովին ականջք, բոլորովին միտք, և բոլորովին զգայութիւն ։ Եւ որպէս կամք են նոցա, յօրինեն անձանց անդամս, և առնուն ըստ հաճոյս զգոյն, զկերպարան և զհասակ՝ թանձր կամ անօսր [2] ։

'Ի նմին ժամանակի և յայլում կողման ցուցան նոյնօրինակ գործք քաջութեան արժանի յիշատակաց՝ ուր տային պատերազմ զօրքն Գաբրիէլի ։ Նա ինքն ահագին նշանօքն ճեղքեաց զստուար բանակն Մողոքայ [3] մոլեգին արքային՝ որ այն ինչ յասպարէզ կարդայր զնա, և սպառնայր նմին

ընդ քարշ ածել զնա՝ կապեալ ընդ անիւս կառաց իւրոց. և ոչ կարձէր ևս զհայհոյիչ լեզու իւր 'ի միայնոյ Աբրայն երկնից։ Նոյն անդէն և անդ ձեղքեալ միջով չափ՝ փախեաւ 'ի բառանջիւն խորտակեալ զինուք, և անհնարին ցաւովք։ Յերկոսին Թևս նորա Ուրիէլ և Ռափայէլ վանեցին զխրոխտ Թշնամիս իւրեանց զԱդրամելէք[4] և զԱսմոդէ՝[5] զերկոսին հսկայազօր Աթոռսն, որք էին սոսկավլիթխար և քաջազէն 'ի ժայռս ադամանդի. և չառին յանձն ստորին լինել քան զայլ Աստուածս։ Սակայն ծանեան նոքա զնուաստութիւն իւրեանց 'ի փախստեան անդ՝ զկնի ընդունելոյ զանհնարին վէրս ընդ պահպանակս զրահից իւրեանց։ Ոչ յետնեալ գտաւ և Աբդիէլ 'ի նեղել անդ զխուժանն անաստուածից. այլ բազմապատիկ հարուածովք յերկիր կործանեալ զԱրիէլ[6] և զԱրիովք[7] և զզօրութիւն Հրամելայ՝[8] եհար և ապականեաց զնոսա։ Արդ էր ինձ յառաջ բերել և զայլ հազարաւորս, և յաւերժացուցանել զանուանս նոցա յերկրի աստ. այլ ընտրեալ Հրեշտակք շատացեալ ընդ համբաւ անուան իւրեանց յերկրիս՝ ոչ խնդրեն զփառս 'ի մարդկանէ։ Իսկ զկողմն հակառակորդաց՝ Թէպէտև սքանչելի էին 'ի զօրութեան անդ, և 'ի մրցանս մարտի, և հետամուտ համբաւոյ քաջութեան, այլ քանզի ջնջեցան 'ի սուրբ յիշատակարանէ երկնից դատակնքովք իւրեանց՝ թող մնալ անյիշատակ 'ի խաւարի անդ մոռացութեան։ Զի քաջութիւն անբաժ 'ի ճշմարտութենէ և յիրաւանց՝ ընդ պարսաւանօք է, և նախատանաց և եթ արժանի։ Սակայն և այնպէս մնափառն զհետ

սնոտի փառաց, և անարգանօք խնդրէ զհռչակ անուան իւրոյ : Նմին իրի լռութիւնն յաւիտենական կցի դատակնիք նոցա :

Արդ՝ յանկանիլ հզօրագունին Սատանայի՝ տեղի ետուն պաշտօնեայք նորա յերեսաց մարտի, զի հարան յամենայն կողմանց : Յայնժամ եմուտ 'ի նոսա հարուած սաստիկ, և աղմուկ շփոթի անհնարին : Յատակն երկնից սփռեալ կայր ողջոյն 'ի կոտորակս զինուց նոցա . և կառք և կառավարք և հրաշունչ նժոյգք կործանեալ առհասարակ՝ դիզացեալ կային 'ի վերայ միմեանց : Որք միանգամ ոչ անկան, դարձան յետս ընդ զօրուն լքելոյ . որոց այլագունեալ 'ի դէմս առ երկիւղի՝ հազիւ ձեռնհաս էին 'ի պաշտպանութիւն անձանց : Նաև յայնժամ զառաջինն ըմբռնեցան նոքա յերկիւղ, և 'ի կիրս ցաւոց . վասն որոյ և վատանուն դարձան 'ի փախուստ : Նաև մեղքն անհնազանդութեան ձգեաց զնոսա յայն աղէտս . զի յառաջագոյն ոչ գիտէին զերկիւղ, զցաւս և զփախուստ : Իսկ անպարտելի Սրբոց կացեալ հաստատուն՝ յառաջ խաղացին կարի տարօրինակ 'ի նոցանէ, ողջանդամ և անխոց անգծելի զինուքն իւրեանց : Զայսպիսի յաղթանակ 'ի վերայ թշնամեացն՝ ետ նոցա անմեղութիւն իւրեանց . զի ոչ յանցեան նոքա, և ոչ գտան անհնազանդ : Կացին 'ի մարտի անդ անխոնջ, և ոչ անկան ընդ ցաւովք վիրաց : Սակայն և այնպէս հարկ եղև նոցա մեկնիլ 'ի տեղւոջէ անտի : Զի սկսաւ գիշերն զընթացս իւր . և ձգեալ զխաւար զերեսօք երկնից՝ եած 'ի վերայ նոցա զցանկալի դադարումն զինուց, և զհանգիստ յերեսաց սոսկալի աղաղակի մարտին : Ընդ ըստ-

ուերաւ ամպոյ նորա խոյս ետուն յաղթականքն և յաղթեալքն առհասարակ: Ի դաշտի անդ ճակատամարտին քաջութեամբ զտեղի առեալ Միքայէլի և հրեշտակաց նորա՝ հարին զբանակս իւրեանց. և շուրջանակի կարգեցին 'ի պահպանութիւն զՍրովբէական լուսափայլութիւնսն: Իսկ Սատանայի անհետացեալ անտի ընդ իւրոց ապստամբաց՝ զտեղի էառ 'ի խաւարչտին վայրի ուրեք: Ուր ոչ գտեալ զհանգիստ՝ կոչեաց 'ի նմին գիշերի զիշխանսն 'ի ժողով. և կացեալ 'ի մէջ նոցա՝ զայս օրինակ խօսեցաւ անվեհեր համարձակութեամբ:

Ո՛վ սիրելի ընկերք իմ՝ որք այժմէն փորձ գտայք 'ի հանդէսս, և անպարտելիք 'ի զէնս. և ցուցայք արժանի ոչ միայն ազատութեան՝ զոր իրաւամբք խնդրէք, այլև պատուոյ, իշխանութեան, և պանծալի անուան՝ որոց թեկն ածեմք: Որք և 'ի կեղակարծ մարտի անդ զդէմ կալայք 'ի միում աւուր (և ընդէ՞ր ոչ զամենայն աւուրս յաւիտենից) և՛ս քաջազունին՝ զոր մարթ էր Տեառն երկնից առաքել ընդդէմ մեր 'ի բարձանց յաթոռոյ իւրմէ. զի համարէր զնա ձեռնհաս 'ի նուաճել զմեզ ընդ իւրով իշխանութեամբ. բայց ելք իրացն զհակառակն ցուցին: Նմին իրի թուի ինձ, թէ մարթ է մեզ համարել զնա ոչ անվրէպ 'ի խորհուրդս իւր, թէ՛ և ցարդ կարծեաք լինել ամենագէտ 9: Քա՛ջ իսկ գիտէք, զի գոլով մեր զլինեալ փոքու ևեթ զօրութեամբ՝ յանձին կրեցաք դուզնաքեայ ինչ վիշտս և վնասս, որք ցարդ անծանօթ էին մեզ. այլ ընդ ծանօթանալն՝ անդէն առ ոչինչ գրեցաք զնոսա: Արդ՝ քանզի զտա-

նեմք այժմ զհրեղէն գոյացութիւն մեր անընդունակ մահաբեր ցաւոց և կորստեան. և թէպէտ վիրաւորեալ, այլ դիւրակցելի և արագաբոյժ իւրով խոկ ընդաբոյս զօրութեամբ, յայն սակս ըստ փոքրկութեան վնասուդ համարեսջիք և զդարման նորին դիւրահնար: Ի պատահել մեր միւսանգամ մարտիւ ընդ միմեանս՝ թերևս ձեռնտու լիցին մեզ հզօրագոյն ևս զէնք և մեքենայք 'ի յաղթութիւն անձանց, և 'ի պարտութիւն թշնամեաց. և կամ գէթ հաւասար գործեսցեն զանհաւասարութիւնն 'ի մէջ երկոցունց կողմանցս՝ որ ոչ է ըստ բնութեան: Ապա եթէ այլ ինչ պատճառ զանխուլ առ'ի մէնջ թողեալ իցէ նոցա գեր 'ի վերոյ հանդիսանալ քան զմեզ, մինչդեռ մարթ է մեզ ունել անարատ զմիտս, և քաջառողջ զխորհուրդս՝ խորհրդակցութիւնն ըստ արժանեաց հանցէ զայն 'ի լոյս:

Զայս ասացեալ նորա՝ բազմեցաւ. և զկնի նորա յարեաւ 'ի ժողովն անդ Ակորալզ՝[10] առաջին 'ի մէջ իշխանաց նորա. որ էր կարեվէր և վաստակաբեկ փախուցեալ յերեսաց մարտին՝ ունելով զխորտակեալ զէնս իւր ներկեալ 'ի գոյն ապականութեան. և ամպամած դիմօքն ետ զայս պատասխանի:

Ազատարար մեր 'ի նորոգ տերանց, և առաջնորդ 'ի վայելս ազատութեան ըստ իրաւանց Աստուածոց, զմարտդ ընդդէմ անհամեմատ զինուց, և ընդդէմ անվշտաց և անխոցից՝ տակաւին գտանեմք անբերելի Աստուածոցս, և լի վտանգօք: Զի զի՞նչ օգուտ է քաջութիւն կամ զօրութիւն՝ թէ և անպարտելի, եթէ ընկճեալ կայ յերեսաց

ցաւոց՝ որք յաղթահարեն զամենայն անձն, և լքուցանեն զձեռս եւս և զհզօրագունն: Մարթ է մեզ 'ի բաց կալ 'ի վայելից անտի զուարճութեանց, և առ ոչինչ դրեալ զայն՝ կեալ խաղաղաւէտ կենօք: Այլ ցաւքն են կատարեալ թշուառութիւն, և վատթարագոյն քան զամենայն աղէտս. որք և կարի իմն բռնացեալ՝ տապալեն զհամբերութիւն: Արդ՝ որ միանգամ կարէ զտանել հնարս, որով մարթ իցէ մեզ առաւել եւս փոյթ հատուցանել մերոց թշնամեաց՝ որք դեռ եւս կան անխոցելի, և կամ զինել զանձինս մեր նովին պաշտպանութեամբ, թուի ինձ լինել նմա արժանի ոչ փոքր փոխարինաց՝ քան զոր խոստովանիմք ազատարարիդ 'ի սակս քումդ երախտեաց:

Որում արար պատասխանի Սատանայ յանխռով դէմս: Անշուշտ գտից զայն՝ զոր իրաւամբք համարիս յաւէտ իմն կարևոր 'ի յաջողութիւն անձանց: Ո՞չ ի ո՞ ոք 'ի մէնջ՝ որոյ աչք ակնարկեն 'ի պայծառափայլ երեսս եթերական գետնոյս, յորոյ վերայ հաստատեալ կամք, և տեսանեն ըղլայնածաւալ սահմանս երկնից պճնեալ ծառովք, պտղովք, Ամբրոսեան[11] ծաղկամբք, ակամբք պատուականօք և ոսկւով՝ այնպէս 'ի հարևանցի անցցէ ընդ նոսա, մինչև չածել երբէք զմտաւ՝ թէ զիարդ աճեն 'ի խորս անդ երկրի այդոքիկ. որք են անդուրջ և անզարդ նիւթք ոգեղէն և հրեղէն փրփրոյ. մինչև 'ի մերձենալ առ նոսա երկնային ճառագայթից՝ արգասաւորեալ բուսանին յայնպիսի գեղեցկութիւն, և տարածանեն զինքեանս առ լոյսն շրջապատեալ: Սոքա 'ի խորս անդ արտադրութեան իւրեանց հանդերձեալ են տալ մեզ

նիւթս բազմաբեղուն առատութեամբ 'ի բոց դժոխոց: Որոց լցեալ խստութեամբ 'ի խռովչաւոր, յերկայնաձիգ և 'ի բոլորշի մեքենայս՝ 'ի մերձենալ հրոյն ընդ ծակս նոցա, ընդարձակեալ մոլեգին կատաղութեամբ՝ արձակեսցեն 'ի հեռաստանէ որոտընդոստ թնդմամբ 'ի թշնամիս անդր զայնպիսի մահահրաւէր անօթս պատերազմի, որոց մայրթ իցէ խորտակել և յերկիր կործանել զամենայն ընդդիմակացս. մինչև խիթալ նոցա, թէ գուցէ զինաթափ առնիցեմք 'ի կայծականց իւրոց և զնոյն ինքն զՌ՝ անթընկեցն՝ [12] որ միայն է ահաւոր: Այլ աշխատութիւն մեր 'ի վաստակս սորին ոչ յերկարեսցի, այլ մինչչև է լուացեալ առաւօտու՝ արդիւնքն լցցեն զկամս մեր: Այլ արդ՝ նորոգեցարուք յանձինս ձեր, և զամենայն երկիւղ մերժեցէք յանձանց 'ի բաց: Միաբան խորհրդով և քաջութեամբ զօրացեալ՝ մի ինչ համարեսջիք դժուարին, և'ս առաւել անհնարին:

Լռեաց նա. և բանք նորա զուարթացուցին զթալկացեալ դէմս նոցա, և զլքեալ սիրտս քաջալերեցին: Ամենեքին զարմացան ընդ նորագիւտ[13], և թողին 'ի բաց զայլ հնարս իւրեանց: Ահա այսպէս դիւրահնար ցուցաւ նա զինի գտանելոյ միանգամ. և եթէ չէր գտեալ տակաւին, բազումք ունէին կարծել անհնարին: Այլ թերևս առյապայս 'ի բազմանալ չարութեանն ոմանք 'ի ծննդոց քոց հակամիտեալ յաւեր և 'ի կործանումն, և ազդեալ 'ի դիւական հնարից՝ գտցեն զնոյնօրինակ գործիս յապականութիւն որդւոց մարդկան. զի 'ի սակս մեղաց ձգեսցին 'ի սաստակումն միմեանց պատերազմաւ: Նոյնժէն վաղվաղա-

կի 'ի ժողովոյ անտի փութացան 'ի գործ. ոչ որք եկաց յընդդիմաբանութիւն. անհամար ձեռք կային պատրաստական յաշխատութիւն: 'Ի քըրթթել ական թաւալեցուցին զհողն երկնային. տեսին 'ի խորս նորա զանկերպարան արտադրութիւնս սկզբանց բնութեան. գտին անդ զփրփուրն ծծմբոյ և բորակի. խառնեցին 'ի միասին. եփեցին ճարտարութեամբ. և վերածեալ 'ի փոքրիկ սեւրակ հատս՝ շտեմարանեցին զնոսա [14]: Իսկ ոմանք հանին 'ի հողոյ զծածկեալ երակս հանքաց և քարանց (ունի և երկիրս զնոյնօրինակ ընդերս). յարոց և ձուլեցին զթնդանօթս իւրեանց, և զռումբս առ 'ի արձակել 'ի կործանումն: Այլ այլք պատրաստեցին զհրձիգ եղէգն որ մահաբերն է 'ի մերձենալ հրոյն [15]: Այսօրինակ՝ մինչև էր ծագեալ առաւօտու, աւարտեցին զամենայն ինչ 'ի գաղտնութեան անդ գիշերոյ, և եդին 'ի կարգի լռելեայն զգուշութեամբ և անտեսաբար [16]:

Արդ՝ 'ի ծագել զուարթագեղ առաւօտու յերկինս՝ յարեան յաղթական հրեշտակքն. և փողն առաւօտեան կոչեաց զնոսա 'ի զէնս: Համախմբեալ փութանակի պայծառափայլ զօրաց՝ կային սպառազինեալ ոսկիազէնք: Իսկ այլք 'ի լուսափայլ լերանց դիտէին շուրջանակի զթշնամին. և թեթևազէն ասպատակաւորքն խուզէին զամենայն վայրս և զսահմանս 'ի խնդիր նորուն, թէ ուր արդեօք օթագայեալ կայցէ, կամ փախուցեալ. և կամ կամիցի արդեօք վերստին յարձակիլ 'ի մարտ: Այլ ահա անդէն գտին զնա նշանօքն սաւառնելովք յառաջ խաղացեալ 'ի գունդ հանդարտաքայլ, բայց քաջազէն: Յայնժամ Զովփիէլ [17]

արագաշարժ Վրովլէն սլացեալ 'ի թևս՝ դարձաւ անդրէն փութանակի. և կացեալ ընդ օդն՝ զայս օրինակ աղաղակեաց մեծաձայն:

'Ի զէնս ընթացարուք զօրականքդ, 'ի զէնս մարտի. զի ահա հասեալ կայ վերստին թշնամին՝ զոր կարծէաք փախուցեալ: Կամի նա ազատ կացուցանել զմեզ այսօր 'ի պնդելոյ զհետ նորա: Գայ իբրև զամպ թանձրախիտ. և տեսանեմ բազմեալ 'ի դէմս նորա զչարիմաց և զժպիրհ կամս: Արկէք զանձամբ զվարապանակ ձեր աղամանդեայ. դիք 'ի գլուխ զսաղաւարտ ձեր. և առէք 'ի ձեռին ըղվահան ձեր 'ի ձև սկաւառակի. և տարայք զայն մակաւասար, և կամ վերամբարձ. զի որպէս ինձ թուի, հանդերձեալ է այսօր տեղալ՝ ոչ անձրև ցօղագին, այլ ամպրոպք շառաչուն նետից՝ թևազգեստեալ 'ի հուր:

Զայսօրինակ ծանոյց նա որոց կային 'ի զգուշութեան: Եւ նոցա անդէն վաղվաղակի 'ի կարգ-անկեալ անխռով՝ փութացան 'ի զէնս, և կարգեցան կացին 'ի ճակատ մարտի: Եւ ահա տեսին, զի մերձենայր առ նոսա թշնամին յամբոխ յոգնախուռն և երկայնաձիգ բազմութեան՝ որք ձգէին զդիւական թնդանօթս իւրեանց 'ի խորանարդգոգաւոր[18]. որ էր շրջապատեալ 'ի ստուար բանակէ զօրացն առ 'ի ծածկոյթ դաւանաց: Կացին երկոքին ճակատքն առ վայր մի հանդէպ միմեանց. բայց Սատանայ անդէն երևեցաւ 'ի գլուխ իւրայոցն. և ձայն նորա մեծաբարբառ եղև լսելի, զի տայր հրաման՝ օրինակ զայս:

Բացէք յառաջապահքդ զճակատդ յաջ և յահեակ, զի գիտասցեն թշնամիք մեր, թէ զիարդ 'ի

խնդիր եմք մեք հաշտութեան և խաղաղութեան, և տարածեալ զգիրկս՝ կամք 'ի պատրաստի ընդունել զնոսա, եթէ ախորժեն զսկզբնաւորութիւնն առ'ի մէնջ, և ոչ խուսափեն խորամանկութեամբ՝ որպէս կասկածիմս ։ Սակայն վկայ լիցին երկինք արագ արագ վկայութեամբ ընդ ինուլ մեր քաջութեամբ զպարտս անձանց ։ Իսկ դուք Ճակատեալքդ կատարեցէք զհրամանն՝ որ տուաւ ձեզ յառաջագոյն ։ Զոր հանդերձեալ է ձեր ունել առաջի, մերձեցարուք 'ի նա յուշիկ, բայց մեծաձայն՝ զի լսելի լիցի ամենեցուն ։

Մինչև էր աւարտեալ նորա զհեգնութեան զերկդիմի բանսն, և ահա բաժանեալ Ճակատուն յաջ և յահեակ՝ յանդիման արար աչաց մերոց զնոր և զտարօրինակ դասաւորութիւնն երրակի կարգաց սեանցն բարձելոց 'ի վերայ անուոց [19] (զի կարի նմանօրինակ երևէին նոքա սեանց կամ զոգաւոր մարմնոց յօրինելոց 'ի կաղնի կամ յեղևնի ծառոց ոստաքանց անկելոց յանտառի կամ 'ի լերինս) 'ի պղնձի, յերկաթի և 'ի վիմարդեան ձուլս ։ Բայց 'ի նշանակ կեղծեօք դադարման զինուց՝ բացեալ ունէին նոքա ընդդէմ մեր զլայնարձակ և զահագին բերանս իւրեանց ։ Իւ մի մի 'ի նոցանէ կայր 'ի յետուստ կողմանէ մէն մի Սերովբէ, ունելով 'ի ձեռին զգաւազան՝ որոյ ծայր բոցավառեալ էր, և ճօճայր ։ Յայնմ վայրի կայաք մեք 'ի վարանս, միանգամայն և ըմբռնեալ 'ի ըզբօսանս մնաց ընդ նորոգ տեսիլդ ։ Բայց ոչ մնացաք ընդ երկար ։ Զի ձգեալ ամենեցուն զգաւազանս իւրեանց՝ մերձեցուցին յուշիկ զծայրս նոցա ընդ անձուկ ծակս սեանցդ․ և ահա անդէն վաղ-

վաղակի բոցավառ ցուցանէ երկինք, այլ զկնի մրթագնեցան 'ի ծուխ՝ զոր զգայուեցին մենքենայքդ խորաքերան: Որոց բոմբիւնք լցին զօդն 'ի հնչիւն դժոխալուր, և պատառեցին զփորոտիս նորա՝ ժայթքեալ արտաքս զգարշահոտ և զդիւական աղխս իւրեանց, զշանթս ասեմ շղթայաշար, և զկարկուտս երկաթի գնտակաց: Որք և ուղղեալ 'ի վերայ յաղթական զօրացն՝ այնպէս ահագին սաստկութեամբ խաղացին 'ի նոսա, մինչև ոչ ուրուք 'ի նոցանէ՝ որոց միանգամ հարան, կարող լինել կալ յոտին. Թէպէտև հաստատուն էին իբրև զժայռս վիմաց: Եւ հազարաւորք 'ի հրեշտակաց անտի և 'ի հրեշտակապետաց՝ անկան թաւալգլոր: Եւ այն փութանակի ևս 'ի սակս զինուց իւրեանց. զի եթէ անզէն լինէին, դիւրաւ մարթ էր նոցա խոյս տալ արագագոյն կծկմամբ կամ խուսափմամբ յերեսաց մենքենայիցդ: Սան որոյ և եհաս 'ի վերայ նոցա ցրումն անհնարին, և խորտակումն անհրաժեշտ: Եւ ինչ ոչ օգնէր նոցա թուլութիւն ճակատուն պնդութեան: Եւ զինչ այլ մնայր նոցա: Եթէ դիմէին 'ի վերայ, կրկին վանումն, և չարաչար ևս հարուած հանդերձեալ էին կարգել զնոսա յառաւել նախատինս, և յայտն կատականաց թշնամեաց իւրեանց. զի միւս ևս դասակարգութիւն սերովբէական պատրաստեալ կայր 'ի հանդիպոյ հնչեցուցանել վերատին զբոմբիւն շանթընկեցութեանն: Իսկ զթիկնադարձութիւնն զկնի խորտակմանն՝ չարաչար ևս համարէին: 'Ի միտ էառ Սատանայ զտագնապ նոցա, վասն որոյ և զայսօրինակ աղաղակեաց առ ընկերս իւր ընդ կատակս:

Ո՜վ բարեկամք իմ, ընդէ՞ր ոչ մատչին յառաջ խրոխտ յաղթականքն՝ որք սակաւ մի յառաջ յանդգնագոյնս խիզախէին ։ Զի մեք յընդունելութիւն նոցին ըստ արժանեաց՝ բացաք զճակատն, և զգիրկս մեր (և զի՞նչ՝ առաւել մարթ էր մեզ առնել) ։ և եդաք առաջի նոցա զխնդիր հաշտութեան ։ այլ նոցա անդէն վաղվաղակի փոխեալ զմիտս իւրեանց՝ հրաժարեցան, և անկան յայլ խորհուրդս ։ որպէս թէ կամք իցեն նոցա կաքաւել ։ բայց կարի իմն անհեթեթ ցուցան նոքա 'ի պարս իւրեանց, թերևս առ անչափ խնդութեան ընդ հաշտութիւնն ընծայեալ առ'ի մէնջ ։ Սակայն և այնպէս թուի ինձ, թէ մարթ է մեզ ձգել զնոսա 'ի հաշտութիւն՝ եթէ միւսանգամ լուիցեն զխնդիր մեր ։

Որում ետ պատասխանի Բելիար [20] նոյնպէս ընդ կատակս ։ Առաջնորդդ քաջ՝ պայմանքն հաշտութեան զոր յղեցաք առ նոսա, էին ծանունք, դժուարիմացք և սաստիկ յոյժ ։ մինչև մարթ է մեզ 'ի կարծիս լինել, թէ զուարճացուցեալ իցեն զամենեսին առհասարակ, և յորդորեալ զբազումս յընդունելութիւն հաշտութեան ։ Որք միանգամ ուղղութեամբ ընկալեալ իցեն զայնոսիկ, անշուշտ քաջ իմացեալ են զմիտս նոցին ։ Ապա թէ ոչ՝ հաւաստեաւ ցուցանեն մեզ, թէ զկարդ թշնամիք մեր վարին ընդ մեզ խորամանկութեամբ ։

Զայսօրինակ կային նոքա յայպն կատականաց [21] ընդ միմեանս ըստ ինքնահաճոյ քմաց իւրեանց ։ զի կարի իմն յուսացեալ էին 'ի նորահնար մեքենայս իւրեանց լինել հաւասար նոքօք յաւիտենական զօրութեանն ։ վասն որոյ և ծաղր առ-

նոցին զշնորհս նորա, և այսպիսակառաւ լինելոյն զօ-
րաց նորա՝ ի տեսանել անդ զնոսա առ վայր մի
խռովեցան։ Այսպէս ոչ ծնուցին նոքա յայն վիճակ
նուաստութեան ընդերկար։ Զի սրտմտութիւն
յամառութեան փութացոյց զնոսա, և ետ 'ի ձեռս
նոցա զբազմապատիկ զէնս յընդդիմադրութիւն
զինուորաց հնարից նոցա։ Նոքէն փութանակի ('ի
մխոյ առ զառաւելութիւն զօրութեան Նաբուծոյ
յընկալեր Հրեշտակն էր) ձգեցաւ նոցա 'ի բաց յաս-
ձանց զզէնս՝ յարագագործն թուլս իբրև զփայլակն
ընթացան 'ի լերինս (զի և երկիրս ամենայն յերկնից
ամէտ զզուարճութիւն զբոյց հալոց 'ի լեառն և 'ի
հովիտ). և նստանեալ զնոսա 'ի հիմանց՝ կորզե-
ցին 'ի բաց հասմօրէն ծանրաբեռնութեամբք նո-
ցին, ժայռիւք, գետովք և անտառովք. և կա-
լեալ զթաւ զագաթանց նոցա՝ տարան 'ի ձեռս։
Նշութիւն անհնարին, և ահ մեծ կալաւ զզօրս
ապստամբաց (մի լինել երկմտիլ ընդ այն) 'ի տե-
սանել անդ զահագին զալուստ երկնահայեաց յա-
տակաց լերանց 'ի վերայ նոցա։ Զորս և տեսին
զինի յարձակեալս 'ի վերայ երեքկարգեան անի-
ծապարտ մնջենայից իւրեանց. և զամենայն յայս
իւրեանց խորամոյզ թաղեալ ընդ ծանրութեամբ
նոցին։ Նա ապա դիմեալ Հրեշտակաց 'ի վերայ
նոցա՝ հանել սկսան 'ի վերայ գագաթանց գլխոց
նոցա զմեծամեծ քարաբլրանողակս։ Այոց սաստե-
րացուցեալ զօգն՝ ձմլեցին առհասարակ զամե-
նայն լեգէոնս ապստամբութեան նոցա։ Յորում
վայրի և նոցունց իսկ զէնք յաւէտ իմն ձեռնտու
եղեն յառաւելութիւն ցաւոց նոցա. զի խորտա-
կեալ 'ի մասունս՝ մտին 'ի մարմինս նոցա, և ածին

'ի վերայ զանհնարին վիշտս, և զանձնիշխանապետական հեծութիւնս՝ մինչև զՏէրն բարկացուցանել. սատանայականաց զերծանն նորա 'ի սատանայականէն բանակն՝ անտի, Թէպէտև հողեղէն էին նրբանութեամբ յաւազանոյն, և այժմ թանձրանամարմինք 'ի սակս մեղաց[22]: Նաւցեալքն 'ի նոցանէ դիմեցին բառ օրինակի հրեշտակաց 'ի նոյնատիպ գէնս, և խաբեցին յարմատոց զմերձակայ երկինսն: Նա որոց երկինք ընդառաջ ելանէին երկնից յօգս՝ ընկեցեալ յերկրացուցոց կողմանց անհնարին սատակութեամբ. մինչև յաղթեցին առաւելի անդ մարտնչել նոցա ընդ երկիրս: Ո՜վ անդնդական թագաւորն. առ ղըղորդմամբ նորին մարտն թուէր խաղ հանդարտայունարձ: Յարեաւ յայնժամ խռովութիւն 'ի վերայ խռովութեան. և համօրէն երկինք հասեալ կային յապականութիւն, և համբերձեալ էին ծածկել ընդ անհնարին կործանմամբ, եթէ Հայրն ամենակալ՝ որ նստէր անեղեական յանքոյթ խորանի անդ սրբութեան երկնից, և 'ի միտ առեալ զվախճան ամենայնի, և կանխագէտ զալով խռովութեանն՝ թոյլ տուեալ էր նմին, ոչ էր կամեցեալ տալ կատարումն վերին խորհրդոց իւրումն կամաց. այն է՝ բարձրացուցանել զՈրդի իւր զօծեալ վրէժխնդրութեամբ նորին 'ի թշնամեաց անտի. և ցուցանել զիշխանութիւնն տըւեալ նմին 'ի վերայ ամենայնի: Նա որոց և զայս օրինակ սկսաւ խօսել ընդ աթոռակից Որդւոյ իւրում: . . . ...

Ողորմածն փառացս՝ Որդեակ սիրելի, յորոյ 'ի դէմս փայլէ Աստուածութիւնն իմ աներևութելի. և զահակից ամենակալ զօրութիւնն՝ յորոյ 'ի ձեռս

են ամենայն վճիռք իմ ։ Ա՛հա անցին երկու աւուրք ըստ հաշուին երկնից յորմէհետէ չոգան Միքայէլ և զօրութիւնք նորա 'ի նուաճել զապստամբսն ։ Մարտ նոցա՝ որպէս և կարծելի իսկ էր, գտաւ կարի ցաւագին՝ 'ի պատահել անդ ընդ միմեանս երկոցունց հզօր և սպառազէն Թշնամեաց ։ Ո՛վ է ես Թողի զնոսա 'ի կամս ազատութեան իւրեանց ։ Եւ դու ինքնին գիտես, զի յարարչութեան անդստեղծման նոքա զուգահաւասար միմեանց. և միայն մեղքն կացոյց զնոսա անհաւասարս. և այն՝ սակաւուք ևեթ, զի դեռ ոչ աճի 'ի վերայ նոցա զդատակնիք պատուհասին ։ յոր սակս հարկ է նոցա ունել զանվախճան պատերազմ ընդ միմեանս ։ Մարտն բազմավտանգ՝ զոր կարողն էր առնել, արար. այլ նոցա Թողեալ զանձս զայրագին սրտմտութեան՝ զինեցան լերամբք իբրև զինուք. որովք և զանհնարին աղէտս գործեցին յերկինս 'ի փոխ հասարակաց ։ Արդ՝ անցին երկու աւուրք, և երրորդն մնայ քեզ ։ 'Ի քո սակս Թողի զայն, և ժուժկալեցի ընդերկար, զի պարծանք կատարածի ահագին մարտի լցցի քո. քանզի ոչ ոք բաց 'ի քէն կարող է վախճան տալ նմին ։ Եդի 'ի քեզ [23] զզօրութիւն և զշնորհս անսահման առատութեամբ, զի ամենեքին յերկինս և 'ի դժոխս ծանիցեն զմեծութիւն քո անզուգական ։ Որով և տեղի տուեալ խռովութեան՝ դու միայն քարոզեսցես արժանաւոր ժառանգ և Թագաւոր ըստ իրաւանց քումդ օծութեան ։ Արդ՝ գնա Ամենակալդ զօրութեամբ Հօր քո ։ Կազմեաց 'ի կառս իմ, և ուղղեա զերագընԹաց անիւս նոցա՝ որք սասանեցուցանեն զհիմունս երկնից ։ Ա՛ղեա զպա

տերազմունս իմ։ Ա՛ծ ընդ մէջ քո զաղեղն իմ և զշանթս՝ զզէնսն ամենազօր, և զազդերբդ զսու-սերն իմ զօրաւոր։ Հալածեալ վանեա զորդիս խաւարի. և վտարեա զնոսա 'ի սահմանաց երկնից յանդունդս խորոց. զի ուսցին անդանօր՝ որպէս կամք են նոցա, անգոսնել զԱստուած, և զՈրդի նորա զՕծեալ արքայ։

Զայսօրինակ բարբառեցաւ նա. և յարձակ-մանէ ճառագայթիցն ողջոյն արտափայլեալ ցու-ցաւ յՈրդի իւր։ Իսկ նա համբուն եցոյց յին-քեան զՀայր իւր, ընկալեալ զնա 'ի դէմս իւր անճառապէս։ Որ և խօսեցաւ ընդ նմա օրինակ զայս։

Ո՛վ Հայր անսկիզբն, ամենասուրբ, ամենագո-վելդ և բարձրագոյն քան զաթոռս երկնից, դու 'ի խնդիր ես միշտ փառաւորել զՈրդի քո, որպէս և ես զքեզ ըստ արժանեացդ։ Այն են իմ պար-ծանք, մեծութիւն և բերկրութիւն՝ զի հաճեալ քո ընդ իս, ծանուցես զլրումն կամաց քոց՝ որ է երանութիւն իմ լիապատար։ Ընդունիմ զգա-ւազանդ և զիշխանութիւնդ՝ զոր տաս ինձ. և բազում հաճութեամբ դարձուցից զայն անդրէն առ քեզ, յորժամ լիցիս դու ամենայն յամենայ-նի. և ես եղէց 'ի քեզ յաւիտեան. և յիս ամե-նեքին՝ զորս դու սիրեցեր[24]։ Արդ՝ գոլով իմ պատկեր քո ըստ ամենայնի, ատեցից զթշնամիս քո, և ցուցից առ նոսա՝ որպէս զքաղցրութիւնդ, նոյնպէս և զահ քո։ Եւ սպառազինեալ անյա-պաղ զօրութեամբ քով՝ սրբեցից զերկինս յապս-տամբացդ. և վտարեցից զնոսա 'ի պատրաստեալ բնակութիւն իւրեանց չարաչուք, 'ի կապանս խա-

կանոց ։ Յառաջեաց նա 'ի խուժս Սրբոց բիւրաւորաց. և զալուստ նորա յառաջագոյն ցուցաւ 'ի բացուստ ։ Բիւրապատիկ կառք Աստուծոյ (լուայ զԹիւ նոցա) երևեցան յաջմէ և յահեկէ նորա հաւասար բաժանմամբ ։ Սլացաւ նա 'ի Թևս Քերովբէից ... Բայց զառաջինն յանդիմանն ցուցանէ աչաց իւրայոցն ։ Զորս կալեալ խնդութեան անպատմելի՝ 'ի տեսանել անոր, պայծառագոյն նշանն Օծելոյն վերամբարձեալ 'ի հրեշտակաց ։ Իսկ Միքայէլ անդէն փութանակի եած ընդ հրամաննատարութեամբ նորա զզօրս իւր. որք սփռեցան յերկոսին Թևս նորա՝ համախմբեալ ընդ գլխով իւրեանց ։ Յայնժամ զօրութիւն աստուածային հորդեաց զճանապարհ առաջի նորա ։ Լերինք՝ որք խլեալ արմատաքի անկեալ կային զճանապարհայն, ունկնդիր լեալ ձայնի հրամանաց նորա՝ մեկնեցան յիւրաքանչիւր տեղիս ։ Երկինք նորոգեցին զցանկալի երեսս իւրեանց, և բլուրք և հովիտք խայտացին նորաբողբոջ ծաղկամբք ։ Տեսին զնա չուառականն Թշնամիք նորա. սակայն տակաւին յամառեալ՝ գումարեցին զխմբատակորոյս զօրս իւրեանց 'ի մարտ ապստամբութեան, ընկալեալ զյոյս յանյուսութենէ իւրեանց ։ ՄիԹէ հնա՞ր էր այնպիսի խոտորնակութեան ունել զտեղի յերկնայինն հոգիս ։ Բայց որպիսի՞ նշանաց մարթ է խոնարհեցուցանել զամբարտաւանն. կամ որպիսի՞ սքանչելեաց մեղմացուցանել զխստասիրտն ։ Որով արժան էր նոցա մեղմանալ, առաւել ևս խստացան ։ Զչարեաւ նոցա ընդ յանդիման տեսիլ փառաց նորա՝ նախանձաբեկ զտան յանձինս. և Թեկն ածեալ բարձրագոյն աստիճա

նի նորա՝ սատակագոյն եւս ճակատեցան ՚ի մարտ. կարծեցեալ յանձինս զտանել զյաղթութիւնս զօրութեամբ իւրեանց, կամ զաւաճանութեամբ. և այնպէս ըռնանայր ՚ի վերայ Աստուծոյ, և Օծելոյ նորա. և կամ խոյսս անկանել ՚ի վերջին կործանումն: Նաև որոյ և արհամարհեալ զգթութիւն, կամ զերկայնամտութիւն ընդ երկար՝ յանդուգն դիմադրաւ եդեալ զանձինս ՚ի մարտ: Յայնժամ վայրի միածին Որդին Աստուծոյ զայս օրինակ խօսեցաւ ընդ զօրս իւր՝ որք կային յաջմէ նորա և յահեկէ.

Կացէք Սուրբք տակաւին ՚ի պայծառափայլ ճակատ ձեր. կացէք հրեշտակք սպառազինեալ ատանօր. և մի եւս տայք այսօր զանձինս ձեր ՚ի պատերազմ: Պնդութիւնք քաջաբար մրցանաց ձերոց ՚ի դաշտի անդ արդարութեան՝ հաւատարիմ գտան, և հաճոյ Աստուծոյ: Որպէս ընկալայք, նոյնպէս ցուցիք յանձինս զքաջութիւն յաղթութեան: Այլ պատիժ պատուհասի խուժանիդ նզովելոյ սպասեալ մնայ այլում ձեռին: Նորա է վրէժխնդրութիւնն, և կամ նորա միայնոյ՝ որում եւ նա: Ի մրցանս այսր աւուր չէին պէտք բազմութեան: Կացէք դուք ատանօր, և տեսէք զբարկութիւնն Աստուծոյ հեղեալ իսկ ՚ի վերայ ամպարշտացդ: Ոչ զձեզ անարգեցին նոքա, այլ զիս՝ որ տակաւին նախանձելի եմ յաչս նոցա: Ընդդէմ իմ կարգեալ է ամենայն սրտմտութիւն նոցա, փոխանակ զի հայրն յաւիտենական՝ որում վայել է գերագահ արքայութիւն, և զօրութիւն, և փառք յերկինս, պատուեաց զիս ըստ հաճութեան կամաց իւրոց: Նա ինքն

յանձնեաց 'ի ձեռս իմ զզուարճալիսն նոցա : Զի ըստ ցանկութեան խորեանց մարտուցեալ ընդ իս 'ի հանդէս մարտի՝ ծանիցեն, թէ ո՞ է հզօրագոյն, նոքա՞ ամենեքին 'ի միասին, եթէ ես միայնակ ընդդէմ նոցա : Զի նոքա զամենայն ինչ չափեն ըստ զօրութեան եւեթ . և չունին ինչ փոյթ զայլմէ առաւելութենէ գերազանցելոյն զնոքօք : Նաև որոյ և ես 'ի փորձ քաջութեան միայն զինքանիմ առ նոսա :

Զայսօրինակ բարբառեալ Որդւոյն՝ դարձոյց զաջս իւր յահագնահայեաց տեսիլ, և էարկ սրտմտութեամբ 'ի վերայ թշնամեացն . Յայնժամ փութանակի տարածեցին քառադէմքն զաստեղազարդ թևս իւրեանց յահեղ հովանաւորութիւն . և թաւալեցուցին զանհագին անիւս կառաց նորա, 'ի հնչիւն իբրև հոսանաց ջուրց, կամ բազմամբոխ զօրաց : Դիմեաց նա շեշտակի 'ի վերայ անօրէն թշնամեաց իւրոց իբրև 'ի վերայ խաւարամած գիշերոյ : Ընդ փայլակնացայտ անուօք կառաց նորա հաստարմատ երկինք առհասարակ սասանեցան՝ բաց յաթոռոյն Աստուծոյ : Ահա նա փութանակի առ նոսա՝ զինեալ զաջ իւր բիւրաւոր կայծակամբք . զորս և արձակեաց 'ի հեռաստանէ՝ եհար զնոսա սրածութեամբ [28] : Յորմէ ահաբեկեալ նոցա՝ անդէն կորուսին զզօրութիւն իւրեանց, և լքան կործանեցան : Իսկ նա եանց կառօք 'ի վերայ վահանաց, սաղաւարտից և սաղաւարտակիր գլխոց Աթոռոց և քաջամարտիկ Սրովբէից տապաստ անկելոց . որք 'ի նմին ժամու ցանկային վերստին անկանելոյ լերանց 'ի վերայ գլխոց նոցա՝ առ 'ի լինել հովանի յերեսաց բար-

մունս նոցա , և քաղջապնդեալ անպաւծանելի ։ Ա՛ն- կան նոքա յերկնից աւուրս ինն 29 ։ Մ՚ռնչեաց Վիհն ընդ կործանումն նոցա , զի եւանես յայնժամ տասնապատիկ խառնակութիւն ՚ի համատարած անիշխանութեան իւրում ։ Ա՛հա այսպիսի կործա- նումն և խառնակութիւն եկից զնոսա ։ Բացեալ ապա դժոխոց զբերանս իւրեանց՝ ընկալան զնոսա միա- հաղոյն , և փակեցան վերստին․ դժոխքն տուեալ լցեալ անշէջ հրով , տուն վշտաց և տանջանաց , և արժանի բնակութիւն նոցին ․ Ազատեալ յայն- ժամ երկինք ՚ի նոցանէ՝ ուրախ եղեն յանձինս․ և անդրէն կարկատեցին զխրամատութիւն պարս- պի իւրեանց՝ ուստի ՚ի բաց թափեցան ։ Եւ Օծեալն յաղթող ինքնին՝ դարձոյց զյաղթականա- կառս իւր ՚ի պնդելոյ զհետ թշնամեաց ։ Յայն- ժամ ելին ընդ առաջ նորա յօբելինաւ ամենայն Սուրբք նորա՝ որք լռելեայն ականատեսք կային ամենազօր քաջութեան նորա ։ ՚Ի չուել նոցա ընդ հովանեաւ ոստոց արմաւենեաց՝ իւրաքանչիւր պայ- ծառափայլ դասք նուագեցին զերգս յաղթանա- կաց նորա ․ և զնա երգաբանեցին Յաղթող Ար- քայ , Որդի , Ժառանգ և Տէր ․ և ըստ իշխանութեանն միայն արժանաւոր ՚ի թագաւո- րել ։ Օ՜ այսօրինակ բարեբանեալ ՚ի նոցանէ ընդ երկայնութիւն երկնից՝ էանց յաղթանակաւ ՚ի տա- ճար անդր Հօր իւրոյ ամենակալի՝ բարձրելոյն յա- թոռ բարձրութեան ․ որ և ընկալաւ զնա ՚ի փառ- սըն՝ ուր արդ նստի ընդ աջմէ երանութեան 30 ։

Ա՛հա սոքին օրինակաւ ՚ի համեմատութիւն բե- րեալ զերկնաւորս ընդ երկրաւորացդ՝ ծանուցի քեզ ՚ի խնդրոյ քումմէ զանցս , զորս թերևս տը-

ժամն էր ծածկել 'ի մարդկանէ , զի լինիցիս քեզ 'ի զգուշութիւն ։ Զապստամբութիւնն ասեմ , և զպատերազմն 'ի մէջ հրեշտակային զօրութեանց . և զխորասոյզ կործանումն զխորոխտացելոցն՝ որք գլուխ ամբարձին ընդ Սատանայի ։ Որ և արդ նախանձեալ ընդ վիճակ քո՝ զամենայն հնարս հնարի առ'ի խոտորեցուցանել և զքեզ 'ի հնազանդութենէ անտի . զի անկեալ յերանութենէ՝ բաժանորդ լիցիս ընդ նմա պատժոյ նորա՝ որ է թըշուառութիւնն յաւիտենական ։ Եւ ունել նորա զքեզ ընկեր աղիտից իւրոց՝ հանդերձեալ է լինել միակ մխիթարութիւն նորա , և քէն վրիժուց՝ իբրև 'ի նախատինս Բարձրելոյն ։ Արդ՝ զգոյշ լեր 'ի փորձանաց նորա . և զգուշացո՛ ևս զՕգնականն քո՝ որ է տկարագոյն քան զքեզ ։ Տուր անցից սոսկալի հատուցման անհնազանդութեանն լիցի քեզ 'ի խրատ ։ Մարթ էր նոցա կալ հաստատուն , բայց անկան ։ Յիշեա́ զայն , և երկի՛ր 'ի պատուիրանազանցութենէ [31] ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Դարձեալ 'ի խնդրոյ Ադամայ պատմէ Ռափայէլ, թէ զիա՞րդ, և յո՞յր սակս ստեղծաւ աշխարհ 'ի սկզբանէ. և թէ՝ զիա՞րդ Աստուած զկնի տարամերժելոյ յերկնից զՍատանայ և զհրեշտակս նորա՝ յայտնեաց զկամս իւր ընդ արարչութիւն նորոյ աշխարհի, և արարածոց 'ի նմա: Առաքէ նա զՈրդի իւր փառօք և սպասաւորութեամբ Հրեշտակաց 'ի վեցօրեայ արարչութիւն: Երգաբանեն Հրեշտակք զկատարումն նորին, և զանդրէն դարձ Որդւոյն յերկինս:

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

## ԳԻՐՔ Է։

Ի՛ջ յերկնից Ուրանիա[1], եթէ լուսաւմբք կոչիս յայդ անուն. զի զկնի աստուածային ձայնիդ խաղացայ ես 'ի վերոյ քան զլեառն Ողիմպիական[2] անդր քան զթռիչս Պեգասեան[3] թեւոց։ Սակայն զմիտս քո, եւ ոչ զանուանդ կարդամ յօգնականութիւն. զի դու ոչ ես իններորդն 'ի Մուսայս[4], եւ ոչ 'ի գագաթան բնակես նախնոյն Ողիմպիայ[5]. այլ երկնածին գոլով մինչչեւ էր երեւեալ լերանց, կամ բղխեալ աղբերաց ջուրց, կայիր ընդ յաւիտենական իմաստութեան ընդ քուերդ հարազատի. եւ խնդայիր ընդ նմա առաջի Հօրն ամենակալի՝ որ հաճեցաւ ընդ երգ քո երկնային[6]։ Քեւ առաջնորդեալ 'ի վեր օտարս երկրային՝ համարձակեցայ մտանել յերկինս երկնից. եւ անդ ծծեցի զօդն եթերական բարեխառնեալ 'ի քէն[7]։ Եւ արդ նովին աներկեւան առաջնորդութեամբ դարձո զիս անդրէն 'ի խոնարհ 'ի տարրն իմ բնական[8]. գուցէ 'ի վայր ընկեցեալ 'ի թեւաւոր, յօդապարիկ եւ յանսանձ երիվարէն[9] որպէս երբեմն Բե-

զերեփոն [10] 'ի ստորին նահանգէ, անկանիցիմ 'ի դաշտն Եզեյեան [11] . և անդ մոլորեալ շրջիցիմ առանց օգնականի ։ Զի տակաւին կէսն երգոցս մնաց աներգ, թէպէտև անձկագոյնս սահմանեալ յերևելի պարունակին օրակն [12] ։ Քանզի կացեալ յերկրի, և ոչ անդր քան զաւեռն [13] սլացեալ՝ երգեմ յաւէտ աներկեան 'ի ձայն մահկանացուացս՝ ոչ կերկերեալ, և ոչ անմռունչ, թէպէտև վրիժակեալ աւուր չարի, և լեզուաց չարաց [14] . և պաշարեալ յերեսաց վտանգաց 'ի խաւարի անդ, և յամայութեան 'ի մարդկանէ [15] ։ Սակայն ոչ եմ միայն յայց առնել քո ի մնում գիշերային հանդստեան, և 'ի ծիրանազգեստ զարդարել առաւօտու զերս արևու ։ Արդ՝ ով Ուրանիա՝ դու ինքնին յարմարեա զնուագս իմ, և գիտ զունկնդիրս բատ արժանեաց՝ թէպէտև նուազունս ։ Այլ 'ի բաց արա զխժդժական և զխառնաձայն աղաղակն Դիոնիսեայ [16], և զխրախճանակցաց նորա, զվայրագ ասեմ խուժանին՝ որք գիշատեցին 'ի Հռոդոպէ [17] զնախնի բանաստեղծն Թրակեան [18] . ուր անտառք և քարաժայռք կային յունկնդրութիւն՝ զմայլեալք ընդ քաղցրութիւն երգոց նորա . մինչև աղաղակն խուժադուժ հեղձոյց միանգամայն զքնար նորա և զձայն ։ Եւ Մուսայն [19] չեղև ձեռնհաս հասանել յօգնութիւն իւրում որդւոյ ։ Արդ՝ մի թողուր սովին օրինակաւ զաղերսարկուս առ քեզ . զի դու ես երկնային, իսկ նա երազ մնոտեաց [20] ։

Այլ ասա՝ Աստուածուհիդ զորս են ըստ կարգի՝ զկնի զգուշացուցանելոյ Ռափայելի մարդասէր հրեշտակի զԱդամ սոսկալի օրինականն որ

էանց յերկինս ընդ ապստամբսն, անձնապաստ լինել յանհնազանդութենէ, գուցէ զնմանն բերցեն յանձինս 'ի դրախտի անդ Ադամ և որդիքն նորա՝ որոց տուաւ հրաման չմերձենալ 'ի ծառն արգելեալ, յանցանել անդ և 'ի ստունգանել միոյ միայնոյ պատուիրանին՝ որ էր այնչափ դիւրատար յիշխանութեան անդ ընտրութեան այլ ամենայն ճաշակաց ըստ քմաց:

Նաև Ադամ մտադիւր ընդ կողակցի իւրում Եւայի զպատմութիւն հրեշտակին. և լուաւ հիացմամբ և խորին խորհրդով 'ի լսել անդ զայնպիսի ահագին անցս 'ի վեր քան զմիտս իւր. որպիսի էր թշնամութիւնն յերկինս, և մարտ պատերազմի անհնարին խռովութեամբ առընթեր խաղաղութեանն Աստուծոյ յերանութեան անդ: Բայց չարիքն 'ի բաց մերժեալ անտի փութանակի՝ յորդեալ զեղեալ էին 'ի վերայ նոցա, յորոց ընկալեալ էին զծագումն. զի անհնար էր նոցին կալ ընդ երանութեան: Վասն որոյ և Ադամ եբարձ 'ի մտաց իւրոց զտարակուսանսն՝ զոր ունէր ընդ այն: Իսկ ապա անմեղ գոլով տակաւին, ձգեալ 'ի տենչանաց անտի գիտելոյ զորս 'ի մօտոյ հայէին 'ի նա, այսինքն է՝ թէ զիարդ ստեղծաւ զառաջինն երևելի աշխարհս, յորում ժամանակի, յումմէ, և յոյր սակս. և զինչ ինչ գործեցան 'ի ներքս կամ արտաքոյ Եդեմայ յառաջ քան զժամանակ իւր. որպէս ոք՝ որ տակաւին անշէջ ունելով ըղպապաքումն իւր, արձակէ զաչս 'ի հոսանս գետոյն՝ որոյ կարկաջահոս ձայնք յաւէտ ևս զարթուցանեն զծարաւ նորա, այնպէս սկսաւ նա հարցանել զհիւր իւր երկնային սովլին բանիւ:

Օ մեծամեծս, զզարմանալիս մերոց լսելեաց, և զկարի իմն օտարոտիս յաշխարհէ աստի ծանուցեր մեզ Թարգմանդ աստուածային՝ առաքեալ շնորհօք 'ի հրեղէն երկնից 'ի խոնարհ ազդ առնել մեզ յառաջագոյն զայնմանէ՝ որ անծանօթ գոլով առ 'ի մէնջ, և անդր քան զմարդկայինս գիտութիւն, մարթ էր նմա թերևս պատճառ լինել մերումս կորստեան: Նմին իրի յաւերժական շնորհս խոստովանիմք վերնախնամ բարութեանն. և զազդեցութիւն նորա ընդունիմք հաստատութեամբ մտաց՝ առ 'ի կարող լինելոյ պահել անշարժ զվերին կամն նորա, որ է նպատակ մերումս կենաց: Այլ քանզի 'ի վարդապետութիւն մեր հաճեցար մարդասիրապէս հաղորդել մեզ զդէպ 'ի վերոյս մտաց երկրաւորաց, բայց ընդ նմին և կարևորս մերումս գիտութեան՝ որպէս կամք եղեն վերին իմաստութեանն, արդ՝ հաճեա՛ց իջանել 'ի խոնարհագոյնս, և պատմել մեզ զորս թերևս առաւել պիտանի են մերումս գիտութեան, թէ զիա՞րդ եղեն 'ի սկզբանէ երկինք՝ [21] զոր տեսանեմք այնչափ 'ի բացեայ 'ի մէնջ, և պճնազարդեալ անթիւ բազմութեամբ լուսաւորացն՝ որք շարժին: Նոյնպէս և օդս շրջապատ, որ համայնածաւալ սփռեալ, և փարեալ զծաղկազուարճ երկրաւս՝ տեղի տայ, և ընու զամենայն վայրս: Յումմէ՞ շարժեցաւ Արարիչն 'ի սրբութեան անդ իւրումն յաւերժական հանգստեան յօրինել անագան ուրեմն զշինուածս 'ի Վհի անդ խառնակութեան [22]. և զիա՞րդ շինութիւնն եառ փութանակի զվախճան: Միայն թէ չիցէ քեզ արգելեալ յայտնութիւն սոցին. զոր հարցանեմք մեք՝ ոչ 'ի հետազօտու-

թիւն գաղտնեաց յաւիտենական իշխանութեան նորա, այլ յառաւելութիւն փառաց նորա ըստ չափոյ մերում գիտութեան ։ Եւ երկայնութիւն լուսոյ տունջեանս՝ թէպէտև յէջս է 'ի խոնարհ, սակայն տակաւին ունի հատանել զերկայնաձիգ ընթացս ճանապարհի ։ Որ և անսացեալ քում հրամանի՝ կացցէ կախեալ ընդ երկինս. և անագանեսցի ընդ երկար առ 'ի լսել 'ի քէն զպատմութիւն իւրումն ծննդեան, և զծագման արարածոց 'ի խորոց անտի աներևութից ։ Ապա եթէ աստղն երեկոյի [23] և լուսինն փութասցին յունկնդրութիւն բանից քոց, գիշերն ընդ իւր ածցէ զլռութիւնն. և քնոյն անսացեալ քեզ՝ կացցէ յարթմնի, և մեզ իսկ մարթ է հրաման տալ նմին մեկնիլ 'ի բաց մինչև ցաւարտումն երգոյդ ։ Եւ այնպէս ապա թողցուք զքեզ՝ մինչև է ծագեալ առաւօտու ։

Զայսօրինակ աղաչեաց Ադամ զՀիւր իւր մեծարու ։ Եւ Հրեշտակն աստուածատիպ ետ նմա քաղցրութեամբ զայս պատասխանի ։ Ընկալ և զայդ ևս քո խնդիր՝ զոր հարցեր զգուշութեամբ ։ Այլ ո՞ր բան կամ լեզու սրովբէական բաւական իցէ 'ի պատմել զգործս Ամենակալին, և ո՞ր միտք մարդոյ 'ի հասանել ։ Սակայն ոչ արգելցի 'ի լսելեաց քոց որ ինչ միանգամ դիւրահասն է քեզ, և ձեռնտու 'ի փառաւորութիւն Արարչապետին, և յառաւելութիւն երջանկութեան քում անձին ։ Զայս պատուէր ընկալայ ես 'ի վերուստ, լնուլ զփափաք քում գիտութեան ըստ չափու ։ Արդ՝ զգոյշ լեր 'ի խնդրելոյ զառաւելագոյնն, և մի խոստանար քում իմաստութեան զանյայտիցն

զյոյս՝ զօրս աներևոյթ և միայն ամենիմաստ արքայն երկնից Թագոյց 'ի գիշերի [24] . և ոչ հաղորդեաց ումեք յերկրի կամ յերկինս ։ Սակայն և այնպէս զըստ բաւականին եթող քեզ խնդրել և իմանալ ։ Բայց գիտութիւնն կերակուր իմն է, և պէտս ունի ոչ փոքու բարեխառնութեան իւրումն ախորժակի 'ի գիտել անդ և 'ի չափել՝ թէ զինչ ինչ մարթ է մտացն տանել անվնաս ։ Ապա թէ ոչ՝ անչափութիւնն ծանրացուցանէ զնա , և իմաստութիւնն վաղվաղակի փոխի յանմտութիւն՝ որպէս կերակուրն 'ի փուքս ։

Արդ՝ ծանիր ։ Զկնի անկանելոյ յերկնից Արուսեկին [25] ( յայս անուն կոչեալ զնա՝ որ երբեմն առաւել պայծառ էր 'ի զօրս հրեշտակաց քան զայդ աստղ 'ի մէջ լուսաւորաց) բոցանշոյլ լեգէոնօքն համդերձ 'ի պատրաստեալ տեղի իւր յանդունդս , և զկնի վերստին դարձի Աստուածորդւոյն առ Հայր իւր յաղթականօքն Սրբովք՝ ետես Ամենակալ յաւիտենականն զբազմութիւն նոցա յաթոռոյ իւրմէ . և զայսօրինակ խօսեցաւ ընդ Որդւոյ իւրում միածնի ։

Ապաքէն վրիպեալ գտաւ նախանձաբեկ Թշնամին՝ որ ապստամբս համարէր զամենեսին ըստ իւրումն օրինակի ։ Յդեալ էր նորա 'ի մտի նոցունց օգնականութեամբ առնուլ զայս բարձրագոյն դղղեակ անմատոյց՝ զաթոռ աստուածութեանս , և ընկենուլ զմեզ աստի ։ Վասն որոյ և պատրեալ էարկ ընդ իւր 'ի կործանումն զբազումս՝ որոց տեղիք թափուր մնացին աստանօր ։ Սակայն տակաւին տեսանեմ զառաւելագոյն մասն 'ի նոցանէ ունել զկայանս իւրեանց ։ Երկինք տակաւին լի են

բնակչօք, և ունին զբազմութիւն ըստ բաւականին առ ունելոյ զթագաւորութիւն իւրեանց՝ թէպէտև ընդարձակագոյն սահմանաւ, և մատչել ստէպ յայս տաճար բարձրութեան ՚ի հանդէս պաշտաման ըստ օրինի։ Այլ զի մի բարձրասցի սիրտ թշնամւոյն ընդ փառսն՝ զոր արար, և անմտութեան խորհրդով կարծիցէ, թէ ամայի կացուցեալ իցէ զերկինս ՚ի բնակչաց անտի, կամիմ դարման մատուցանել փառսուն. և այդ լցի ՚ի նախատինս կորուսելոյն ինքնին։ Արարչագործեցից միւս ևս աշխարհ, և հանից զբազմութիւն սերնդոց ՚ի միոյ մարդոյ առ ՚ի բնակել ՚ի նմա, և ոչ աստանօր։ Մինչև եղեալ նոցա ընդ աստիճանս ճգնութեանց, և ընտիր գտեալ յերկարաժամանակեայ հանդիսի հնազանդութեան՝ բացցեն ապա զճանապարհ իւրեանց ՚ի բարձունս։ Եւ յայնժամ երկիր փոխեսցի յերկինս, և երկինք յերկիր. և գտցի մի թագաւորութիւն, խնդութիւն և միաբանութիւն անվախճան։ Մինչև ցայն վայր Զօրութիւնքդ երկնից բնակեցէք դուք յընդարձակութեան անդ սահմանաց ձերոց։ Իսկ դու Բանդ իմ և Միածին Որդի՝ քև կատարեսցից զայդ ամենայն։ Ասաց, և եղիցին։ Զհոգի իմ հովանաւոր, և զզօրութիւն իմ առաքեցից ընդ քեզ [26]։ Երթ, և հրամա՛ն տուր անսահման անդնդոց, զի յառանձին սահմանս նորա լցին երկինք և երկիր. զի ես եմ որ լնում զանբաւութիւնն, և չիք տեղի թափուր յինէն. թէպէտև մեկուսացեալ անպարագրելի անձամբս՝ ոչ ցուցանեմ զինքնիշխան բարութիւնն իմ։ Հարկ և դիպուած չունին առ իս զտեղի. և կամքն իմ է գործ կատարեալ։

Զայսօրինակ բարբառեցաւ Ամենակալն . և Բան նորա Աստուածորդին յաւել զարդիւնս ընդ բանս նորա ։ Զի միասնական են գործքն Աստուծոյ, և երագագոյն քան զժամանակ և զշարժումն . բայց անհնար է նոցա անցանել ընդ լսելիս մարդոյ առանց կարգի բանից պատմութեան, և այն՝ ըստ տանելոյ մտաց երկրաւորաց ։ Հանդէս ուրախութեան, և խնդութիւն մեծ ցուցաւ յերկինս՝ այն ինչ սովլին օրինակաւ ծանուցաւ երկնաւորաց յայտնութիւն կամաց Բարձրելոյն ։ Փառս երգեցին նմա ՚ի բարձունս, հաշտութիւն ընդ հանդերձեալ ծնունդս մարդկան, և խաղաղութիւն ՚ի բնակութեան նոցա [27] ։ Փառս նմա՝ որ արդարադատ վրէժխնդրութեամբ մերժեաց զամբարիշտս յերեսաց իւրոց, և ՚ի բնակութեանց արդարոց ։ Փառս և օրհնութիւնս նմա՝ որ իմաստութեամբ իւրով սահմանեաց յառաջ ածել զբարիս ՚ի չարեաց անտի . և փոխանակ հոգւոցն չարաց կարգել ՚ի Թափուր տեղիս նոցա զընտիր ծնունդս մարդկան . և սփռել զբարութիւն իւր ընդ աշխարհս, և ընդ դարս անվախճանս ։

Զայսօրինակ երգեցին քահանայապետութիւնք Հրեշտակաց ։ Յայնմ վայրի հանդերձեցաւ Որդին Աստուծոյ յարարչութիւնն մեծահրաշ՝ ածեալ ընդ մէջ զամենակալ զօրութիւնն, և լուսաճաճանչ պսակեալ աստուածային մեծվայելչութեամբ ։ Իմաստութիւն և սէր անսահման, և Հայր նորա գլխովին արտափայլեալ ցուցան յերեսս նորա ։ Զեղան պատեցան զկառօք նորա անհամար բազմութիւնք Քրովբէից և Սերովբէից, Իշխանութեանց և Աթոռոց և Զօրութեանց՝

հոգւոց թեւազգեստից, և կառաց թեւակրաց 'ի զինարանէն Աստուծոյ՝ յորում կային բիւրաւորք ամբարեալք 'ի յաւիտենից ընդ մէջ երկոցունց պղնձի լերանց՝ [28] կազմ և պատրաստական երկնային համդերձանօք 'ի սակս աւուրն երևելւոյ։ Յառաջ խաղացին նոքա ինքնաշարժ, զի հոգին յուղարկաւոր Տեառն իւրեանց կենդանի էր 'ի նոսա։ Եւ երկինք բացին լայնարձակ զյաւիտենական դրունս իւրեանց՝ որք հնչեցուցանէին ըղձայն երաժշտական 'ի վերայ ոսկեղէն ծղխնեաց. և ետուն անցս Թագաւորին փառաց՝ որ 'ի բան զօրութեան իւրոյ և 'ի հոգի՝ երթայր յարարչութիւն նորոյ աշխարհի։ Հասեալ նոցա 'ի սահմանս երկնից՝ զկայ առին անդանօր. և տեսին յեզերաց անտի զանչափութիւն համատարած անդնդոցն՝ [29] որ էր իբրև զծով ապականագործ, խաւարամած, ահարկու և ամեհի։ Ի յատակէ իւրմէ շրջեալ կայր 'ի վեր անհնարին հողմոցն բռնութեամբ. և բարձրացեալ 'ի լեռնաձև կոհակս՝ կամէր յարձակիլ 'ի բարձունս երկնից, և խառնակել զբևեռն ընդ կենդրոնի։

Դադարեսջիք՝ ասաց յայնժամ Բանն ամենաստեղծ, ամբոխեալ ալիքդ, և անդնդքդ հանդարտեալ՝ վախճան տուք ձերումդ խռովութեան։ Բայց ոչ զտեղի էառ անդէն, այլ ամբարձեալ 'ի թևս Քերովբէից՝ դիմեաց հայրական կառօք 'ի խորս Քաոսի, և անծին աշխարհի [30]։ Եւ համօրէն սպասահարկուք նորա պայծառափայլ հանդիսիւ չոգան զկնի նորա 'ի տեսիլ արարչագործութեան, և սքանչելեաց զօրութեան նորա։ Եւ անդ կանգնեցան կացին եռանդագին անիւք կառաց նորա։

Եւ նա էառ 'ի ձեռն իւրում զկարկինն ոսկի՝ որ էր պատրաստեալ 'ի մշտնջենաւոր շտեմարանին Աստուծոյ, առ 'ի գծագրել նովաւ զընդհանուր տիեզերս, և զհամօրէն արարածս ։ Զմի ոտն նորա հաստատեաց 'ի կենդրոնի, և զմիւսն շրջաբերեալ զլայնածաւալ խորութեամբ խաւարի՝[31] ասաց․ Յայս վայր ո՛վ աշխարհ ձգեսցի ընդարձակութիւն քո․ այս լիցին քո սահմանք, և այս շըրջապատ քո արդարաչափ ։ Ահա սովին օրինակաւ արար Աստուած զերկինս, նոյնպէս և զերկիր անկերպարան և անզարդ․ զի խաւար խոր ծածկէր յայնժամ զանդունդս ։ Այլ Հոգին Աստուծոյ տարածեալ զտածողական թևս իւր 'ի վերայ ջուրցն հանդարտութեան, և հեղեալ զկենդանական զօրութիւն իւր և զջերմութիւն 'ի զանգուածըն ողջոյն հոսանուտ՝ մղեաց 'ի խոնարհ զցրտագին, զթանձրամած, զտարտարոսական և զմասակար մասունս նորա ։ Եւ ապա ձուլեալ գնտացոյց զնմանիս ընդ միմեանս ։ Իսկ մնացեալ մասունքն խոյս ետուն յայլեայլ տեղիս, և օդն հիւսեցաւ ընդ մէջ նոցա ։ Եւ այնպէս երկիրն 'ի հաւասարակշռութիւն բերեալ՝ կախեցաւ զկենդրոնէ իւրմէ[32] ։

Եւ յայնժամ ասաց Աստուած․ Եղիցի լոյս ։ Եւ ահա՛ անդէն վաղվաղակի ել 'ի խորոց անտի լոյսն եթերական, առաջինն ամենայն արարածոց, և մաքուր գոյացութիւն հինգերորդ ։ Արև՛ անդուտին յելից իւրոց սկսաւ առնել ճանապարհ ընդ խաւարն օդային՝ գնտացեալ յամպ լուսապայծառ, զի դեռ ոչ գոյր արեգակն ։ Եւ եկաց նովին օրինակաւ 'ի տապանակի անդ ամպոյն ։ Եւ ետես

Աստուած զլոյսն, զի բարի էր. և բաժանեաց զայն 'ի ձեռն կիսագնտոյն 'ի խաւարէ անտի։ Եւ կոչեաց զլոյսն տիւ, և զխաւարն գիշեր։ Սովին օրէն նախաւ առաջին օրն եղև երեկոյ և վաղորդայն։ Այլ երկնայնոցն դասք ոչ թողլին զայն առանց երգոց օրհնաբանութեան, զի տեսին զնախկին ծագումն լուսոյն 'ի խաւարէ՝ զօր ծննդեան երկնից և երկրի։ Ի բարձր բարբառ ցնծութեան լցին զկամարն տիեզերական, և 'ի հնչիւն ոսկի քնարաց օրհնեցին զԱստուած, և զարարածս նորա։ Եւ յերգաբանութեան անդ քարոզեցին զՏէր՝ արարիչ առաջին երեկոյի և վաղորդայնի։

Ապա դարձեալ Աստուած. Եղիցի հաստատութիւն 'ի մէջ ջուրց յանջրպետութիւն 'ի միմեանց։ Եւ արար Աստուած զհաստատութիւնն երկնից՝ տարածեալ զայն 'ի հոսանուտ ջինջ և թափանցիկ՝ յօդ տարրական, և սփռեալ շուրջանակի մինչև 'ի վերջին կամարն տիեզերական։ Անջրպետութիւն հաստատուն և աներկևան 'ի բաժանել անդ զվերին ջուրսն 'ի ներքնոց։ Զի որպէս զերկիր, նոյնպէս և զտիեզերս հաստատեաց նա 'ի վերայ հանդարտութեան համատարած ջուրց 'ի բխերեղեանն Ովկիանու [33]։ Եւ մեկնեալ հեռացոյց զնա 'ի խառնակութենէ Ահին [34], դուցէ յարակից սահմանք նորա խանգարեսցեն զկազմութիւն նորա համօրէն։ Եւ կոչեաց զհաստատութիւնն երկին։ Եւ նոյնպէս յերեկոյին և 'ի վաղորդայն երգեցին դասք երկնայնոց զօրն երկրորդ։

Եւ թէպէտ ստեղծեալ էր երկիր, այլ տակաւին իբրև զսաղմն անկերպարան փակեալ յորովայնի ջուրց՝ ոչ երևէր. զի Ովկիանոսն համատա-

րած [35] պատեալ ունէր զամենայն երեսս նորա ։ Բայց ոչ վայրապար, այլ 'ի կակղացուցանել ըզ-գունտ նորա՝ ջերմ և բեղնաւոր հիւթովն իւրով, և 'ի պատրաստել 'ի յղութիւն զմայրն մեծ՝ [36] լցեալ զնա ծննդական խոնաւութեամբ ։ Յայնժամ ասաց Աստուած. Ժողովեսցին ջուրքդ որ 'ի ներքոյ երկնից 'ի տեղի մի, և երևեսցի ցամաքն ։ Եւ ահա անդէն 'ի վեր երևեալ լայնանիստ լերանց՝ կանգնեցան կացին ։ Թիկունք նոցա հոլանի և լայնատարր ամբառնային յամպս. և գագաթունք նոցա ժամանէին 'ի հաստատութիւնն երկնից ։ Այլ ըստ չափոյ բարձրութեանն ստորոտք նոցա սուզեցան 'ի խորս. և յօրինեցին լայն և ընդարձակ խորխորատ 'ի քաջադէպ ընդունարան ջուրց ։ Որք և անդէն վաղվաղակի դիմեցին անդր խնդագին հոսանօք, հոլովեալ իբրև զշիթս գընտակացեալ 'ի վերայ հողոյ ։ Յորոց և մասն ինչ առ ուժգին յարձակմանն ամբարձաւ 'ի բիւրեղեան պարիսպ [37], և կանգնեցաւ բարձրաբերձ ։ Այսպիսի թուիչս ազդեաց յերագընթաց հեղեղատ-հրամանն վերնոյն ։ Զորօրինակ 'ի ձայն փողոյ համահաւաքին զօրք (որպէս լուար զերկնայնոցն յառաջագոյն) ընդ դրօշակաւ իւրեանց, նոյնպէս և ջուրցն կուտակութիւն մէտ առ մէտ թաւալմամբ ամփոփեցաւ 'ի տեղին՝ զոր եգիտ. ընդ դիւր հեզիկ խաղացեալ, և ընդ զառ 'ի վեր մղեալ բըռնութեամբ հոսանաց ։ Եւ ոչ լերինք կամ քարաժայռք զդէմ կալան նոցա ։ Վասն որոյ յածեալ նոցա ընդ երկրաւ, կամ ընդ ոլորտապտոյտ և երկայնաձիգ շրջանս 'ի վերայ երկրի՝ հատին զճանապարհ իւրեանց. և դիւրագոյն էր, և խորին

ընդ տղմուտս՝ մինչև էր հրաման տուեալ Աստուծոյ երկրի ցամաքիլ ողջոյն, բաց 'ի վայրացն ընդմէջ եզերաց՝ յորս գնան այժմ գետք, և ձգեն զկնի իւրեանց զխոնաւ ուղեկցութիւնն մշտնջենաւոր[38]։ Զցամաքն կոչեաց նա երկիր, և զընդունարանն մեծ ջրոցն հաւաքման ծովս։ Եւ ետես, զի բարի էր։ Եւ յաւել ասել. Բղխեսցէ երկիր զբանջար, խոտ սերմանելի, և ծառ պտղաբեր ըստ ազգի իւրում՝ որոյ սերմն իցէ 'ի նմա 'ի վերայ երկրի։ Մինչև էր նորա աւարտեալ զբանսն, ահա երկիրն հոլանի ցայն վայր ամայի, անբերրի, և անզարդ, բուսոյց զխոտ. որոյ դալարութիւն ծածկեաց զհամօրէն երեսս երկրի 'ի գեղ զուարճալի։ Ապա ետան զամենայն բոյսս սաղարթաբեր. որք ծաղկեցան յանկարծակի՝ բացեալ զբազմագունեան երանգս իւրեանց. և բերկրեցուցին զծոց նորա 'ի հոտ անուշից։ Չև էր փթթեալ նոցա, և ահա ծաղկեցաւ որթն՝ ողկուզացեալ բազմախիտ։ Մողոսկեալ սփռեցաւ դդմենին քաղցրահոտ։ Ողոտն հասկաթուռ ճակատեալ կանգնեցաւ յանդի իւրում։ Եւ խոնարհագոյն թուփք և մացառք ելին 'ի վեր զանգրահեր և զխախուիւ։ Հուսկ յետոյ կանգնեցան կացին շքեղապանծ ծառատունկք զոգցես 'ի հանդէս կաքաւու. և սփռեալ տարածեցին զոստս իւրեանց՝ որք առկախեալ էին բազմառատ պտղովք. և կամ պտկօք զարդարեցին զծաղիկս իւրեանց։ Լերինք պսակեցան բարձրագագաթն անտառովք, հովիտք տնկօք, աղբերակունք կողմանցօք, և գետք երկայնաձիգ ափամբք։ Յայնժամ երկիր նմանատիպ ցուցաւ երկնից, տեղի արժանավայելուչ Աստուա

ծոց՝ 'ի բնակութիւն, 'ի զուարճութիւն, և 'ի զբօսանս ընդ հովանեաւ սրբութեան ։ Այլ թէպէտ տակաւին ոչ էր տեղացեալ Աստուծոյ, և չէր մարդ՝ որ գործէր զերկիր, սակայն գոլորշի ելանէր յերկրէ ցօղագին, և ոռոգանէր զամենայն երեսս երկրի, և զբոյսս դաշտի՝ զորս արար Աստուած մինչև լեալ էին 'ի վերայ երկրի, և զամենայն բանջարս՝ մինչև բուսեալ էին 'ի ցօղուն դալարի ։ Այլ ետես Աստուած, զի բարի էր ։ Այլ այնպէս երեկոյն և վաղորդայն հնչեցուցին զօրն երրորդ ։

Ասաց դարձեալ Ամենակալն ։ Եղիցին Լուսաւորք 'ի վերնագաւառս երկնից՝ յանջրպետութիւն տուընջեան և գիշերոյ ։ Այլ եղիցին 'ի նշանս եղանակաց, և յաւուրս, և 'ի բոլորումն տարեաց ։ Այլ կացցեն 'ի պաշտաման՝ յոր կարգեցի զնոսա 'ի հաստատութեան երկնից, լինել լուսատու յերկիր ։ Այլ եղև այնպէս ։ Այլ արար Աստուած զերկուս Լուսաւորս մեծամեծս. և են նոքա մեծամեծք ըստ կարևոր պիտոյիցն՝ զոր ընծայեն մարդոյ ։ Զմեծագոյնն յիշխանութիւն տուընջեան, և զփոքրն յիշխանութիւն գիշերոյ՝ փոխանակեալ զմիմեանս ։ Այլ արար և զաստեղս, և կարգեաց զնոսա 'ի հաստատութեան երկնից 'ի լուսաւորութիւն երկրի, և իշխել փոխանակաւ տուընջեան և գիշերոյ, և անջրպետել զլոյսն 'ի խաւարէ ։ Այլ հայեցեալ Աստուծոյ յերևելի արարածս իւր՝ ետես զնոսա, զի էին բարի ։ Քանզի 'ի մարմնոց անտի երկնաւորաց ստեղծ նա զառաջինն զարեգակն՝ զգունտն ընդարձակատարր. որ էր անլոյս 'ի սկզբան անդ, թէպէտև կազմեալ յեթերական

նիւթոյ . ապա զլուսինն 'ի ձև սկաւառակի . և ապա զաստեղս ըստ այլևայլ մեծութեան իւրեանց ։ Իսկ յետ այնորիկ առեալ 'ի լուսոյ անտի զմեծագոյն մասն՝ փոխադրեաց զայն յամպեղէն տապանակէն , և եդ 'ի գնտի անդ արեգական ։ Զոր և կազմեաց ծակոտկէն առ 'ի կարող լինելոյ ընդունել և ձգել 'ի ներքս զլոյսն հոսանուտ . և հաստատուն եւս՝ առ ունելոյ յինքեան զհաւաքումն ճառագայթից նորա . որով է նա այժմ սքանչելապայծառ տաճար լուսոյ ։ Անդր իբրև առ աղբիւր իւրեանց ընթանան այլք յաստեղաց , և ձգեն ըզլոյս յոսկի սափորս իւրեանց . և նովաւ մոլորակն առաւօտու [39] համակէ յոսկի զմահիկս իւր ։ Սովաւ մեծացուցանեն աստեղք 'ի փայլումն գունոյ կամ 'ի ցոլացումն զփոքրկութիւն իւրեանց , և երևին մարդկեղէն աչաց յանչափ հեռաւորութենէ իւրեանց ։ Զառաջինն յետ իւր երևեցաւ Ջահն մեծապայծառ յիշխանութիւն տունջեան . և ապա զհորիզոնն ողջոյն զարդարեաց շուրջանակի լուսափայլ ճառագայթիւքն իւրովք , յընթանալ անդ խնդագին զերկայնութիւն արահետ ճանապարհին երկնից ։ Արշալոյսն աղօտափայլ , և Բազմաստեղք [40] պարս բոլորեցին զառաջեաւ նորա՝ արկեալ սփիւռ զհոսանս քաղցրութեան ։ Լուսինն՝ թէպէտ նուազ ունէր զլուսափայլութիւն իւր , բայց կարգեալ էր յարևմուտս հայելի 'ի հանդիպոյ նորա . և առնոյր յանօթ 'ի նմանէ զլոյս իւր լիապատար երեսօք . զի յայն հայեցուած ոչ կարօտանայր նա այլում լուսոյ . և տակաւին ունէր զհեռաւորութիւն իւր մինչև 'ի մուտըս գիշերոյ ։ Իսկ ապա փայլէր նա փոխանակաւ

յարևելս՝ շրջան առեալ 'ի վերայ քաջապինդ առանցից երկնից, և կալեալ զառանձին իշխանութիւն փոքրագոյն լուսաւորօք՝ բիւրաւոր աստեղօք, որք յայնմ պահու թուէին պճնազարդել զկիսագունտն նշուլափայլ վահանակօք [կէ]: Յայն ժամ զառաջինն շքեղազարդեալ զուարթագին երեկոյի և վաղորդայնի պայծառափայլ լուսաւորօքն յելս և 'ի մուտս իւրեանց՝ պսակեցին զօրն չորրորդ:

Եւ ասաց դարձեալ Աստուած. Հանցեն ջուրք զկայտառս՝ շունչ կենդանի բազմաբեղուն սերմամբ: Եւ հաւք թռիչս առցեն 'ի վերայ քան զերկիր, և տարածեսցեն զթևս իւրեանց սաւառնեալք 'ի հաստատութեան երկնից: Եւ ստեղծ Աստուած զկէտս մեծամեծս, զամենայն շունչ կենդանի, և զամենայն կայտառս՝ զոր հանին ջուրք բազմաբեղուն առատութեամբ ըստ ազգի իւրեանց: Եւ զամենայն թռչուն թևաւոր ըստ ազգի: Եւ ետես, զի բարի են: Եւ օրհնեաց զնոսա, և ասաց. Աճեցէք և բազմացարուք, և լցէք զջուրսդ որ 'ի ծովու, և 'ի լիճս, և 'ի հոսանս գետոց: Եւ թռչունքդ բազմասցին 'ի վերայ երկրի: Եւ ահա անդէն վաղվաղակի լցան խորութիւնք ջուրց, և համօրէն զոգք կամ խորշք ծովու բազմառատ սերմամբ, և խուռն բազմութեամբ ձկանց՝ որք միանգամ լողան ընդ կապուտակ ալեօքն 'ի թևս, կամ 'ի փայլուն պատեանս: Որոց և բազում անգամ անհամար բազմութեամբ խռնեալ 'ի ծովու՝ դիզանան իբրև զաւազակոյտ: Ոմանք 'ի նոցանէ առանձինն կամ 'ի միասին ճարակէին զծովասէգ զարօտ իւրեանց, և շրջէին արօտական ընդ ան-

տաւս բստոյ: Ոմանք Թլնդս առեալ խայտանօք՝
յանդիման առնէին արեգական զկոհակափայլ և
զոսկեհուռն պատմուճանս իւրեանց: Այլք հան
գուցեալ 'ի գաղտակրայս իւրեանց՝ սպասեալ
մնային ցօղային պարենի: Եւ կէսք քաջակուռս
զինեալ՝ որսային ընդ ժայռիւք զկարեւոր պէտս
իւրեանց: Իսկ յերեւս հարթայատակ ջուրց խըն
դալից խաղային փոկք, և կորաքամակ դլփինք:
Միթխարիք ոմանք 'ի նոցանէ անհեթեթ թաւալ
մամբ ահագինս մըրկէին զՈվկիանոս: Ընդ Լեւիա
թան անարի քան զամենայն կենդանիս տարա
ծեալ իբրև զբարձրաւանդակ ծովու՝ նմջէր. և
կամ լողայր իբրև զերկիր շարժական: Ընդ փեղ
կըս գլխոյ իւրոյ ձգէր 'ի ներքս զծովն, և ընդ կըն
ճիթ իւր սրսկէր արտաքս: Յայնմ վայրի և խու
ռօչք ժայռից, և ճահիճք, և գետեզերք առ հա
սարակ ջերմացեալ 'ի թուխս, և բազմութեան
ձուոցն հեզիկ ճայթուցեալ փութանակի՝ յանդի
ման առնէին զանփետուր ձագս իւրեանց: Բայց
նոյնհետայն փետրազարդեալ նոցա՝ զգենուին
զթևս. և սլացեալ յօդն վերին՝ քամահանս առ
նէին աղաղակաւ իւրեանց երկրի, զոր տեսանէին
'ի ստորև ամպոյն: Ընդ 'ի վերայ լերանց, և գագա
թանց մայրից բոյնս դնէին արագիլք և արծուիք:
Ոմանք 'ի նոցանէ բազմասփիւռ շըջէին ընդ դա
ւառս, և այլք իմաստնագոյնք և քաջահմուտք եղա
նակաց տարւոյն, 'ի կարգ անկեալ՝ 'ի միասին հա
տանէին զճանապարհ իւրեանց: Եւ թռուցեալ
'ի բարձունս 'ի վերայ ծովուց և սահմանաց երկրի՝
ցուցանէին զկարաւան իւրեանց ընդ օդն. և մի
ըստմիջէ թեւարկութեամբ 'ի վերայ միմեանց

դիւրացուցանէին զԹռիչս իւրեանց ։ Աղաւնեկն խահական զայս օրինակ հատանէր զճանապարհ իւր՝ կառավարեալ 'ի վերայ հողմոց ։ Նոյն յանցս գնացից նորա 'ի բաղխմանէ անհամար Թեւոցն օդն տատանէր ։ Իսկ փոքրագոյնք 'ի Թռչնոց անտի խաղացեալ ոստոց յոստս՝ զուարճացուցանէին զանտառս յերգս իւրեանց . և զնկարէն Թեւս սփռեալ տարածանէին ընդ օդն մինչև ցերեկոյ ։ Բայց սախակն պարագլուխ հանդիսի նոցա և ոչ յայնժամ դկայ առնոյր 'ի գեղգեղմանէ անտի , այլ յեղանակէր զերգ իւր քաղցրաբարբառ զգիշերն ողջոյն ։ Այլք յարծաԹի լիճս և 'ի գետս ողողէին զԹաւամազ լանջս իւրեանց ։ Կարապն Թիակաձև ոտամբն նաւարկեալ՝ ցուցանէր զպերճուԹիւն իւր կամարաձև պարանոցաւն ընդ մէջ սպիտակազգեստ Թեւոցն՝ շքեղաշուք իւրոց պատմուճանաց ։ Այլ բազում անգամ Թողեալ նոցա զխոնաւուԹիւն ջուրցն՝ ամբառնային 'ի վեր քաջակուռ Թեւօքն իւրեանց . և արձանացեալ կային ընդ օդն 'ի հաստատուԹեան անդ երկնից ։ Կէսք 'ի նոցանէ հաստատունս շրջէին 'ի վերայ երկրի . յարոց սակի է աքաղաղն կատարազարդ՝ որոյ փող հնչեցուցանէ զժամս լռուԹեան գիշերոյ . և սիրամարգն գեղեցկատուտն՝ պճնազարդեալ 'ի գունագեղ և 'ի ծաղկեայ երանգս ծիածանի, և յաչս աստղանմանս ։ Այսպէս օրինակաւ լցան ջուրք ձըկամբք , և օդք Թռչնովք ։ Նոյն երեկոյն և վաղորդայն տօնախմբեալ հռչակեցին զօրն հինգերորդ ։

Իսկ վեցերորդ և վերջին օրն արարչուԹեան ծագեցաւ յերեկոյին և 'ի վաղորդեան քնարս իւր՝ այն ժմ ասաց Բ[illegible] . Հանեսցէ երկիր շունչ

կենդանի ըստ ազգի իւրում՝ զանասունս, զգազանս, և զսողունս ըստ ազգի։ Տուաւ երկիր ձայնի նորա. և անդէն ընդարձակեալ զարգանդ իւր բազմածնունդ՝ ծնաւ միանգամայն զանթիւ կենդանիս կատարեալս 'ի կերպարանս, յանդամս, և 'ի լրութիւն հասակի։ Ելին յերկրէ իբրև յորջոյ իւրեանց գազանքն՝ որք բնակեն յանտառս անապատի, 'ի թաւուտս, 'ի մացառս, և 'ի քարանձաւս լերանց։ Աղքա ելանէին զոյգ զոյգ, և շրջէին ընդ ծառովք. իսկ արջառք 'ի դաշտս և 'ի մարգագետինս։ Գազանքն սակաւաթիւ էին և մենակեաց, և անասունքն բազմահօտ և մեծաջոկ՝ ճարակաւոր 'ի միասին։ 'Ի միում վայրի հողն դալարագեղ ծնանէր զարջառս։ Այլուր առիւծն խարտեաշ ելեալ կիսաչափ 'ի վեր՝ դափր հատանէր առաջակողմեան ոտամբքն առ 'ի զերծուցանել զյետոյս իւր յերկրէ։ Եւ ապա զոգցես արձակեալ 'ի կապանաց անտի՝ ընդոստնոյր, և տատանէր զխայտաբղէտ բաշս իւր։ Յովազ, լինձ և վագր յելանել իւրեանց յերկրէ՝ ձգէին զկնի զհողաբլուրն համգոյն խլրդան։ Երագընթաց եղջերուն ամբառնայր 'ի վեր յերկրէ զգլուխ իւր բազմաստեղն։ Բեհեմովթն մեծամարմին յելանել անդ յերկրէ՝ հազիւ թափէր 'ի խորոց անտի զհաստակ իւր վիթխարի։ Հօտքն գեղմնաբարձ բուսանէին յերկրէ իբրև զտունկս։ Ջրագետին, և կոկորդիլոսն պատենաւորն՝ երկակենցաղ յառնէին 'ի ծովու և 'ի ցամաքի։ Սողունք, միջատք, և որդունք ելանէին միանգամայն։ Միջատքն բազխէին զթիւրաթեւս հովահարս իւրեանց փոխանակ թեւոց. և 'ի ճիշդ մանրանկար գծագրութեան

անդ պճնազարդէին զնշանազգեստս իւրեանց կի-տուածովք ոսկւոյ և արծաթոյ յերկնագոյն և 'ի կանաչագեղ երանգս՝ 'ի հանդէս գարնայնոյ ։ Սր-դունք իբրև զլար ձգէին զերկայնութիւն հասակի իւրեանց ․ և յոլորտապտոյտ ընթացս իւրեանց զը-ծագրէին զերկիր ։ Այլ ոչ էին ամենեքին սինլքորք բնութեան ։ Ոմանք 'ի նոցանէ յահարկու երկայ-նութեան անդ վիշապաձև գալարէին զբազմամա-նուած տտունս իւրեանց, և ունէին ևս զթևս ։ Սո-ղոսկեցաւ նախ մրջիւնն սակաւապէտ՝ հանդերձե-լոցն նախահոգակ ․ որ 'ի փոքրիկ մարմնի անդ բո-վանդակեալ ունէր զսիրտ մեծապանծ ։ Եւ թերևս յայսմ հետէ օրինակ գտցի նա արդարադատ ուղ-ղութեան՝ միաբանեալ 'ի ժողովրդական տոհմս իւ-րումն հասարակապետութեան ։ Եւ ապա խըմ-բեալ ցուցաւ 'ի պարու մեղուն՝ որ խնամով սնու-ցանէ զայր իւր դատարկապորտ [42] ․ և յօրինէ ըղ-մոմեղէն բջիջ իւր ամբարեալ մեղու ։ Թողում և զայլս՝ որք են անթիւ ․ զի դու ծանեար զբնու-թիւն նոցա , և եդիր ևս անուանս ․ վասն որոյ և աւելորդ է երկրորդել քեզ զնոսա ։ Եւ ոչ իսկ ծածկեալ է 'ի քէն օձն՝ որ իմաստնագոյն է քան զամենայն գազանս երկրի ։ Եւ նա երբեմն երկայ-նաձիգ և ստուարամարմին, և ահարկու բոցա-շունչ աչօքն, և գիսազարդ բաշիւքն իւրովք ․ այլ ոչ մեղանչական քեզ ․ և կայ հնազանդեալ ակնար-կութեան քում կամաց ։

Արդ՝ սովին օրինակաւ շքեղազարդեալ ցու-ցաւ երկին յամենայն փառս իւր ․ և հոլովեալ թա-ւալեցոյց զընթացս շարժմանց իւրոց՝ որպէս և զիարդ ճարտար ձեռնն առաջին շարժողի յօրի-

նեաց 'ի սկզբան անդ զանխուս կառաց նորա ։ Եւ երկիր պճնազգեստեալ զարդարեցաւ 'ի մեծագանձ պատմուճանս իւր իբրև զհարսն պանծալի ։ Օդ, ջուր և հող՝ յոգնախումբ լցան Թռչնովք, ձկամբք և անասնովք ։ Սակայն տակաւին պակասէր ինչ աւուրն վեցերորդի 'ի լրումն բովանդակութեան արարածոց՝ յոյր սակս ստեղծեալ էին դոքա. արարածն ասեմ՝ որ չիցէ անբան, և ընդ երկիր կորացեալ իբրև զայլս 'ի կենդանեաց. այլ պճնեալ բանիւ և մտօք՝ ունելով զհասակ իւր կանգուն. և քաջածանօթ գոլով անձին՝ ուղղեսցէ զայլս ուղղութեամբ և պարզութեամբ իւրոց դիմաց. որով և գտցի գերագոյն՝ համեմատ երկնից ։ Սակայն միանգամայն և շնորհապարտ՝ 'ի ճանաչել անդ, թէ ուստի իջանէն առ նա ամենայն բարիք ։ Վասն որոյ և ուղղեալ անդր աչօք, ձայնիւ, և եռանդագին սրտիւ՝ պաշտեսցէ երկրպագութեամբ զԱստուածն, որ արար զնա, և կարգեաց գլուխ ամենայն գործոց իւրոց ։ Եւ ահա՛ վասն այսորիկ ամենակալ հայրն յաւիտենական (որ է ընդ ամենայն տեղիս) խօսեցաւ ընդ Որդւոյ իւրում լու'ի լու երկնաւորաց՝ օրինակ զայս ։

Արդ՝ արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան, զի իշխեսցէ ձկանց ծովու, և Թռչնոց երկնից, և անասնոց երկրի, և ամենայն սողնոց՝ որք սողին 'ի վերայ երկրի ։ Եւ զայս ասացեալ՝ ստեղծ զքեզ Ադամ մարդ հող յերկրէ. և փչեաց յերեսս քո շունչ կենդանի. և այնպէս արար զքեզ 'ի պատկեր իւր, 'ի պատկեր Աստուծոյ կերպարանեաց զքեզ. և եղեր հոգի կենդանի ։ Արու արար նա զքեզ, և զօգնականն

քո էգ 'ի սակս որդեծնութեան ։ Եւ ապա օրհնեալ 'ի ձեզ զհամօրէն ազգ մարդկան՝ ասաց . Աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր . տիրեցէք դմա, և իշխեցէք ձկանց ծովու, և թռչնոց երկնից, և ամենայն շնչոց կենդանեաց՝ որք շարժին 'ի վերայ երկրի ընդ ամենայն տեղիս . զի տակաւին ոչ գոյր տեղի վիճակեալ անուանս ։ Եւ անդուստ ահա՝ որպէս գիտակ ես, ած զքեզ յայս դրախտ զուարճալի, յայս պարտէզ փափկութեան՝ ուր տնկեալ կան ծառքն Աստուծոյ գեղեցիկ 'ի տեսանել, և քաղցր 'ի ճաշակել ։ Եւ ընծայեն քեզ բազմառատ զցանկալի պտուղս իւրեանց 'ի կերակուր ։ Ամենայն ազգս պտղոց՝ զորս բերէ երկիրս համօրէն, գտանիցես աստանօր ըստ իւրաքանչիւր տեսակի ։ Բայց 'ի ծառոյ անտի՝ որոյ ճաշակ ընծայէ զգիտութիւն բարւոյ և չարի, մի ուտիցես 'ի նմանէ . զի յորում աւուր կերիցես, մահու մեռանիցիս . քանզի մահն կարգեալ է 'ի պատիժ նորին ։ Արդ՝ զգոյշ լեր, և սանձեա զախորժակս քո . գուցէ հասանիցեն յանկարծակի 'ի վերայ քո մեղք, և մահ՝ ընկեր նորա ցաւագին։

Աստանօր կատարեաց նա զամենայն գործս իւր, և ետես, զի առհասարակ էին բարի ։ Զայս օրինակ երեկոյն և վաղորդայն աւարտեալ կնքեցին զօրն վեցերորդ ։ Եւ այնպէս դադարեալ Հաստչին յարարչագործութենէ՝ թէպէտև էր անխոնջ, դարձ արար 'ի բարձունս երկնից 'ի բնակութիւն իւր վերին՝ առ 'ի տեսանել անդուստ զնորաստեղծ աշխարհ յաւելեալ յինքնակալութիւն իւր, թէ զիարդ երևէր նա հայեցեալ յաթոռոյ իւրմէ . քանի՛ գեղեցիկ, քանի՛ վայելուչ, և քանի՛ համե-

մատ ընդ գաղափարի իւրում: Սլացեալ համբար-
ձաւ 'ի վեր 'ի ձայն ցնծութեան, և յերաժշտա-
կան հնչիւն բիւրաւոր քնարաց՝ որք յօրինէին ըղ-
ներդաշնակութիւն հրեշտակային: Հնչեցին յայն
ժամ երկիր և օդ առհասարակ (որպէս լուար ըղ-
ձայն նոցա). և երկինք և համաստեղութիւնք ե-
տուն զարձագանգս իւրեանց: Մոլորակք յակ-
ձիւս կային յիւրաքանչիւր կայանս ընդ խնդա-
գին եւս նորա պայծառափայլ հանդիսիւ: Համ-
բարձէք դրունք յաւիտենից՝ աղաղակէին, համ-
բարձէք երկինք զկենդանի դրունս ձեր 'ի վեր, զի
մտցէ Արարչապետն՝ որ դարձեալ գայ 'ի սքանչե-
լի գործոց իւրոց վեցօրեայ արարչութեան աշխար-
հի: Այլ յայսմհետէ համբարձէք բազում ան-
գամ, զի Աստուած հաճեսցի ստէպ այց առնել
զուարճութեամբ բնակութեան արդարոց. և յը-
ղել անդր զթևաւոր պատգամաւորս իւր 'ի բանս
վերին շնորհաց: Զայսօրինակ երգէին յելս նո-
րա շքեղաշուք հանդիսիւ: Իսկ նորա անցեալ ընդ
երկինս՝ որոյ սքանչելապայծառ դրունք բացեալ
կային լայնարձակ, հորդեաց զճանապարհ իւր 'ի
տաճար անդր մշտնջենաւորին Աստուծոյ [43]: Ճա-
նապարհ նորա էր լայն և ընդարձակ. որոյ հողն
էր ոսկի, և սալայատակ նորա աստեղազարդ, նման
այնմ՝ զոր տեսանես 'ի գիշերի 'ի յարդգողն կամ
'ի ծիր կաթինն ցանեալ յաստղալից փոշի, և շուրջ
պատեալ իբրև զգօտի: Յայնմ վայրի յառնէր 'ի
վերայ երկրի յԱդեմ երեկոյն եւթներորդ (քանզի
մտեալ էր արեգականն, և լոյսն աղօտաճաճանչ
ելեալ էր յարևելից 'ի կարապետութիւն գիշե-
րոյ) այն ինչ եհաս Աստուածորդին 'ի լեառն սուրբ

բարձրացեալ 'ի գագաթան երկնից՝ յորում արկեալ էր տիրական աթոռ Աստուածութեանն մշտատև և անսասան, և բազմեցաւ 'ի նմա ընդ Հօր իւրում։ Քանզի և նա չօգաւ յաններևոյթս, բայց կացեալ անդանօր (այս են գործք ներկայութեան նորա ընդ ամենայն տեղիս) հրաման ետ [44] արարչագործութեան սկիզբն և վախճանն ամենայնի։ Եւ զկնի արարչութեան օրհնեաց նա և սրբեաց զօրն եւթներորդ. զի 'ի նմա հանգեաւ յամենայն գործոց իւրոց։ Սակայն ոչ շաբաթացաւ նա 'ի սրբումն լռութեան. քանզի քնարն երկնաւոր հնչեցուցանէր զգործս նորա։ Երգեցին մեծ և տաւիղ[45], և ամենայն գեղեցկայարմար նուագարանք, և երաժշտական ձայնք 'ի լարս կամ յաղխս՝ դաշնակաւորեալ 'ի քաղցրաբարբառ եղանակ՝ խառնեցան 'ի հնչիւն պարու, կամ յերգ առանձինն։ Եւ ամպք կնդրկացն ծխելոց յոսկի բուրվառաց ծածկեցին զլեառն։ Եւ այնպէս նուագեցին զաշխարհագործ արարչութիւնն վեցօրեայ՝ օրինակ զայս։ Մեծ են գործք քո Տէր, և անսահման զօրութիւն քո։ Ո՞ր միտք կարող է քննել զքեզ, և ո՞ր լեզու պատմել զքէն։ Այլ յայս դարձ քո մեծ ևս երևիս, քան 'ի դառնալդ անդրէն 'ի հրեշտակացն ապստամբաց։ Զի յայնմ աւուր մեծացուցին զքեզ շանթք քո, այլ մեծ ևս է արարչութիւնն քան զքանդումն արարածոց։ Եւ ո՞ կարէ նուաստացուցանել զքեզ, կամ սահման դնել քում իշխանութեանդ՝ թագաւոր հզօր։ Դիւրաւ վանեցեր զամբարտաւանութիւն և զունայն խորհուրդս հոգւոցն ապստամբաց՝ 'ի կամել նոցա առ պարշտութեամբ խոնարհեցուցանել զքեզ, և օ-

տարացուցանել 'ի քէն զեազմութիւն երկրպա-
գուացդ։ Որ միանգամ խնդրէ նուաստացուցա-
նել զքեզ, յակամայ կամս ունի յաւէտ իմն մեծա-
ցուցանել զզօրութիւն քո։ Զի առնուս գործի
'ի ձեռին զչարութիւն նորա, և նովաւ յառաջ
ածես զառաւելութիւն բարեաց։ Ակայ է նորա-
տեղծ աշխարհս՝ միւս ևս երկինք ոչինչ կարի 'ի
բացեայ 'ի դրանց անտի երկնից, որ ըստ տեսու-
թեան աչաց հաստատեալ կայ 'ի լուսափայլ ապա-
կեայ ծովու [46] անսահման տարածութեամբ, և
բազմագումար աստեղօք։ Յորոց իւրաքանչիւր
թերևս իցէ մէն մի աշխարհ կարգեալ 'ի բնակու-
թիւն [47]. սակայն դու գիտես զհանգամանս նոցա։
Ընդ որս է և երկիրս ցանկալի կարգեալ 'ի բնա-
կութիւն մարդկան. զոր շրջափիւռ պատէ Ով-
կիանոս նորա ներքին [48]։ Ո՜վ երիցս երջանկութեան
որդւոց մարդկան՝ զորոց այսպիսի խնամ կալաւ
Աստուած. և ստեղծ զնոսա 'ի պատկեր իւր առ 'ի
բնակել անդանօր, և պաշտել զնա։ Եւ փոխա-
նակ վարձուց իւրեանց իշխել համօրէն արարա-
ծոց իւրոց՝ որք են յերկրի, 'ի ծովու, և յօդս.
և բազմացուցանել զծնունդս երկրպագուաց նո-
րա սրբոց և արդարոց։ Ո՜վ երիցս բարեբաստիկ
են նոքա, եթէ գիտեն զերջանկութիւն իւրեանց,
և յարանան 'ի նոյն ամբծութեամբ։

Սովին օրինակաւ երգեցին նոքա. և հրեղէն
երկինք հնչեցուցին զօրհնութիւնս։ Եւ այնպէս
ապա շաբաթացան նոքա։ Եւ ինձ թուի այժմ,
թէ լցաւ խնդիր քո վասն արարչութեան աշխար-
հի 'ի սկզբանէ, և գեղեցկազարդ վայելչութեան
նորա, և վասն արարածոց՝ որք եղեն յառաջ քան

զքեզ ։ Ով ի ծանիցեն և որդիք քո՝ տեղեկացեալ 'ի քէն։ Ապա եթէ և այլ ինչ խնդրես՝ որ ոչ անցանէ ըստ սահմանն մտաց մարդոյ, տամ, և լուիցես զարժանն [49] ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Խնդիրս առաջի դնէ Ադամ յաղագս երկնային շարժմանց. և Հրեշտակն տայ նմա պատասխանի 'ի կարծիս ևեթ. և յորդոր լինի նմա խնդրել յաւէտ զարժանին կարևոր գիտութեան: Հաւանի Ադամ ընդ բանս նորա. սակայն կամեցեալ նորա տակաւին ունել առ իւր զՌափայէլ՝ պատմէ նմա զանցս իւր անդստին յարարչութենէ իւրմէ, թէ զիարդ եգաւ նա 'ի դրախտին. զինչ բանք եղեն նորա ընդ Աստուծոյ յաղագս առանձին կենաց, և կարևոր ընկերութեան, և զիարդ եգիտ նա զառաջինն զԵւայ, և ամուսնացաւ ընդ նմա: Բանք նորա ընդ Հրեշտակին 'ի նոյն սակս: Որոյ երկրորդեալ զբանս խրատուց՝ մեկնի 'ի նմանէ:

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

## ԳԻՐՔ Ը:

Աւարտեալ Հրեշտակին զբանս իւր՝ այնպիսի ինն եթող քաղցրութիւն ձայնի յականջս Ադամայ, մինչև համարել նմա՝ թէ տակաւին խօսի նա. վասն որոյ և եկաց յունկնդրութիւն առ վայր մի ևս: Եւ ապա զոգցես նորոգ զգաստացեալ յանձն իւր՝ արար նմա պատասխանի խոնարհութեամբ օրինակ զայս:

Զո՞ր շնորհս կամ զի՞նչ փոխարէն տրիտուր հատուցից քեզ Պատգամաւորդ երկնային՝ որ կըշտապինդ զովացուցեր զպապաքումն իմումն գիտութեան. և հաճեցար զիջանել մարդասիրաբար 'ի պատմութիւն իրացն՝ զորս անմարթ էր ինձ խնդրել այլուստ. և զորս լուայ աւադիկ հիացմամբ, բայց ընդ նմին և զուարճութեամբ, ընծայեալ ըստ արժանեաց զփառս գերագոյն Հաստչին: Սակայն տակաւին ունիմ յանձին զտարակուսանս՝ զորոց զլուծումն դու միայն կարող ես շնորհել ինձ: Քանզի յակնարկել իմում ընդ գեղեցկութիւն արարածոցս, և ընդ բովանդակութիւն տիեզե-

րացս յերկնէ և յերկրէ, և 'ի համեմատել իմում զմեծութիւն նոցա ընդ միմեանս՝ գտանեմ զեր-կիրս կէտ մի կամ հիւղէ առ հաստատութեամբ երկնից, և համօրէն աստեղացն՝ զորս մարթ է թուել 'ի նմա։ Որք և երևին շրջան առնուլ յանսահման ընդարձակութեան անդ ( զի զայն ցուցանէ հեռաւորութիւն նոցա յերկրէ, և ան-հնարին արագութիւն օրական ընթացից նոցա ) առ 'ի մատակարարել միայն զլոյս 'ի տուէ և 'ի գի-շերի յամենայն կողմանց դիմահար երկրիս՝ որ է առ նոքօք բիծ իմն կիտանիշ։ Իսկ այլով ամենայ-նիւ թուէին լինել անօգուտ։ Վասն որոյ զարմանք ունին բազում անգամ զմիտս իմ, թէ զիա՛րդ մարթ էր իմաստուն և անվրէպ բնութեան [1] ցու-ցանել զայնպիսի գործ անհամեմատ։ Ստեղծա-նել ասեմ շռայլ ձեռամբ զայնչափ երևելի և ըզ-մեծամեծ մարմինս յայս սակս միայն՝ որպէս երևի, և հրաման տալ գնտոց նոցա շրջան առնուլ ան-դադար՝ օրըստօրէ թաւալմամբ։ Այն ինչ եր-կիրս կացեալ հաստատուն՝ որում մարթ էր դիւ-րագոյն ևս շարժիլ 'ի նուազ ընդարձակութեան անդ, և արքանեկեալ յազնուագունից քան զին-քըն՝ անշարժ ընդունի 'ի նոցանէ ընդ անսահման ճանապարհն զհարկ ծառայութեան՝ զլոյս և զջեր-մութիւն; զոր ածէ առ նա անմարմին արագու-թիւնն՝ զորոյ առ 'ի նշանակել զընթացսն՝ պակա-սին թիւք և համարք։

Զայսօրինակ խօսեցաւ Նախահայրն մեր. և եցոյց 'ի դէմս իւր զհաճութիւն իմն ընդ մուտս դժուարիմաստ խնդրոց իմաստասիրութեան։ Զոր ծանուցեալ Նուայի՝ յարեան 'ի տեղւոջէն, ուր

նստէր յայնժամ մեկուսի յանդիման նոցա վեհափառ իմն պատկառանօք և վայելչութեամբ՝ որք ցանկալի ընծայէին զկալ նորա յաչս տեսողաց ։ Այլ չոգաւ 'ի բուրաստանն պտղոց և ծաղկանց առ 'ի տեսանել անդ զբարգաւաճութիւն պտկանց նոցա ։ Որք և 'ի հասանել նորա անդր՝ բողբոջեցին փութանակի, և 'ի մերձենալ առ նոսա գեղեցիկ խնամոց ձեռին՝ ուռճացեալ աճեցին ։ Բայց ոչ չոգաւ նա անդր իբրև դժկամակեալ ընդ այնպիսի բանս, և ոչ առ չունելոյ զբաւական լսելիս 'ի լուր բարձրագունից իմաստից ։ Այլ հաճեցաւ նա լսել զպատմութիւն նոցին առանձինն յԱդամայ ։ Մեծարեաց զայր իւր առաջի Հրեշտակին 'ի բանս անդ, և ինքն յաւէտ ընտրեաց լսել զայնոսիկ 'ի նմանէ. զի քաջ գիտէր, թէ մարթ էր Ադամայ մուծանել 'ի պատմութիւն անդր զզուարճալի արտուղութիւնս, և այնպէս լուծումն տալ բարձրագոյն խնդրոց խանդաղատանօք իմն լծակից սիրոյ. քանզի ոչ ախորժէր նա լսել զսոսկ բանս 'ի շրթանց նորա ։ Ո՛վ, ուրանօ՞ր գտանին այժմ այսպիսի լծակիցք միաբան զօւգակցեալք 'ի սէր և 'ի պատիւ միմեանց ։ Մեկնեցաւ նա 'ի նոցանէ նազելի ընթացիւք իբրև զոմն Աստուածուհի. այլ ոչ առանց ինչ սպասահարկութեան[2]. զի հանդէս շքոյ սիրալի շնորհաց նորա երթայր միշտ ընդ նմա գոգցես ընդ դշխոյի, և ցանկալի ընծայէր զնա յաչս ամենեցուն ։ Յայնժամ Ռափայէլ մտադիւրութեամբ և մարդասիրաբար արար պատասխանի առաջարկութեան տարակուսանացն Ադամայ՝ օրինակ զայս ։

Ոչ ստգտանեմ ես զխնդիր քումդ հարցուածոց.

զի երկինք եղեալ կան առաջի աչաց քոց իբրև զմատեան աստուածային՝ առ 'ի վերծանել 'ի նմա զսքանչելի գործս Արարչին, և ուսանել զեղանակս տարւոյն, զամիսս, զաւուրս և զժամս: Այլ առ 'ի գիտել զսոսա՝ եթէ ուղիղ իմաստասիրեսցես, չէ ինչ փոյթ՝ երկի՞նք արդեօք, եթէ երկիր շարժիցի: Զառաւելն քան զայս Թագոյց վերին Ճարտարապետն իմաստութեամբ իւրով 'ի մարդոյ և 'ի հրեշտակէ. և ոչ յայտնեաց զգաղտնիս իւր 'ի քննութիւն նոցին, այլ յաւէտ 'ի զարմանս: Ապա եթէ կամք են նոցա մատչել 'ի հանդէս կարծեաց իւրեանց, եթող նա զյօրինուած երկնից 'ի խնդիր նոցին՝ առ 'ի ծիծաղել Թերևս զկնի զմտաւոր հնարագիտութեամբք նոցա 'ի կազմել անդ զերկինս [3], և 'ի համար արկանել զաստեղս՝ առ 'ի կարող լինել շարժել զմեծակառոյց շինուածն. 'ի քանդել զայն, և 'ի վերստին ձևացուցանել ըստ կամի 'ի պաշտպանութիւն երևութիցն յերկինս. և յածել անդ գօտի զգնտովն, ձգեալ 'ի վերայ նորա յումպէտս զգիծ կենդրոնական և զարտակենդրոն, զշրջանակ և զմակաշրջանակ, և զպարունակ 'ի պարունակի [4]: Ես այժմէն իսկ յայդ կարծիս ձգեն զիս բանք քո՝ որ ես գլուխ ծննդոցդ, և եղեալ ես 'ի մտի՝ թէ չէ՞ արժան մեծամեծ և պայծառափայլ մարմնոց արբանեկել փոքունց և անլուսաւորաց. և ոչ երկնից հատանել զայնչափ երկայնութիւն ճանապարհի, այն ինչ երկիրն անշարժ կայ հանապազ, և վայելէ միայն 'ի բարիս: Այլ դու զմտաւ ած նախ՝ թէ մեծութիւն և լուսափայլութիւն ոչ են նշանակ գերազանց առաւելութեան. զի մարթ է երկրիս՝

որ կարի փոքր է առ համեմատութեամբ երկնից, և ոչ լուսափայլ իբրև զնա՝ ունել յինքեան զընտիր ընտիր բարիս առաւել քան զարեգակն, որ ամրութեամբն պայծառ փայլէ: Որոյ ազդեցութիւն անձին ինչ ոչ օգնէ, այլ պտղաբեր երկրի: Նքերրի ճառագայթք նորա յերկրին՝ զառաջինն ընկալեալք 'ի սմա, գտանեն զզօրութիւն իւրեանց: Սակայն պայծառափայլ լուսաւորքդ այդոքիկ ոչ այնչափ երկրի են պաշտօնատարք, քան որչափ բնակչիդ 'ի նմա: Իսկ զանչափ ընդարձակութիւն շրջապատին երկնից թող նմա, զի ինքնին պատմեսցէ զանսահման մեծութիւն Արարչին իւրոյ՝ որ արար զնա այնչափ լայնածաւալ, և ընդգիծ երկայնութեան նորա ձգեաց այնչափ հեռագոյնս: Այլ մարդոյն թող 'ի միտ առնուլ, թէ ոչ բնակէ նա յիւրումն սեփականի. զի կարի մեծ է երկիրդ 'ի սակս նորա առ 'ի լնուլ՝ գոլով նորա օթագայեալ 'ի փոքրիկ բաժնի նորա ևեթ: Սակայն և այնպէս մնացեալ սահմանք նորա կարգեալ են առ 'ի պէտս՝ որք են քաջածանօթ Տեառն իւրեանց [5]: Զայնչափ արագութիւն ընթացից շրջանակացդ ընծայեալ ամենակալ զօրութեան նորա՝ որ գտանէ ձեռնհաս տալ նիւթականացդ զայնպիսի երագաճեմ ընթացս գոգցես հոգեղէն: Այլ զիս իսկ մի՛ համարիր յամրաշարժ. զի ընդ առաւօտն մեկնեալ յերկնից 'ի բնակութենէն Աստուծոյ՝ յառաջ քան զօր հասարակ ժամանեալ հասի յԱյդեմ. և չէ՛ հնար թուոց ցուցանել զանչափութիւն հեռաւորութեան ճանապարհիդ: Զայս ասեմ, եղեալ յերկինս զշարժումն, զի ծանիցես զտկարութիւն տարակուսանացդ. այլ ոչ հաստա-

տիմ՛ զայն. Թէպէտեւ այնպէս Թուի քեզ՝ որ յերկրի աստ ունիս զբնակութիւն քո: Զի Աստուած առ ՚ի հեռացուցանել զճանապարհս իւր ՚ի զգայութեանց անտի մարդկան՝ այնչափ բացագոյնս ձգեաց զերկինս յերկրէ, մինչեւ ՚ի յանդըդնել երկրաւոր աչացդ ՚ի զննութիւն՝ մոլորիլ նոմա ՚ի բարձրագոյնսդ, եւ օգուտ եւ ոչ մի ինչ գտանել ՚ի նոցանէ: Զի զի՞նչ է քեզ, եթէ արեգակն գտցի կենդրոն աշխարհի, եւ այլք յաստեղաց միգեալ ձգողական զօրութեամբ նորա եւ իւրեանց իսկ՝ [6] պարս բոլորեսցեն զնովաւ յայլեւայլ շրջանս իւրեանց: Ի միջեքին մոլորակսդ [7] տեսանես ըղզարտուղի ընթացս նոցա՝ է զի ՚ի վեր, եւ է զի ՚ի խոնարհ. եւ ապա ծածկեալ, յառաջխաղաց եւ յետախաղաց, եւ կամ բոլորովին անշարժ [8]: Եւ զի՞նչ, եթէ երկիրս մոլորակ եւթներորդ՝ որ այնչափ հաստատուն երեւի, յառաջ խաղասցէ առ նոսա յանզգալի ընթացս իւր երրակի շարժմամբք [9]: Զորս այլազգ պարտ էր քեզ ընծայել այլ եւ այլ գնտոց շարժելոց ընդ հակառակն առ ՚ի շեղ խոտորմամբ: Եւ կամ ազատ կացուցանել զարեգակն ՚ի վաստակոց նորա. նոյնպէս եւ զերագընթաց տարանկիւնն գիշերային եւ տունջենային՝ որ համարեալն է անտեսաբար անիւ տունջեան եւ գիշերոյ ՚ի վերոյ քան զաստեղս: Եւ չե՞ն իսկ պէտք քումդ հաւատոց, եթէ երկիրն ինքնին աշխատասէր՝ ելանիցէ ՚ի խնդիր աւուրն, ճանապարհորդեալ ընդ արեւելս. եւ միւս կողմամբն հեռացեալ ՚ի ճառագայթից անտի արեգական՝ ելցէ ընդ առաջ գիշերոյ. եւ այլ մասունք նորա տակաւին լուսափայլեսցին յերեւաց նորա: Զի՞նչ, եթէ

լոյսն արձակեալ 'ի նմանէ ընդ լայնածաւալ օդն թափանցիկ՝ գտցի առ լուսինն երկրաւոր [10] իբրև զաստղ 'ի լուսաւորութիւն նորա 'ի տուէ, որպէս նա երկրիս 'ի գիշերի։ Որ և զնոյն կատարէ գործ, եթէ գտցին անդ երկիր, դաշտագետին և բնակիչք։ Օ՛ի զբիծս նորա տեսանես իբրև զամպս, և ամպոց մերթ է տալ զանձրև, և անձրևաց բերել զպտուղ յարգաւանդահող երկրի նորա առ 'ի կերակուր վիճակելոց ոմանց անդամոր։ Գտցես թերևս և զայլ արեգակունս հանդերձ արբանեկօք իւրեանց լուսնովք՝ որք ընծայեցեն զլոյս իւրեանց ծննդական։ Եւ այս երկոքին մեծամեծ սերք [11] կենդանացուսցեն զտիեզերս, ամբարեալ թերևս յիւրաքանչիւր պարունակս զկենդանիս ոմանս։ Վան զի դիւրաւ մարթ է 'ի յոյզ և 'ի խնդիր արկանել զանչափ ընդարձակութիւնն 'ի բնութեան անդ՝ որ իցէ թափուր 'ի հոգւոց անտի կենդանեաց, ամայի և անբնակ, և կարծեալ 'ի լուսափայլութիւն ևեթ։ Եւ իւրաքանչիւր 'ի պարունակացն հաղիւ զաղօտափայլ իմն ընծայէ զլոյս. և արկանէ զայն յանչափ հեռաւորութենէ 'ի խանարհ յայս երկիր բնակեալ՝ որ անդրէն դարձուցանէ առ նոսա զլոյս իւր։ Բայց թէ կայցե՞ն արդեօք այդոքիկ, [12] եթէ ոչ. կամ՛ արդեօք արեգակն իշխան երկնից պատիցէ՞ զերկրաւ, և կամ՛ երկիր զարեգակամբ. արդեօք նա՞ սկսանիցի զբոցափայլ ճանապարհ իւր յարևելից, և կամ սա՞ ձգեսցէ յարևմտից զհանդարտաքայլ ընթացս իւր 'ի քայլափոխ աներկևան՝ որ մանս առեալ հանգչի 'ի վերայ յուշիկ առանցից իւրոց, այն ինչ նա հարթակշիռ ընթանայ, և տանի զքեզ ընդ օդ հան

դարտախաղաց՝ մի՛ տագնապիր 'ի խորհուրդս քո յերեսաց գաղտնեացդ այդոցիկ։ Այլ թո՛ղ զնոսա Աստուծոյ՝ որ էն 'ի բարձունս, և դու ծառայեա՛ նմա երկիւղիւ։ Զայլ արարածս իւր՝ ուրանօր և գոցին, դիցէ նա 'ի կարգի՝ որպէս և զիարդ հաճոյ է նմա։ Վայելեա՛ դու զդրախտդ, ընդ նմին և զԵւայ՝ զոր ետ նա քեզ օգնական։ Երկինք կարի բարձունք են վասն քո առ 'ի գիտել զանցս անդանօր։ Լե՛ր իմաստուն խոնարհութեամբ։ Ա՛ծ ըզմտաւ միայն զորս հային 'ի քեզ։ Մի՛ յերազեր զայլ աշխարհս, և մի՛՝ թէ զինչ արարածք են 'ի նոսա կենդանիք, յինչ վիճակ կամ յինչ հանգամանս գտանին նոքա։ Շատացի՛ր ընդ այն միայն՝ զի այսչափ յայտնութիւնք ցուցան քեզ՝ ոչ միայն զերկրէ, այլև զբարձրագոյն երկնից։

Որում Ադամ ազատացեալ 'ի տարակուսանաց անտի իւրոց՝ արար պատասխանի օրինակ զայս։ Զիա՛րդ լիուլի շատացուցեր զիս մաքրափայլ հոգիդ երկնային՝ հրեշտակդ լուսապայծառ։ Եւ ուսուցեր ինձ գնալ համարձակ զդիւրին ճանապարհն կենաց, և ոչ ընդմիջել զքաղցրութիւն նորա տագնապեցուցիչ խորհրդովք՝ յորոց հրաման ետ մեզ Աստուած հեռանալ 'ի բաց, և չտանջել զմեզ վայրապար և մոլորախնդիր գիտութեամբ։ Սակայն և այնպէս միտք մարդոյ ինքնին բերին յանսանձ վտարանդութիւն, և դեգերանաց նորա չիք վախճան։ Մինչև խրատեալ նորա կամ ուսեալ 'ի փորձոյ՝ ծանիցէ, թէ կարևոր իմաստութիւն մարդոյ ոչ է լայնածաւալ գիտութիւն հեռաւորացն առ 'ի մէնջ նրբից և գաղտնեաց, այլ որոց եդեալ են առաջի մեր յառօրեայ կեանս։

Ռուսեըն քան զայս՝ ծուլի է, ընդունայնութիւն կամ խաղալիկ անմտաց ։ Որ և անվարժս և անյարմարս կացուցանէ զմեզ յառաւել պիտանիսն, և տայ մեզ 'ի խնդիր լինել միշտ մտոտեաց ։ Յայն սակս իջեալ մեր 'ի բարձրութենէ աստի 'ի խոնարհագոյն Թռիչս՝ բանս 'ի մէջ առցուք զառձեռն կարևորացն ևեթ ։ Յորս Թերևս խնդիրք լինիցին և զորոց ոչ են տարադէպ 'ի հարցանել, միայն Թէ ներողամտութիւն քո, և այժմէն ծանուցեալ զԹուԹիւն՝ հաճեսցի զիջանել ։ Արդ՝ լուայ ես 'ի քէն զպատմութիւն եղելոցն յառաջ քան զիս, լուր և դու այժմ յինէն զպատմութիւն անձին իմոյ՝ որ Թերևս անծանօԹ է 'ի քէն, և լոյս տուանջեանս տակաւին ոչ է շիջեալ ։ Մինչև ցժամ մեկնելոյ նորա ունիս տեսանել, Թէ զիարդ հնարիւք իմն խնդրեմ ես ունել զքեզ առ իս հրաւիրեալ յունկընդրութիւն իմում պատմութեանս. որ ապաքէն լինէր անմտութիւն, եԹէ չէր յուսալի ընդունել 'ի քէն զպատասխանի ։ Զի 'ի կալ իմում ընդ քեզ՝ համարիմ զանձն իմ յերկինս ։ Եւ բանք քո առաւել քաղցր են յունկն իմ քան զպտուղս արմաւենւոյ՝ որք 'ի ժամ տենչացեալ կերակրոյ կարի իմն ախորժաճաշակ են 'ի քիմս քաղցեալ և ծարաւի անձին յերեսաց վաստակոց ։ Զի նոքա Թէպէտև համեղաճաշակ են, այլ վաղ յագեցուցանեն, և ածեն 'ի վերայ զյափրանս. իսկ բանք քո փոխանակ զի լի են աստուածային շնորհօք, չածեն և ոչ մի ինչ յագուրդ ընդ քաղցրութիւն իւրեանց ։

Որում ետ պատասխանի Ռափայէլ քաղցրահամբոյր հրեշտակն ։ Ոչ առանց շնորհաց են շըր-

Թունք քո նախահայրդ Ադամ, և ոչ բերան քո առանց ընտիր Ճարտարախօսութեան. քանզի եհեղ 'ի քեզ Աստուած բազում առատութեամբ ներքոյ և արտաքոյ զպարգևս իւր՝ որ ես գեղեցիկ պատկեր նորա: 'Ի խօսել քո, կամ 'ի դադարել 'ի բանից՝ առ քեւ կան ամենայն վայելչութիւնք շնորհաց, և յօրինեալ յարդարեն զամենայն բանս քո և զշարժուածս: Ոչ մեք Թէպէտև յերկինս եմք, այլ ունիմք զքեզ ծառայակից մեր յերկրի. և մտադիւր տամք զանձինս 'ի քննութիւն Ճանապարհացն Աստուծոյ ընդ մարդոյ: Քանզի տեսանեմք զքեզ պատուեալ յԱստուծոյ, և զսէր նորա նոյնպէս հաստատեալ 'ի վերայ մարդոյ: Արդ՝ ասա պատմեա, զի 'ի նմին աւուր [13] դէպ եղև ինձ հեռանալ անտի, և ըստ հրամանին Աստուծոյ ունել զՃանապարհ տարագնաց, դժուարակոխ և խաւարչտին՝ արշաւեալ 'ի դրունս դժոխոց. և անդ Ճակատեցուցեալ զլեգէոնն իմ՝ զգուշանալ, զի մի ոք վաղեսցէ արտաքս 'ի լրտեսութիւն կամ 'ի Թշնամութիւն՝ 'ի գործել անդ Աստուծոյ զարարածս. գուցէ սրտմտեալ նորա ընդ յանդուգն յարձակումն նոցա՝ զապականութիւն ընդ արարչութեան խառնեսցէ: Ոչ Թէպէտ ոչ իշխեն նոքա մատչել յայդ փորձ առանց Թոյլտուութեան նորա, սակայն և այնպէս նա ինքն իբրև գերագոյն արքայ առաքեաց զմեզ անդր վերին հրամանօքն 'ի հանդէս իւրում մեծութեան, և մերումն յօժարամիտ հնազանդութեան: Գտաք անդ զահագին դրունսն քաջ ամրափակեալ. բայց մինչև էր մեր հուպ մատուցեալ՝ լուաք 'ի ներքուստ անտի զաղաղակ ինչ կարի տարօրինակ 'ի

ձայնէ պարուց և երգոց. որ և էր սաստկագոյն տանջանաց, մեծակական ողբոց, և անհնարին կատաղութեան: Նման որոյ և դարձաք անդրէն 'ի վեր 'ի սահմանս լուսոյ յառաջքան զերեկոյն շաբաթու[14]. զի այսպէս ընկալեալ էր մեր զհրաման: Բայց արդ դարձցուք 'ի պատմութիւն քո. զի ոչ նուազ հաճութեամբ լսեմ ես զբանս քո, քան դու զիմն:

Զայսօրինակ խօսեցաւ Զօրութիւնն երկնային. և զայս ետ նմա պատասխանի մերս Նախահայր: Դժուարին է մարդոյ պատմել զսկիզբն իւրումն կենդանութեան, զի ո՞ գիտաց զծագումն իւր. սակայն և այնպէս փափաք տենչանաց ընդ երկար բանից ընդ քեզ ձգեաց զիս առ այս: Արդ գոգցես նորոգ զարթուցեալ 'ի խորին քնոյ` զտի զանձն իմ անկեալ 'ի վերայ դալարագեղ և ծաղկազուարճ խոտոյ. և կայի հարեալ 'ի քիրտն բալասանեան. զոր և անդէն ցամաքեցոյց արեգակն ճառագայթիւքն իւրովք, և ճարակեաց զարտաշնչութիւն նորին: Իսկ ես փութանակի դարձուցի զաչս իմ յերկինս զարմացմամբ, և պշուցեալ հայէի ընդ լայնածաւալ ընդարձակութիւն նորին: Մինչև ապա կանգնեալ շոյտ և մղիչ շարժմամբ` գոգցես յայն կողմն 'ի վեր ձգեալ, կացի կանգուն 'ի վերայ ոտից իմոց: Եւ տեսի շուրջ զինև զլերինս, զհովիտս, զհովանաւոր անտառս, զարեգակնաճաճեմ դաշտս, և զականակիտ հոսանս կարկաջախաղաց ջուրց: Եւ առ նոքօք զարարածս կենդանիս` որք շարժէին, գնային և թռչէին. և թռչունք գեղգեղաձայն երգէին յոստս ծառոց: Ամենայն արարածք զուարճացեալ կային անու-

շահրոտութեամբք իւրեանց. և լցին զսիրտ իմ բերկրապատար խնդութեամբ։ Հայեցայ ապա յանձն իմ, և զննեցի զանդամս. է զի շարժեցայ, և է զի ընթացայ դիւրաթեք յօդուածովքս՝ որպէս և զիարդ առաջնորդէր ինձ կենդանի զօրութիւնն որ յիս։ Բայց ոչ գիտէի, թէ ո եմ ես, ուրանօր, և յումմէ։ Ամին իրի մատեայ 'ի փորձ բանից, և անդէն խօսեցայ. հնազանդեցաւ լեզու իմ, և ես դիւրաւ մարթացայ կոչել յանուանէ զոր միանգամ տեսանէի։ Այլ ասացի. Արեգական լուսաւորդ գեղապանծ, և երկիրդ լուսազարդեալ, նորազուարճ և բերկրալից, լերինք, հովիտք, գետք, անտառք և դաշտք, և ամենայն շարժուն կենդանիք՝ ասացէք ինձ գեղեցիկ արարածքդ, եթէ գիտէք՝ թէ յումմէ ստեղծայ ես, և եկի այսր։ Ապաքէն ոչ գոյայ յանձնէ իմմէ, ապա անշուշտ 'ի գերագոյն Արարչէն՝ որ առաւելեալն է 'ի բարութեան և 'ի զօրութեան։ Այլ դուք ասացէք ինձ, թէ զիարդ մարթ է ինձ ճանաչել զնա և պաշտել՝ յորմէ ունիմ զշարժումն և ըզկեանս, և զգամ յանձին զառաւել երջանկութիւն քան զոր մարթ է ինձ առնուլ 'ի միտ։ Մինչդեռ զայսօրինակ գոչէի, և մոլորեալ շրջէի 'ի տեղւոջն՝ չգիտեմ ուրանօր, ուր զառաջինն ծծեցի զօդ, և տեսի զլոյսն երանազուարճ, իբրև ոչ ինչ լուայ պատասխանի՝ նստայ 'ի վերայ դալարաւէտ, ծաղկափթիթ և հովանաւոր բլրոյն՝ յառեալ 'ի խորհուրդս։ Անդ զառաջինն եհաս 'ի վերայ իմ քաղցրութիւն քնոյ, և հեզիկ ծանրութեամբ կալաւ անխռով զթմբրեալ զզայարանս իմ. թէպէտ 'ի նմին պահու համարէի զանձն իմ անցանել յա-

ռաջին վիճակ անզգայութեան իւրոյ, և լուծանիլ անդէն [15]։ Այլ ահա յանկարծակի եկաց երազն առ սնարիւքս. և երևումն նորա 'ի ներքս՝ շարժեաց մեղմով զերևակայութիւնն իմ, և ետ ինձ հաւատալ, թէ ունիմ տակաւին զգայութիւն և զկեանս։ Թուէր ինձ յայնժամ, թէ եկեալ ոք յաստուածային կերպարանս՝ ասէր ցիս. « Որդի Ադամ՝ մարդդ առաջին, որ կարգեալ ես նախահայր անթիւ ծննդոց. զի բնակութիւն քո սպասեալ մնայ քեզ։ Եւ ես կոչեցեալ 'ի քէն՝ եկի տանել զքեզ 'ի դրախտն փափկութեան, որ է պատրաստեալ տեղի վասն քո »։ Եւ զայս ասացեալ նորա՝ կալաւ զձեռանէ իմմէ, և կանգնեաց զիս յոտին։ Եւ ապա անցուցեալ ընդ դաշտս և ընդ գետս անքայլ ընթացիւք իբրև ընդ օդս՝ էած զիս զկնի 'ի լեառնն անտառախիտ, որ 'ի բարձրութեան անդ գագաթան ունէր զդաշտավայր լայնանիստ, և փակեալ շուրջանակի. յորում տընկեալ կային ընտիր ընտիր ծառաստունկք, և ճանապարհք ընդ մէջ նոցա ձողաբարձ զարդարեալք, առ որովք զոր ինչ միանգամ տեսի յառաջագոյն յերկրի, ոչ եւս լինել ինձ հաճոյ։ Եւ ամենայն ծառք ծանրաբեռնեալք առհասարակ գեղեցկատեսիլ պտղովք իւրեանց՝ որք կախեալ կային զնոցանէ 'ի հրապոյրս աչաց, անդէն շարժեցին զախորժակն իմ կթել 'ի նոցանէ, և ճաշակել։ Յայնմ վայրի զարթեայ, և գտի զամենայն ինչ արդեամբք առաջի իմ՝ որպէս անրջոցն նկարեալ էր կենդանւոյն։ Այլ աստանօր ես ունէի շրջիլ մոլորական, եթէ տեսիլն աստուածային՝ որ առաջնորդեաց ինձ այսր, ոչ էր երևեալ ինձ 'ի մի-

ջոյ տնկոցն ։ Խնդացի ընդ երեւումն նորա ․ այլ ըմբռնեալ յերկիւղ՝ անկայ յոտս նորա յերկրպագութիւն ։ Իսկ նորա կանգնեալ զիս՝ ասաց քաղցրութեամբ ․ « Ես եմ զոր դուդ խնդրես , Արարիչն ամենայնի՝ զոր միանգամ տեսանես 'ի վերոյ քան զքեզ , շուրջ զքեւ , և 'ի խոնարհ ։ Ետու քեզ զդրախտդ 'ի սեպհական ժառանգութիւն գործել զայն և պահել , և ճաշակել 'ի պտղոց նորա ։ Յամենայն ծառոցդ՝ որք բուսանին 'ի նմա , կեր համարձակ , և խնդագին սրտիւ , և մի երկնչիր յերեսաց չքաւորութեան աստանօր ։ Բայց 'ի ծառոյն՝ որ յառաջ բերէ զգիտութիւն բարւոյ և չարի , զոր և 'ի գրաւական քումդ հնազանդութեան և անկեղծ հաւատարմութեան տընկեցի 'ի պարտիզիդ առընթեր ծառոյն կենաց՝ ( յուշ լիցին քեզ բանք իմ ) մի ճաշակիցես ․ և զգոյշ լեր 'ի պատուհասէն՝ զոր ածէ նա 'ի վերայ ։ Քանզի՝ ( քաջ 'ի միտ առ ) յորում աւուր կերիցես 'ի նմանէ՝ անցեալ ըստ պատուիրանն իմ միակ , մահու մեռանիցիս հաւաստեաւ ․ և յօրէ յայնմանէ կորուսցես ևս զվիճակն երանութեան՝ տարագրեալ 'ի դրախտէդ յերկիր ցաւոց և աղէտից » ։ Ծանոյց նա ահարկու դիմօք զայս հրաման սաստկութեան՝ որ տակաւին ահագին հնչէ յականջս իմ ։ Այլ անդէն շրջեալ զերեսս իւր 'ի քաղցրութիւն՝ վերստին նորոգեաց զշնորհազեղ բանս իւր օրինակ զայս ։ « Ոչ միայն զգեղեցկազուարճ սահմանդ , այլև զերկիրն ողջոյն տամ քեզ , և զաւակի քում ։ Իբրև տեարս ժառանգեցէք զայն , և զոր ինչ միանգամ գտանի 'ի նըմա , 'ի ծովու և յօդս՝ զանասունս , զձկունս և

զթռչունս ։ Այլ 'ի հաւաստի նշանակ՝ ահա ածեմ առ քեզ զամենայն անասունս և զթռչունս ըստ ազգի իւրեանց. զի ընկալցին 'ի քէն զանուանս, և խոնարհ հպատակութեամբ ընծայեսցեն քեզ զհարկ ծառայութեան։ Զնոյն իմն և զձկանցն՝ որ բնակեալ են 'ի ջուրս. զորս ոչ կոչեցի այսր, զի ոչ կարեն թողուլ զթանձրագոյն տարր իւրեանց, և ձգել զօդ անօսր « ։ Արդ և զայս օրինակ խօսէր նա, և ահա ամենայն թռչունք և անասունք մատեան առ իս երկու երկու ։ Անասունքն 'ի գունդս անկեալ՝ քծնէին զինև, և թռչունքն արկեալ 'ի վայր զթևս իւրեանց՝ մեծարեալ պատուէին ։ Եդի նոցա անուանս ընդ անցանել նոցա. և ծանեայ զբնութիւն նոցա. զի սովին գիտութեամբ ելից Աստուած յանկարծակի զմիտս իմ ։ Բայց քանզի ոչ գտի 'ի նոսա որում կարծէի պէտս ունել տակաւին, նմին իրի համարձակեցայ խօսել ընդ երկնային տեառնն՝ օրինակ զայս ։

Ո՞վ յինչ անուն կոչեցից զքեզ՝ որ գեր 'ի վերոյ ես քան զամենեսին զգօսա, 'ի վեր քան զազգ մարդկան, և զոր ինչ 'ի վերոյ է քան զազգ մարդկան. և գերազանցեալ գտանիս քան զանուանս կոչութիւնն իմ ։ Այլ զիարդ մարթ է ինձ Արարչդ տիեզերաց, և պարգևատուդ ամենայն բարեաց՝ պաշտել զքեզ, և երկիրպագանել քեզ ըստ արժանւոյն՝ որ 'ի շնորհս մարդոյն հոգացեալ խնամարկեցեր զայս ամենայն ձրիաբար և առատաբաշխ ձեռամբդ ։ Սակայն տակաւին ոչ գտանեմ ես զոք հաղորդակից ընդ իս բարեացս այսոցիկ ։ Այլ միթէ կայցէ՞ ինչ երջանկութիւն յառանձնաւթեան անդ. և ո՞ւմ ումեք մարթ է վայելել միայն

'ի բարիս. և 'ի վայելս անդ ամենայնի գտանել զհաճութիւն անձին ։ Զայսօրինակ յանդգնաբար իմն խօսեցայ ես ։ Եւ պայծառ տեսիլն առաւել ևս լուսափայլեալ՝ զոգցես խնդացին արար ինձ պատասխանի՝ օրինակ զայս ։

Զի՞նչ առանձնութիւն իցէ զոր ասես. ո՞չ ապաքէն լի են երկիր և օդ բազմապատիկ արարածովքդ կենդանեօք. և ամենեքին կոչեցեալ 'ի հրամանէ քումմէ՝ խայտան առաջի քո ցնծալից ։ Գիտես դու զլեզու նոցա և զկենցաղ. գիտեն և նոքա զքոյդ. և խօսին 'ի լեզուս՝ զորս չէ արժան արհամարհել ։ Ընդ՝ գիտ 'ի նոսա զզբօսանս անձին, և կալ իշխանութիւն 'ի վերայ նոցա. զի մեծ է թագաւորութիւն քո ։ Զայս օրինակ խօսեցաւ Տէրն տիեզերաց, և թուեցաւ տալ ինձ պատուէր հրամանի ։ Սակայն ես խնդրեալ 'ի նմանէ զներումն խոնարհ հայցուածովք՝ արարի նմա զայս պատասխանի ։

Ո՞վ ծանր թուեսցին քեզ բանք իմ Արարիչ իմ, և զօրութիւն երկնային. այլ ներեա ինձ ։ Ո՞չ ապաքէն դու ինքնին կացուցեր զիս փոխանորդ քո աստանօր, և զստորինքս ամենայն խոնարհագոյնս եդիր քան զիս ։ Ընդ՝ յանհաւասարս անդ զո՞ր ընկերութիւն, զո՞ր միաբանութիւն, և զի՞նչ տիրապէս զուարճութիւն մարթ է գտանել. որում արժան է լինել փոխադարձ 'ի մէջ հաւասար ընկերաց ։ Զի յանհաւասարութեան անդ յառաւելուլ միոյն, և 'ի նուազիլ միւսոյն՝ անհնար է երկոցունց կողմանցն քաջ յարմարիլ ընդմիմեանս. վասն որոյ և անդէն վաղվաղակի 'ի ներքս մտանէ ձանձրութիւն յերկոսեան միմեանց ։ Իմ

բանք են յաղագս ընկերութեանն՝ զոր ես խնդրեմ, և որում 'ի դէպ է հաղորդակից լինել ընդ իս ամենայն բանական զուարճութեանց, յորս անմարթ է անբանից լինել ընկեր մարդոյ։ Զուարճացեալ բերկրին նոքա ընդ սեռս իւրեանց. առիւծ ընդ մատակ առիւծու. զի առվլին վայելչութեամբ կապեցեր զնոսա 'ի զոյգս։ Ո՛չ հնար է կենցաղակից լինել թռչնոյ ընդ գազանի, և ձկան ընդ հաւու, և կապկի ընդ եզին. և՛ս առաւել մարդոյ ընդ անբանից։

Եւ դժուարեալ Ամենակալին ընդ այս՝ արար ինձ պատասխանի։ Տեսանեմ զքեզ Ադամ յընտրութեան անդ ընկերի ունել առաջի աչաց զհամեմատ և զվայելուչ երջանկութիւն. զի թէպէտև զտանիս 'ի զուարճութեան, սակայն ոչ կամիս վայելել զայն առանձինն։ Այլ զի՞նչ ունիս ասել զինէն, և զվիճակէ իմում երանութեան։ Թուիցի՞մ քեզ արդեօք ունել զայն լիով, եթէ ոչ։ Զի միայն եմ յամենայն յաւիտենից, և ոչ ճանաչեմ զոք երկրորդ կամ նման ինձ, և՛ս առաւել զուգահաւասար[16]։ Արդ՝ ընդ ո՞ւմ ումեք ունիմ ես կենցաղակից լինել, եթէ ոչ ընդ արարածոցս՝ զոր ստեղծի. և դոքա ստորինք քան զքեզ՝ անհամա՛ն առաւելութեամբ խոնարհագոյն են քան զիս։

Պաղարեաց նա. և ես խոնարհութեամբ ետու նմա զպատասխանի։ Գերագոյն Տէ՛ր արարածոց՝ անհնար է մտաց մարդկան հասու լինել բարձրութեան և խորութեան յաւիտենական ճանապարհաց քոց։ Կատարեալ ես դու ինքնին և ապէնիազ. բայց ոչ նոյնպէս մարդ, այլ ըստ չափոյ ւեթ։ Ցանկայ նա կենակից լինել ընդ նմանւոյ

իւրում՝ առ ՚ի գտանել զօգնութիւն ՚ի նմանէ , և լինել զկարօտութիւն անձինն ։ Ո՛չ են քեզ պէտք սերնդեան և աճելութեան . զի թէպէտ միայն ես , այլ անբաւ և ամենակատար ։ Բայց մարդն թերի գոլով՝ սահմանեալ է ընդ թուով , և զպատկեր իւր բազմացուցանել՝ ծնեալ զնմանն ՚ի նմանւոյ ։ ՚Ի միութեան անդ ոչ է նա կատարեալ , զի պէտք են նմա համեմատ սիրոյ , և մտերիմ բարեկամութեան ։ Դու դու ՚ի գաղտնութեան քում թէպէտ և միայն ես , բայց քաջ միաբանեալ ընդ քեզ՝ ոչ ես կարօտ հաղորդակից ընկերութեան ։ Սակայն և այնպէս յորժամ կամք են քեզ , կարող ես ամբառնալ զարարածս քո ՚ի գերագոյն բարձրութիւն միութեան կամ հաղորդութեան ընդ քեզ , և աստուածացուցանել զնոսա[17] ։ Իսկ ես ՚ի կենակից լինել իմում ընդ սոսա՝ ոչ կարեմ ուղղել զնոսա ՚ի կորացմանէ անտի ընդ երկիր . նմին իրի և ոչ գտանեմ զհաճութիւն անձին իմոյ ՚ի կենցաղս նոցա ։ Սովին համարձակութեամբ խօսեցայ ես ընդ նմա , ՚ի կիր արկեալ զազատութիւնն՝ զոր ընկալայ ՚ի նմանէ . և նա հաճեցաւ ընդ բանս իմ . և ետ ինձ պատասխանի շնորհազարդ բարբառովն՝ օրինակ զայս ։

Յայս վայր զիջայ ես Ադամ առ ՚ի փորձ քումդ անձին . և տեսանեմ զքեզ քաջ ճանաչել ոչ միայն զկենդանիս՝ զորս ուղղութեամբ անուանեցեր , այլ և զանձն քո . զի տիրապէս ցուցեր ՚ի քեզ զհոգին ազատութեան՝ զպատկերն իմ անհաղորդ անբանից ։ Վասն որոյ և իրաւամբք ոչ հաճիս ընդ անհամեմատ ընկերութիւն նոցա ընդ քեզ ։ Կա՛ց տակաւին ՚ի նոյն միտս ։ Բայց մինչև էր քո խօ-

տեալ ընդ իս՝ գիտէի ես, թէ ոչ է բարւոք մարդոյն միայն լինել: Այլ այժմ ոչ ևս մնայ քեզ ընկեր ըստ օրինակի առաջնոցն. զի ածի զնոսա առաջի քո առ՚ի փորձ ևեթ, ՚ի տեսանել՝ թէ զիարդ ընտրես զարժանն և զվայելուչն: Զոր յայսմհետէ հանդերձեալ եմ ածել, անշուշտ հաճեսցիս ընդ նա. զի է նմանութիւն քո, օգնական քո, ընկեր քո քաղցրավայելուչ, միւս ևս ինքն, և տիրապէս ցանկալին քում սրտի:

Կնքեաց նա աստանօր զբանն իւր. և կամէր ոչ լռայ: Քանզի յայնժամ պահու ճնշեալ երկրաւորիս յերկնային ծանրութենէն՝ ընդ որով եկաց ընդերկար ՚ի վերջին բարձրութեան անդ գերածայրեալ և անզուգական բանից, մթագնեցաւ, շիջաւ, նուաղեցաւ, և խնդրեաց զհանգիստ քնոյ: Որ և յանկարծակի եհաս ՚ի վերայ իմ, զոգցես կոչեցեալ յօգնութիւն ՚ի բնութենէ անտի. և կափոյց զաչս իմ: Կափոյց զնոսա, այլ եթող բացեալ զներքնակն իմում մտաց՝ զտեսութիւնն իմ ներքին: Ընդ այն՝ իբրև վերառեալ ՚ի յափշտակութիւն, թուէր ինձ տեսանել ՚ի քուն անդ զտեղին՝ ուր անկեալ կայի, և զկերպարանն պայծառափայլ՝ որոյ յանդիման կացի յարթմնի: Որ և խոնարհեալ՝ եբաց զահեակ կողմն իմ, և էառ անտի զմի ՚ի կողիցս՝ որ էր ջերմաջերմ կենդանութեամբ, և զառժամանակեայ հոսէր զարիւն կենաց: Մեծ էին վէրքն զառաջինն, այլ անդէն լցեալ մսով՝ վաղ կցեցան: Զկողն իմ յօրինեաց նա և կերպարանեաց ընդ իւր ձեռամբ. և ՚ի ներքոյ ձևիչ ձեռաց նորա մեծացաւ արարածն մարդանման, բայց այլասեռ: Այնչափ գեղեցիկ էր

նա և ցանկալի , մինչև առ նուազ համօրէն գե-
ղեցկութեանց աշխարհի երևել տգեղատեսիլ , և
կամ բովանդակիլ ողջոյն 'ի նմա , և 'ի դէմս նո-
րա ։ Որ և 'ի ժամանակէ անտի եհեղ 'ի սիրտ իմ
զայնպիսի իմն քաղցրութիւն , զորոյ զփորձ ոչ էի
առեալ յառաջագոյն ․ զի բուրէր յանձնէ իւրմէ
զանուշահոտութիւն սիրոյ և տենչալի բերկրա-
նաց ։ Այլ անդէն աներևութացեալ նորա յա-
չաց իմոց՝ եթող զիս 'ի մթան ։ Զարթեայ յայն-
ժամ , և չոգայ 'ի խնդիր նորին , և կամ առ ողբա-
լոյ զկորուստ նորա՝ բարեաւ մնա ասացեալ այլ ա-
մենայն զուարճութեանց ։ Բայց ահա անակնկալ
տեսի զնա ոչինչ կարի 'ի բացեայ յինէն , և 'ի նոյն
կերպարանս՝ որպէս տեսեալ էի յանուրջս անդ ,
զարդարեալ ամենայն գեղեցկութեամբ՝ զոր միան-
գամ մարթ է համօրէն երկրի , և կամ երկնից
մատուցանել նմա առ 'ի ընծայել զնա յաւէտ իմն
անձկալի ։ Եկն նա առ իս առաջնորդեալ յաներ-
ևոյթ Արարչէն , և յերկնային ձայնէ նորա ։ Եւ
ոչ իսկ անգէտ էր նա ամուսնութեանն սրբու-
թեան , և հարսանեացն օրինաց ։ Յամենայն քայ-
լափոխս նորա երևէին շնորհք վայելչութեան ,
երկինք յաչս , և սէր 'ի գնացս ողջոյն ։ ‘Եմին իրի
զեղեալ խնդութեամբ՝ ոչ ևս կարող եղէ ունել
զբարբառն իմ յաղաղակելոյ մեծաձայն առ Տէր ։

Սովաւ զամենայն ինչ հատուցեր , և լցեր զբան-
քո՝ Արարիչ իմ գթած և բարերար , և պար-
գևատու ամենայն գեղեցկութեանց ։ Այլ սա գե-
ղեցիկ ևս է քան զամենայն առատաձիր պարգևս
քո ։ Ահա տեսանեմ զսա ոսկր յոսկերաց իմոց , և
մարմին 'ի մարմնոյ իմմէ , զիս ինքն յանդիմանս ա-

չաց իմոց ։ Սէրն է անուն նորա՝ առեալ յառնէ, վասն որոյ արժանն է սմա թողուլ զհայր իւր և զմայր, և գնալ զհետ կնոջ իւրոյ. զի եղիցին երկոքեան մի մարմին, մի սիրտ, և մի հոգի ։

Լուաւ նա զայսոսիկ բանս իմ. և թէպէտ Աստուծոյ ածեալ էր զնա առ իս, սակայն և այնպէս անմեղութիւն նորա, համեստութիւն կուսական, առաքինութիւն նորա և ծանօթութիւն իւրոց արժանեաց՝ որոց պարտ էր ինքնին լինել սիրելի, այլ ոչ անձնամատոյց առ 'ի երևիլ յաւէտ իմն ցանկալի, և միանգամայն իսկ առնել՝ նոյն ինքն բնութիւնն թէպէտև անարատ 'ի մեղանչական խորհրդոց, այնպէս իմն գեղեցիկս կարգեալ էին 'ի նմա, մինչև 'ի տեսանել նորա զիս՝ խոյս ետ յինէն ։ Ընթացայ ես զկնի նորա, և նա քաջ ծանեաւ զյարգ մեծարանացն. վասն որոյ և պանծալի հնազանդութեամբ հաւան գտաւ ընդ բանս յորդորանաց իմոց ։ Եւ այնպէս ածի զնա 'ի հովանոցն սրսկապանի հարսանեաց ։ Համօրէն երկինք, և բարենշան համաստեղութիւնք հեղլին յայնժամ զցանկալի հոսանս իւրեանց [18] ։ Երկիր, և ամենայն լերինք ետուն զնշանս խնդակցութեան իւրեանց ։ Խայտալից թռչունք, զովագին հողմք, և քաղցրաշունչ օդք հնչեցին ընդ անտառս. որք և բարձեալ բերէին 'ի թևս իւրեանց զանուշահոտ վարդս, և զքաղցր բուրմունս խնկենեաց 'ի զուարճութեան անդ իւրեանց. մինչև սևբատարփ թռչունն զիշերոյ [19] նուագեաց զերգս առագաստի. և ետ աստեղն երեկոյի [20] փութալ յարտևան իւրոյ լերին, և անդ լուցանել զջահն հարսանեաց ։

Ահա զայսօրինակ ցուցի քեզ զամենայն ինչ զիմ, և հասուցի զպատմութիւնս ՚ի կատար անդր երկրաւոր երջանկութեանն՝ յոր վայելեմ արդ։ Այլ արժան է ինձ խոստովան լինել զայս. զի թէպէտ գտանեմ զզուարճութիւն և յայլ արարածս, սակայն նոքա ՚ի վայելս իւրեանց ոչ այլայլեն զմիտս իմ, կամ ձգեն բուռն ցանկութեամբ՝ որպիսի են վայելք ճաշակելեաց, տեսանելեաց, հոտոտելեաց, բանջարոց, պտղոց, ծաղկանց, շրջելոյ ՚ի զբօսանս, և քաղցրաձայն երգոց թռչնոց։ Իսկ ՚ի սմա այլ յայլմէ լեալ՝ տարօրինակ ինչ տեսանեմ, և զգամ յանձին։ Եւ ՚ի սմա միայն զառաջինն գիտացի զկիրս։ Յայլ ամենայն զուարճութիւնս գեր ՚ի վերոյ գտանիմ և անպարտելի, իսկ ՚ի սմա տկարացեալ յուժոյ առաջի յաղթական տեսլեան հրապուրիչ գեղեցկութեան։ Վասն որոյ կամ բնութիւնն պակասեալ է առ իս, և թողեալ յիս մասն ինչ տկարագոյն առ ՚ի զդէմ ունելոյ այնպիսումն տեսութեան, և կամ յառնուլ անդ ՚ի կողից իմոց՝ թերևս էառ նա առաւել քան զբաւականն։ Եւ կամ գէթ շնորհեաց նմա զառաւելութիւն զարդուց. որք արուեստակեալ են ըստ արտաքին տեսլեան, թէպէտև ՚ի ներքս անդ ոչ նոյնպէս անվթար։ Զի տեսանեմ զնա յետնեալ յառաջինն նպատակի անդ բնութեան, ՚ի միտս ասեմ և ՚ի զօրութիւնս հոգւոյն՝ որք են յաւէտ պանծալի։ Եւ ըստ արտաքին տեսլեան ևս ոչ է նա քաջ նմանատիպ պատկերի նորա՝ որ արար զերկոսեանս. և ոչ ցուցանէ նա տիրապէս զկնիք իշխանութեանն՝ որ տուեալ է մեզ ՚ի վերայ այլոց արարածոց։ Սակայն և այնպէս ՚ի

մատչել իմում 'ի գեղեցկութիւն նորա՝ այնչափ անթերի գտանեմ զնա և կատարեալ, մինչև թուել ինձ իմաստուն յոյժ, առաքինի, խոհական և ընտիր յամենայն գործս և 'ի բանս իւր: Ամենայն բարձրագոյն գիտութիւն նուաստացեալ խոնարհի առաջի նորա: Իմաստութիւնն կորուսանէ զհանճար իւր 'ի խօսել անդ ընդ նմա, և երևի զոգցես անմտութիւն: Իշխանութիւն և բան սպասաւորկու են նմին, որպէս թէ առաջին լինէր նա 'ի դիտման արարչութեան, և ոչ յետոյ քան զիս ըստ բերման: Այլ 'ի մի բան բովանդակել զամենայն, վեհանձնութիւն և ազնուական միտք տենչանօք հաստատեն 'ի նմա զաթոռս իւրեանց, և զմեծարանս կարգեալ ունին զնովաւ իբրև զպահպանութիւն հրեշտակային [21]:

Որում հրեշտակն ետ զայս պատասխանի խստութեամբ իմն: Մի՛ լինիր մեղադիր բնութեանն՝ որ ելից զպարտիս իւր, այլ լի՛ց դու զանձինդ միայն: Մի՛ երկմտիր ընդ իմաստութիւն քո. ոչ լքանէ նա զքեզ, եթէ ոչ դու թողուս զնա 'ի կարևոր ժամու, և ոչ մեծ ինչ համարիս զորս չեն արժանի: Զի՞ զարմացեալ ես այնչափ, և այլ յայլմէ լինիս ընդ տեսիլ նորա արտաքին: Արդարև գեղեցիկ է նա, և արժանի քումդ մեծարանաց և սիրոյ, այլ ոչ հպատակութեան: Դի՛ր 'ի կշիռ ընդ նմա զանձն քո, և յայնժամ ծանիցես զյարգ նորա: Զի բազում անգամ չիք ինչ այնպէս կարևոր մարդոյ, որպէս վարկ անձինն հաստատեալ յարդարութիւն և յուղղութիւն, և 'ի կիր արկեալ ըստ արժանեաց: Որչափ ճարտար ես յայս արուեստ, այնչափ ծանիցէ նա զքեզ գլուխ իւր. և արտաքին ցոյցք նորա

տեղի տացեն առաջի քումդ պարծանաց։ Ստեղծաւ նա պճնազարդ յառաւելութիւն քումդ բերկրանաց. և յարգոյ՝ զի գիտասցես սիրել զքո կենակից։ Որ և քաջ տեսանէ զքեզ, յորժամ ոչ երևիս քաջ իմաստուն։ Ապա եթէ զբերկրութիւն զգայութեանցդ ախորժես 'ի նմա 'ի սակս որդեծնութեան, զնոյն գտանես շնորհեալ և անբանից։ Որ ոչ լինէր դուզնաքեայ ինչ առ նոսա, եթէ վայելք նորին լինէին արժանի 'ի նուաճել զմիտս մարդոյն, և շարժել 'ի նմա զկիրս։ Սակայն և այնպէս սիրեա դու 'ի նմա զոր ինչ միանգամ գտանես ազնուական, զուարճալի, մարդկային և բանական։ Գովելի է սէրն, այլ ոչ բուռն կիրք. զի չէք 'ի դոսա սէր ճշմարիտ. Սէրն ազնուացուցանէ զմիտս, և ընդարձակէ զսիրտն։ Ունի նա զաթոռ իւր հաստատեալ 'ի բանն, և է խոհական։ Սանդուղք ինն է նա՝ որով մարթ է քեզ ամբառնալ 'ի սէրն երկնային, այլ ոչ ընկղմել 'ի հեշտութիւնս մարմնոյ։ Նմին իրի իսկ ոչ գտեր զընկեր 'ի մէջ անասնոց անբանից։

Որում ետ պատասխանի Ադամ զոգցես ամօթապարտեալ։ Ո՛չ տեսիլ նորա արտաքին այնչափ գեղեցիկ, և ոչ հեշտութիւն որդեծնութեան ընդ այլոց կենդանեաց (թէպէտև անկողինն սրբութեան խորհրդական է, և յաւէտ ինն պատուոյ արժանի) այնպէս բերկրեցուցանեն զիս, որպէս շնորհազարդ գնացք նորա, և բազմապատիկ վայելչութիւնք բանից և գործոց՝ զորս հոսէ նա հանապազ խառն ընդ սիրոյ, և քաղցրիկ հաճութեան։ Որք և յայտ առնեն զանկեղծ մեծութիւն մտաց և հոգւոյ յերկոսեանն 'ի մեզ։ Այս միաբանութիւն

այսպիսի 'ի լծակից անձըս յաւէտ բերկրական է քան զներդաշնակութիւն ձայնի յականջս: Սակայն և այնպէս ոչ յաղթահարիմ ես 'ի նոցանէ: Այլ զոր ինչ զգամ յանձին իմում, ահա ծանուցանեմ քեզ: Թէպէտև տեսանեմ զառարկայս ըզ-գայութեանց, բայց ինքնիշխան զօրով՝ ընտրեմ զլաւն, և զհետ երթամ բարւոյն [22]: Այլ դու մի՛ ստգտանէր զիս 'ի սակս սիրոյ. զի ինքնին ասացեր զնմանէ առաջնորդ լինել յերկինս. որ և է առաջ-նորդ և ճանապարհ միանգամայն: Բայց տուր ինձ աղաչեմ պատասխանի, եթէ հարցուածն իմ իցէ իրաւացի: Սիրիցե՞ն արդեօք և հոգիք երկնաւո-րաց. և զի՞արդ ցուցանեն զայն սէր: Մի՞թէ հայե-ցուածո՞վք ևեթ, եթէ ճառագայթակից փայլ-մամբ: Զօրութենակա՞ն, եթէ անմիջական հպա-ւորութեամբ [23]:

Որում արար պատասխանի Հրեշտակն ժպտե-լով իմն՝ որ ցուցանէր 'ի դէմս նորա զվարդագոյն կարմրութիւն երկնից, զսեպհական գոյն սիրոյ: Բաւ լիցի քեզ գիտել զմերս երջանկութիւն, որ ոչ գտանի երբէք առանց սիրոյ: Բայց՝ զոր միան-գամ վայելես դու 'ի մարմնի մաքրութեամբ (զի ստեղծար անարատ) զնոյն վայելեմք և մեք անչա-փապէս, զի չունիմք խափան յերեսաց գործարա-նաց մարմնոյ: Եթէ գտանի զուգախառնութիւն յերկնային հոգիս, դիւրագոյն ևս քան զխառնումն օդոյ ընդ օդոյ՝ միաւորին նոքա անախտ տենչանօք մաքուր ընդ մաքուր, և չունին պէտս անձկագոյն կապանաց որպէս մարմին 'ի զուգախառնութեան անդ ընդ մարմնոյ, և հոգի ընդ հոգւոյ [24]: Բայց ես ոչ ևս կարեմ մնալ առ քեզ. զի մեկնել արե-

զականն՝ մտանէ յայնկոյս դալարազուարճ Պարաւանդին[25] երկրի, և Հեսպերեանն[26] կանաչազգեստ կղզեաց. և անհարկէ ինձ տեղի տալ աստի։ Բայց դու քաջ լեր, և զօրացիր. կաց յերջանկութեանդ, և սիրեա. բայց յառաջ քան զամենայն զնա՝ որոյ սիրոյն նշանակ է հնազանդութիւնդ, և պահպանութիւն վերին հրամանաց նորա։ Զգուշացիր՝ գուցէ թխրեսցեն կիրք զմիտս քո հաւանիլ ընդ այն՝ զոր թերևս անձնիշխան ազատութիւն կամացդ չառնու յանձն ՚ի գործել։ Երջանկութիւն և թշուառութիւն անձինդ, և համօրէն որդւոց քոց ՚ի քեզ են հաստատեալ։ Ընդ հաստատութիւն քո ցնծացայց ես, և ամենայն հրեշտակք երկնից ընդ իս, կաց անդրդուելի։ Կալ կամ անկանիլ՝ թողեալ է յազատութիւն կամաց քոց։ Գոլով քո կատարեալ յանձինդ՝ մի լինիր ՚ի խնդիր օգնականի արտաքուստ։ Եւ ՚ի բաց արա ՚ի քէն զամենայն առիթս պատուիրանազանցութեան։

Զայս ասացեալ նորա՝ յարեաւ ՚ի գնալ։ Եւ Ադամ յաւել տալ նմա զօրհնութիւնս զայս[27]։ Եւ քանզի երթաս, գնա խաղաղութեամբ հիւրդ երկնային, և պատգամաւորդ աստուածային. որ առաքեցար ՚ի նմանէ՝ որոյ վերնական շնորհացն երկիր պագանեմ։ Ցանկալի եղև ինձ և քաղցր յոյժ զիջումն քո առ իս. որ և պատուեցեր միշտ շնորհակալաւ յիշատակաւ։ Դու բարերար և բարեկամ մարդկան ազգի հանապազ. և սակայն դարձիր առ մեզ։ Զայսօրինակ խօսեցեալ նորա՝ մեկնեցան ապա ՚ի հովանւոյ անտի ծառոյն՝ Հրեշտակն յերկինս ՚ի վեր, և Ադամ ՚ի հովանոց իւր[28]։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ցածեալ Սատանայի ընդ երկիր՝ դարձ առնէ 'ի դրախտ անդր 'ի գիշերի իբրև զմէգ: Մտանէ յօձն 'ի ննջել նորա: Ադամ և Եւայ ելանեն 'ի վաստակս իւրեանց: Եւայ առաջի առնէ Ադամայ բաժանել զայն յառանձին վայրս, և վաստակել ուրոյն 'ի միմեանց. բայց նա ոչ հաւանի ընդ այն, յառաջ բերեալ զվտանգն փորձութեան Թշնամւոյն՝ յոյր սակս զգուշութիւն ընկալան յառաջագոյն: Դժուարեալ Եւայի ընդ կարծիս անզգուշութեան անձին, և ոչ հաստատութեան ըստ բաւականին՝ ստիպէ զԱդամ Թողուլ զնա գնալ առանձինն, և կամի զփորձ առնուլ իւրումն զօրութեան: Եւ այնպէս ապա Թոյլ տայ նմա Ադամ: Օձն գտանէ զԵւայ յառանձին վայրի, և խորամանկ չարութեամբ մատուցեալ առ նա նախ 'ի զարմացումն, և ապա 'ի բանս՝ բազմապատիկ շողոքորթութեամբ գեր 'ի վերոյ ամբառնայ զԵւայ քան զամենայն արարածս: Զարմացեալ նորա ընդ խօսել օձին՝ հարցանէ նմա զպատճառն ստանալոյ նորա զնորոգ բարբառ, և զիմաստ մարդոյ: Եւ նա տայ նմա պատասխանի, Թէ գտի զայն ճաշակմամբ յայն ինչ ծառոյ 'ի պարտիզի անդ: Եւայ խնդրէ 'ի նմանէ տանել զնա անդր: Զոր և գտանէ լինել արգելեալ ծառն գիտութեան: Իսկ Սատանայի յաւէտ իմն խրոխտացեալ 'ի միտս իւր՝ բազում բանիւք հնարի ձգել զնա 'ի ճաշակումն: Եւ նորա հաւանեալ՝ ճաշակէ: Եւ ապա առվայր մի մտախոհ լեալ յանձն իւր տարակուսանօք՝ տանի և տայ Ադամայ 'ի պտղոյ անտի, և ծանուցանէ ևս նմա զհրապուրողն անձին իւրոյ 'ի ճաշակումն: Յապուշ կրթի ընդ այն Ադամ զառաջինն. բայց ապա ծանուցեալ զկորուստ Եւայի՝ առ անհնարին սիրոյն հաստատէ զմիտս իւր կորնչել ընդ նմա: Եւ այնպէս Թեթև ինչ գրեալ զյանցանս՝ ճաշակէ և նա 'ի պտղոյ անտի: Արգասիք նորա 'ի նոսա: Խնդրեն նախ ծածկել զմերկութիւն իւրեանց, և ապա անկանին ընդ միմեանս 'ի հակառակութիւն և 'ի ստգտանս իրերաց:

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ.

## ԳԻՐՔ. Թ:

Ո՛չ եւս են բանք Աստուծոյ կամ Հրեշտակի ընդ Մարդոյ 'ի հիւրընկալութեան՝ յորում խօսէր նա ընդ նմա իբրեւ ընդ բարեկամի, եւ զիջանէր բազմիլ ընդ նմա 'ի ճաշ պարտիզաբեր կերակրոյն, եւ 'ի նմին պահու թոյլ տայր նմին խօսել ընդ նմա համարձակ զարժանն: Այլ արդ մնայ ինձ զողբերգականն յեղանակել զձայն. զմարդոյն ասեմ զանիրաւ յերկուանաց, զուխտադրուժ չարութեան, եւ զապստամբ պատուիրանազանցութեան, եւ զԱստուծոյն՝ որ օտարացեալն է 'ի նմանէ՝ զատելութեան, զսրտմտութեան, զկշտամբանաց եւ զարդարադատ վճռոյն՝ որ եմոյծ յաշխարհ զաշխարհ աղէտից. զմեղսն իմն, եւ զստուեր նորա զմահ, եւ զամենայն չարիս՝ զկարապետս մահու: Յաւագին է երգս, այլ յաւէտ դիւցազնական քան զբարկութիւնն սրտմտելոյն Աքիլլեայ՝ [1] որ զհետ պնդեցաւ թշնամւոյն երիցս փախստականին առ պարսպօքն Տրովադայ [2]: Եւ քան զսրտմտութիւնն Տուրնեայ [3] 'ի սակս Լաւինեայ [4] հարսինն

զրկելոյ ։ Որպէս և քան զցասումն Պոսիդոնի [5] և Հերայ՝ [6] որք տագնապեցուցին ընդ երկար զՅոյնս, և զորդին Կիւթերեայ [7] ։ Միայն թէ մարթացայց ընդունել զվայելչականն եղանակ 'ի պաշտպանէս երկնաւորէ՝ [8] որ առանց իսկ իմում պաղատանաց հաճի շնորհել ինձ զայցելութիւն իւր գիշերային․ և 'ի ննջել իմում ազդէ յիս, կամ ինքնին շարժէ զչափս ոտից իմում անակնկալ երգոց [9] ։ Քանզի ընդ այս երգ Դիւցազնական՝ զոր ընտրեցի ընդ երկար, և ձեռն արկի անագան [10], հաճեցայ ես զառաջինն․ որ 'ի բնէ ոչ եմ յօժարեալ ընդ պատերազմականն երգ՝ զոր ցարդ միայն համարին Դիւցազնական [11] ։ Որոյ երևելի ճարտարութիւն էր հատանել յերկայնաձիգ և 'ի ձանձրալի անդամաթիւս զառասպելեալ Ասպետս 'ի ստայօդ պատերազմունս և 'ի շահատակութիւնս [12] ․ Թողեալ 'ի բաց զերգս ընտիր ընտիր քաջութեանց արիական համբերութեան, և դիւցազնական նահատակութեան [13] ։ Եւ կամ նկարագրել զկրկէսս և զհանդէսս խաղուց, զարդնընկէց կազմածս, զնշանակիր վահանս, զբազմաքանդակ կնիքս, զնժոյգս, զզարդս, զպալափուշս և զոսկեճամուկ վերարկուս երիվարաց խրոխտապանծ Ասպետաց 'ի խաղս նիզակաց ։ Որպէս և զխնճոյս նոցա 'ի հոյակապ սըրահս՝ սպասահարկեալ 'ի տաճարապետաց անտի և 'ի հազարապետաց ։ Այլ այսոքիկ հնարք են մնոտի արուեստի ճարտարխօսութեան, և ոչ ընծայեն իրաւամբք զԴիւցազնականն անուն՝ անձին կամ քերթուածոյ ։ Իսկ ինձ՝ որ ոչ եմ վարժեալ 'ի նոսա, և չունիմ ինչ փոյթ, բարձրագոյն մնայ ձեռնարկութիւն․ որ ինքնին իսկ [14] բաւական

է ընծայել ինձ զայդ անուն՝ եթէ ժամանակն անազանեալ դարու [15], կամ կլիմայն ցրտագին [16], և կամ ամք կենացս [17] ոչ վայրաբերեն 'ի խոնարհ զթևս իմոց զթռիչս։ Զոր և դիւրաւ մարթ էր նոցա տանել 'ի գլուխ, եթէ բովանդակութիւն երգոյս լինէր անձին իմոյ, և ոչ նորայն՝ որ արկանէ զայն յունկն իմ 'ի գիշերի [18]։

Արդէն իսկ մտեալ էր արեգական, և զկնի նորա աստեղն երեկոյի՝ որ կարգեալ է 'ի պաշտօն ածել զաղօտալոյսն յերկիր՝ իբրև առժամանակեայ միջնորդ ընդ մէջ տունջեան և գիշերոյ. և կիսաբոլորակն գիշերային քօղարկէր զհորիզոնն ծագաց 'ի ծագս շուրջանակի, այն ինչ Սատանայ՝ որ փախուցեալ էր Եդեմայ յերեսաց սպառնալեացն Գաբրիելի, արդ յաւէտ իմն ամրացեալ 'ի չարամենգ խորհուրդս դաւաճանութեան, և զհետ մտեալ կորստեան մարդոյն՝ Թէպէտև քաջ գիտէր, թէ մարթ էր նմա առաւելագոյն չարեաց հանդիպել, սակայն և այնպէս յանդուգն դարձաւ անդրէն։ Փախուցեալ էր նորա 'ի գիշերի, և նոյնպէս դարձաւ զհասարակ գիշերաւ՝ շրջեալ ընդ երկիր։ Զգուշացաւ յերեսաց տունջեան, զի 'ի նմա տեսեալ էր Ուրիէլի իշխանի արեգական զմուտ նորա 'ի դրախտն, և ազդ արարեալ Քերովբէիցն պահակերաց։ Արդ վտարեալ նորա անդուստ՝ շրջեցաւ տագնապաւ գիշերս վեց ընդ խաւար։ Երիցս պատեցաւ զգիշերահաւասարին գծիւ [19]. չորիցս եանց ընդ սայլն [20] գիշերոյ բևեռէ 'ի բևեռ՝ խաղացեալ ընդ կրկին ծիրս գնտոյ [21]. և յութերորդումն նուագի դարձաւ անդրէն՝ գտեալ զգողտրիկ և զանկասկած ճանա֊

պարհ 'ի հանդիպոյ մտից դրախտին, և քրովբէա-
կան պահպանութեանն։ Կայր անդ տեղի առ ստո-
րոտով դրախտին՝ որ արդ ոչ ևս գտանի (Թէպէտ
և մեղքն մուծին զառաջինն զայն յեղափոխու-
թիւն, և ոչ ժամանակն), ուր Տիգրիս անդնդա-
խոր ծովանայր. և ապա մասն ինչ նորա աղբերա-
նայր առընթեր ծառոյն կենաց։ Սուզեցաւ Սա-
տանայ 'ի նմա ընդ գետոյն, և ել վերստին ար-
տաքս ընդ մառախլապատ մէգ նորա, և ապա
խնդրեաց զտեղի թագստեան անձին։ Եւ նա 'ի
խնդիր ծովու և ցամաքի։ Յեղեմայ եանց 'ի Պոն-
տոս[22] և 'ի ծովակն Մէովտեայ[23] յայնկոյս գե-
տոյն Ովբայ[24], և հեռագոյն ևս մինչև ցբևեռն
հակարջային[25]։ Եւ յերկայնութեան անդ արև-
մտից յՈրոնտեայ[26] մինչև ցՈվկիանոսն սահմա-
նակից Դարենայ[27]։ Եւ անդուստ ապա մինչև
ցցամաքն՝ ուրանօր գետահոսեալ ընթանան Գան-
գէս և Հինդոս[28]։ Զայսօրինակ շրջեցաւ նա ընդ
գունտն երկրի 'ի խնդիր զգուշութեան անձին։
Եւ մտադիր քննութեամբ դիտեաց զամենայն ա-
րարածս՝ առ 'ի քաջ իմանալ, թէ ում արդեօք 'ի
նոցանէ մարթ էր յաւէտ իմն ձեռնտու լինել ի-
րում հնարիմաց չարութեան։ Եւ եգիտ զօձն
առաւել խորամանգ քան զամենայն գազանս երկ-
րի։ Վասն որոյ զկնի բազմապատիկ խորհրդոց և
տարակուսանաց՝ զնա ընտրեաց 'ի վերջոյ անօթ
քաջայարմար իւրում չարութեան՝ առ 'ի մտանել
'ի նա, և թագուցանել 'ի նմա զխաւարային հրա-
պոյրս իւր յերեսաց սրատես ևս աչաց։ Զի յօձն
խորագէտ չէր հնար ումեք անկանիլ 'ի կասկա-
ծանս պատրանաց՝ համարեալ զայն բնիկ գործ

իւրումն ճարտարութեան և հնարից ։ Իսկ յայլ կենդանիս մարթ էր յերկուանալ ընդ նոսա իբրև ընդ դիւական զօրութիւն ազդեալ 'ի նոսա 'ի վեր քան զզգայութիւնս անբանից ։ Նմին իրի 'ի նմա հաստատեաց զմիտս իւր ։ Բայց նախ յերեսաց ցաւոց անձինն թափեաց արտասուօք զհեղձամղձուկ կիրս իւր՝ օրինակ զայս ։

Ո՜վ երկիր՝ զիարդ նմանատիպ ես երկնից, եթէ ոչ իրաւամբք նախապատիւ քան զնա՝ արժանի բնակարանդ Աստուածոց՝ ըստ որում շինեալ երկրորդ խորհրդով 'ի նորոգութիւն հնոյն. զի առ ի՞նչ էր յօրինել Աստուծոյ գլուխն զկնի լաւագունին 29 ։ Երկինդ երկրաւոր՝ պար առնուն զքև այլք 'ի լուսափայլ երկնից 30, և բարձեալ բերեն զլուսալիր և զպայծառատեսիլ ղամպարս իւրեանց՝ որպէս թուի, 'ի քոյդ միայն սպասահարկութիւն. և հաւաքեալ ժողովեն 'ի քեզ զգեղեցիկ ճառագայթս երկնային հրամանաց իւրեանց ։ Որօրինակ Աստուած կենդրոն գոլով յերկինս՝ ձգի առ ամենեսին, նոյնպէս և դու կենդրոնեալ՝ ընդունիս 'ի պարունակացդ յայդցանէ զվերին հրամանս ։ 'Ի քեզ յաւէտ քան 'ի նոսա երևեալ տեսանին համօրէն ազդեցութիւնք նոցա՝ որք յառաջ բերեն զլոյսս և զտունկս, և զազնուական ծնունդս կենդանի արարածոց՝ պատիճանեալ զնոսա 'ի կեանս աճելութեան, զգայութեան և բանի ։ Եւ զամենայնն բովանդակեալ ունին 'ի մարդն ։ Այլ ես քանի՜ զուարճութեամբ շրջէի 'ի քեզ, եթէ մարթ էր ինձ գէթ սակաւուք վայելել 'ի քաղցր փոխանակութիւնս լերանց, հովտաց, դաշտաց, գետոց և անտառաց ։ Է՛ զի յերկրի, և է զի 'ի ծովու,

և կամ յեզերս նորա պսակազարդեալ անտառովք, ժայռիւք, և քարանձաւօք ։ Սակայն և ոչ 'ի միում 'ի նոցանէ գտանեմ զտեղի, կամ զփախուստ անձին իմոյ ։ Նաև ըստ առաւելութեան զուարճութեանցն՝ զորս տեսանեմ շուրջ պատեալ զինև, յաւէտ իմն կրեմ զտանջանս բիւրև յերեսաց ատելի բնակութեան իմոց հակառակորդաց ։ Վասն որոյ և ամենայն վայելք քո դառնան ինձ 'ի Թոյն ։ Նաև յերկինս իսկ անբերելի լինէր ինձ վիճակն իմ ։ Բայց ես ոչ աստանօր, և ոչ յերկինս խնդրեմ զհանգիստ անձին իմոյ, այլ միայն 'ի վրէժխնդրութեան անդ 'ի գերագոյն Արքայէն երկնից ։ Նաև Թէպէտ սովին ոչ ակն ունիմ գտանել զնուազութիւն չարեացս, սակայն փութամ նմանօրինակ ինձ կացուցանել զայլս՝ Թէ և առաւել ևս կուտեսցին չարիքն 'ի վերայ իմ ։ Զի միայն յապականութեան անդ գտանեմ զհանգիստ իմոցս անհանգիստ խորհրդոց ։ Նաև զկնի ապականելոյ իմ կամ ձգելոյ յառիթն վերջին կորստեան զնա՝ յոյր սակս ստեղծան այս ամենայն արարածք, սոքա ինքնին զհետ երթան նմին, զի կապեալ են ընդ նմա յերջանկութեան անդ կամ 'ի Թշուառութեան ։ Հապա դուն գործեցից, և պնդեցայց զհետ Թշուառութեան, զի համայնաջինջ ճարակեսցի ապականութիւնն ։ Պարծանք անձին իմոյ միայնոյ 'ի մէջ զօրութեանցն դժոխոց լիցի ապականելն իմ 'ի միում աւուր զայն՝ յորոյ 'ի շինութիւն կոչեցեալն Ամենազօր աշխատ եղև զվեց տիւ և զվեց գիշեր ։ Նաև ո՞ գիտէ, Թէ քանի ևս յառաջին 'ի խորհել անդ ընդերկար ։ Թէպէտ Թերևս ոչ յառաջագոյն քան զգիշերն, յորում ես

ազատ կացուցի յանփառունակ ծառայութենէ անտի գոգցես զկենս բազմութեան հրեշտակաց , և թողի սակաւաթիւ զպաշտօնեայս նորա ։ Այր և 'ի խնդիր վրիժուց , միանգամայն և 'ի լրումն թըւոյն նուազութեան՝ կամ տկարացեալ 'ի ստեղծանել զայլևս հրեշտակս , ունելով սպառեալ զառաջին զօրութիւն իւր (սակայն եթէ իցեն հրեշտակք արարածք նորա ) և կամ յառաւել նախատինս մեր՝ եդ 'ի մտի ամբառնալ 'ի մեր կայանս զարարածն երկրաստեղծ . և զարդարել զնա 'ի կողոպուտ մեր երկնային՝ վերառեալ 'ի նուաստութենէ անտի իւրումն ծագման ։ Եւ զոր ինչ կամեցաւ , կատարեաց ։ Արար զմարդն , և 'ի սակս նորա յօրինեաց զաշխարհս ճնաշխարհիկ , և ետ 'ի բնակութիւն նմին զերկիր ։ Ո՛չ անոյց զնա տէր , և որ անքերելի ևս է՝ կարգեաց 'ի սպասահարկութիւն նմին զթևազգեստ հրեշտակս , և 'ի պահպանութիւն զռոցեղէն պաշտօնեայս ։ Երկնչիմ ես յերեսաց պահպանութեան նոցա ։ Նմին իրի առ'ի պատրանս նոցին՝ կամիմ արկանել զինև ըզմառախուղ հասարակ գիշերոյս , և այնպէս սողոկեալ աներևսաբար 'ի դրախտն՝ հետազօտել ընդ ամենայն մացառս և ընդ թաւուտս , զի թերևս կարասցից գտանել զօձն 'ի քուն՝ առ'ի թագուցանել 'ի բազմակնճիռ գալարուածս նորա զանձն իմ, և զխաւարնային խորհուրդս ։ Աւաղ ո՛վ յետին նըւաստութեանս . զի որ յառաջագոյն ընդ Աստուածս կքրեցայ 'ի սակս բարձրագոյն գահու , արդ յանձն առնում մտանել յանբան կենդանի . և միացեալ ընդ գարշելի անասնոյ՝ մարմնացուցանել և անբան կացուցանել զգոյացութիւնն երկ-

նային, որ ձգեցաւ 'ի բարձրութիւն անդր Աստուածութեան։ Սակայն յորպիսմ ինչ ոչ խոնարհի փառասիրութիւնն, և խնդիր վրիժուց։ Որ միանգամ ցանկայ նմին, պարտ է նմա ձգիլ՝ որպէս 'ի բարձունս, նոյնպէս և 'ի խոնարհ. և անկանել ընդ նուաստութեամբ՝ կանուխ կամ անագան։ Եւ քէն վրիժուցն թէպէտև քաղցր է 'ի սկզբանն, այլ սակաւ մի զկնի դառնագոյն ևս յետս դառնայ 'ի վրէժխնդիր անդր։ Բայց չէ՛ ինչ, դարձցի. և որովհետև յաղթահարեցայ 'ի բարձունս՝ անկցի վրէժխնդրութիւնն իմ 'ի վերայ նորա, որ գտաւ ինձ միւս ևս նախանձարկու. և այն է նորոգ սիրելին յաչս Աստուծոյ, մարդ հողագանգուած, և որդի արհամարհանաց. զոր Արարիչն կանգնեաց 'ի հողոյ յառաւել նախատինս մեր։ Ապա արժան է հատուցանել նախատինս ընդ նախատանաց [31]։

Զայս ասացեալ՝ իբրև զմէգ մառախլապատ որ սողայ ընդ երկիր, կալաւ զհետազօտութիւն իւր զհասարակ գիշերաւ ընդ ջրարբի և ընդ ցամաք թաւուտս 'ի խնդիր օձին։ Զոր և անդէն եգիտ խոր 'ի քուն ննջեալ 'ի բաւիղս անդ բազմոլորտ և ինքնադալար մանուածոց իւրոց. և գլուխ նորա կայր 'ի միջին վայրի՝ քաջ մթերեալ 'ի հնարս խորամանկութեան։ Այլ տակաւին ոչ էր նա մեղանչական. և ոչ ննջէր յայնժամ յահագին բաւուերի կամ յորջ իւր, այլ 'ի վերայ դալար խոտոյ՝ աներկիւղ, և անահարկու այլոց։ Եմուտ դեւն 'ի նա ընդ բերան նորա. և տիրեալ անբանական սրտի կամ գլխոյ նորա՝ փչեաց 'ի նա անդէն վաղվաղակի զազդեցութիւն իմն անզգալի.

այլ ոչ վրդովեցոյց զքուն նորա՝ սպասեալ ընդ-հուպ հասանելոյ առաւօտուն ։ Արդ՝ 'ի սկսանել անդ երկնային լուսոյն ծագել յԵդեմ 'ի վերայ ցօղագին ծաղկանց՝ որք բուրէին զառաւօտեան կնդրուկս իւրեանց, և յարձակել համօրէն անուշահոտութեանց 'ի մեծակառոյց սեղանոյ երկրի զանբարբառ օրհնութիւնս իւրեանց 'ի վեր առ Արարիչն, և 'ի լնուլ զհոտոտելիս նորա բուրմամբ անուշից՝ ելին արտաքս 'ի հովանոցէ իւրեանց ամոլքն մարդկան ազգի. և յաւելին զբանաւոր պաշտօնս իւրեանց ընդ դասս անխօսուն արարածոց ։ Եւ ապա հաղորդեալ անուշահոտ բուրմանց և քաղցրասիգ օդոց նախընծայ եղանակին՝ առին խորհուրդ 'ի միջի, թէ զիարդ քաջ արդեամբք անցուսցեն զայն օր յառաւելութեան անդ երկրագործ վաստակոց իւրեանց. զի կարի իմն յաճախեալ՝ փութացուցանէին զձեռս երկոցունց եւս յանդուլ աշխատութիւն 'ի պարտիզի անդ ։ Եւ Եւայ սկսաւ զառաջինն խօսել ընդ առն իւրում օրինակ զայս ։

Ապաքէն մարթ է մեզ Ա՛դամ աշխատ լինել 'ի պարտիզիս 'ի սրբել և 'ի դարմանել զբոյսս նորա և զծաղիկս, որ և է ամենազուարճ գործ մեր կարգեալ յԱրարչէն ։ Այլ մինչև է հասեալ մեզ յօգնութիւն այլոց ձեռաց [32], առաւելու աշխատութիւն մեր 'ի կարճել անդ զկարի բարգաւաճումն բուսոց դրախտիս. զի զոր միանգամ յատանեմք 'ի տուէ, եւս քան զեւս աճեցեալ 'ի գիշերի՝ ծաղր առնեն զմերով աշխատութեամբս, և փութանակի գնան 'ի վայրագութիւն ։ Վասն որոյ տուր ինձ խորհուրդ, և կամ լո՛ւր զիմն՝ զօր միտքն

իմ առաջի առնեմն լինձ զառաջինն ։ Բաժանես֊
ցուք զաշխատութիւն մեր . վաստակեալ դու ուրա֊
նոր ընտրութիւն կամաց քոց առաջնորդէ քեզ ,
և կամ ուրանոր յաւէտ պէտք են արկանելոյ ըղ֊
տունկս զպարփինայիւք , և կամ ուղղելոյ զբա֊
ղեղն պատատեալ 'ի տեղին՝ ուր հանդերձեալ է
ելանել ։ Իսկ ես 'ի նմին պահու գտից զաշխատու֊
թիւն անձին իմոյ 'ի տունկս անդ վարդից խառ֊
նելոց ընդ մրտենւոյ , և յարդարեցից զնոսա մին֊
չև ցօր հասարակ ։ Քանզի զի՞նչ զարմանք են , ե֊
թէ 'ի կարգել մեր հանապազ զվաստակս մեր հուպ
առ միմեանս՝ 'ի կարի իմն մերձաւորութենէ անտի
անկանիցեն 'ի մէջ հայեցուածք և ծիծաղք ընդ
միմեանս , և կամ նոր ինչ առարկայ ըստ դիպաց
պատճառ լինիցի մեզ խօսից ընդ միմեանս . որով
և խափանումն լինին մերումս վաստակոց զօր ամե֊
նայն , թէ և սկսեալ իցեմք զայն վաղքաջ ընդ
առաւօտն . և այնպէս ընթրեացն ժամ հասանէ
'ի վերայ առանց ինչ արդեանց ։

Որում Ադամ ետ զայս պատասխանի քաղցրու֊
թեամբ իմն ։ Եւայ՝ միակ օգնական իմ , և սիրե֊
լիդ անձին իմոյ քան զամենայն կենդանիս արա֊
րածս , քաջ խորհեցար զխորհուրդդ 'ի գիւտ հնա֊
րից առ 'ի բարիոք լնուլ զգործ աշխատութեանն՝
յոր կարգեաց զմեզ Աստուած աստանօր . վասն
որոյ և արժանի ես գովելոյ . զի չէ հնար գտա֊
նել ինչ 'ի կին այնչափ սիրելի , որպէս զխնամս
բարւոք տնտեսութեան , և յորդոր լինելոյ առն
իւրում 'ի գործս բարեաց ։ Բայց ոչ այնչափ խս֊
տիւ արկ Տէրն զաշխատութիւնն 'ի վերայ մեր ,
մինչև չթողուլ նմա մեզ և 'ի կարևոր ժամու ըղ֊

հանդիստ կերակրոյ և բանից ընդ միմեանս (որ և է կերակուր իմն մտաց) և զքաղցր հայեցուածս, և զծիծաղ ընդ միմեանս: Քանզի ծիծաղ ծնունդ է բանին՝ յորժամ անբաժ են անբան անասունք. և է ճարակ իմն այնր սիրոյ՝ որ կարևորագոյնն է 'ի կեանս մարդոյ: Զի ոչ ստեղծ զմեզ Աստուած 'ի կարի իմն աշխատութիւն, այլ յաւէտ 'ի զբօսանս. վասն որոյ և յաւել 'ի նոյն զզուարճութիւն բանին: Այլ արդարև միայն ձեռք մեր երկոցունց հանդերձեալ են պահել այժմ յերևսաց վայրագութեան զշաւիղսդ 'ի պարտիզիս և զհովանոցս՝ որչափ կարևոր են մեզ 'ի զբօսանս, մինչև զկնի մատաղերամ ձեռք հասցեն մեզ յօգնութիւն: Ապա եթէ երկարութիւն բանից ընդ միմեանս յագեցուցանէ զքեզ, զիջանիմ քեզ հեռանալ յինէն յառընթերակայ վայրս ևեթ. զի առանձնութիւնն լինի երբեմն լաւ ևս ընկեր մարդոյ. և սակաւ մի հեռացումն ստիպէ յանդրէն դարձ քաղցրագոյն ևս: Սակայն և այնպէս երկմտութիւն կալեալ ունի զմիտս իմ, զի կասկածիմ գուցէ 'ի մեկուսանալ քո յինէն՝ պատահեսցին քեզ չարիք: Զի քաջ գիտես զզգուշութիւնն՝ որ արարաւ մեզ. և որպիսի չարասէր թշնամի խանդացեալ ընդ երջանկութիւն մեր, և անյոյս գտեալ յիւրմէ անտի՝ խնդրէ չարարուեստ հնարիւք ածել 'ի վերայ մեր զաղէտս և զամօթ նախատանաց: Այլ թերևս արթուն կայ նա 'ի մերձակայ վայրս, և անյագաբար սպասեալ մնայ հասանել իւրումն ցանկութեան և ընտիր որսոյ՝ 'ի մեկուսանալ մեր 'ի միմեանց: Քանզի ոչ ակն ունի նա խաբել զմեզ 'ի միասին, զի մերթ է մեզ արագ հասանել յօգնութիւն մի-

մեանց 'ի կարեւոր ժամու ։ Առանձին խորհուրդ կամաց նորա է խոտորեցուցանել զմիտս մեր 'ի միամտութենէն առ Աստուած, և վրդովել զլծակից սէր մեր, որ թերեւս առաւել քան զայլ օրհնութիւնս՝ յոր վայելեմք, շարժէ զնա 'ի նախանձ ։ Եթէ այս են կամք նորա, կամ այլ ինչ չարագոյն, մի թողուր դու զկողմն հաւատարիմ՝ որ ետ քեզ զկեանս, և տակաւին հովանի է քեզ և պաշտպան ։ Կինն՝ ուրանօր վտանգ ինչ կամ նախատինք դարանակալ լինին նմին, անքոյթ և 'ի դէպ եւս պատսպարի առ առն իւրում․ զի պահպանէ զնա, և կամ ժուժկալէ ընդ նմա եւս չարագունին ։

Որում կուսական պերճութիւնն Եւայի՝ զոգցես խանդակաթ, այլ ընդ նմին և դժկամակ վասն խնդրոյն զլացութեան, արար պատասխանի քաղցրութեամբ խառն ընդ խստութեան՝ օրինակ զայս ։

Ծնունդդ երկնից և երկրի, և Տէրդ արարածոց 'ի նմա՝ զլինել թշնամւոյն 'ի խնդիր մերում կործանման՝ ոչ միայն 'ի քէն ուսանիմ ես, այլև լուայ 'ի Հրեշտակէն՝ որ մեկնէր 'ի քէն, այն ինչ կայի ես յայնկոյս 'ի հովանաւոր անկեան, զոգցես յայնմ պահու դարձեալ՝ 'ի փակել անդ ծաղկանց ընդ երեկս ։ Բայց զերկմտութիւն քո ընդ հաւատարմութիւնն իմ առ Աստուած և առ քեզ՝ 'ի սակս ունելոյ մեր զթշնամի դարանակալ, ոչ ակն ունէի լսել 'ի քէն ։ Զի դու ոչ երկնչիս յերեսաց զօրութեան նորա․ քանզի գոլով մեր անընդունակ մահու և վշտաց՝ մարթ է մեզ չտալ տեղի նմին, և կամ հալածել 'ի բաց ։ Ապա երկնչիս միայն 'ի պատրանաց նորա․ զոր և հաւատի ցու-

ցանէ կասկած քո ընդ իս, թէ գուցէ խորամանկութիւն նորա դրդուեցուցէ զհաստատութիւն իմում հաւատարմութեան և սիրոյ առ Աստուած, և կամ արկցէ զիս 'ի պատրանս : Այլ զիա՞րդ մա՛րթ էր Ադամ այդպիսի խորհրդոց ունել զտեղի 'ի միտս քո, որք են կարի իմն օտար 'ի նմանէ՝ որ այնչափ սիրելին է քեզ:

Յորում ամոքարար բանիւք ետ Ադամ զայս պատասխանի : Դուստր Աստուծոյ և մարդոյ՝ անմահականդ Եւայ. զի այսպիսի ես դու՝ անարատ զօրով 'ի մեղաց և 'ի ստգտանաց : Այլ 'ի սակս երկմտութեան ինչ ընդ քեզ՝ չներեմ քեզ հեռանալ 'ի բաց յիմոցս աչաց, այլ 'ի սակս հեռացուցանելոյ զքեզ 'ի փորձութենէն՝ զոր եդեալ է թշնամւոյն 'ի մտի : Զի փորձիչն՝ թէպէտև վայրապար, նախատինս դնէ նմին՝ զոր փորձէն, համարեալ զնա անհաստատ 'ի հաւատս, և ոչ քաջակիրթ ընդդէմ փորձանաց : Վասն որոյ պարտ էր քեզ ինքնին զդէմ ունել արհամարհանօք և ցասմամբ այնպիսի նախատանաց նորա : Ապա մի խիստ թըւեսցին քեզ բանք իմ, եթէ փութամ ես բառնալ 'ի քէն զայնպիսի նախատինս յառանձնութեան անդ. զոր՝ թէպէտև կարի իմն յանդուգն է թշնամին, սակայն դժուարաւ իշխէ տալ երկոցունցս միանգամայն : Այլ եթէ համարձակէ ևս, յարձակումն նորա զառաջինն անկանի յիմ վերայ : Այլ դու մի առ ոչինչ գրեր զչարութիւն նորա կամ զնոտի պատրանս. զի անշուշտ չարաւեստ պարտի լինել նա՝ որ գիտաց խոտորեցուցանել զհրեշտակս . և մի վայրապար համարիր զայլոյ օգնականութիւն : Այս իսկ յաղթմանէ քումդ

երեսաց գտանեմ զմուտս յամենայն առաքինու-թիւնս [33]: Յանդիման քո առաւել եւս իմաստուն եմ և զգաստ, և հզօրագոյն՝ եթէ պէտք իցեն ար-տաքին զօրութեան. զի յակնարկել քո առ իս՝ ամօթն պարտութեան կամ խաբէութեան զար-թուցանէ յանձին իմում զվերջին ճիգն և զզօրու-թիւն: Եւ ընդէ՞ր ոչ զնոյն կրեսցես դու յանձին քում առաջի իմ. և կամ ոչ կամիցիս առնուլ ըզ-փորձ զօրութեան անձինդ ընդ իս՝ որ եմ հաւա-տարիմ վկայ հանդիսի քումդ առաքինութեան:

Զայսօրինակ խօսեցաւ Ադամ խնամօք տնտե-սութեան, և լծակցութեան սիրոյ: Բայց Եւայ՝ որ համարէր գոգ. ստգտեալ իւր զանկեղծութիւն իւրում հաւատարմութեան, յաւել տալ պատաս-խանի քաղցր բանիւք՝ օրինակ զայս:

Եթէ արդարև այդ իցէ վիճակ մեր՝ կալ յան-ձուկ շրջապատիս սովին օրինակաւ պաշարեալ յե-րեսաց բուռն և չարանենգ թշնամւոյն, և չեմք զի-նեալ առանձինն նոյնօրինակ պաշտպանութեամբ՝ ուրանօր և գտցուք զնա, զիա՞րդ ապա մարթ է մեզ լինել երջանիկ 'ի հանապազորդ երկիւղի անդ յերեսաց չարեաց: Բայց չարիքն ոչ ժամանեն յա-ռաջ քան զյանցանս: Մարթ է թշնամւոյն՝ որ փորձէ զմեզ, նուաստութեամբ ևեթ կարծեացն՝ զոր ունի զանկեղծութենէս մերմէ, նախատել զմեզ. բայց նուաստութիւն կարծեաց նորա ոչ դրոշմէ 'ի ճակատ մեր զնախատինս, այլ անար-գագոյն եւս դառնայ 'ի վերայ նորա: Ապա ընդէ՞ր է մեզ խուսափել և երկնչել 'ի նմանէ: Այն զի ստութեամբ կարծեաց նորա գտանեմք մեք 'ի վախ-ճանի կրկին պարծանս՝ զխաղաղութիւն սրտի, և

պշնորհս առ յԱստուծոյ՝ 'ի վկայէս մերմէ։ Եւ առիմէ՞ են հաւատք, սէր և քաջութիւն՝ եթէ չըգտանիցին փորձ առանձինն, և չեն հաստատուն առանց օգնականի։ Արդ՝ մի երկմտեսցուք ընդ երջանկութիւն մերում վիճակի, որպէս թէ թերի թողեալ իցէ զայն ամենիմաստ Արարչին՝ ոչ գոլով աներկեան առանձինն, և կամ 'ի միասին։ Եթէ այդ այդպէս իցէ, ապա ուրեմն գայթ 'ի գայթի է երջանկութիւն մեր, և Ադամ այսպէս նշաւակ վտանգաց, ոչ ևս է Ադամ։

Որում Աստուած արար պատասխանի սաստկութեամբ իմն։ Ո՞վ կին՝ ամենայն ինչ բարւոք է յոյժ, որպէս և զիարդ տեսչութիւն Արարչին կարգեաց զնոսա։ Ձեռն նորա արարչական ոչ եթող ինչ թերի կամ անկատար յամենայնէ՝ զոր ստեղծ. ևս առաւել զմարդն, և զոր կարևորն է յաներկեանութիւն վիճակի երջանկութեան նորա յերեսաց արտաքին բռնութեան։ Վտանգն հաստատեալ կայ 'ի նոյն իսկ 'ի մարդն, բայց եդեալ 'ի զօրութեան նորա. և անհնար է նմա ընդունել զչարիս ընդդէմ իւրում կամաց։ Այլ Աստուած եթող անձնիշխան զկամս. զի որ միանգամ հպատակ է բանին, է ազատ։ Եւ արար նա ուղիղ զբանն. բայց հրաման ետ նմա պատկառել իւրում ուղղութեան. գուցէ պատրեալ նորա յերեսաց բարւոյն տեսլեամբ ևեթ՝ թելադիր լիցի ստութեան, և յանխրատ ազդեսցէ կամաց առնել զայն ինչ՝ յորմէ առանձինն իմն հրաժարեցոյց Աստուած։ Սմին իրի՝ ոչ եթէ երկմտութիւն, այլ գորովագութ սէրն տայ ինձ բազում անգամ խնամ ունել զքէն, որպէս և քեզ զինէն։ Զիրա

ւմ եմք հաստատուն, այլ մարթ է մեզ խոտորիլ. զի ոչ յանհնարիցն է բանին գտանել զբարի ինչ առ երեսս միայն՝ խորամանկեալ 'ի թշնամւոյն. և այն՝ առ չունելոյ զճիշդ զգուշութիւն, յոյր սակս խրատեալ եղև յառաջագոյն ։ Վասն որոյ մի՛ լինիր 'ի խնդիր փորձութեան՝ յորմէ զգուշանալն լաւ ևս է քեզ, և կարի դիւրին՝ եթէ ոչ անջատիս յինէն ։ Փորձն ինքնին եկեսցէ առ քեզ անխնդիր ։ Կամիս դու զփորձ առնուլ զհաստատութեան անձինդ, փորձեա նախ հնազանդութեամբ. զի ո՞ կարէ գիտել զառաջինն, և կամ վկայ լինել նմին՝ մինչչև է տեսեալ զքեզ 'ի փորձութեան ։ Ապա եթէ համարիս, թէ փորձն անխնդիր ոչ կարէ գտանել զերկոսին զմեզ այնպէս պատրաստագոյն և 'ի զգուշութեան՝ որպէս զքեզ առանձինն, երթ. զի մնալ քո առ իս ակամայ, առաւել ևս հեռացուցանէ զքեզ յինէն ։ Այլ գնա անմեղութեամբդ՝ զոր ունիս 'ի բնէ. և ժողովեալ յանձին զամենայն առաքինութիւնսդ՝ հանգիր 'ի նոսա ։ Զոր արժանն էր՝ արար ընդ քեզ Աստուած, լե՛ր և դու զանձինդ զպարտիս ։

Զայսօրինակ խօսեցաւ Նահապետն մարդկան ազգի. բայց Եւայ եկաց անտեղիտալի ։ Սակայն և այնպէս ետ նմա ցածութեամբ զայս վերջին պատասխանի ։ Եւ արդ՝ 'ի քումմէ հրամանէ, և յաւէտ իմն զօրացեալ 'ի վերջին ազդողական բանիցդ՝ թէ մարթ է անխնդիր փորձոյ գտանել ըզմեզ ոչ այնչափ պատրաստագոյն, գնամ ես մտադիւր սրտիւ. այն զի ոչ ակն ունիմ ամբարտաւան թշնամւոյն ելանել նախ 'ի խնդիր տկարագունիս ։

Զայս ասացեալ նորա՝ եհան մեղմով զձեռն

իւր 'ի ձեռանէ առն իւրոյ . և իբրև զՅաւերժահարսն [34] անտառի՝ առաւել թեթևընթաց քան զՈվրէդ [35] և զԴրիւադ [36], և քան զպարաւորսն Դեղեայ [37] չոգաւ 'ի Թաւուտ անդր : Այլ նա յաստուածակերպ գնացս իւր գերազանցեալ կայր և քան զնոյն ինքն Դեղիա [38], թէպէտև ոչ էր զինեալ հանգունատիպ նմին յաղեղն և 'ի կապարճ, այլ միայն 'ի գործիս սոսկական պարտիզպանի . զորս և յօրինեալ էր կամ արուեստի՝ որ էր տակաւին անպաճոյճ, և առանց սպասաւորութեան [39] հրոյ, և կամ բերեալ հրեշտակաց : Զայսօրինակ զարդարեալ նորա՝ ոչինչ ընդհատ ցուցաւ 'ի Պաղեսայ [40], կամ 'ի Պոմոնայ [41] 'ի փախչել նորա յերեսաց Վերտումնեայ [42] . ոչինչ ընդհատ երևէր և 'ի Դեմետրայ [43] 'ի ծաղկի անդ կուսութեանն չև ևս մայր եղեալ Պրոսերպինայ՝ [44] զոր յետոյ ծնաւ Արամազդայ [45] : Իսկ կաթոգին աչքն Ադամայ թէպէտև զուարճութեամբ զհետ երթային նորա հեռագոյնս, բայց յաւէտ ցանկային մնալոյ նորա առ նմա : Բազում անգամ երկրորդեաց նա Եւայի զպատուէր դարձի նորա փութանակի . և նա խոստացաւ նմին դառնալ 'ի միջօրէի 'ի հովանոց անդր , և պատրաստել զկարևորսն 'ի ճաշ և 'ի հանգիստ յերեկոյ վաստակոց : Ո՛վ եղկելի Եւայ՝ կարի իմն խաբիս , և վրիպեալ գտանիս 'ի դարձէդ՝ զոր եդեալ ես 'ի մտի : Ո՛վ ցաւալին փոփոխմանս : 'Ի ժամէս յայսմանէ ոչ ևս ունիս դու- գտանել 'ի դրախտի անդ զկերակուր համեղաճաշակ , կամ զհանգիստ ցանկալի : Զի մնայ քեզ մտալուտ դարանակալութիւն դժոխային քինու թագուցեալ 'ի մէջ ծաղկանց և ստուերաց՝ առ 'ի

խափան լինել քումդ ճանապարհի , և կամ առ՚ի դարձուցանել զքեզ անդրէն մերկ կողոպուտ յամեմեղութենէ, ՚ի հաւատոց և յերանութենէ քումմէ ։ Քանզի յայնժամ անդստին ՚ի ծագմանէ լուսոյն ել արտաքս Թշնամին՝ օձ ևեթ ըստ արտաքին տեսլեան , ՚ի խնդիր և ՚ի գիւտ երկոցունց միայն յազգի անդ մարդկութեանս՝ յորս բովանդակեալ կային համօրէն սերունդք նոցա, որպէս նորա ցանկալի ։ Շրջեցաւ ՚ի խնդիր նոցին ընդ անտառս և ընդ դաշտս՝ ուրանօր կային ծառաստանք և մացառք յաւէտ դալարագեղ և զուարճալի, գործք դարմանոյ ձեռաց նոցա կամ տնկագործութեան առ ՚ի զբօսանս ։ Առ աղբերակամբք և հովանաւոր վտակօք խնդրեաց զերկոսին զնոսա միանգամայն . այլ իղձ կամաց նորա էր գտանել զԵւայ առանձին ըստ դիպաց ։ Ցանկայր այնմ՝ որում ակն ոչ ունէր . զի սակաւ անգամ մարթ էր դէպ լինել այնմ ։ Այլ նա յայնմ վայրի ըստ ցանկութեան անձին իւրոյ եգիտ անակնկալ զԵւայ առանձինն քօղարկեալ ամպովն անուշահոտութեան՝ յորում մասամբ ևեթ երևէր , զի խիտառխիտ բազմութիւնք կարմրափայլ վարդից պատեալ կային զնովաւ ։ Որ և ստէպ խոնարհեալ՝ ամբառնայր ՚ի վեր զնրբածղօտ ծաղիկսն, որոց գլուխք զուարթագեղ ՚ի մեղրոյշ, ՚ի ծիրանի, ՚ի կապուտակ , և յոսկի պիսակախայտ՝ կախեալ կային աննեցուկ . և արկանէր զնոքօք խեչակս՝ գեղեցկապէս կապեալ զնոսա ընդ մրտենւոյ ։ Բայց յայնմ վայրի չունէր ինչ փոյթ զանձնէ . զի թէպէտ ծաղիկ էր նա ամենագեղեցիկ, այլ կայր անխեչակ՝ գոլով կարի իմն հեռացեալ ՚ի ցանկալի հաստատութե-

նէ իւրմէ. և մրրիկն ահագին հասեալ կայր առդուրս: Մերձեցաւ առ նա Թշնամին, անցեալ ընդ բազմապատիկ շաւիղս ընդ հովանեաւ ծառոցն մայրի, Թեղոշի և արմաւենւոյ. է զի դիրաԹաւալ և խրոխտաճեմ, է զի ծածկեալ 'ի տեսուԹենէ, և է զի երևեալ 'ի միջոյ բազմախիտ բուսոցն և ծաղկանց՝ որք պատէին զերկոսին կողմանս նոցա, գործք ձեռացն Եւայի: Որ և էր տեղի յաւէտ գեղեցկագուարճ քան զառասպելեալ պարտէզսն վերակենդաղն Ադոնիսայ[46], կամ Մեծահռչակն Ալկինովայ[47] վանատրի որդւոյ Նաւնոյն Լայերտայ[48], և կամ քան զմնխորհրդաւորն[49] զայն դարաստան՝ ուրանօր իմաստունն արքայ[50] վայելէր 'ի զբօսանս անձին ընդ հարսին եգիպտուհւոյ: Զարմացաւ նա յոյժ ընդ գեղեցկուԹիւն վայրացն, այլ յաւէտ անձինն Եւայի: Զորօրինակ արգելական ոք ընդերկար 'ի բազմամարդ քաղաքի՝ որոյ ԹանձրուԹիւն ապարանից, և անցք լուալեաց ապականեն զօդն, ելեալ արտաքս յառաւօտուն պահու ամարայնի ձգել զօդքաղցրասիգ 'ի զուարճալի գիւղօրէս, և յընԹերակայ վիճակս անդաստանաց նորա՝ գտանէ ըզբերկրուԹիւն անձին յորոց միանգամ ընդ առաջ ելանեն նմա, 'ի հոտոյ ասեմ ցորենոյ, խոտոյ, կովուց և կաԹնարանաց, եԹէ յանկարծակի գեղաղէշ ոք անցանէ ընդ այն սխրաճեմ ոտամբքն՝ ամենայն ինչ ցանկալի երևեալ յառաջագոյն՝ առաւել ևս հաճոյական ընծային յաչս նորա 'ի սակս անձինն՝ որ բովանդակեալ ունի 'ի դէմս իւր զամենայն բերկրուԹիւնս նոցա, զայսպիսի իմն զըւարճուԹիւն յանձին. կալաւ օձն 'ի տեսանել

անդ զծաղկազարդ և զանուշահոտ վայրն՝ յորում առանձնացեալ կայր Եւայ վաղ քաջ ընդ առաւօտն. և առաւել ևս զչնաշխարհիկ և զհրեշտակատիպ կերպարանս նորա։ Որոյ շնորհազարդ անմեղութիւն, և համօրէն գնացք և գործք պատկառանս արկին չարութեան նորա, և քաղցր իմն յափշտակութեամբ կողոպտեցին 'ի նմանէ զանհնարին գազանութիւն կամացն՝ զոր բարձեալ բերէր յանձին։ Եկաց չարն առ վայր մի անդ՝ մերկացեալ յանձնէ զզէնս թշնամութեան, դաւաճանութեան, ատելութեան, նախանձու և վրէժխնդրութեան։ Սակայն դժոխք՝ որք մշտաբորբոք ջեռուցեալ կային 'ի նմա ևս և յերկինս, արագարագ վախճան ետուն բերկրութեան նորա. և այնչափ առաւել տանջեցին զնա, զի տեսանէր զզուարճութիւնս կարգեալ անդանօր, այլ ոչ 'ի սակս իւր։ Սմին իրի և անդէն ժողովեալ յանձն իւր զանհնարին ատելութիւն, և խնդակից լեալ ընդ համօրէն խորհուրդս իւրումն չարութեան՝ զայսօրինակ խօսեցաւ ընդ նոսա։

Ո՛վ խորհուրդք իմ՝ ուրանօ՞ր ածեալ կամք, և յորպիսի՞ զուարճութիւն՝ մինչև մոռանալ մեզ զպատճառն գալստեան։ Ատելութիւնն ձգեաց զմեզ այսր, և ոչ սէրն, և կամ ակնկալութիւն փոխանակելոյ զդժոխս ընդ դրախտին։ Ո՛չ ակն կալջիք աստանօր վայելից ուրախութեան, այլ ապականութեան ամենայն զուարճութեանց, և սպասեսջիք միայն բերկրութեանն՝ որ գտանի յապականութեան անդ։ Այլ ամենայն զուարճութիւն և բերկրութիւն վճարեալ է վասն իմ։ Ապա ոչ կորուսից զժամն բարեպատեհ։ Ահա կինն

քաջադէպ առ ամենայն յարձակմունս՝ կայ առանձինն ։ Այր նորա՝ որպէս տեսանեմ 'ի բացուստ, ոչ է առ նմա ։ Յորոյ 'ի մտաց վսեմութենէ, ընդ նմին և 'ի զօրութենէ յաւէտ իմն խուսափեմ ես. զի թէպէտ շինուած է նա երկրաւոր, այլ պընդեալ կայ հզօր անդամօք, և դիւցազնական քաջութեամբ ։ Նա ախոյեան ահաւոր և անխոց, այլ ոչ ես ։ Ահա այսչափ նկուն արարին զիս դըժոխք. և տանջանք նորա նուաստացուցին 'ի վիճակէն՝ զոր ունէի յերկինս ։ Իսկ Եւայ գեղեցիկ է յոյժ, և արժանի սիրոյ Աստուածոց, այլ ոչ ահարկու (թէպէտև արժան է երկնչել 'ի սիրոյ և 'ի գեղեցկութենէ). միայն թէ ոչ մատեայց առ նա ոխերիմ թշնամութեամբ, այլ ընդ պատրուակաւ սիրոյ ։ Արդ՝ պատրաստ է ինձ ունել զայս ճանապարհ 'ի կործանումն նորին ։

Այսօրինակ խօսեցաւ հակառակորդն մարդկան ազգի՝ մտեալ յօձն բնակակից չարարուեստ. և ուղղեաց զգնացս իւր առ Եւայ ։ Ոչ ընդ երկիր սողացեալ մէտ առ մէտ ծածանմամբ՝ որպէս զկնի, այլ 'ի յետոյս իւր յեցեալ՝ որ էր բոլորշի պատուանդան դէզադէզ ոլորտից նորա, որք բարձրացեալ կային իբրև զբաւուրդ բազմամանուած և կոհակաձև ։ Կատար գլխոյ նորա էր ցցունաղարդ. աչքն կարկեհան. և ողորկափայլ պարանոց նորա 'ի կանաչագեղ ոսկւոյ՝ կանգուն կայր 'ի միջի անդ շրջապատ ոլորտիցն, որք զեղեալ տատանէին 'ի դալարուոջ ։ Կարի գեղեցիկ էր և ցանկալի տեսիլ նորա ։ Ոչ գտաւ զկնի օձ նմանօրինակ նմին սիրալի ։ Ոչ նոքին՝ յորս փոխակերպեցան 'ի Իւրիկիա [51] Հերմիոնէ [52], կամ Կադմոս [53], և կամ

Աստուածն Եպիդաւրոսի [54]. և մէջ յորս դարձան Ամմոնեանն [55] և Կապիտոլեանն [56] Արամազդք [57]. նա առ սիրոյ Ողիմպիայ [58], և սա ծնողին Սկիպիոնի՝ [59] բարձրութեանն [60] Հռովմայ : Խաղաց նա զառաջինն ՚ի խոտորնակ ընթացս. որպէս յորժամ կամեցեալ ուրուք հուպ մատչել առ ումեմն, բայց երկուցեալ յերեսաց նորա՝ զխոտորնակի ունի ճանապարհ : Եւ զորօրինակ նաւ ուղղեալ ՚ի ճարտար ղեկավարէ առընթեր բերանոյ գետոյն և կամ սարաւանդակի՝ ուրանօր ստէպ շրջան առնու հողմն, և նա բազում անգամ վարէ զղեկն, և շրջէ զառագաստ նաւուն, այնպէս փոփոխեաց նա, և գալարեաց խնդագին յանդիման Եւայի զբազմոլորտ մանուածս իւրումն տտան ՚ի հրապոյրս աչաց նորա : Իսկ նորա զբաղեալ գոլով՝ թէպէտև լուաւ զշշնջիւն շարժման տերևոցն, սակայն չեգիւ ինչ մտադիր. զի բազում անգամ տեսեալ էր նորա զնոյնօրինակ խաղս կենդանեաց զառաջեաւ իւրով ՚ի դաշտի անդ : Եւ էին նոքա յաւէտ դիւրալուր ձայնի նորա, քան այլակերպեալ հօրանն Կիւրկեանն [61] կոչման : Խոնարհեցոյց օձն բազում անգամ առ նա զկատար իւր աշտարակաձև. և քծնելով իմն փայլեցոյց զպարանոց իւր կիտուածագործ. և լիզեաց զհողն առ ոտիւք նորա : Եւ այնպէս ապա սիրալի նշանքն անբարբառ՝ դարձուցին զաչս Եւայի յակնարկութիւն խաղու նորա : Խնդամտեալ օձին ընդ ունկնդրութիւն նորա՝ սկսաւ ընդ գործարանն օձաբերան, կամ ընդ բաղխիւն ձայնահան օդոյ՝ զպատիր փորձութիւն իւր օրինակ զայս :

Մի՛ զարմանար ընդ իս վեհապանծ դշխոյ, եթէ

մարթ իցէ քեզ զարմանալ՝ որ միայնդ ես սքանչելի։ Եւ մի՛ զինէր զաչս քո արհամարհանօք դըժուարեալ ընդ իս՝ եթէ զայսօրինակ մատչիմ առ քեզ առանձինն, և պշուցեալ հայիմ ընդ քեզ անյագաբար. և ոչ երկնչիմ յերեսաց ահեղ արտևանանց քոց՝ որք ահարկու են յառանձնութեան անդ։ Ո՛վ ամենագեղեցիկդ նմանութիւնդ Արարչին՝ սքանչացեալ հային 'ի քեզ ամենայն կենդանիք, ես և համօրէն արարածք՝ որք քո են պարգևօք. և հիացեալ՝ երկիր պագանեն քումդ անզուգական գեղեցկութեան։ Որ լաւ ևս երևի յակնձիռս անդ հասարակաց։ Այլ աստանօր շըրջափակեալ յամայութեանդ 'ի մէջ անասնոց անմտից և վայրենեաց՝ որք ոչ կարեն 'ի միտ առնուլ և զկէսն գեղեցկութեանդ՝ յակնարկել անդ ընդ քեզ, ո՞ բաց 'ի միոյ մարդոյ, տեսանէ զքեզ։ Եւ զիա՞րդ հնար է այդմ լինել։ Արժան էր քեզ հանդիսանալ Աստուածուհի 'ի մէջ Աստուածոց, երկրպագեալ և սպասաւորեալ յանթիւ բազմութենէ հրեշտակաց պաշտօնատարաց քոց հանապազ։ Այսպիսի իմն շողոքորթ բանիւք սկսաւ փորձիչն զնախերգանս իւր. և գտին զանցս 'ի սիրտն Եւայի՝ որ էր կարի իմն զարմացեալ ընդ բարբառ նորա։ Որ և զկնի զայսօրինակ խօսեցաւ ընդ նմա։

Ո՛վ սքանչելեացս. բարբառ լսեմ, և զիմաստ մարդկային 'ի բերանոյ անասնոյ։ Զառաջինն 'ի սոցանէ ոչ համարիմ շնորհեալ անբանից. զի յաւուր արարչութեան ստեղծ զնոսա Աստուած անբարբառ, և անբաժ 'ի յօդաւոր ձայնէ. և ընդ երկրորդն յերկուանամ. քանզի բազում անգամ տեսանեմ 'ի դէմս նոցա և 'ի գնացս զյօգնադի-

մի իմաստս ։ Իսկ զքեզ՝ ո՛վ օձ, ճանաչեմ խորագէտ քան զամենայն գազանս երկրի, այլ ոչ ընդունարան մարդկեղէն բարբառոյ ։ Ո՛ղէ նորոգեալ զզարմանսդ՝ ասա ինձ, թէ զիա՞րդ գտեր զբարբառդ, և ի՞ւ ընտելացար ընդ իս առաւել քան զայլ կենդանիս՝ որք կան առաջի իմ հանապազ ։ Ա՛սա, զի սքանչելիք այդպիսի արժանի են առանձին իմն ունկնդրութեան ։

Որում փորձիչն նենգապատիր արար պատասխանի օրինակ զայս ։ Ո՛վ գեղեցիկ դշխոյ աշխարհիս՝ ամենապայծառդ Եւա, կատարեցից մտադիւր զհրամանս քո, զի կարի յիրաւունս արժանի են հնազանդութեան ։ Եւ ես զառաջինն իբրև զայլս 'ի կենդանեաց՝ որք ճարակին զխոտն ընդ ոտիւք իւրեանց. և ըստ օրինակի իմնումն կերակրոյ էի ես անարգ և նուաստամիտ. և ոչ այլ ինչ խորհրդէի, բայց միայն զճարակն իմ, և զխտրութիւն սեռիս. և չառնուի 'ի միտ զայլ ինչ բարձրագոյն ։ Մինչև յաւուր միում 'ի շրջել անդ 'ի դաշտի՝ դէպ եղև ինձ տեսանել 'ի բացուստ զծառ ինչ ծանրաբեռնեալ պտղովք յընտիր ընտիր՝ երանգս խառն ընդ ծիրանի և ընդ ոսկի ։ Մօտ մատեայ 'ի պշնուլ ընդ նա զարմացմամբ. և ահա՛ ախորժակ իմն բուրէր անուշահոտութիւն 'ի ծառոյ անտի. որ և առաւել հեշտալի գտաւ ինձ քան զհոտ անուշակ սամթի, կամ ստեանց այծից և մաքեաց՝ որք բղխեն զկաթն ընդ երեկս, մինչչև է ծծեալ զնոսա ալոջից և գառանց՝ գոլով նոցա պատաղեալ զկայթիւք իւրեանց ։ Եւ անդէն եդի 'ի մտի ընուլ զանհնարին փափաք ցանկութեանն՝ զոր յանձին կալայ առ 'ի ճաշակել 'ի գեղեցկատեսիլ

խնձորոց անտի ։ Եւ քաղցն և ծարաւն՝ կրկնակի հրապոյրք անպարտելի, միանգամայն զարթուցեալ յերեսաց սխրալի հոտոյ պտղոցն՝ ես քան զևս փութացուցին զիս ։ Վասն որոյ և մածեալ անյապաղ զմամռապատ արմտիքն ծառոյդ, զի բարձրաբերձ շառաւիղք ոստոց նորա պիտոյ ունէին քում բարձու հասակի և Ադամայ՝ առ 'ի հասանել ։ Յայնժամ վայրի ամենայն կենդանիք՝ որք էին ականատեսք, շուրջ կային զծառովն նովին ցանկութեամբ՝ շարժեալ ընդ իս 'ի նախանձ. բայց ոչ կարէին ժամանել ։ Ելի ապա 'ի վերայ ծառոյդ. ուրանօր պտղոցն բազմութիւնք՝ որք պատեալ կային զինև, յաւէտ իմն յորդոր լինէին ինձ կթել 'ի նոցանէ, և ճաշակել ցյագուրդ ։ Իսկ ես ոչ խնայեցի. զի ցայնժամ չէր իմ երբէք զգացեալ յանձին զայնպիսի ախորժակ ընդ ճարակ կամ ընդ ըմպելի ։ Յագեալ ապա՝ զկնի սակաւուց գիտացի յանձին զնորոգ իմն փոփոխութիւն ներքին զօրութեանցս յաստիճան բանականութեան ։ Եւ ոչ իսկ բարբառ մարդկեղէն պակասեաց ինձ ընդերկար, թէպէտև կայի 'ի նոյն կերպարանս ։ Դարձուցի ապա զմիտս իմ 'ի բարձրագոյն և 'ի խորին քննութիւնս, և հասու եղէ 'ի միտ առնուլ զամենայն երևելի արարածս յերկինս և յերկրի ։ Եւ զտի զնոսա բարի և գեղեցիկ առհասարակ ։ Սակայն զամենեցունց զգեղեցկութիւն և զբարութիւն համահաւաքեալ տեսանեմ 'ի քում աստուածանման պատկերի, և յերկնային ճառագայթս քում վայելչութեան ։ Եւ չիք 'ի նոսա գեղեցկութիւն համեմատ քոյում, և կամ երկրորդ ըստ նմանէ ։ Որ և յորդորեաց զիս՝ և

թերևս յանդէպս, զայսօրինակ յանդիման լինել քեզ, և աշնուլ զարմացմամբ. և միանգամայն երկիր պագանել քեզ՝ որ իրաւամբք ճանաչիս դշխոյ և միահեծան թագուհի արարածոց:

Զայսօրինակ խօսեցաւ դիւազգեցիկ օձն խորամանկ: Եւ Եւայ տակաւին կարի իմն զարմացեալ՝ ետ նմա յանզգոյշս զայս պատասխանի: Անչափութիւն գովեստիդ՝ ո՛վ օձ, խիթալի իմն ցուցանէ ինձ զզօրութիւն պտղոյդ՝ զորոյ զփորձ առեր զառաջինն: Այլ ասա ինձ, ուրանօ՞ր գտանի ծառդ, և քանի՞ 'ի բացեայ է աստի. զի պէսպէս են և բազմապատիկ ծառքն Աստուծոյ՝ որք բուսանին 'ի դրախտիս, և են տակաւին անծանօթ առ'ի մէնջ: Եւ ընտրութիւն ճաշակման մերոյ հաստատեալ կայ յայնպիսի իմն առատութեան՝ մինչև զմեծագոյն մասն պտղոցդ թողուլ մեզ անշօշափ, և կախեալ անապական: Մինչև աճեսցին մարդիկ 'ի ճաշակումն նոցին, և բազմութիւն ձեռաց օգնեսցեն մեզ 'ի թեթևացուցանել զբնութիւնն 'ի բեռանց անտի իւրումն պտղաբերութեան:

Որում թունաւոր օձն չարարուեստ ետ խնդագինս և զուարթադէմ զայս պատասխանի: Աշխարհածուհի տիկին՝ առընթեր կայ ճանապարհդ, և չէ կարի 'ի բացեայ. յայնկոյս դաստակարգութեան մրտենեացդ 'ի դաշտի անդ առընթեր աղբերն, անցեալ ընդ անտառդ՝ որ բուրէ զզմուռս և զբալասան: Եւ եթէ հաճոյ է քեզ առաջնորդութիւնն իմ, տարայց զքեզ անդր փութանակի:

Եւ Եւայ ասաց ցնա. Աղէ առաջնորդեա ինձ: Յայնժամ փութացեալ նորա՝ գալարեաց զոլորաս

իւր, և եցոյց զկնձիւն ուղղեալ յարագ արագ-չարութիւն: Ընկալութիւն յուսոյն ամբառնայր զմինձն նորա. և խնդութիւնն պայծառացուցանէր զկատար գլխոյ նորա: Որպէս յորժամ հուր մոլի լցեալ իւղայիւն գոլորշեօք՝ զոր գիշերն խտացուցանէ, և ցրտութիւնն պատեալ պաշարէ շուրջանակի, և բորբոքեալ շարժմամբն՝ զորմէ ասեն [62] ուղեկից լինել բազում անգամ հոգւոյն չարութեան, և կախեալ ընդ երկինս ստապատիր լուսափայլութեամբ՝ մոլորեցուցանէ զերկիւղալից գիշերագնացն 'ի ճանապարհէ իւրմէ, և բազում անգամ արկանէ 'ի տղմուտս, 'ի ճահիճս և 'ի կուտակութիւնս ջուրց, և խորասուզեալ կորուսանէ 'ի բացեայ յօգնականութենէ այլոց, այնպէս փայլեալ անագորոյն օձին՝ առաջնորդ գտաւ զքուրախառ մօր մերում Եւայի 'ի պատրանս, 'ի ծառն ասեմ արգելեալ՝ արմատ մերոցս աղխտից: Զոր տեսեալ նորա՝ խօսեցաւ ընդ ուղեցուցի իւրում օրինակ զայս:

Ո՛վ օձ՝ մարթ էր մեզ խնայել 'ի գալուստդ. զի թէպէտև կարի շատ են պտուղք ծառոյդ, այլ չեն ինձ պիտանացու: Եւ պարծանք նորա կացցեն առ քեզ. թէպէտև յիրաւի սքանչելի է նա, եթէ իցէ պատճառ այնպիսումն զօրութեան: Սակայն և այնպէս անմարթ է մեզ ճաշակել 'ի նմանէ, և կամ հուպ մերձենալ առ նա. քանզի զայս պատուէր ընկալաք յԱստուծոյ. որ և է միակ պատուիրան նորա, և արգել հրամանի: Իսկ յայլ ամենայն ինչ մեք եմք օրէնսդիր անձանց մերոց, և բանն օրէնք մեր:

Որում ետ պատասխանի փորձիչն նենգաւոր:

Եթէ արդարև այդպէս իցէ, ապա ուրեմն ոչ ար-
ժան համարեցաւ Աստուած ճաշակել ձեզ յամե-
նայն ծառոց 'ի դրախտիս. Թէպէտև նա ինքն
կարգեաց զձեզ տեարս 'ի վերայ ամենայնի՝ որ ինչ
միանգամ գտանի յերկրի, և 'ի հաստատութեան
երկնից:

Եւ որ Եւայ տակաւին անմեղանչական՝ արար
պատասխանի: Յամենայն պտղոց ծառոց՝ որք են
'ի դրախտիս, մարթ է մեզ ճաշակել, բայց 'ի պտո-
ղոյ գեղեցիկ ծառոյս՝ որ է 'ի մէջ պարտիզիս, ա-
սաց Աստուած մի ուտել, և մի հուպ մատչել՝ գու-
ցէ մեռանիցիմք:

Մինչև էր աւարտեալ նորա զբանսն 'ի կար-
ճոյ, և ահա փորձիչն յաւէտ իմն խրոխտացեալ
իբրև 'ի նշանակ նախանձու և սիրոյ առ մարդն,
և զժտմնեալ զոգցես ընդ զրկանս նորա՝ եցոյց
յանձին զտարօրինակ կերպարանս, և որպէս թէ
'ի գութ շարժեալ էր 'ի վերայ նորա՝ խռովեալ
տատանէր: Եւ ապա կարի 'ի դէպ արձանանայր
'ի վեր՝ իբրև թէ կամք էին նմա ձեռն արկանել
'ի դատ ինչ երևելի: Զօրօրինակ 'ի նախնումն՝
յորժամ ճարտասան ոք մեծանուն յԱթէնս [63],
կամ յազատն Հռովմ՝ [64] յորս ծաղկեալ էր եր-
բեմն ճարտարախօսութիւն թառամեալ զկնի, հան-
դերձեալ էր տալ զանձն 'ի պաշտպանութիւն դա-
տի, կայր ժողովեալ յանձին՝ այն ինչ շարժուածք
անդամոց նորա յառաջ քան զլեզուն ձգէին զա-
տենակալսն յունկնդրութիւն. և երբեմն առ կա-
րի իմն նախանձու իրաւանց արդարութեան ոչ
սպասեալ յառաջաբանին դեգերմանց՝ սկիզբն
առնէր 'ի բուն իսկ կարևոր մասնէ խնդրոյն, նոյն-

պէս կացեալ փորձողին, շարժեալ զանդամս իւր, և արձանացեալ 'ի բարձրութիւն իւրումն հաստակի՝ սկսաւ խօսել սրտառուչ կարեկցութեամբ ընդ ծառոյն օրինակ զայս:

Ո՞վ տունկդ աստուածային՝ աղբիւր իմաստութեան, և մայր գիտութեան. զիա՞րդ հաւաստեաւ զգամ ես յանձին զզօրութիւն քո՝ ոչ միայն յառնուլ անդ 'ի միտ զգործս 'ի պատճառս նոցին, այլ և 'ի հետազօտել անդ զճանապարհս վերին պաշտօնէից՝ որք իմաստունքն են համարեալ: Բայց դու Դշխոյ տիեզերաց մի՛ հաւատար ահագին սպառնալեաց մահուն: Ո՜չ մեռանիք. զի ի՞ւ հնար է ձեզ: Մինթէ 'ի ձեռն պտղոյն: Բայց նա տայ ձեզ զկեանս գիտութեան: Իսկ մինթէ 'ի ձեռն նորա՝ որ սպառնացաւն: Սակայն հայեաց դու ընդ իս. զի թէպէտև մերձեցայ ես, և ճաշակեցի 'ի նմանէ, այլ կենդանի եմ տակաւին. և հասի կատարեալ ևս կենաց քան զոր կարգեալ էր վասն իմ տեսչութեանն վերին. և այն՝ դիմագրաւ տուեալ զանձն իմ յոր ինչ գեր 'ի վերոյ էր քան զչափ անձինս: Մինթէ փակեցի՞ առաջի մարդոյն՝ որ բացեալն է առաջի անասնոց: Իսկ մինթէ կամք իցեն Աստուծոյ բորբոքել զարտմութիւն բարկութեան իւրոյ 'ի սակս դուզնաքեայ ինչ յանցանաց: Իսկ ո՞չ գովեսցէ մանաւանդ զանվեհեր քաջութիւն ձեր՝ զոր սպառնալիք պատուհասի մահուն (եթէ կայցէ այդպիսի ինչ) ոչ գտաւ ձեռնհաս երկեցուցանել, և արգելուլ յայնմանէ՝ որում մարթ է լինել առաջնորդ յևս երանելի կեանս, 'ի գիտութիւն ասեմ բարւոյ և չարի: Իսկ եթէ է նա գիտութիւն բարւոյ, զիա՞րդ արդարացի է հրաժարեցու-

ցանելն 'ի նմանէ. իսկ եթէ չարն՝ (միայն թէ կայցէ արդեամբք չար ինչ) ընդէ՞ր ոչ ծանիցի նա՝ առ 'ի խուսափել 'ի նմանէ։ Ապա անհնար է Աստուծոյ անիրաւիլ առ ձեզ, և լինել ևս արդար։ Իսկ եթէ չէ նա արդար, ոչ ևս է Աստուած. վասն որոյ և չէ արժանի երկիւղի կամ հնազանդութեան։ Այլ ձեր իսկ երկիւղ մահու 'ի բաց մերժէ 'ի ձէնջ զերկիւղն։ Առ ի՞նչ ապա հրաժարումնս, եթէ ոչ յահարկութիւն ձեզ. առ ի՞նչ, եթէ ոչ առ ունելոյ զձեզ խոր անարգ և անիմաստ երկրպագուս։ Քա՛ջ գիտէ նա, զի յորում աւուր ճաշակէք 'ի նմանէ, աչք ձեր երևեալ այժմ պայծառատես՝ բայց մթագին միայն, հանդերձեալ են բանալ, և ողջոյն պայծառանալ. և դուք լինելոց էք իբրև զԱստուածս 'ի ճանաչել զբարի և զչար։ Իսկ լինել ձեր նման Աստուածոց՝ փոխանակ զի եղէ ես նման մարդոյ 'ի ներքուստ, է կարի ինձ վայելուչ։ Այս անբանս ստացայ զվիճակ մարդկային, և դուք ստասջիք զաստուածայինն։ Այս թերևս սովին օրինակաւ մեռանիջիք, 'ի բաց մերկացեալ զմարդկայինն՝ առ 'ի զգենուլ զաստուածայինն։ Արդարև կարի ինձ ցանկալի է այդ մահ՝ թէպէտև սպառնացեալ, որում չէ՛ հնար ընծայել վատթարագոյն ինչ քան զայդ։ Այս զի՞նչ Աստուածքն են, զի չիցէ հնար մարդոյն լինել իբրև զնոսա՝ հաղորդեալ աստուածարար կերակրոյն։ Առաջին գոլով նոցա ըստ կարգի՝ կամին հաւանեցուցանել ձեզ, թէ ամենայն ինչ յառաջ գայ 'ի նոցանէ։ Բայց ես խիթամ ընդ այդ. զի տեսանեմ զգեղեցիկ երկիրս յառաջ բերել ջերմութեամբ արեգականն զամենայն ինչ, իսկ զնոսա և

ոչ մի ինչ ամենեւին ։ Իսկ եթէ նոքա են պատճառ ամենայնի, ո՞ եդ զգիտութիւն բարւոյ և չարի 'ի ծառդ. զի որ միանգամ ճաշակէ 'ի նմանէ, անդէն վաղվաղակի գտանէ զիմաստութիւն անձինն առանց ակնարկութեան կամաց նոցա ։ Եւ յորում են յանցանքն 'ի գտանել մարդոյն զգիտութիւն այնպիսի ։ Եւ զի՞նչ վնաս մարթ է գիտութեան ձերոյ հասուցանել նոցա, և կամ ծառոյս զի՞նչ տալ ձեզ ընդդէմ կամաց նոցին, եթէ արդարև նոցա է ամենայն ինչ ։ Այլ թերեւս նախանձ ինչ կայցէ 'ի դմա ։ Բայց միթէ հնա՞ր իցէ նախանձու բնակել 'ի սիրտս երկնաւորաց ։ Սոքին ահաւադիկ, և այլ բազմապատիկ պատճառք և փաստք ընդ սոսա, քաջ ցուցանեն զկարեւորութիւն ճաշակմանն 'ի գեղեցիկ պտղոյ ծառոյս ։ Ձգեա արդ Աստուածուհի՛դ երկնային զձեռն քո, և ճաշակեա 'ի նմանէ աներկեան ։

Դադարեաց նա, և բանք նորա լի՛ դաւաճանութեամբ դիւրամուտ սողոսկեցին 'ի սիրտ նորա ։ Քանզի ձգեալ զաչս՝ հայէր զարմացմամբ ընդ պտուղն, որոյ տեսութիւնն իսկ շատ էր 'ի փորձել զնա ։ Եւ հնչէր տակաւին 'ի լսելիս նորա ձայնն հրապուրանաց նորա՝ զորս համարէր փաստս ճըշմարտութեան ։ Յայնմ վայրի յառաջ խաղայր ժամն միջօրէի, և կարի իմն զարթուցանէր զախորժակ նորա, գրգռեալ յաւէտ ընդ քաղցրութիւն հոտոյ պտղոյն. որ և անհնարին ցանկութեամբ յօժարեցուցեալ զնա 'ի ձեռնարձակութիւն և 'ի ճաշակ՝ փութացուցանէր զկաթոգին աչս նորա ։ Բայց նախ զտեղի առեալ առ վայր մի՝ զայսօրինակ խօսեցաւ ընդ միտս իւր ։

Մե՜ծ են արդարև և սքանչելի զօրութիւնք քո՝ գեղեցիկդ քան զամենայն պտուղս 'ի դրախտիս, թէպէտև արգելեալ կաս 'ի մարդոյ. քանզի ճաշակ քո ընդ նախկին փորձ այտի, ետ զբարբառ անխօս անասնոյ, և ուսոյց լեզուի նորա գովել զքեզ: Ո՜ գովեստ քո ոչ ծածկեաց առ'ի մէնջ և նա ինքն՝ որ արգել զճաշակումնդ, 'ի կոչել զքեզ ծառ գիտութեան բարւոյ և չարի միանգամայն. թէպէտև հրաժարեցոյց 'ի քէն: Բայց հրաժեշտ նորա յաւէտ իմն ցանկալի ընծայէ զքեզ, զի ցուցանէ հաւաստեաւ զերախտիս քո, և զկարօտութիւն մեր: Վասնզի արդարև չիք ինչ բարի անծանօթ. և եթէ գտցի, այնպէս է՝ որպէս թէ չլինէր բնաւ ամենևին: Ապա ուրեմն քաջայայտ է, թէ արգելուն նա մեզ զգիտութիւնն՝ որ է բարօրութիւն մեր և իմաստութիւն: Նաև այսպիսի հրամանք չունին ինչ իրաւունս: Ապա եթէ մահն զկնի ըմբռնէ զմեզ 'ի կապանս հրամանաւ նորա, զի՞նչ օգուտ է մեզ ազատութիւնն՝ զոր ունիմք յանձին: Եդեալ կայ դատակնիք 'ի վերայ մեր, թէ յորում աւուր ճաշակիցէք 'ի նմանէ, մահու մեռանիջիք: Մի՞թէ մեռա՞ւ օձն. եկեր նա, և է կենդանի. և որ անբանն էր, բանաւոր գտեալ այժմ՝ խօսի, խորհի, և 'ի միտ առնու զամենայն ինչ: Միայն 'ի մեր սակս գտանի մահ. և կերակուր մտացն պահեալ 'ի պէտս անբանից՝ ոչ տըւեալ լինի մեզ, որպէս թէ լինէր կարգեալ 'ի սակս նոցա միայն: Սակայն անբան կենդանին՝ որ զառաջինն ճաշակեալ 'ի նմանէ էառ զփորձ նորին յանձն իւր, աննախանձ գոլով և անկեղծ՝ խնդագին մտերմութեամբ ծանուցանէ մարդոյն զբա-

րին վիճակեալ նմին ։ Արդ՝ յումմէ՞ երկնչիմ ես, մանաւանդ թէ յումմէ՞ մարթ է ինձ երկնչել. զի չունիմ զգիտութիւն բարւոյ և չարի, զԱստուծոյ կամ զմահու, և զօրինաց կամ զպատժոց ։ Սակայն աստանօր գտանի դարմանն ամենայնի այսորիկ ։ Այս պտուղ աստուածային՝ որ է գեղեցիկ 'ի տեսանել, և քաղցր 'ի կերակուր, և ունի զզօրութիւն յինքեան, հանդերձեալ է առնել զիս և մաստուն ։ Զի՞նչ ապա արգելու զիս 'ի ձգելոյ զձեռն իմ 'ի նա, և 'ի յագեցուցանելոյ զմարմին իմ և զմիտս միանգամայն ։

Զայս ասացեալ՝ ձգեաց 'ի չարաժամու զժըպիրհ ձեռն իւր 'ի պտուղ անդր. էառ, և եկեր 'ի նմանէ ։ Յայնժամ զգաց երկիր զանհնարին վէրս յանձին իւրում. և բնութիւնն ետ արտասուօք յաթոռոյ իւրմէ զնշան աղետից, զի կորեաւ ամենայն ինչ ։ Իսկ օձն պատժապարտ սողոսկեալ յետս՝ խոյս ետ 'ի թաւուտ անդր. և դիւրաւ մարթ էր նմա տեղի տալ, զի յայնմ պահու ողջոյն զբաղեալ էր Եւայ զճաշակաւն ։ Եւ որպէս թուէր նմա արդեամբք կամ 'ի կարծիս և եթ առկարի իմն ցանկութեան գիտութեանն, չէր նորա գտեալ ցայնժամ յայլ պտուղ զայնպիսի քաղցրութիւն ։ Եւ կարծիք իսկ իւրումն աստուածանալոյ չէին հեռի 'ի մտաց նորա ։ Եկեր անյագաբար, և ոչ գիտաց յանձին զմահ 'ի ճաշակել անդ ։ Եւ ապա յափրացեալ, և գոգցես արբեալ գինեաւ՝ սկսաւ զուարթագին բերկրանօք առնել օրինակ զայս ։

Ո՜վ գերագոյն, ազդողագոյն և ընտրելագոյն քան զամենայն ծառս 'ի դրախտիս. որ ցարդ կայիր

անծանօթ, և թափուր յարգասեաց անստի իմաս-տութեան. և գեղեցիկ պտուղ քո կախեալ կայր գոգցես առ. ոչինչ պիտանացու ։ Այլ յայսմհե-տէ կանխագոյն ջանամբք ձեռին իմոյ ձգեցին 'ի քեզ յամենայն առաւօտու՝ ոչ առանց արժանա-ւոր քումդ գովեստի, առ'ի թեթեւացուցանել ըղ-կարի իմն ծանրութիւն բազմաբեղուն ոստոց քոց, որք եղեալ կան առաջի իմ անխափան ։ Մինչե-քև մնեալ՝ աճեցայց 'ի գիտութեան իբրև զԱստ-ուածս՝ որք են ամենագէտ ։ Թէպէտև նախան-ձեցին նոքա ընդ այն՝ զոր չեն ձեռնհաս յընծայ-ել ։ Զի պարգևն լինէր նոցունց, եթէ չէր քո աճեալ աստանօր ։ Զկնի ծառոյ՝ քեզ խոստո-վանիմ առաջնորդդ իմ ցանկալի զփորձ գիտու-թեան նորին. զի եթէ չէր իմ եկեալ զկնի քո, տակաւին մնայի 'ի տգիտութեան անդ ։ Դու բա-ցեր ինձ զճանապարհն իմաստութեան, և ետուր ինձ մուտս առ նա՝ որ կայր զանխուլ և առան-ձինն ։ Թերևս և ես ինքնին զանխուլ եմ. զի եր-կինք կարի բարձունք են, և 'ի բացեայ յերկրէ. և դժուարին է տեսանել անդուստ անաղօտ զա-մենայն ինչ յերկրի ։ Թերևս յայլ խնամս պա-տաղեալ վերին պատուիրանադրին՝ թողեալ իցէ զհանապազորդ և զանվրէպ զգուշութիւնն պահ-պանութեան իւրոց լրտեսաց, որք կան զնովաւ[65] ։ Բայց ես որո՞վ օրինակաւ յանդիման եղէց Ադա-մայ ։ Արդեօք ծանուցից նմա զփոփոխութիւնն՝ զոր այժմէն գիտացի յանձին, և արարից զնա հա-ղորդ իմում անթերի երանութեան, եթէ կալայց յաւէտ անհաղորդ յիմում իշխանութեան զգի-տութիւնն անզուգական՝ առ'ի ընուլ նովաւ զպա-

կատութիւն իմոյս սեռի , և ձգել նովաւ առաւել ևս զսէր նորա առ իս . և ընծայել զանձն իմ զուգահաւասար նմին , և թերևս երբեմն գերագոյն ևս ։ Այլ այս ցանկութիւն չէ՛ ինչ պարսաւելի . զի ո՞ ոք գոլով սոորին՝ իցէ անձնիշխան ։ Այլ կարի՛ քաջ մարթ է ինձ առնել զայդ ։ Այլ զի՞նչ արարից՝ եթէ տեսեալ իցէ Աստուծոյ զճաշակումն իմ . և մահն հասցէ 'ի վերայ . զի յայնժամ ոչ ևս գտայց ։ Այլ 'ի կորնչել իմում՝ ամուսնացեալ Ադամայ ընդ այլում Եւայի , վայելեսցէ ընդ նմա . զոր ածել անգամ ընդ միտ մահ է ինձ ։ Վասն որոյ կամիմ հաստատութեամբ ունել զԱդամ հաղորդ ընդ իս յերջանկութեան անդ և 'ի թշուառութեան ։ Զի այնչափ սիրեմ զնա , մինչև յանձն առնուլ ինձ զամենայն մահուանս ընդ նմա , և առանց նորա և ոչ մի կեանս ։

Զայս ասացեալ՝ դարձոյց զոտս իւր 'ի ծառոյ անտի առ 'ի գնալ ։ Բայց նախ խոնարհեալ՝ երկիր եպագ զօրութեանն , զոր համարէր բնակեալ 'ի նմա , և հեղուլ 'ի տունկն զհիւթ գիտութեանն բղխեալ 'ի Նեկտարէ կամ յաստուածըմպելեաց ։ Յայնմ վայրի Ադամ տենչանօք ակնկալեալ մնայր դարձի նորա . և ունէր ևս բոլորեալ զպսակ յընտիր ընտիր ծաղկանց՝ առ 'ի զարդարել զհերս նորա , և պսակել զվաստակս մշակութեան նորա՝ որպէս օրէն է հնձողաց բազում անգամ յօրինել դշխոյի իւրեանց [66] ։ Քանզի արդարև մեծի խնդութեան , և նորոգ մխիթարութեան ակն ունէին խորհուրդք մտացն Ադամայ 'ի դարձի անդ Եւայի զկնի այնչափ դեգերմանաց ։ Բայց սիրտ նորա գուցես նախագուշակ չարեացն՝ երկեղուկս արկանէր

նմին. և բազում անգամ տայր զդողմանի հարկանիլ ։ Ամին իրի չոգաւ ընդ առաջ նորա ընդ ճանապարհն՝ զոր կալաւ Եւայ յառաւօտուն 'ի մեկնիլ իւրում 'ի նմանէ ։ Եւ պարտ էր նմա անցանել առ ծառովն գիտութեան ։ Ընդ եգիտ նա զԵւայ, մինչև էր նորա մեկնեալ 'ի ծառոյ անտի ։ Որ և ունէր 'ի ձեռին զգեղեցիկ ոստ ծառոյն պտղալից. և պտուղք նորա գոլով նորոգ հատեալ՝ խնդային աղուամազիւք, և բուրէին զհոտ անմահութեան ։ Փութացաւ Եւայ առ նա, և ունէր 'ի դէմս իւր զջատագովութիւն անձինն պատրաստական 'ի նախերգանս. զոր և ամոք բանիւք սկսաւ ըստ կամի՝ օրինակ զայս ։

Ադամ՝ միթէ ո՞չ զարմացար ընդ անագանելն իմ ։ Խողի զքեզ, այլ 'ի զրկել իմում յերեսաց քոց՝ համարեցայ զայն ընդերկար յոյժ. զտագնապ սիրոյ այնպիսի ցարդ չէր իմ կրեալ, և ոչ իսկ կրեցից. զի ոչ ևս կամիմ առնուլ զփորձ վըշտացն 'ի հեռանալ անդ յաչաց քոց. զոր և անփորձ գոլով յառաջագոյն՝ յանդուգն խնդրեցի ։ Բայց անակնկալ գտաւ պատճառն յապաղմանս, և արժանի լսելեաց ։ Ո՛չ է ծառս՝ որպէս ծանուցաւ մեզ, մահառիթ 'ի ճաշակման անդ, և պատճառ անծանօթ չարեաց. այլ բանայ զաչս աստուածային իմն զօրութեամբ, և աստուածացուցանէ զորս ճաշակեն 'ի նմանէ ։ Եւ այնպէս իսկ ցուցաւ 'ի փորձոյ ։ Օձն իմաստուն՝ ոչ ունելով զարգել հրամանի իբրև զմեզ, և կամ ոչ հնազանդեալ՝ եկեր 'ի պտղոյ անտի, և ոչ մահացաւ՝ ըստ որում սպառնացաւ մեզ. մանաւանդ զի յայնմհետէ ստացաւ ևս զբարբառ և զիմաստ մարդկե-

ղէն, և խօսէր ընդ իս 'ի զարմանս անձին իմոյ։ Որ և այնպէս քաջ հաւանեցոյց զիս, մինչև յանձն առնուլ ինձ ճաշակել 'ի նմանէ. և գտի զնոյն առագաստիս յանձին իմում։ Զի ևս քան զևս բացան աչք իմ՝ որք յառաջն էին մթագին. ոգիքն իմ ընդարձակեցան. և սրտի իմոյ լայնացեալ՝ վերառեալ եղէ յաստուածութիւն անդր։ Զոր թէ պէտև խնդրեցի 'ի սակս քո, այլ առանց քո մարթ է ինձ արհամարհել և թողուլ 'ի բաց. զի այն է երջանկութիւն անձին իմոյ՝ որում դու գտանիս բաժանորդ. և որ անբաժ է ընդ քեզ, անդէն և անդ դառնայ ինձ անհաճոյ և ծանրատաղտուկ։ Արդ՝ ճաշակեա և դու, զի ըստ հաւասարութեան սիրոյն հաւասար լիցի և վիճակ մեր և խնդութիւն։ Գուցէ 'ի չճաշակել քո՝ խտիր աստիճանիս բաժանեսցէ զմեզ 'ի միմեանց. և յայնժամ կարի անագան հրաժարեցայց ես յաստուածութենէս 'ի սակս քո, և տեսչութիւնն վերին ոչ ներեսցէ ինձ։

Զայսօրինակ պատմեաց Եւայ զանցս իւր զըւարթադէմ խնդութեամբ. այլ յայտս նորա շառագոյն ցուցաւ ախտակրութիւն։ Իսկ Ադամ 'ի լսել անդ զմահաբեր յանցանս նորա՝ անդէն զումարեալ եկաց յապուշ կրթեալ և այլագունեալ, և ահ ցրտագին խաղաց ընդ երակս նորա, և լքոյց զամենայն յօդուածս անդամոց նորա։ Անկաւ 'ի ձեռանէ նորա պսակն՝ զոր բոլորեալ էր 'ի սակս Եւայի. և վարդք նորա թառամեալ թօթափեցան 'ի խոնարհ։ Եկաց անբարբառ՝ ունելով թարշամեալ զգոյն երեսաց իւրոց. մինչև զկնի զայս օրինակ եղծ յանձին զլռութիւնն ներքին։

Ո՜վ գեղեցկագոյն արարածդ յարարչութեան

անող. ո՜վ վերջինդ և ընտրելագոյնդ քան զամե-
նայն գործս Աստուծոյ: Ամենայն ինչ սուրբ, աստ-
ուածային, ընտիր, ցանկալի և քաղցր՝ որում
մարթ էր յանդիման լինել աչաց կամ մտաց, կայր
գերազանցեալ 'ի քեզ: Զիա՞րդ կորեար, զիա՞րդ
յանկարծակի կործանեալ՝ անշքացար, ծաղկըն-
կեց եղեր, և մատնեցար մահու: Մանաւանդ թէ՝
զիա՞րդ զիջար անցանել զահագին պատուիրա-
նաւն. և զիա՞րդ արկեր զձեռն քո յարգելեալ
պտուղն սրբութեան: Պատրեաց զքեզ չարանենգ
թշնամին, և տակաւին չառնուս 'ի միտ. և զիս
կործանեաց ընդ քեզ: Զի յիրաւի կամք են ինձ
մեռանել ընդ քեզ: Քանզի զիա՞րդ մարթ է ինձ
կեալ առանց քո: Զիա՞րդ թողից զքաղցրութիւն
բանից քոց, և զյօդակապութիւն սիրոյն ընդ մի-
մեանս՝ առ 'ի կեալ անօգնական յամայի անտառ-
սդ: Եւ թէպէտ մարթ իցէ Աստուծոյ ստեղ-
ծանել միւս ևս Եւայ, և ինձ տալ նմին միւս ևս
'ի կողից, սակայն անհնար է նմա հանել երբէք
զկորուստ քո 'ի մտաց իմոց: Զի զգամ ես յան-
ձին իմում զկապանս բնութեան՝ որ ձգէ զիս առ
քեզ: Մարմին ես դու 'ի մարմնոյ իմմէ, և ոսկր
յոսկերաց իմոց: Ո՛չ բաժանեսցի երբէք վիճակ
իմում երջանկութեան կամ թշուառութեան 'ի
քումմէդ:

Զայսօրինակ խօսեցեալ նորա յանձին իւրում՝
իբրև զմի ոք քաջալերեալ յանհնարին երկիւղէ,
և զկնի բազմատագնապ խորհրդոց զիջեալ յան-
դարմանելին փոյթ՝ հանդարտագոյնս ուղղեաց ըզ-
բան իւր առ Եւայ՝ օրինակ զայս:

Յանդուգն ձեռնարկեր 'ի գործ ո՜վ դիմագրաւ

Եւայ, զմեծն զրգռեալ վտանգ. և այնպէս համարձակեցար, որպէս թէ կամք էին քեզ տեսանել միայն զպտուղն սուրբ զհրաժարելին 'ի մերձենալոյ, և՛ս առաւել 'ի ճաշակմանէ ։ Բայց եղելոյն չէք հնար. ոչ Ամենակալն, և ոչ տեսչութիւնն վերին կարող են նահանջել յետս զանցեալն, կամ զոր ինչ եղեն ։ Սակայն թերևս ոչ մոռանիցես, և յանցանք քո չիցեն կարի մեծեղեռն. զի յառաջ քան զքեզ օձն ճաշակեաց 'ի պտղոյդ, և պղծեաց զայն ։ Եւ նմանաւ գտաւ նա զառաջինն անարգ և անսուրբ ։ Բայց և 'ի նմա ոչ գտաւ մահաւիթ, զի կենդանի է տակաւին՝ որպէս ասացեր դու, և գտեալ է զբարձրագոյն աստիճան կենաց իբրև զմարդ ։ Որ և հաւաստի ցուցանէ մեզ, թէ 'ի ճաշակել մերում նոյնպէս՝ համբարձեալ եմք հասանել մերումն բարձրութեան, որ այն իսկ է լինել Աստուածս կամ հրեշտակս ։ Եւ ոչ իսկ մարթ է ինձ ընդ միտ ածել, թէ Արարիչն ամենիմաստ՝ թէպէտև սպառնացաւ մեզ, կամիցի այնպէս չարաչար կորուսանել զմեզ զնախապատիւ արարածքս. որք և արժանի գտաք այնպիսումն բարձրութեան՝ գեր 'ի վերոյ կարգեալ քան զայլ արարածս ։ Եւ զի 'ի մեր սակս ստեղծան նոքա, և կան ընդ մերով իշխանութեամբ, անշուշտ յանկանիլ մեր՝ կործանելոց են ընդ մեզ ։ Եւ այնպէս 'ի ջնջել Աստուծոյ զարարածս իւր՝ 'ի դերև ելանէ, և կորուսանէ զաշխատութիւն իւր. զի ստեղծանէ, և եղծանէ ։ Դարձեալ՝ և չունիմք մեք ըղպատշաճ կարծիս զԱստուծոյ. զի թէպէտև մարթ է զօրութեան նորա երկրորդել զարարչութիւնն, սակայն ոչ կամի նա ջնջել զմեզ՝ գուցէ հակառա

կորղն համարձակեցի ասել. « Ո՛չ է աներկեւան վիճակ նոցա՝ զորոց յաւէտ իմն խնամ ունի Աստուած : Ո՞ւմ ուրեք հնար է ընդերկար հաճոյ լինել նմին : Կործանեաց նա զիս զառաջինն, և այժմ զազգ մարդկան. և յետ այսորիկ զո՞ կամեսցի » : Արդ՝ չէ արժան ընծայել Թշնամւոյ զայդպիսի առիթ նախատանաց : Այլ ես հաստատեալ եմ զվիճակն իմ ընդ քեզ, զի գիտեմ հաւաստեաւ՝ թէ ունիմ անկանիլ ընդ նովին դատապարտութեամբ : Եթէ մահն առնէ զիս ընկեր ընդ քեզ, է նա ինձ իբրև զկեանս : Ահա այսչափ բռնազօրս ձգեն զիս կապանք սիրոյն առ քեզ, զի իմ ես բոլորովին : Անհնար է մեզ բաժանիլ 'ի միմեանց, զի մի եմք, և նոյն մարմին : Կորուստ քո է կորուստ անձին իմոյ [67] :

Զայսօրինակ Ադամ. և Եւայ ետ նմա զայս պատասխանի : Ո՞վ սիրալի հանդիսի գերապանծ սիրոյս : Ո՞վ լուսափայլ ապացուցիս, և բարձրագոյն օրինակիս. որ և ստիպէ զանձն իմ լինել նախանձաւոր : Սակայն Ադամ գոլով իմ յետնեալ 'ի քումմէ կատարելութենէ՝ զիա՞րդ կարացից հասանել այնմ : Պանծամ ընդ ծագումն իմ 'ի քումմէ ցանկալի կողէ, և մտադիւր լսեմ զբանս որ յաղագս մերումս անքակ միութեան. զի եմք մի սիրտ, և մի հոգի : Որոյ գեղեցիկ փորձ քաջայայտ երևի այսօր. զի ցուցանես զանձն քո հաստատեալ՝ առաւել յանձն առնուլ անկանիլ ընդ նովին պատժով, և ընդ նովին յանցանօք՝ (եթէ կայցէ 'ի ճաշակման անդ գեղեցիկ պտղոյն) քան բաժանիլ 'ի յօդակապ սիրոյ միմեանց մահուամբ, կամ այլ ինչ դժնդակաւ քան զմահ : Եւ զայս պանծալի

հանդէս քումդ սիրոյ եցոյց նոյն ինքն զօրութիւն պտղոյս (զի 'ի բարեաց անտի յառաջ գան միշտ բարիք՝ ինքնին, կամ ըստ դիպաց). ապա թէ ոչ՝ չէր նորա ծանուցեալ այնչափ սքանչելի: Ապաքէն եթէ գիտէի, թէ մա՞հն սպառնացեալ հանդերձեալ է զհետ գալ իմում յանցանաց, ես միայն յանձն առնուի զչարագոյնն, և ոչ յորդոր լինէի քեզ: Այս ինքնին մեռանէի առանձինն, և ոչ բռնադատէի զքեզ 'ի վրդովել զխաղաղութիւն անձինդ. մանաւանդ զկնի հաւաստի նշանի քումդ անզուգական և անկեղծ սիրոյ: Այլ ես զհակառակն տեսանեմ յանձին իմում: Ո՛չ մահ, այլ կեանք առաւելան 'ի յիս. լուսաւորութիւն աչաց, նորոգումն յուսոյ և խնդութեան. և այնպիսի իմն անհամեմատ քաղցրութիւն՝ մինչև առ նուազ զոր միանգամ վայելեցի յառաջագոյն, երևել ինձ դառն և անախորժ: Արդ՝ Ադամ զկնի իմում փորձոյ ճաշակեա՛ և դու անվեհեր, և թո՛ղ հողմոց զերկիւղ մահուդ:

Զայս ասացեալ նորա՝ գիրկս արկ Ադամայ. և առ խնդութեան եհեղ զգօրովալից արտասուս: Որ և յաւէտ իմն հաճեալ էր ընդ այն, զի Ադամ այնչափ մեծացոյց զսէր նորա՝ մինչև յանձն առնուլ նմա անկանիլ ընդ աստուածային բարկութեամբ կամ մահուամբ: Յորոյ 'ի փոխարէն (զի անիրաւ շողոքորթութիւնք արժանի են այսպիսումն հատուցման) մատոյց նա Ադամայ լի ձեռամբ 'ի գեղեցիկ և 'ի ցանկալի պտղոց անտի ծառոյն՝ զոր ունէր 'ի ձեռին: Եւ նա ճաշակեաց անխիղճ՝ հակառակ իւրումն հաւաստի գիտութեան: Վասն որոյ ոչ պատրեցաւ նա, այլ պարտեցաւ

անմտութեամբ 'ի հրապուրանաց անտի կնոջն ։ Յայնժամ վերստին սասանեցաւ երկիր յընդերաց անտի իւրոց, և դարձեալ գիտաց յանձին զերկուանս ցաւոց. և բնութիւնն երկին եբարձ զձիչ ։ Մթագնեցան երկինք, և որոտընդոստ փայլատակամբք հոսեցին զցաւագին կայլակս արտասուաց, և առին ողբս 'ի վերայ ծննդեան մահացու մեղաց ։ ԻՍԿ Ադամ ուշ եդեալ կայր միայն 'ի ճաշակումն ցյապաւուրդ ։ Եւ Եւայ եւս ոչ զարհուրեցաւ 'ի կրկնելոյ վերստին զյանցանս՝ առ'ի հաճոյանալ և եւ յաւէս նորա միաբան ընկերշակութեամբ ։ Որ և արբեցոյց զնոսա գոգցես նորով գինեաւ ։ Այլին պարանոցաթաղ 'ի խնդութեան անդ, համարեալ զանձինս հասեալ յաստուածութիւն անդր՝ որ ընծայէր նոցա թևս ելանել 'ի բարձունս, արհամարհեալ զերկիր ։ Բայց պտուղն ստապատիր կարի տարօրինակ եցոյց առ նոսա զազդեցութիւն իւր. զի բորբոքեաց զնոսա անհնարին ցանկութեամբ մարմնոյ . . . 'ի կնիք յանցանաց, և յառաւելութիւն մեղաց իւրեանց ։ Մինչև զկնի յափրանալոյ նոցա հեշտութեամբ՝ թմրեցոյց զնոսա քունն ցօղագին ։ ԻՍԿ 'ի ցնդիլ ազդեցութեան պատիր պտղոյն՝ որ կալեալ էր զհոգիս նոցա զուարթարար իմն և քաղցր գոլորշեօք, անդէն եթող զնոսա թանձրութիւն քնոյն՝ որ լցեալն էր 'ի ծուխ բազմավէշտ, և յանուրջս մնացին խղճի ։ Յարեան ապա գոգցես յերեսաց անհնարին տագնապի. և հայեցեալ առ միմեանս՝ տեսին վաղվաղակի, թէ զիարդ բացեալ էին աչք նոցա, և որպէս խաւարեալ միտք նոցա ։ Անմեղութիւնն՝ որ իբրև զքօղ հովանի էր նոցա յերեսաց զիտութեան չարին, 'ի

բաց գնացեալ էր 'ի նոցանէ ։ Անկեղծ վստահութիւն, բնական արդարութիւն, և պատիւ երետաց մեկնեալ 'ի նոցանէ՝ թողեալ էին զնոսա մերկ անդամ առաջի ամօթոյ յանցանաց ։ Որ թէպէտ և ծածկէր զանձն իւր, այլ ծածկոյթ նորա առաւել ևս մերկացուցանէր զնա ։ Զայսօրինակ յարեաւ հզօրն Գանիտեան Հերքիւլեանն Սամսոն 'ի ծոցոյ անտի փղշտեանն Դալիլեայ պոռնկի ։ Նա զարթեաւ խուզեալ 'ի զօրութենէ իւրմէ, իսկ սոքա կողոպտեալ և հոլանի յամենայն առաքինութեանց ։ Որք և իբրև զհամր հարուածեալ՝ նստեալ կային անբարբառ, և ամօթապարտ 'ի դէմս իւրեանց ։ Մինչև զկնի Ադամ թէպէտև ոչ նուազ ամօթալից էր նա քան զԵւայ, ստիպեցաւ տալ ելս բանիցս այսոցիկ ։

'Ի չար ժամու ո՜վ Եւայ ունկնդիր եղեր բանից զեռնոյն ստութեան ։ Քանզի յումմէ և իցէ, անշուշտ ուսաւ նա զյօդաւորութիւն մարդկեղէն բարբառոյ 'ի կործանումն մեր ; և 'ի սնոտի յոյս խոստացեալ բարձրութեան ։ Զի բացան արդարև աչք մեր, և գտաք զգիտութիւն բարւոյ և չարի. այլ ընդ նմին կորուսաք զբարին, և գտաք ըզչարն՝ զչարաչար պտուղն գիտութեան. եթէ արժան իցէ կոչել զնա գիտութիւն՝ որ եթող զմեզ մերկ և թափուր 'ի պատուոյ անտի, յանմեղութենէ, 'ի հաւատոց և յանարատութենէ՝ որք էին բնիկ զարդք մեր, և կան այժմ աղտեղեալ և ապականեալ ։ Եւ 'ի դէմս իսկ մեր երևին նշանք անառակ ցանկութեան. յորմէ և բազմանան չարիք, ընդ նմին և ամօթ խայտառակութեան՝ վերջինն չարեաց ։ Արդ՝ լեր հաւատի ընդ կորուստ

բարւոյն, զոր ձգեցաք յանձինս ։ Այլ ես զիարդ տեսից յայսմհետէ զերեսս Աստուծոյ կամ հրեշտակի՝ զորս յառաջին տեսանէի բազում անգամ խնդութեամբ և զմայլմամբ ։ Երկնային կերպարանք նոցա հանդերձեալ են յայսմհետէ շլացուցանել զերկրաւորս մեր՝ անտանելի և պայծառատեսիլ փայլմամբ իւրեանց ։ Ո՞վ երանի թէ հնար լինէր ինձ կեալ աստանօր առանձինն յամայի և 'ի մթին կողման անտառիս՝ ուրանօր բարձրաբերձ ծառաստունք անթափանցելի 'ի լուսոյ անտի աստեղաց կամ արեգական՝ արկանեն զստուերս իւրեանց նսեմագգեաց իբրև զգիշեր ։ Ադէ սարո՛յք և մայրք ծածկեցէք զիս անհամար ոստովքդ, զի մի ևս տեսից զնոսա ։ Այլ այժմ Ե՛ւայ տեսցուք, թէ զիարդ մարթ է մեզ ծածկել 'ի չարաչար վիճակիս յերեւաց միմեանց զանդամս մեր՝ որք կարի ամօթապարտ երևին և տգեղ ։ Գտցուք զծառ ինչ լայնասաղարթ, և կարեալ 'ի միասին զփափուկ տերևս նորա՝ պատեսցուք զմիջովքս առ 'ի ծածկել շուրջանակի զանդամս մեր ․ զի մի ամօթն նորամուտ բազմեալ 'ի նոսա՝ յանդիմանեսցէ զմեզ իբրև զգարշելիս ։

Այսպէս խորհուրդ ետ նա ․ և չոգան 'ի միասին 'ի տնկախիտ անտառն ։ Ուր և անդէն վաղվաղակի ընտրեցին զթզենին՝ ոչ զանուանին 'ի սակս քաղցրութեան պտղոյն, այլ զքաջածանօթն այժմիկ 'ի Հնդիկս ․ որ այնչափ լայն և ընդարձակ տարածէ զոստալից բազուկս իւր 'ի Մալաբար [68] կամ 'ի Դեկան [69], մինչև ոստոց նորա խոնարհեալ՝ առնուլ զարմատ յերկրի ։ Եւ այնպէս բազմացեալ դստերացն առ մարբ՝ յօրինեն 'ի վերուստ

սուսնազարդ հովանի բարձրակամար, և 'ի միջի անդ ձնմերիս 'ի հնչիւն արձագանգաց։ Նդանօր բազում անգամ խոյս տուեալ հովուին հնդկաց յերեսաց տօթոյ՝ գտանէ զհովանի իւր զովագին. և անդուստ դիտէ ընդ ծակ նորա զհօտ իւր արօտական։ Արդ՝ ժողովեցին զտերև նորա, որք էին լայնատարր իբրև զվահանն Ամազոնեան[70]. և ըստ ուշիմութեան հանճարոյ իւրեանց կարեցին զնոսա ընդ միմեանս՝ առ 'ի շրջապատել զմէջս իւրեանց։ Անտի ծածկոյթ յերեսաց յանցանաց, և ամօթալից պատկառանաց։ Ո՜վ զիարդ տարօրինակ յառաջին ծածկութէ անտի փառացն։ Ըստ սմին օրինակի եգիտ Կողոմբոս[71] զԱմերիկացիս՝ որք սփածեալ ունէին զմէջս իւրեանց 'ի գօտի փետրազարդ, և այլ մասունք նոցա կային մերկանդամ. և ինքեանք վայրագասուն 'ի մէջ ծառոց կղզեաց, և յանտառս ծովեզերաց։ Զայսօրինակ հնարեցան Նախահարքն մեր, և համարեցան 'ի միտս իւրեանց թագուցանել մասամբ զամօթ իւրեանց։ Նայլ չգտեալ զհանգիստ և զանդորրութիւն մըտաց՝ նստան, և ետուն զանձինս յարտօսր։ Բայց ոչ միայն հեղեղք արտասուաց իջանէին յաչաց նոցա, այլև 'ի ներքս անդ սկսան յառնել սաստկաշունչ հողմք բազմապատիկ կրից՝ սրտմտութեան, ատելութեան, երկմտութեան, կասկածանաց, և գժտութեան։ Որք և յանհնարինս վրդովեցին զներքին խաղաղաւէտ վիճակ մտաց նոցա՝ որ երբեմն էր սահման անդորրութեան, և այժմ յուզեալ կայ յերեսաց խռովութեան։ Զի միտքն ոչ ևս է իշխան. և կամքն ոչ անսայ հրամանաց նորա. և երկոքին ևս հնազանդեալ կան զգայա-

կան ցանկութեան, որ 'ի ներքուստ բռնացեալ 'ի վերայ գերագոյն բանին՝ թեկն ածէ իշխանութեան նորա ։ Այլափոխեալ Ադամայ 'ի խռովութեանց ատտի սրտի իւրոյ, և խիստ հայեցուածովք սաստկացուցեալ զոճ բանիցն՝ զայսօրինակ սկսաւ խօսել վերստին ընդ Եւայի ։

Եթէ մնացեալ էր քո իմոց բանից, և կացեալ առ իս՝ որպէս աղաչէցի զքեզ 'ի չարագուշակ առաւօտուս, յորում օտարոտի ցանկութիւնն վտարանդի շրջելոյ՝ ոչ գիտեմ յումմէ ազդեալ կալաւ զքեզ, տակաւին մնացեալ էր մեր յերջանկութեան ․ և ոչ որպէս այժմ՝ կողոպտեալ 'ի բարեաց, ամօթապարտ, մերկ և ողորմելի ։ Մի՛ ոք յայսմհետէ 'ի խնդիր լիցի տարապարտ փորձոյ իւրումն հաւատոց ։ Ի խնդրել նորա զայդ՝ ծանիցէ հաւաստեաւ, թէ սկսեալ է կործանումն նորա ։

Որում անդէն արար պատասխանի Եւայ՝ կարի իմն զայրացեալ ընդ հարուածս բանից կշտամբանաց նորա ։ Զի՞նչ են բանքդ ո՞վ Ադամ անագորոյն՝ որք ելանեն 'ի շրթանց քոց ։ Մի՛թէ համարիցիս դու զայդ 'ի ստգտանս իմումս ցանկութեան վտարանդի շրջելոյ՝ որում թերևս մերթ էր պատահել ինձ առընթեր քո, և քեզ իսկ գըլխովին ։ Եթէ լեալ էր քո անդ, և կամ փորձեալ ատամնօք՝ անհնար էր քեզ առնուլ 'ի միտ զդաւաճանութիւն օձին 'ի խօսել նորա ընդ քեզ, որպէս ընդ իս ։ Զի չունէր նա պատճառ ինչ թշնամութեան ընդ իս՝ առ 'ի խորհել զինէն չարութեամբ, և խնդրել զվնաս անձին իմոյ ։ Մի՛թէ պա՞րտ էր ինձ չմեկնիլ երբէք 'ի քէն, և կալ առընթեր քո իբրև զկող քո տակաւին անկենդան ։

Սակայն և այնպէս՝ գոլով քո գլուխ իմ, ընդէ՞ր ոչ ետուր ինձ հրաման սաստիկ չմեկնելոյ, եթէ ըստ բանից քոց գնայի ես 'ի վտանգ։ Զոգայ ես հեշտեաւ իմն, զի դու ոչ ուժգին զդէմ կալար, մանաւանդ զի՝ թոյլ ետուր, հաւան գտար, և խնդագին յուղարկեցեր։ Եթէ կացեալ էիր հաստատուն և անշարժ յընդդիմանալ քո՝ ոչ էր իմ յանցուցեալ, և ոչ քո ընդ իս։

Որում Ադամ, զառաջինն յայնժամ սրտմտեալ՝ ետ պատասխանի։ Ա՞յս է սէր քո ով Եւայ ապաշնորհ, և ա՞յս փոխարէն սիրոյ իմոյ՝ զոր ցուցի առ քեզ անփոփոխելի, այն՝ ինչ կորուսեալ էր քո, և ոչ իմ։ Եւ թէպէտ մարթ էր ինձ մնալ կենդանի, և վայելել յանմահական երանութեան, սակայն և այնպէս առաւել ընտրեցի զմահ ընդ քեզ։ Եւ այժմ ստգտանիմ իբրև զպատճառ քումդ յանցանաց։ Համարիս դու զիս ոչ սաստիկ գտեալ ըստ բաւականին 'ի թողուլ անդ զքեզ։ Եւ զի՞նչ մարթ էր ինձ առնել առաւել։ Զի զգուշացուցի զքեզ, խրատեցի, և ծանուցի յառաջագոյն զվտանգն, և զդարանակալութիւն թշնամւոյն։ Առաւել քան զայդ լինէր բռնութիւն. և բռնութիւնն չունի աստանօր տեղի 'ի վերայ ազատութեան կամաց։ Բայց կարի իմն յանձնապաստանութիւնն ձգեաց զքեզ անդր՝ չհամարեալ գտանել զվտանգ, այլ յաւէտ զպանծալի առիթ հանդիսի։ Թերևս վրիպեցայ և ես, յանչափս զարմացեալ ընդ ձիրս շնորհացն՝ որ 'ի քեզ. մինչև դնել ինձ 'ի մտի, թէ ոչ պատահելոց են քեզ չարիք։ Սակայն ցաւ է ինձ արդ ընդ վրիպանսդ՝ որ եղև պատճառ իմումս յանցանաց, և քումդ մեղադրութեան։ Այսպէս

ունի անցանել ընդ նմա, որոյ կարի իմն վստահացեալ ընդ պանծալի ձիրս կնոջ իւրոյ՝ թողու զիշխանութիւնն 'ի կամս նորա։ Զի ոչ հանդուրժեացէ նա սանձի. և թողեալ 'ի կամս իւր՝ եթէ չարեաց ինչ հանդիպեսցի, նա ինքն զառաջինն լիցի մեղադիր տկարութեան առն իւրոյ 'ի զիջանել անդ։

Զայսօրինակ անցուցին նոքա զօգուտ ժամս 'ի ստգտանել զմիմեանս. բայց ոչ ոք մեղադիր եղև անձին. և տարապարտ հակառակութեան նոցա ոչ գտաւ վախճան [72]։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ծանուցեալ Հրեշտակաց զպատուիրանազանցութիւն մարդոյն՝ Թողուն զպահպանութիւն դրախտին. և դառնան անդրէն յերկինս, առ արդարացուցանելոյ զզգուշութիւն պահպանութեան իւրեանց : Որք և արդարանան 'ի ցուցանել Աստուծոյ, թէ անհնար էր նոցա արգելուլ զմուտս Սատանայի 'ի դրախտ անդր : Առաքէ նա զՈրդի իւր 'ի դատել զյանցաւորս : Իջանէ նա 'ի դրախտն, և տայ նոցա զվճիռ արդարադատ : Եւ ապա գթացեալ 'ի նոսա՝ զգեցուցանէ զնոսա. և այնպէս վերստին ելանէ յերկինս : Մեղք և Մահ՝ որք ցայնժամ նստեալ էին առ դրունս դժոխոց, զգան յանձինս զյաջողութիւնն Սատանայի 'ի նորաստեղծ աշխարհի, և զյանցանս՝ զոր արարեալ էր մարդոյն 'ի նմա. և հաստատեն զմիտս իւրեանց ոչ ևս մնալ 'ի դժոխս, այլ երթալ զհետ Սատանայի հօր իւրեանց 'ի բնակութիւն անդր մարդոյն : Եւ 'ի դիւրութիւն անցից 'ի դժոխոց անտի յայս աշխարհ, և աստի անդր՝ յօրինեն լայն ճանապարհ կամ կամուրջ 'ի վերայ Վհին, ըստ շաւղացն՝ զոր կալաւ Սատանայ զառաջինն : Եւ այնպէս ելեալ 'ի խնդիր երկրի՝ գտանեն զՍատանայ, զի դառնայր անդրէն 'ի դժոխս՝ պանծացեալ ընդ յաջողութիւն իւր : Խնդակցութիւն նոցա ընդ միմեանս : Հասեալ Սատանայի 'ի Պանդեմոն՝ պատմէ պարծանօք 'ի համագումար ժողովի անդ դժոխայնոց զյաջողութիւն իւր հակառակ մարդոյն : Այլ փոխանակ գովութեան ընկալեալ լինի 'ի նոցանէ 'ի շչիւն հասարակաց. և յանկարծակի փոխի ընդ նոսա յօձ ըստ դատակնքոյն զոր ընկալեալ էր 'ի դրախտի անդ : 'Ի դերև ելեալ ապա ամենեցուն 'ի տեսլենէ անտի արգելեալ ծառոյն՝ որ բուսանի յանդիման նոցա, ձգեն զձեռս իւրեանց տենչանօք 'ի պտուղ նորա, այլ ծամեն զհող, և զմոխիր դառնաճաշակ : Յառաջադէմ ընթանան Մեղք և Մահ : Ծանուցանէ Աստուած յառաջագոյն զյաղթութիւն Որդւոյ իւրոյ 'ի վերայ նոցա, և զնորոգութիւն արարածոց : Այլ յայնմ վայրի պատուէր տայ Հրեշտակաց իւրոց յարուցանել փոփոխութիւնս 'ի հաստատութեան երկնից, և 'ի տարերս : Եւ Ադամայ քաջ 'ի միտ առեալ զցաւագին վիճակ անկման իւրոյ՝ ողբայ դառնապէս, և չառնու յանձն զցաւակցութիւնն Եւայի : Սակայն ոչ դադարեալ նորա՝ հանդարտեցուցանէ զնա : Եւ ապա առ 'ի խուսափել յերեսաց անիծիցն՝ որ ոչինչ ընդհատ 'ի նոցանէ հանդերձեալ էր անկանել 'ի վերայ համօրէն ծննդոց նոցա, առաջի դնէ Ադամայ ընտրել զիւրովի կորուստ անձինն : Այլ նա ոչ հաւանի : Սակայն ընկալեալ յանձին զլաւագոյն յոյս՝ յուշ առնէ Եւայի զխոստումն արարեալ նոցա վասն խնդրելոյ Զաւակի նոցա զվրէժ յօձէ անտի. և յորդոր լինի նմա խնդրել 'ի միասին զղջմամբ և արտասուօք զհաշտութիւն ընդ Աստուծոյ սրտմտելոյ 'ի վերայ նոցա :

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

## ԳԻՐՔ. Ժ.

Ի նմին ժամանակի ծանուցեալ էր յերկինս անագորոյն դաւաճանութիւն Սատանայի 'ի դրախտի անդ՝ որով խոտորեցուցեալ էր զԵւայ, և զայր նորա . և ձգեալ զնոսա 'ի ճաշակումն մահաբեր պտղոյն : Զի զի՞նչ իրաց մարթ էր մնալ թագուն յամենատես աչացն Աստուծոյ, և կամ ստուերածս արկանել ամենագէտ մտաց նորա : Որ և գոլով ամենիմաստ և արդար յամենայնի՝ թոյլ տուեալ էր Սատանայի փորձել զմիտս մարդոյն, որ սպառազինեալն էր անթերի զօրութեամբ, և ինքնիշխան ազատութեամբ կամաց . և էր ձեռնհաս լինել խելամուտ, և մերժել 'ի բաց զամենայն պատրանս թշնամւոյն, կամ առ երեւս բարեկամի: Քանզի քա՛ջ տեղեակ էին Նախահարքն մեր, և պա՛րտ էր նոցա յուշ ածել զհրամանն վերին՝ որ եդեալ էր 'ի վերայ նոցա վասն չճաշակելոյ 'ի պտուղոյ անտի, ո՛ ոք և փորձէր զնոսա : Բայց անսատեալ նոցա հրամանին՝ գտան պատժապարտ ( և մի՞թէ հնա՞ր էր լինել դուզնաքեայ ինչ քան զայդ). և բազմապատկեալ զմեղս՝ արկին զանձինս 'ի կոր-

ծանուցմն։ Սամն որոյ և Հրեշտակք՝ որք կարգեալ էին 'ի պահպանութիւն դրախտին, անդէն վաղվաղակի թողեալ զայն՝ վերացան յերկինս անմռունչ և տխրագին 'ի սակս աղէտից մարդոյն. զի ծանեան զողորմ վիճակ նորա. և զարմացան ևս ընդ անտեսաբար մուտս թշնամւոյն 'ի դրախտ անդր։ Ընդ հասանել ցաւագին բօթոյն յերկրէ յերկինս՝ դառնագին գտաւ որոց լուանն։ Եւ տխրութիւնն թանձրամած ոչ խնայեաց յայնժամ 'ի դէմս երկնաւորաց. բայց խառն ընդ գթութեան, և ոչ իսկ բռնացաւ 'ի վերայ երանութեան նոցա։ Ծեղանկուտեցան երկնային բազմութիւնքն զժամանելովքն յերկրէ՝ առ 'ի լսել 'ի նոցանէ զամենայն անցս։ Բայց նոքա փութացան յանդիման լինել վերին աթոռոյն՝ առ արդարացուցանելոյ զզգուշութիւն պահպանութեան իւրեանց։ Որք և հեշտեաւ իմն արդարացան, 'ի բարբառել անդ յաւիտենական Հօրն բարձրելոյ 'ի միջոյ փայլատականց յամպոյ անտի իւրում թագնութեան՝ օրինակ զայս։

Հրեշտակք դուք համահաւաքեալ, և զօրութիւնք դուք՝ որք դարձայք յերկրէ 'ի ձախող պահպանութենէ ձերմէ, ձեզ ասեմ՝ մի խռովեսջիք յանձինս ձեր ընդ պատահմունդ 'ի դրախտի անդ. զի անհնար էր ձերումդ անկեղծ խնամոց ունել զառաջս նորա։ Քանզի ծանուցի ձեզ յառաջագոյն զոր ինչ անցանելոցն էր 'ի խաղալ անդ զառաջինն փորձողին 'ի դժոխոց անտի՝ անցեալ ընդ անդունդս։ Ծանուցի ձեզ զհանդերձեալ զօրութիւն նորա, և զյաջողութիւն 'ի չարանենգ հանդիսի անդ. և զանկումն մարդոյն 'ի պատրանս յերեսաց հրապու-

րանաց նորա՝ ընծայեալ հաւատս զրախօս բանից նորա հակառակ Արարչին ։ Բայց ոչ բռնադատեալ 'ի կործանումն յերեսաց խմուն վճռոյ, և կամ փոքու ինն բռնադբօսեալ ազատութեան կամաց նորա՝ զոր Թողի ինքնիշխան իւրումն յօժարութեան ։ Սակայն և այնպէս անկաւ նա ։ Արդ՝ զի՞նչ ևս մնայ նմին, բայց միայն դատակնիք մահուն՝ զոր սպառնացայ նմա 'ի նմին իսկ աւուր 'ի սակս յանցանաց նորա ։ Զոր ցարդ համարի նա անոտի ինչ և վայրապար, փոխանակ զի տակաւին ոչ ձգեցաւ 'ի վերայ նորա հարուածն յանկարծահաս՝ յորմէ երկնչէր նա ։ Սակայն մինչդեռ աւուր կայ՝ գտցէ նա միայն զյապաղումն, և ոչ զազատութիւն յերեսաց նորա ։ Արդարութիւնն իմ ոչ ևս դարձցի յետս արհամարհեալ, որպէս դարձաւ բարութիւնն իմ ։ Այլ զո՞ առաքեցից փոխանակ իմ 'ի դատել զնոսա, զո՞ ոք բաց 'ի քէն՝ դահակից իմ Որդի ։ Դու քեզ զամենայն դատաստան յերկինս և յերկրի և 'ի սանդարամետս ։ Յառաքել իմում զքեզ՝ որ ես բարեկամ մարդոյն, միջնորդ նորա, փրկանք և փրկիչ՝ կարգեալ ինքնակամ յօժարութեամբ, և սահմանեալ առ 'ի լինել մարդ, 'ի դատել զմարդն յանցուցեալ՝ քաջ երևեսցի հաճութիւն կամաց իմոց 'ի միաբանել զողորմութիւնն իմ ընդ արդարութեան ։

Զայսօրինակ խօսեցեալ Հօրն՝ պայծառ փայլեցոյց զփառս իւր յաջակողմն կոյս . և Աստուածութիւնն Ճառագայթեալ ցուցաւ 'ի վերայ Որդւոյն ։ Եւ նա լուսափայլեալ արեգակնաբար՝ ողջոյն եցոյց յինքեան բովանդակապէս և ըստ աստուածային էութեանն զՀայր իւր . և սքանչելի

իմն քաղցրութեամբ արար նմա պատասխանի՝ օրինակ զայս ։

Ո՛վ Հայր յաւիտենական, քեզ անկ է տալ զվճիռ, և ինձ կատարել զկամս քո յերկինս և յերկրի, զի հաճութեամբ հանգիցես միշտ յՈրդիդ քո սիրելի[1] ։ Գնամ ես յերկիր 'ի դատել զյանցաւորս. բայց քաջ գիտես դու՝ զի զիա՛րդ և դատեսցին նոքա, խստագոյն ևս դատաստան հանդերձեալ է անկանիլ յիմ վերայ յիւրում ժամանակի ։ Զի կամաւ յանձն առի զայդ, և յանդիման քեզ խոստացայ. և այժմ ևս ոչ զղջանամ ընդ այն, այլ վերստին ընդունիմ 'ի նուազութիւն պատուհասի նոցա՝ որ եղեալն է 'ի վերայ իմ ։ Սակայն՝ այնպիսի իմն օրինակաւ խառնեցից զարդարութիւն ընդ ողորմութեան, զի երկոքին ևս պայծառ փայլեսցին. և քո հաճեալ՝ հաշտեսցիս ընդ յանցաւորսդ ։ Եւ չեն ինչ պէտք ինձ շքեղ հանդիսի, և պաշտօնէից բազմութեան. զի ոչ ոք հանդերձեալ է առաջիկայ լինել դատաստանի յանցաւորացդ՝ բաց յերկացունց 'ի նոցանէ ։ Երրորդն[2] ոչ գոլով յանդիման՝ ինքնին իսկ դատապարտեալ է, զի փախստեամբ գտաւ յանցաւոր, և ապստամբ յօրինաց[3] ։ Իսկ 'ի վերայ օձին ոչ անկանին պարտիք[4] ։

Զայս ասացեալ նորա՝ յարեաւ 'ի ճառագայթարձակ աթոռոյ անտի փառացն՝ որ էր ընդ աջմէ Հօր ։ Եւ պաշտօնեայք նորա՝ Աթոռք, Զօրութիւնք, Իշխանութիւնք և Տէրութիւնք, յաղարկաւորք եղեն նմին մինչև 'ի դուռն երկնից՝ որ հայի յԵդեմ, և 'ի սահմանս նորա ։ Իսկ նա յական թօթափել էջ 'ի խոնարհ. զի անհնար է ժա-

մանակի՝ թէպէտև թևազգեցիկ գտանի յարագագոյն վայրկեանս, առնուլ զչափ երագութեան Աստուածոց [5]: Յայնմ վայրի խոնարհեալ էր արեգական 'ի միջակէն երկնից յարևմուտս կոյս: Եւ քաղցրաշունչ սիւգք հեզիկ զարթուցեալ 'ի զովացուցանել զերկիր 'ի բաղխումն թևոց իւրեանց՝ կարապետ լինէին ցանկալի երեկոյին, այն ինչ քաղցրագութ դատաւորն և միջնորդն միանգամայն՝ յաւէտ իմն զովացեալ 'ի սրտմտութենէ իւրմէ՝ եկն առ 'ի տալ զվճիռ յանցանաց մարդոյն: 'Ի բաղխմանէ անտի քաղցրասիւգ հողմոյն լուան նոքա զձայն զգնալոյ Աստուծոյ 'ի պարտիզի անդ ընդ երեկս: Այլ երկոքին ևս թագուցին զանձինս իւրեանց 'ի մէջ տնկախիտ ծառոց յերեսաց նորա: Մինչև յառաջ մատուցեալ Աստուծոյ՝ կոչեաց զԱդամ մեծաբարբառ օրինակ զայս:

Ո՞ւր ես Ադամ՝ որ յայլ նուագ տեսեալ զիս 'ի հեռաստանէ՝ ելանէիր խնդութեամբ ընդ առաջ իմում գալստեան: Ի՞նչ էր ոչ երևիս. թերևս ոչ հաճեալ ընդ դրախտդ՝ մեկուսացեալ կաս. զի սակաւ մի յառաջ գտանէի զքեզ անխնդիր, որպէս արժանն էր: Կամ թերևս ես ինքնին ոչ երևիմ քեզ յայտնապէս: Կամ փոփոխութիւն իմն հեռացուցանէ զքեզ յինէն: Եւ կամ պատահումն ինչ կալեալ ունի: Սակայն և այնպէս եկ արտաքս:

Ել նա արտաքս. և Եւայ ընդ նմա, բայց կաքն իմն ակամայ՝ թէպէտև նա ինքն էր առաջինն 'ի յանցանս: Երկոցունց ևս երեսք այլափոխեալ էին և խաթարեալ: Ոչ գոյր տեսանել 'ի նոսա զսէր առ Աստուած, կամ առ միմեանս. այլ միայն

զյանցաւորութիւն, զամօթ, զխռովութիւն, զանյուսութիւն, զարտմնութիւն, զկամակորութիւն, զատելութիւն և զդաւաճանութիւն ։ Նա և ապա զկնի բազմադիմի տարակուսանաց՝ արար Ադամ պատասխանի կարճ 'ի կարճոյ՝ օրինակ զայս ։

Լուայ զձայն քո 'ի պարտիզիս, և զի մերկ էի, երկուցեալ յերեսաց քոց՝ Թագեայ ։ Որում ետ պատասխանի բարեգութ Դատաւորն առանց ինչ կշտամբանաց ։

Լուար դու բազում անգամ զձայնն իմ, և ոչ երկեար, այլ ուրախ եղեր հանապազ . իսկ այժմ զիա՞րդ այնչափ ահաւորին ցուցաւ նա քեզ ։ Նա ո՞ պատմեաց, թէ մերկ ես ։ Մի՞թէ կերա՞ր արդեօք 'ի ծառոյն՝ յորմէ պատուիրեցի քեզ չուտել ։

Իսկ Ադամ յանհնարինս մտեալ՝ արար նմա զայս պատասխանի ։ Ո՞վ երկինք՝ զիա՞րդ պաշարեալ կամ այսօր 'ի չարաչար անձկութեան առաջի իմում դատաւորի ։ Պարտ է ինձ՝ կամ զանձամբ արկանել զամենայն զյանցանս, և կամ ըզկենակիցն իմ՝ որ է միւս ես ես, պատժապարտ ցուցանել ։ Այլ քանզի հաւատարիմ գտաւ նա առ իս, արժան է ինձ ծածկել զյանցանս նորա . և ոչ առակել զնա իմով ամբաստանութեամբ ։ Սակայն հարկն անհրաժեշտ, ընդ նմին և բռնադատութիւնն անողորմելի՝ ստիպեն զիս հրատարակել զայն . զուցէ յանցանքն և պատիժն միանգամայն՝ որ է անբերելի, անկցին 'ի վերայ գլխոյ իմոյ ։ Նա թէպէտ մարթ իցէ ինձ լռել, սակայն և այնպէս դու ինքնին կարող ես յայտնել զոր եսն թագուցանեմ ։ Արդ՝ կինս զոր ստեղծեր օգնական ինձ, և ետուր իբրև զպարգև քո կատարեալ՝ այնչափ

ընտիր, սիրելի և չնաշխարհիկ, մինչև ոչ խիթալ ինձ ընդ չարութիւն ինչ 'ի ձեռաց նորա, և զամենայն գործս նորա համարել արդարացի, նա ես ինձ 'ի ծառոյ անտի, և կերայ։

Որում ետ պատասխանի տէրն տիրական։ Մի՞թէ էր նա Աստուած քո, զի յառաջ քան ըզձայն նորա՝ հնազանդեցար նմին։ Եւ մի՞թէ ստեղծա՞ւ նա գլուխ քո գերագոյն, կամ գէթ զուգահաւասար քեզ՝ զի ետուր 'ի ձեռս նորա զիշխանութիւն քո այրական, և զտեղին՝ յորում կարգեաց զքեզ Աստուած գեր 'ի վերոյ քան զնա։ Զոր և յօրինեաց 'ի քէն, և 'ի սակս քո․ և պարծանք առժանեաց քեզ կարի իմն գերազանցեալ գտանէին զնորայոյն։ Այր նա արդարև շնորհազարդ և գեղեցկատեսիլ՝ առ 'ի ձգել զսէր քո միայն, այլ ոչ զհնազանդութիւն։ Եւ պարգևք նորա ընտիր ևս երևէին ընդ քոյով իշխանութեամբ, այլ կարի իմն տգեղ յիշխանութեան անդ՝ որ է բաժին քո, եթէ քաջ ծանուցեալ էր քո զանձնդ։

Զայս ասացեալ նորա՝ ուղղեաց համառօտագոյնս զբան իւր առ Եւայ։ Ասա՛ ո՞վ կին, զի՞նչ է՝ զոր արարեր։

Իսկ Եւայ կացեալ առաջի դատաւորի իւրոյ տխրադէմն և ամօթապարտ, այլ ոչ յանդուգն կամ շաղակրատ՝ անդէն խոստովան եղև զյանցանս իւր, և արար նմա զայս պատասխանի։ Օձն խաբեաց զիս, և կերայ։

Զոր լուեալ Տեառն Աստուծոյ՝ մատեաւ փութանակի 'ի դատաստան ընդ օձին, թէպէտև անբան էր նա, և չէր ձեռնհաս շրջել զյանցանս իւր 'ի վերայ նորա՝ որ էառ զնա գործի 'ի ձեռին իւ-

րումն չարութեան, և այնպէս խոտորեցոյց զնա 'ի նպատակէ անտի արարչութեանն. վասն որոյ և իրաւամբք անիծաւ զկնի իբրև ապականեալ յիւրումն բնութեան: Պիտեալ ինչ առաւել քան զայս՝ ոչ էր կարևոր մարդոյն (այն զի և ոչ իսկ գիտաց), և ոչ փոփոխէր զյանցանս նորա: Սակայն և այնպէս ած Աստուած 'ի վերայ Սատանայի՝ որ առաջին էր 'ի յանցանս, զդատակնիքն իւր. թէպէտև խորհրդական բանիւք, որպէս և զխարդ 'ի դէպ համարեցաւ յայնժամ: Եւ ետ անիծիցն անկանել 'ի վերայ օձին՝ օրինակ զայս:

Փոխանակ զի արարեր դու զայդ, անիծեալ լիջիր 'ի մէջ գազանաց երկրի: 'Ի վերայ որովայնի քո գնասցես սողալով, և զհող կերիցես զամենայն աւուրս կենաց քոց: Եդից զթշնամութիւն 'ի մէջ քո և կնոջդ, 'ի մէջ զաւակի քո և նորայն: Զաւակ նորա փշրեսցէ զգլուխ քո, և դու զգարշապարս նորա:

Այսպէս բարբառեցաւ պատգամն աստուածային: Որ և ճշգրտեալ գտաւ յայնժամ, յորժամ Յիսուս որդին Մարիամու երկրորդն Եւայի՝ ետես զՍատանայ զիշխան օդոյս անկեալ յերկնից իբրև զփայլակն: Եւ ապա յարուցեալ 'ի գերեզմանէն՝ մերկեաց զիշխանութիւնս և զպետութիւնս, յայտ յանդիմանս խայտառակեալ զնոսա: Եւ պայծառափայլ համբարձմամբ անցոյց զգերութիւնն ընդ օդն՝ որ էր թագաւորութիւն Սատանայի, բռնակալեալ 'ի նմանէ ընդ այնչափ ժամանակս: Զոր և զկնի նա ինքն՝ որ ծանոյց կանխաւ զչարաչար խորտակումն նորա, արկանելոց էր ընդ ոտիւք մերովք: Եւ ապա սովին օրհնա-

կաւ շրջեաց նա անդրէն զդատակնիք իւր առ կինն։

Բազմացուցանելով բազմացուցից զցաւս երկանց քոց, և տրտմութեամբ ծնցիս որդիս։ Հնազանդեալ դարձցիս կամաց առն, և նա տիրեսցէ քեզ։

Ած ապա և 'ի վերայ Ադամայ զդատակնիք իւր՝ սովին բանիւ։ Փոխանակ զի լուար ձայնի կնոջ քո, և կերար 'ի ծառոյ անտի՝ յորմէ պատուիրեցի քեզ չուտել, անիծեալ լիցի երկիր 'ի սակս քո. տրտմութեամբ կերիցես 'ի նմանէ զամենայն աւուրս կենաց քոց. փուշ և տատասկ բուսուսցէ քեզ. և կերիցես զբանջար վայրի։ Ի քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո, մինչև դարձցիս 'ի հող։ Զի առեալ եղեր 'ի հողոյ, ծանի՛ր զծնունդ քո. և զի հող էիր, դարձցիս անդրէն 'ի հող։

Այնպէս դատեաց զմարդն նա, որ առաքեալ էր դատաւոր և փրկիչ նորա միանգամայն. և 'ի բաց արար 'ի նմանէ զյանկարծահաս հարուածն մահու՝ որ սպառնացեալ էր նմա 'ի նմին աւուր։ Եւ ապա զգացեալ 'ի նոսա՝ զի տեսանէր զնոսա կալ առաջի իւր անծածկոյթ յերեսաց օձոյն, որ յայնժամ հանդերձեալ էր անկանիլ ընդ փոփոխութեամբ, ոչ անարժան համարեցաւ սկիզբն առնել 'ի ժամէն յայնմանէ ցուցանել յանձին զծառայի կերպարանս՝ որպէս յորժամ լուաց զկնի զոտս աշակերտաց իւրոց։ Նոյնպէս և այժմ իբրև հայր որդւոց՝ ծածկեաց զմերկութիւն նոցա մորթովք անասնոցն՝ որք կամ զերծեալ էին, և կամ իբրև զօձ նորոգեալ զզգեստ մանկութեան իւրեանց։ Սակայն նա ոչ միայն զարտաքին մերկու-

թիւն նոցա ծածկեաց մորթովք անասնոց, այլեւ յուսէտ զներքին ամօթալից մերկութիւն նոցա յերեսաց Հօր իւրոյ պատմուճանաւն արդարութեան: Նա որ և դարձաւ անդրէն յարագագոյն ելս. և վերառեալ եղև 'ի փառս յերանաւէտ ծոց նորա' որպէս էրն 'ի յաւիտենից: Այլ թէպէտ ամենագէտ էր նա, սակայն 'ի հաշտիլ նորա' պատմեաց նմա զամենայն անցս ընդ մարդոյն. և յաւել 'ի նոյն զմիջնորդութիւն իւր գորովագութ:

Յայնմ ժամանակի' մինչև էր յանցուցեալ մարդոյն, և անկեալ ընդ դատաստանաւ, Մեղք և Մահ նստէին առընթեր դրան դժոխոց' որ յայնժամ բացեալ կայր լայնարձակ, և զգայուէր հեռագոյնս զբոց մահաշունչ 'ի Սին[6] անդր' զկնի անցանելոյ ընդ այն թշնամւոյն: Զոր և բացեալ էր Մեղաց. և նա ինքն սկսաւ արդ խօսել ընդ Մահու' օրինակ զայս:

Ով որդի' ընդէ՞ր է մեզ կալ աստանօր դատարկ, և հայել 'ի դէմս միմեանց, մինչդեռ հայր մեր պանծալի յառաջ ընթացեալ յայլ աշխարհս' դուն գործէ պատրաստել մեզ սիրելի որդւոցս տեղի բարերջանիկ: Այլ պատճառ յամենալոյ նորա ցայս վայր' ոչ այլ ինչ թուի ինձ, բայց միայն յաջողութիւնն' զոր եգիտ: Զի եթէ չէր յաջողեալ նորա, վաղու ևս դառնայր արդեօք' վանեալ յետս սաստկութեամբ յերեսաց վրիժառուաց իւրոց: Զի չէ հնար այլում տեղւոյ' բաց 'ի դժոխոցս, լինել քաջայարմար տեղի պատժոյ նորա, կամ նոցուն վրիժուց: Այլ թուիմ զգալ յանձին տարօրինակ զօրութիւն' որ բուսուցանէ ինձ թևս, և տայ լայնածաւալ իշխանութիւն յայն

կոյս անդնդոցս ։ Ո՛չ գիտեմ, արդեօք ազդեցու-
թիւն իցէ՝ որ մղէն զիս զայսօրինակ, եթէ զօրու-
թիւն իմն ընդաբոյս. որում մարթ է միաւորել
ընդ միմեանս զհամանմանութիւն զաղտնի սիրով, և
զանխուլ ճանապարհաւ՝ 'ի կարի իմն հեռաւորու-
թեան անդ ։ Ստուերդ իմ անբաժան՝ արժան է
քեզ լինել ընդ իս անդանօր. զի չիք ինչ զօրու-
թիւն՝ որում հնար իցէ անջատել զմահ 'ի մեղաց։
Բայց զուցէ դժուարութիւն ճանապարհին խա-
փանեալ իցէ զդարձ հօր մերոյ անդրէն ընդ ան-
դունդս անանց և անկոխ. վասն որոյ տացուք
զանձինս դիմագրաւ 'ի փորձ ինչ՝ որ չէ կարի իմն
օտար 'ի զօրութենէս մերմէ։ Ելցուք 'ի վերայ
համատարած անդնդոցս ճանապարհ 'ի դժոխոց
աստի յաշխարհն նորաստեղծ՝ ուրանօր զօրացեալ
կայ արդ Սատանայ ։ Որ և լիցի պանծալի յիշա-
տակ մերոց արդեանց, ընդ նմին և ցանկալի ճա-
նապարհ անդնդային զօրաց՝ 'ի դիւրացուցանել
զանցս նոցա, այն ինչ կամք իցեն նոցա փոխանա-
կել զտեղի իւրեանց կամ զգնացս՝ որպէս և զիարդ
առաջնորդեսցէ նոցա վիճակ նոցին։ Եւ անմարթ
է ինձ կորուսանել զշաւիղդ, զի ձգեալ կայ առա-
ջի իմ նովին ազդեցութեամբ, և նորոգ շարժմամբ։

Որում անդէն վաղվաղակի արար պատասխանի
ստուերն ցամաքեալ՝ օրինակ զայս։ Ե՛րթ ուրա-
նօր և առաջնորդեսցէ քեզ ճակատագիրն, կամ
ցանկութիւն անձինդ ։ Իսկ ես ոչ անագանեցայց
զալ զկնի քո, և ոչ խոտորեցայց զճանապարհայն
'ի հետոց քոց։ Վասնզի առնում ես քաջ քաջ
զհոտ դիոցն՝ զանհամար բազմութեան որսոց, և
զճաշակ մահու՝ յորոց կենդանի են անդանօր։ Ոչ

գտայց յետնեալ 'ի շահատակութեանդ , այլ մատուցից քեզ զկարևոր ձեռնտուութիւն :

Զայս ասացեալ՝ հոտոտեցաւ ընկերանօք զմահաւիթ հոտն փոփոխութեան եղելոյ 'ի վերայ երկրի : Զորօրինակ յորժամ երամք գիշատիչ թռչնոց՝ թէպէտև 'ի բացարձակ հեռաւորութեան անդ , յաւուր պատերազմի թռուցեալ հասանեն 'ի դաշտն՝ ուրանօր հարեալ կայ բանակ զօրացն , ձգեալ 'ի հոտոյ շաղղացն կենդանեաց՝ որք կարգեալ են 'ի մահ յաւուրն երկրորդի յարիւնախանձ մարտի , այնպէս հոտոտեցաւ սոսւերն խոժոռադէմ, ամբարձեալ 'ի վեր զերկայնաձիգ ռնգունս իւր յօդն անլոյս . որ և էր քաջ հոտառու յայնչափ հեռաստանէ իւրումն որսոյ : Իսկ ապա երկոքեան ևս խոյացան ընդ այլևայլ ճանապարհ 'ի դրանց անտի դժոխոց 'ի լայնածաւալ և յամայաբնակ անիշխանութիւնն զիձին և խաւարչտին Սհի : Իսկ զօրութեամբ իւրեանց (զի էր մեծ յոյժ) ընդոստուցեալ զերեսօք ջրոյն՝ զոր գտին հոծ և տղմասիգ , 'ի վեր և 'ի խոնարհ իբրև 'ի մրրկալից ծովու , կուտակեցին զայն 'ի միասին . և այնպէս խռկեալ աստի և անտի՝ ետուն 'ի բերան դժոխոց : Զորօրինակ կրկին բևեռական հողմք շնչեալ հակառակ միմեանց 'ի վերայ Կրոնեան [7] ահեղ ծովու՝ ձգեն 'ի միասին 'ի Կաթայեան [8] մեծագանձ եզերս զլերինս սառնամանեաց , որք կալեալ ունին զճանապարհն կարծեցեալ յայն կոյս Պետսորայ [9] : Ապա եհար Մահն քարացուցիչ գաւազանաւն իւրով՝ զոգցես իբր երեքժանեօք ընդցրտագին և զցամաքեալ թանձրութիւն յատակին , և քաջ պնդացոյց զայն իբրև զԴեղոս [10].

յոգնատատան երբեմն ։ Եւ զայլ մասունս նորա անշարժ կապեաց տեսիլ դիմաց նորա Պորգոնեանն[11] ամրութեամբ ։ Եւ ապա երկոքեան 'ի միասին մնծուցին 'ի կուպր և 'ի նաւթ զծովափն լայնարձակ իբրև զգուռն սանդարամետական և անդնդախոր ցարմատս անդ դժոխոց ։ Եւ այնպէս կանգնեցին 'ի վերայ փրփրալից անդնդոց զահագին շինուածն բարձրակամար կամ զկամուրջն՝ որ էր ահեղատեսիլ յերկայնութեան անդ ։ Եւ կապեցին զայն անշարժ ընդ պարիսպն աշխարհիս՝ որ էր յայնժամ անպատսպարան և պատժապարտ մահու ։ Եւ սովին օրինակաւ բացին անդուստ 'ի սանդարամետս զանցս լայնարձակ, կուռ, դիւրագնալի և աներկեան ։ Զայսօրինակ՝ եթէ մարթ իցէ համեմատել զմեծամեծս ընդ փոքունս, կամեցեալ Քսերքսեայ[12] արկանել ընդ լծով ծառայութեան զազատութիւնն Յունաստանի՝ եկն 'ի Շուշայ[13] 'ի Մեմնոնեան[14] հոյակապ խուրոց արքունեաց 'ի ծով անդր. և ձգեալ կամուրջ 'ի վերայ Հելլեսպոնտեայ՝[15] կապեաց զԵւրոպա ընդ Ասիոյ. և գան եհար ուժգին զանսաստութիւն ալեաց նորա ։ Արդ՝ հանին նոքա 'ի գլուխ ճարտար արուեստիւ զշինութիւն կամրջին՝ որ էր շարադասութիւն քարաժայռից կախելոց 'ի վերայ բազմատանջ անդնդոց ։ Եւ յօրինեցին զայն զհետ գնացեալ շաւղացն Սատանայի 'ի նոյն տեղի՝ ուրանօր զառաջինն խոյացոյց նա զթռիչս իւր, և եւ անվտանգ յերեսաց Ահին 'ի ցամաք անդր, 'ի հոլանի ասեմ երեսս բոլորակաձև աշխարհիս ։ Զոր և ուժգին պնդեցին յաղամանդեայ սեպս և 'ի շղթայս. և այնպէս կացուցին մշտատև և անքակ-

տելը ։ Որով 'ի սակաւ ժամանակի եղին ընդ ա-
ռաջ միմեանց սահմանք հրեղէն երկնից, և այսր
աշխարհի ․ և դժոխք կարգեցան ընդ մէջ՝ ձգեալ
յերկայնութիւն ընդ ձախմէ ։ Եւ այնպէս երրեակ
այլևայլ ճանապարհք եղեալ կային առաջի որոց
գնային յերեսին սահմանոդ ։ Եւ մինչդեռ կա-
լեալ էին նոքա զճանապարհ իւրեանց ընդ երկիր՝
դէմ եդեալ 'ի դրախտ անդր, և ահա եհաս առ
նոսա Սատանայ յանծանօթս 'ի նմանութիւն լու-
սափայլ հրեշտակի՝ ուղղեալ զԶէնիթ[16] իւր ընդ
մէջ Աղեղնաւորին և Կարճի յելանել անդ արե-
գական 'ի Խոյ ։ Սակայն անդէն և անդ ծանեան
սիրելի որդիքն զհայր իւրեանց, թէպէտև յայլա-
կերպս էր ։ Որ և զկնի պատրելոյ զԵւայ սողու-
կեալ անկաւ զանխլաբար յանտառն առ երի ։ Եւ
ապա փոխեալ զկերպարանն առ 'ի կարող լինելոյ 'ի
զնին կալ ելից իրացն՝ ետես զԵւայ, զի յանդէտս
թելադիր լինէր իւրում չարութեան առ այր իւր ։
Ետես և զամօթ նոցա զկնի յանցանաց ․ և զի
վայրապար 'ի խնդիր լինէին ծածկութի ։ Նաև 'ի
տեսանել անդ զիջումն Որդւոյն Աստուծոյ 'ի դա-
տել զնոսա, զարհուրեալ յերեսաց նորա՝ խոյս ետ
'ի դրախտէ անտի ։ Զի ոչ այլով օրինակաւ ակն
ունէր զերծանիլ 'ի ձեռաց նորա, բայց միայն փա-
խստեամբ ։ Վասնզի պատժապարտ գոլով երկնչէր
'ի պատուհասէն, զոր մարթ էր սրտմտութեան նո-
րա ածել արագ արագ 'ի վերայ նորա ։ Սակայն և
այնպէս վերստին դարձաւ 'ի գիշերի ։ Եւ ուշ ե-
դեալ ուրանօր ամոլքն աշխարհելը ցաւագինս խօ-
սէին ընդ միմեանս, և նստեալ լային դառն ար-
տասուօք՝ 'ի միտ էառ 'ի բանից նոցա զդատակնիք

իւր ։ Բայց գիտացեալ զայն՝ թէ ոչ առժամայն հասանելոց է 'ի վերայ իւր, այլ պահեալ կայ 'ի հանդերձեալսն, լի խնդութեամբ և զուարթարար աւետեօք դառնայր յայնժամ 'ի դժոխս ։ Որ և առ շրթամբք Մ՝հին 'ի ստորոտս անդ սքանչելարուեստ կամրջին եգիտ անակնկալ զսիրելի ծնունդս իւր՝ որք եղեալ էին նմա ընդ առաջ ։ Կարի մեծ եղև խնդութիւն նոցա 'ի գտանել անդ զմիմեանս. այլ ցնծութիւնն Սատանայի յաւէտ իմն առաւելեալ ցուցաւ ընդ տեսիլ հրաշալի կամրջին ։ Եկաց նա ընդերկար 'ի զարմացման անդ. այլ զկնի Մեղքն՝ բազմամաւհուկ դուստր նորա, ելոյծ զլռութիւն իւր՝ օրինակ զայս ։

Քո՛ են ո՛ հայր մեծամեծ արարքս և յաղթութիւնքս՝ ընդ որս ակնարկես իբրև ոչ ընդ քոյս ։ Դու ես գտակ նոցին, և նախկին ճարտարապետ ։ Զի ազդեցութիւն ընկալեալ 'ի սրտի իմում՝ որ միշտ շարժի ընդ քոյումդ գաղտնի միաբանութեամբ և ընդաբոյս յօդակապութեամբ, ընդ յաջողութիւն քո յերկրի՝ զոր և արդ դէմք քո քաջայայտ ցուցանեն, անդէն և անդ ծանեայ՝ թէպէտև հեռի գոլով 'ի քէն անջրպետութեամբ աշխարհաց, թէ արժան էր ինձ գալ զկնի քո ընդ որդւոյդ՝ զոր տեսանես աւադիկ ։ Քանզի հարկն Ճակատագրի սովին օրինակաւ միաբանեաց զմեզ ։ Ո՛չ ևս հնար է դժոխոց ունել զմեզ ընդերկար 'ի սահմանի իւրեանց, և ոչ խաւարչտին և անանց անդնդոց արգելուլ զմեզ 'ի հետոց քումդ լուսաւոր շաւղաց ։ Դու տարար 'ի գլուխ զազատութիւն մեր՝ որ ցարդ կապեալ կայր ընդ դրունս դժոխոց ։ Դու զօրացուցեր զմեզ յայնչափ հեռա-

ւորութեան, և ետուր մեզ արկանել քաջութեամբ 'ի վերայ խաւարային անդնդոցս զայս կամուրջ ճարտարարուեստ։ Արդ՝ քո է այսուհետև տիեզերքս ամենայն։ Զոր ոչ յօրինեցին ձեռք քո, զարութիւն քո ստացաւ. և զոր պատերազմն կորոյս, իմաստութիւն քո եգիտ կարի առաւելութեամբ։ Աստանօր կալցիս զթագաւորութիւն միահեծան տէրութեան՝ զոր անհնար եղև քեզ ունել յերկինս։ Կացցէ տակաւին յաղթականն անդանօր՝ որպէս որոշեաց պատերազմն. այլ տեղի տուեալ 'ի նորաստեղծ աշխարհէս՝ որ օտարացեալն է 'ի նմանէ ըստ նորուն իսկ դատակնքոյ։ Եւ կամ՝ եթէ ձեռնհաս իցէ, մտցէ արդ 'ի պայքար ընդ քեզ՝ որ ես յաւէտ իմն ահընկեց աթոռոյ նորա։

Որում իշխանն խաւարի ետ խնդագին զայս պատասխանի։ Դուստր իմ սիրելի, և դու որդի իմ և թոռն [17] քաջ ցուցիք 'ի պանծալի հանդիսի զլինել ձեր ծնունդ Սատանայի (զի խնդամ ես ընդ այդ անուն՝ որ է հակառակորդ ամենակալ Արքային երկնից). վասն որոյ և արժանի էք լինել ճոխաբար փոխարինաց քան զամենայն ինքնակալութիւնս դժոխոց։ Զի այնպէս քաջացեալ գոգցես առ դրունս երկնից՝ ելէք շքեղապանծ հանդիսիւ ընդ առաջ իմում յաղթանակի. և կարգեցիք 'ի մի թագաւորութիւն, և 'ի մի երկիր դիւրագնալի՝ զդժոխս և զաշխարհ։ Արդ՝ մինչդեռ ես իջանեմ ընդ խաւար առ դաշնակից զօրութիւնս իմ՝ անցեալ հեշտեաւ ընդ ճանապարհ ձեր, առ 'ի տալ նոցա զլուր յաջողութեանցս, և խնդակից լինել ընդ նոսա՝ իջէք և դուք 'ի դրախտ անդր, անցեալ անխոտոր ընդ ճանապարհդ 'ի մէջ մոլո-

րակաց՝ որք ձեր են առհասարակ։ Կացէք անդա-
նօր յերջանկաւէտ Թագաւորութեանդ. և ան-
դուստ կալարո՛ւք իշխանութիւն 'ի վերայ օդոյ և
երկրի, և յաւէտ մարդոյն՝ որ կարգեալն է տէր
և իշխան ամենայնի։ Վարեցէք նախ 'ի գերու-
թիւն, և ապա սպանէք զնա։ Ո՛հ առաքեմ զձեզ
փոխանակ իմ. և տամ ձեզ իշխանութիւն 'ի վե-
րայ ամենայն երկրի. և զայս անզուգական իշխա-
նութիւն ունիմ ես յանձնէ։ Զոր և տացայ ի-
մովս ձգամբ 'ի վերայ նորաստեղծ աշխարհին՝ որ
գտաւ մեղապարտ։ Եւ կախեալ կայ նա զմիաբա-
նեալ զօրութենէ ձերմէ ընդ իմում։ Եթէ զօ-
րանայք դուք, ահա՛ ամենայն ինչ յաղթեալ է 'ի
սակս դժոխոց։ Հա՛պա երթայք, և քաջացարո՛ւք։

Զայս ասացեալ՝ արձակեաց զնոսա։ Եւ նոքա
կալան փութանակի զճանապարհ իւրեանց ընդ
բազմախիտ համաստեղութիւնս՝ սփռեալ 'ի նոսա
զԹոյնս իւրեանց։ Վասն որոյ աստեղքն հարեալ
'ի նոցանէ երևէին այլագունեալ. և մոլորակք հա-
րեալ 'ի մոլորակաց՝ գիտացին յայնժամ յանձինս
զտիրապէս խաւարումն։ Իսկ Սատանայ չոգաւ ընդ
սալայատակ ճանապարհ նոցա 'ի խոնարհ 'ի դուռնն
դժոխոց։ Յաղթահարեալ Վհին յերեսաց նորա՝
տեղի ետ բարձրաձայն աղաղակաւ յայս կոյս և
յայն կոյս. և ահեղագոչ ալեօքն վազեաց զսահ-
մանօքն իւրովք՝ որք առ ոչինչ գրէին զսրտմտու-
թիւն նորա։ Անց Սատանայ ընդ դուռնն՝ որ
բացեալ կայր լայնարձակ և առանց զգուշութեան։
Եւ եգիտ անդ զամենայն ինչ կարգեալ յամայու-
թիւն. զի թողեալ պահապանացն զպահպանու-
թիւն իւրեանց՝ խաղացեալ էին յաշխարհն վե-

րին ։ Իսկ մնացեալքն տեղի տուեալ առ հասարակ 'ի ներքսագոյն կողմն՝ կային առ պարսպօքն Պանդեմոնի՝ որ է քաղաք և աթոռ պանծալի Արուսեկին (յայս անուն կոչէր Սատանայ 'ի նմանութենէ անտի պայծառափայլ աստեղն ) ։ Իսկ ունէին անդանօր լեգէոնքն զպաշտպանութիւն իւրեանց , մինչդեռ մեծամեծ աւագանին նստեալ կայր 'ի խորհուրդ՝ ըմբռնեալ 'ի տարակուսանս ընդ այնչափ յապաղումն դարձի ինքնակալի իւրեանց ։ Զայս պատուէր ունէին նոքա 'ի նմանէ , և պատկառ կային ։ Զորօրինակ յորժամ Թաթարն [18] տեղի տայ յերեսաց Ռուսեան [19] Թըշնամւոյն 'ի ձիւնապատ դաշտավայրս առընթեր Աստրականի [20]. և կամ Բակտրիականն [21] Սոփի [22] թողեալ լքանէ յերեսաց եղջերաց Հագարեանն [23] Լուսնի [24] զամենայն ինչ յամայութեան յայնկոյս աւերութեան Ալադուլայ՝ [25] 'ի փախչել անդ իւրում 'ի Դաւրէժ [26] կամ 'ի Կասբին [27] , նոյնպէս Թշնամիքս այսոքիկ հալածեալ յառաջագոյն յերեսացն Աստուծոյ՝ թողեալ էին ամայի զվերջին սահմանս դժոխոց փարսախօք բազմօք , և ամփոփեալ զխաւարային խնամս պահպանութեան իւրեանց զմայրաքաղաքաւն ։ Իսկ ակն կալեալ մնային ժամ ըստ ժամէ անդրէն դարձի քաջազօր շահատակի իւրեանց 'ի խնդրելոյ զհեռաւոր աշխարհ ։ Անց նա ընդ մէջ նոցա յանծանօթս 'ի սոսկական տեսիլ ստորին զինուորութեան ։ Իսկ 'ի դրանէ անտի Պղուտոնեան [28] սրահի էլ անտեսաբար յաթոռ իւր բարձրագահ , որոյ ամպհովանին սփռեալ մեծագանձ անկուածովք 'ի շուք արքայական՝ ժամանէր 'ի ձեղունն ։ Բազմեցաւ անդ առ

վայր մի, և անտես յումեքէ հայեցաւ շուրջանակի: Բայց ապա երևեցաւ գլուխ նորա պայծառափայլ յամպոյ անտի. և կերպարան նորա աստեղանշոյլ ցուցաւ, և առաւել ևս՝ պճնեալ 'ի պատիր լուսափայլութիւն. կամ 'ի նշոյլ փառացն՝ որ անդստին 'ի կործանմանէ անտի թոյլ տուեալ էր նմին: Զարմացեալ համօրէն Ստիւգեան [29] բազմութեան ընդ յանկարծակի փայլումն՝ ուղղեցին անդր զաչս իւրեանց. և տեսեալ զտենչալն և զհզօր առաջնորդ իւրեանց դարձեալ 'ի հանդիսէ՝ աղաղակեցին մեծաձայն առ խնդութեան իւրեանց: Իսկ մեծամեծ աւագանին յարուցեալ փութանակի 'ի խաւարային աթոռոց իւրեանց՝ մատեան առ նա 'ի խնդակցութիւն: Այլ նորա նշանացի լռեցուցեալ զնոսա՝ եգիտ զունկնդրութիւն առ'ի նոցանէ բանիւցս այսոցիկ:

Աթոռք, Տէրութիւնք, Զօրութիւնք, Պետութիւնք՝ յայսոսիկ անուանս պատուոյ առձայնեմ զձեզ այժմ՝ ոչ միայն իրաւամբք, այլև ժառանգութեամբ. զի արտաքոյ ակնկալութեան դարձայ ես յաջողութեամբ՝ առ'ի հանել զձեզ յաղթանակաւ 'ի սանդարամետական անդնդոցս, յանբերելի և յանիծապարտ տանէ աղխտից, և 'ի բանտէ Բռնակալին: Արդ՝ կալարուք իբրև տեարս զաշխարհն ընդարձակատարր, որ է փոքր ինչ խանարհ քան զերկինս՝ զսեպհական բնակութիւն մեր: Զոր և գտի բազում նեղութեամբ՝ դիմադրաւ եղեալ 'ի մեծամեծ վտանգս: Կարի իմն երկայն լինի պատմութիւն անցիցն և վշտաց՝ զոր յանձին կրեցի յանցանել իմում ընդ դատարկ, համատարած, անսահման և ահագին խորս խառնակու-

թեան ։ Յորոյ վերայ յատակեցին այժմ Մեղք և Մահ զընդարձակ ճանապարհ 'ի դիւրութիւն պանծալի գնացից ձերոց ։ Բայց ես յանհնարս մըտեալ յերեսաց դժուարութեան իմոյս ճանապարհի՝ ստիպեցայ յառաջ խաղալ ընդ անհուն [30] անդունդ, ընկղմեալ յորովայնի անսկզբնական Գիշերոյ, և ահագնատեսիլ Սհի ։ Որոց շարժեալ 'ի նախանձ գաղտնեաց իւրեանց՝ զդէմ կալան սաստկագոյնս իմուամն ընթացից. և բողոք բարձեալ՝ ձայն ետուն աղաղակաւ առ ճակատագիրն վերին [31] ։ Սակայն և այնպէս գտի զգնի զաշխարհն նորաստեղծ՝ զորմէ յառաջագոյն համբաւ հնչեալ էր յերկինս. և էր նա կերտուած սքանչելահրաշ և ամենագեղեցիկ. և 'ի նմա գտի ըզմարդն, որ էր կարգեալ 'ի դրախտի անդ, և էր երջանկացեալ տուժանօք մերուամն աքսորանաց ։ Բայց դաւաճանութեամբ խոտորեցուցի զնա յԱրարչէն իւրմէ. և այն՝ միով և եթ խնձորով, յաւաւելութիւն ձերումդ զարմացման ։ Ընդ որ ցասուցեալ նորա (գործ արդարև արժանի ձերումդ ծաղու) եթող զմարդն, և զաշխարհ իւր դաստակերտ՝ յորս մեղաց և մահու, ընդ նոսին և մեզ՝ անվտանգ, անաշխատ և դիւրին ։ Զի հաստատեալ 'ի նմա՝ տիրեսցուք 'ի վերայ մարդոյն, որ իշխանն է ամենայն արարածոց նորա ։ Ած նա զդատակնիք իւր և յիմ վերայ, մանաւանդ թէ 'ի վերայ անբան օձին՝ յորոյ 'ի կերպարանս պատրեցի ես զմարդն ։ Դատակնիք իմուամն պատուհասի է թշնամութիւնն՝ զոր կամի նա դնել 'ի մէջ իմ և 'ի մէջ մարդկան ազգի։ Ես ջաղխելոց եմ զգարշապարս ոտից նորա, և զաւակ նորա զգլուխ իմ.

բայց ոչ սահմանեաց զժամանակն ։ Այլ ո՞ չառնուցու յանձն զնել զաշխարհս հարուածովք կամ ծանրագոյն ևս վշտօք ։ Ահա այս է պատմութիւն իմումն շահատակութեան ։ Եւ արդ Աստուածքդ զի՞նչ ևս մնայ ձեզ, բայց յառնել և մտանել յերանութիւնն լիապատար ։

Զայսօրինակ խօսեցեալ նորա՝ եկաց առ վայր մի. զի աչքն ունէր աղաղակի նոցա և բարձրաբարբառ ցնծութեան 'ի լնուլ զականջս նորա ։ Սակայն հակառակ նմին լուաւ նա 'ի բազմութենէ անտի լեզուաց շուրջանակի զոսկալի իմն շչիւն հառաչակաց՝ որ էր բարբառ նախատանաց նոցին։ Զարմանք կալան զնա ընդ այն. այլ սակաւ մի զկնի առաւել ևս զարմացաւ նա ընդ առնուլ իւր յանձին զփորձ նորին ։ Զի եգիտ նա զդէմն իւր երկայնեալ և երիթացեալ, զբազուկս իւր մածեալ ընդ կողմն, և զոտունսն զմիմեամբք պատատեալ. մինչև չկարացեալ կալ յոտին՝ անկաւ յերկիր 'ի վերայ որովայնի իւրոյ, փոխարկեալ յօձ զարհուրատեսիլ. Թէպէտև վայրապար ծանրացաստումն եղև ընդ այն ։ Զի մեծագոյն ևս զօրութիւն բռնացեալ 'ի վերայ նորա՝ պատժեաց զնա 'ի կերպարանն, յորում գտաւ նա մեղանչական ։ Կամէր խօսել, բայց ոչ կարացեալ՝ զշչիւն և եթ արձակէր երկճիղ լեզուաւն առ շչիւն երկճիղ լեզուաց ։ Քանզի յայնմ վայրի գոգցես ամենեքին առհասարակ դարձեալ էին 'ի նոյնօրինակ օձ՝ յառաւելութիւն պատժոյ յանդուգն յանցանաց նորա ։ Եւ ահագին էր յայնժամ հնչիւն շչմանն 'ի սրահի անդ. զի գլուխք նոցա և տտունք լցեալ էին և պատատեալ խիտառխիտ հրէշիւք. որք և

էին՝ կարիճ, քարբ, օձ երկգլխանի, սերաստէս եղջերաւոր, հիդրայ, եղօպս ահարկու, և խարամանի [31]: Ո՛չ խռնեցաւ զկնի այնպիսի օրինակաւ երկիրն ոռոգեալ արեամբ Գորգոնի [32], և կամ Կղզին Ոփիուսայ [33]: Սակայն Սատանայ կերպարանեալ 'ի վիշապ՝ տոկավիթխար ևս էր 'ի մէջ նոցա, և սոուարամարմին քան զանհեթեթն Պի-թոնն՝ [34] զոր ծնաւ արեգակն 'ի Պիւթեանն հովտի 'ի տղմոյ անտի: Այլ թուէր ևս ունել տակաւին զառաւելագոյն զօրութիւն քան զայլս: Վասն որոյ ամենեքին առհասարակ զհետ գնացեալ նորա՝ ելին արտաքս 'ի դաշտավայրն բացօթեայ. ուր անօր անկեալքն յերկնից, և ապրեալքն 'ի հարուածոց անտի ապստամբութեան՝ կարգեալ կային 'ի համօրէս ճակատու, և ակնկալեալ մնային փութանակի ելից արտաքս առաջնորդի իւրեանց շքեղաշուք հանդիսիւ: Բայց փոխան նորա տեսին զայլ համօրէս խուռն բազմութեան զարշատեսիլ օձից՝ որք զեղան հոսեցան արտաքս: Յայնժամ կալաւ զնոսա ահ, և զգածումն. զի զոր ինչ միանգամ տեսանէին, 'ի նոյն գտանէին զանձինս փոխակերպեալ: Վասն որոյ թօթափեցան յերկիր զէնք նոցա՝ գեղարդունք և ասպարք. և ինքեանք տապաստ անկան 'ի քթթել ական: Յարեաւ յայնժամ և 'ի նոսա շչիւն ահագին. և վարակումն իբրև զժանտախտ կալաւ զահարկու կերպարանս նոցա: Ամենեքին զուգահաւասարք գտան 'ի պատժի անդ, որպէս էին և 'ի յանցանս: Սոյն օրինակաւ բարբառ ցնծութեանն՝ որում ակն ունէին, դարձաւ 'ի շչիւն կատականաց, և յաղթանակն յամօթ ինքնադարով նախատանաց: Այլ ան-

դէն վաղվաղակի կանգնեցաւ 'ի նմին վայրի անտառ ծառոց՝ վերաբուսեալ ընդ այլափոխութեան նոցա (զի այսպէս կամք եղեն երկնաւոր Թագաւորին յառաւելութիւն պատուոյ նոցա) գեղեցկատեսիլ պտղովք, նման ծառոյն բուսելոյ 'ի դրախտի անդ՝ զոր վարեաց փորձիչն 'ի հրապուրանս Եւայի ։ Յայնժամ արկին փութանակի զաչս իւրեանց յայն տեսիլ նորանշան. զի փոխանակ միոյ ծառոյն՝ որ արգելեալն էր 'ի դրախտի, համարէին բուսանել անդանօր խուռն բազմութեան յառաւելութիւն աղիտից նոցա, և ամօթոյ ։ Բայց պապակեալ յերեսաց բազմատոչոր ծարաւոյ, և անհնարին քաղցու՝ Թէպէտև տեսանէին զպտուղ երևումն նոցա, սակայն անհնար եղև նոցա չմերձենալ 'ի նոսա. այլ դիզացեալ 'ի միմեանց վերայ՝ ելին 'ի ծառսն խտագոյն ևս քան զբազմութիւն օձիցն, որք պատեցին զՄեգերաւ[35] ։ Հատին տենչանօք զգեղեցկատեսիլ պտուղս նոցա՝ որք կարի իմն նմանատիպ էին բուսելոցն երբեմն առընթեր լճակի նաւթին, ուր բոցակեզ տոչորեցաւ Սոդոմ ։ Բայց սոքա պատիր ևս գոլով՝ ոչ միայն զձեռս, այլև զճաշակելիսն խաբէին ։ Ոչ կամեցեալ նոցա ճաշակաւ նոցին շիջուցանել զքաղց իւրեանց՝ փոխանակ պտղոցն ծամէին զմոխիր դառնահամ ։ Որում ոչ հանդուրժեալ ճաշակելեացն՝ Թքանէին զայն արտաքս դժոխալուր ձայնիւ ։ Սատեան 'ի փորձ բազում անգամ՝ ստիպեալ յերեսաց քաղցու և ծարաւոյ. այլ տարապարտ զզուանօք ծամածռեցին զծամելիս իւրեանց, և լցին զայնս 'ի ձանձախաբիթ և 'ի մոխիր ։ Այսօրինակ ըմբռնեցան նոքա բազում անգամ 'ի նոյն պատրանս.

և ոչ որպէս զմարդն միանգամ ևեթ պատրեալ՝ զոր խոտորեցուցին նոքա։ Եւ այնպէս տանջեցան և մաշեցան ընդ երկար տուայտանօք, և անդադար շշմամբ. մինչև գտին զկնի թոյլտուութեամբ վերա-նոյն զկործանեալ կերպարանս իւրեանց։ Այլ ա-սեն ոմանք, թէ պատուէր եղաւ 'ի վերայ նոցա բերել յանձին ամ ըստ ամէ 'ի սահմանեալ աւուրս զտարեւոր անարգանաց՝ 'ի նախատինս ամբարտա-ւանութեան իւրեանց, և խնդութեան ընդ պատ-րանս մարդոյն։ Սակայն սփռեցին նոքա զաւան-դութիւն յաղթութեան իւրեանց 'ի մէջ հեթա-նոսաց. և կեղծեցին առասպելս, թէ օձն կարդա-ցեալ 'ի նոցանէ Ոփիոն՝ [36] կալաւ զառաջինն ընդ-աշխարհածուհւոյն Եւրինոմայ՝ [37] թերևս ընդ-Եւայի, զիշխանութիւն բարձրագագաթն Ողիւմ-պեայ։ Այլ զկնի՝ մինչև էր ծնեալ Դիկտեանն [38] Արամազդայ, մերժեցին զնոսա անդուստ Սատուր-նոս [39] և Ովպս [40]։

Յայնմ ժամանակի ամոլքն դժոխոց՝ Մեղք և Մահ, հասին փութանակի 'ի դրախտ անդր։ Մեղքն գոլով երագընթաց՝ ժամանեալ էր անդր յառաջագոյն զօրութեամբ իւրով, և այժմ եհաս անձամբ առ ունելոյ զբնակութիւն յարատեւակ. իսկ Մահն զկնի հետոց նորա ոտն առ ոտն յառաջ խաղացեալ, և ոչ տակաւին աշտանակեալ 'ի ձի տխրատեսիլ։ Ընդ որում սկսաւ խօսել Մեղքն՝ օրինակ զայս։

Ո՛վ Մահ ամենայաղթ՝ երկրորդ ծնունդդ Սա-տանայի, զիա՞րդ թուի քեզ այժմու ինքնակալու-թիւնս՝ թէպէտև դժուարակիր ձգամբք ստա-ցեալ։ Ո՞չ ապաքէն ընտրելագոյն է այս քան ըղ-

հանապազորդ պաշտպանութիւնն վատանուն անարգութեամբ առ խաւարամած սեամն դժոխոց՝ ուր կայիր կիսամեռ առ քաղցու։

Որում փոյթ ընդ փոյթ արար պատասխանի այլանդակ ծնունդն մեղաց։ Այն են դժոխք, դրախտ և երկինք առաջի իմ՝ որ տագնապեալս եմ մշտնջենաւոր տուայտութեամբ։ Լաւ ևս կեամ անդանօր, ուր մարթ է ինձ գտանել զկերակուր ցյագուրդ։ Այլ աստանօր՝ թէպէտև ամենայն ինչ գտանի բազմառատ, սակայն նուաղ թուին 'ի լնուլ զայս որովայն լայնատարր՝ որ ոչ է կապեալ ընդ մորթոյ [41]։

Որում ազգապիղծ մայրն ետ զայս պատասխանի։ Աղէ սպառեա դու նախ զբանջարս, զծաղիկս, և զպտուղս 'ի դրախտիս, և ապա զանասունս, զձկունս, և զթռչունս՝ զընտիր կերակուրըդ. և կուլ անխնայ զոր ինչ միանգամ հնձեալ արկանէ 'ի խոնարհ մանգաղն ժամանակի. մինչև բնակեալ իմ 'ի մարդն, և 'ի սերունդս նորա՝ ապականեցից զմիտս, զբանս և զգործս նոցա. և այնպէս պատրաստեցից քեզ զվերջին կերակուր քաղցրաճաշակ։

Զայս ասաց նա։ Իսկ փութանակի կալան նոքա զայլևայլ ճանապարհ. բայց երկոքին ևս դիմեալ 'ի վաղագոյն կամ յանագան եղծումն անմահութեան։ Զոր տեսեալ Ամենակալին 'ի գերատիճանեալ աթոռոյ իւրմէ՝ յորում նստէր 'ի մէջ Սրբոց, զայսօրինակ ուղղեաց զբարբառ իւր առ լուսապայծառ դասս նոցա։

Տեսանէք աւադիկ, թէ քանի կատաղութեամբ ընթանան շունքդ դժոխոց յեղծումն և յապակա-

25

նութիւն երկրի՝ զոր ստեղծի ես այնչափ գեղեցիկ
և բարեվայելուչ ։ Այլ տակաւին կայեալ էր 'ի
նմին վայելչութեան , եթէ անմտութիւն մարդոյն
ոչ էր թոյլ տուեալ մտանել անդր ապականագործ
կատաղեացդ՝ որք խնձ ընծայեն զանմտութիւնդ-
դայդ ։ Յայս կարծիս են և իշխանին դժոխոց , և
միաբանեալքն ընդ նմա ․ զի տեսանեն զիս հեշ-
տեաւ իմն զիջանել նոցա 'ի մտանել և 'ի ժառան-
գել զվայրդ երկնանման ․ և թուիմ նոցա կատա-
րել զկամս անարգու թշնամեաց իմոց՝ որք ծիծա-
ղին զինև , որպէս թէ շարժեալ յանհնարին կը-
րից՝ թողեալ իցեմ զամենայն ինչ 'ի կամս նոցա ,
և վարկպարազի տեղի տուեալ անկարգութեան ։
Բայց ոչ գիտեն նոքա, թէ կոչեցի ես զդժոխային
շունսդ , և ձգեցի անդր՝ 'ի լափլիզել զաղտեղու-
թիւնս և զգարշանս՝ զորս պղծագործ մեղք մար-
դոյն արկին զհամօրէն սրբութեամբ ։ Մինչև խը-
ձողեալ նոցա ցպայթումն պորտոյ մնացուածովքն
զոր կլանեն անյագաբար , և ապա 'ի մի հարուած
քումդ հզօր բազկի՝ ով Որդի իմ սիրելի , կործա-
նեալ Մեղաց և Մահու և անյագ որովայնի նոցա
'ի Վիհն՝ խցցեն զբերան դժոխոց 'ի յաւիտեան,
և կնքեսցեն զգիշախանձ ծամելիս նորա ։ Այլ յայն-
ժամ նորոգեսցին երկինք և երկիր մաքրափայլ
սրբութեամբ անընդունակ արատոյ ։ Եւ ցայն
վայր յառաջ ընթասցեն անէծքն տուեալ երկո-
ցունց միանգամայն ։

Կնքեաց նա զբան իւր ․ և ունկնդիրքն երկնից
հնչեցուցին զահեղաբարբառ ալէլուիայն իբրև
զգոչիւն ծովու․ և ամենայն բազմութիւնն յաւել
ընդ նոսա ձայն իւր՝ ասելով ․ Արդար են ճանա-

պարհք քո, և ուղիղ դատաստանք քո յամենայնի: Այլ ո՞ւմ ումեք հնար է հաստատացուցանել զքեզ, կամ զՈրդիդ քո՝ որ կարգեալն է նորոգիչ մարդկան ազգի. և նովաւ հանդերձեալ են կանգնիլ նոր երկինք և նոր երկիր, և կամ իջանել 'ի վերուստ: Զայսօրինակ երգեցին նոքա: Իսկ Արարչին կոչեալ յանուանէ զհզօր հրեշտակս իւր՝ ետ նոցա իշխանութիւն՝ զոր կարևոր դատեաց յայնմ պահու: Այլ նոքա անդէն վաղվաղակի ետուն հրաման զառաջինն արեգական, զի յընթանալ իւրում և 'ի ծագել ընդ երկիր՝ ազդեսցէ նմին զանըմբերելի իմն ցրտութիւն և զջերմութիւն: Կոչեսցէ 'ի հիւսիսոյ զձմեռն զառամեալ, և 'ի հարաւոյ ածցէ զտօթն արևակայից ամարայնոյ: Ապա կարգեցին արծաթափայլ լուսնի զպաշտօն նորա. և հնգեցունց մոլորակաց զխոտորնակ ընթացս նոցա, և զհայեցուածս վեցամանեայ, քառամանեայ և եռամանեայ ժանտալից ազդեցութեամբ. Եւս և զժամանակն հանդիպելոյ նոցա միմեանց 'ի չարագուշակ զուգորդութեան անդ: Ծանուցին և հաստատնոց[42] զժամանակն տեղալոյ նոցա յերկիր զչարախտաւոր հոսանս իւրեանց. և թէ՝ ո՞յք ոմանք 'ի նոցանէ հանդերձեալ էին ելանել և մտանել ընդ արեգական՝ ածեալ զմըրրիկ ընդ երկիր: Սահմանեցին հողմոց զվայրս նոցա, և զժամանակ յուզելոյ զծով, զցամաք և զօդ 'ի բաղխումն թևոց իւրեանց: Ուսուցին և որոտմանց և կայծականց զժամանակն խաղալոյ նոցա ահագինս 'ի թխպագին սրահի անդ հաստատութեան երկնից: Ասեն ևս ոմանք, թէ հրաման ետ Աստուած հրեշտակաց իւրոց խոտորեցուցանել զբև-

եռս երկրի երից տասնեակ աստիճանօք և առա-
ւել ևս՝ յառանցից անտի արեգական ։ Իսկ նոքա
բազում ճգամբ թաւալեցուցին առ'ի շեղ զգօտին
կենդրոնեան ։ Իսկ ըստ այլոց ընկալաւ արեգակն
զհրաման դարձուցանել զերասանակն իւր 'ի ճա-
նապարհէ անտի գիշերահաւասարին նոյնչափ հե-
ռաձիգ լայնութեամբ 'ի Ցլոյ անտի ընդ եւթանց
Ատլանտեան [43] քերց, և Սպարտեան [44] երկուորե-
կաց՝ 'ի վեր կոյս առ Խեցգետին արևադարձ [45] ։
Իսկ անդուստ դարձեալ 'ի խոնարհ առ ընթեր Առ-
իւծու, Կուսի և Կշռոյ ըստ չափոյ խորութեան
Այծեղջեր [46] ։ Իսկ այնպէս ածել յիւրաքանչիւր
կլիմայս երկրի զփոփոխութիւնս եղանակաց տար-
ւոյն ։ Ապա թէ ոչ՝ յաւէժաբար խնդայր գարունն
'ի ծաղիկս իւր, զուգահաւասար ունելով զժա-
մանակն տունջեան և գիշերոյ, բաց 'ի տեղեաց ան-
տի՝ որք են յայնկոյս շրջանակացն բևեռաց [47] ։ Զի
տիւ նոցա ծագէր անգիշեր 'ի հոլովել անդ արե-
գական միշտ 'ի ստորև զհորիզոնաւ յանդիման նո-
ցա՝ խոնարհեալ 'ի վաստակս երկայնաձիգ ճանա-
պարհին ։ Իսկ յայնժամ մնային անծանօթք՝ արև-
ելք նորա և արևմուտք ։ Իսկ խափանէր նա ըզ-
ձիւնն յերեսաց ցրտասառոյցն Եստոտիլանդայ [48] ·
և զհարաւ հեռագոյնս ձգէր 'ի խոնարհագոյնս
Մագելլեան [49] ։ Այլ դարձոյց արեգակն զընթացս
իւր 'ի ճաշակեալ պտղոյ անտի իբրև յերեսաց
Թիւստեանն [50] ընթրեաց ։ Ապա թէ ոչ՝ զիա՞րդ
մարթ էր բնակեալ երկրիս՝ թէպէտև անմեղան-
չական լինէր տակաւին, խոյս տալ յայնժամ ա-
ռաւել քան այժմ յերեսաց սաստկագին ցրտոյ,
և բոցակէզ տօթոյ ։ Փոփոխութիւնքն օդոյ 'ի

հաստատութեան երկնից՝ մուծին զնոյնօրինակ յեղափոխութիւն և 'ի ծովու և 'ի ցամաքի, Թէպէտև անագան, ժանտաբեր և ապականարար հարուածովք աստեղաց, միգի, մառախլոյ, և տօթագին գոլորշեաց: Լուծեալ յայնժամ սաստկաշունչ հողմոցն Բորէասայ, Կեկիասայ, Արգեստեայ և Թրասկիայ [51] 'ի հիւսիսոյ Նորուվեգայ [52] և 'ի ծովեզերէն Սամոյեդայ [53] զպղնձի կապանս իւրեանց զսպառազինեալս սառնամանեօք, ձեամբ, կարկտիւ և փոթորկալից մրրկօք՝ հարին կործանեցին զանտառս. և զծով խռովեալ վրդովեցին ահագինս: Իսկ Նոտոս և Ափէր [54] ընդ հակառակն բաղխեալ ամպրոպալից և որոտընդոստ ամպովք՝ մերժեցին վանեցին զնոսա 'ի Սերբաղիոնայ [55]: Որպէս և Եւրոս և Զեփիւր [56] սաստկագոյնս արձակեցին 'ի վերայ նոցա զարևելեան և զարևմտեան նետս [57] իւրեանց: Զայսօրինակ սկիզբն էառ ապականութիւնն յանկենդան արարածոց: Բայց հակառակութիւնն՝ որ է ծնունդ մեղաց, եմոյծ զառաջինն զմահ 'ի կենդանիս ոխերիմ թշնամութեամբ: Սկսան տալ պատերազմ գազանք ընդ գազանս, թռչունք ընդ թռչունս, և ձկունք ընդ ձկունս: Որոց թողեալ զբնիկ ճարակ իւրեանց՝ գիշատեցին զմիմեանս: Եւ ոչ իսկ յերեսաց մարդոյ կարի իմն երկեան նոքա. այլ՝ կամ փախուստ առին 'ի նմանէ, և կամ յանդգանել նորա՝ խեթիւ հայեցան 'ի նա: Այսոքիկ էին աղէտքն բազմացեալ յայնժամ. զորս Ադամ՝ թէպէտև կայր թագուցեալ 'ի ստուերի, տուեալ զանձն յողբս արտասուաց, ետես ընտանեայ. այլ չարաչար ևս զգաց յանձին իւրում: Բան

որոյ և ցաւագինս խնդրեաց զհանդարտութիւն ծփանաց սրտի իւրոյ 'ի բազմատանջ ծովու անդ-կրից՝ օրինակ զայս ։

Ո՞վ աղիտից թշուառացելոյս ։ Մի՞թէ այս իցէ վախճանն նորաստեղծ և չքնաղակերտ աշխար-հիս . և իմում իսկ անձին՝ որ սակաւ մի յառաջ էի նմին 'ի փառս, և այժմ անկեալ կամ ընդ ա-նիծիւք՝ մերկացեալ յօրհնութենէս ։ Նա և խըն-դրեմ թագուցանել զանձն իմ յերեսացն Ա-ստուծոյ՝ որոյ տեսիլ էր երբեմն բարձրութիւն ի-մում երանութեան ։ Այլ երանի թէ աստանօր միայն վախճան առնուին թշուառութիւնք իմ ։ Պատայ ես արժանի նոցին, և պարտ է ինձ տանել համբերութեամբ ։ Սակայն զի՞նչ արարից զայն՝ զի զոր միանգամ ուտեմ և ըմպեմ, և կամ հան-դերձեալ եմ ծնանել, անկեալ կան ընդ անիծիւք ։ Ո՞վ տիրական ձայնիս՝ աճեցէ՛ք և բազմացարո՛ւք, զոր երբեմն լսէի 'ի ցնծութիւն անձին իմոյ, և այժմ լսեմ առ 'ի մահ ։ «Քանզի զի՞նչ ես մարթ է ինձ աճեցուցանել և կամ բազմացուցանել, եթէ ոչ զանէծս 'ի վերայ գլխոյ իմոյ ։ Ո՛ր ոք առյա-պայս ոչ թափեսցէ զայն 'ի վերայ իմ, յառնուլ անդ զփորձ աղիտիցն՝ զոր ածեմ 'ի վերայ նորա, և ասասցէ .» Երանի թէ կորուսեալ էր Նախա-հօր մերոյ չարեօքն իւրովք ։ Զայս երախտիս ևեթ մարթ է մեզ մաղթել Ադամայ . այլ այս դարձցի նմին յանէծս « ։ Նա և այնպէս բաց յանիծից անտի՝ որք եղան 'ի վերայ իմ, և ամենայն անէծք բըղ-խեալք յինէն՝ զեղեալ յորդեսցին 'ի վերայ իմ ա-հագինս, յիմ վերայ իբրև 'ի վերայ կենդրոնի . և թէպէտ կարի իմն ծանրութեամբ, այլ 'ի սեպհա

կամ տեղի իւրեանց ։ Ո՞վ խնդրութեանցն անցելոց 'ի դրախտին փափկութեան, զորս Թանգագին գնեցի անվախճան աղէտիւքս ։ Ո՞վ Արարիչդ իմ, մի՞թէ խնդրեցի՞ ես 'ի քէն ստեղծուլ զիս մարդ 'ի հողոյ ։ Եւ մի՞թէ փութացուցի՞ զքեզ հանել զիս 'ի խաւարէ անտի, և կարգել աստանօր 'ի զուարճութեան պարտիզիս ։ Եւ արդ՝ որպէս յայնժամ կամքն իմ չէգեն զուգընթաց 'ի գոյաւորութիւն անձին իմոյ, նոյնպէս և այժմ իբրաւամբք խնդրեմ դառնալ վերստին 'ի հող ։ Զի զոր միանգամ ընկալայ 'ի քէն, կամիմ աւանդել 'ի ձեռս քո, և դարձուցանել անդրէն առ քեզ. փոխանակ զի չէղէ ձեռնհաս լինել զդժուարակիր պատուիրանն՝ որով միայն հանդերձեալ էի ժառանգել զբարիսն, զորս ոչ խնդրեցի 'ի քէն ։ Սակայն դու ընդ կորուտեան նոցին՝ որ էր պատիժ անձին իմոյ ըստ բաւականին, ընդէ՞ր յաւելեր ինձ և զփորձ անվախճան աղէտից ։ Յայսմ թուի ինձ արդարութիւն քո լինել դժուարապատում ։ Նաև ես 'ի սակս ճշմարտութեան՝ թէպէտև անարգան, զայսօրինակ բարբառիմ. » Պարտ էր ինձ յայնժամ չառնուլ յանձն զպայմանն պատուիրանին՝ զոր եդեր առաջի իմ « ։ Սակայն դու ունիս ասել ցիս ». Ընդէ՞ր ընկալար յայնժամ, և այժմ խորամանկութեամբ կամիս վայելել միայն 'ի բարիսդ ։ Զի թէպէտ արար զքեզ Աստուած առանց քում կամաց, բայց դու զի՞նչ ունիս առնել՝ եթէ որդին քո անհնազանդ կշտամբեալ 'ի քէն՝ ասասցէ ցքեզ զնոյն. Ընդէ՞ր ծնար զիս, զի ես ոչ խնդրեցի 'ի քէն ։ Մի՞թէ հաճէի՞ր դու ընդ այս ապառում պատասխանի նորա՝ առ 'ի զերծուցանել զանձն 'ի

կշտամբանաց քոց։ Ո՛ որ և ծնաւ հարկն բնական, և ոչ հաճութիւն կամաց քոց։ Ա՛յլ Աստուած ստեղծ զքեզ ինքնակամ հաճութեամբ իւրով՝ առ 'ի ծառայել նմա։ Եւ վարձք քո հանդերձեալ էին լինել երախտիք նորա։ Նմին իրի և պատուհաս քո այժմ է 'ի կամս նորա արդարութեամբ ա։ Չունիմ ինչ ասել առ այդ, և ահա հնազանդիմ. զի արդար են դատաստանք նորա։ Քանզի հող էի, և դարձայց անդրէն 'ի հող։ Բայց երբ արդեօք հանդերձեալ է լինել ցանկալի գալուստ այնր ժամու։ Ընդէ՞ր յամեցուցանէ ձեռն նորա զպատուհասն սպառնացեալ 'ի նմին աւուր։ Ընդէ՞ր կամ ես տակաւին կենդանի։ Եւ ընդէ՞ր ժամավաճառ լինի ընդ իս մահն, և յերկարաձգէ ըզպատուհասն իմ անմահ։ Ո՛վ քանի՛ խնդութեամբ ընդունէի զդատակնիք մահուն յանձին իմում, և մտադիւր դառնայի յերկիր անզգայ։ Քանի՛ խընդութեամբ արկանէի զանձն իմ 'ի հող իբրև 'ի գիրկս մօր իմոյ, և անդ հանգուցեալ՝ ննջէի 'ի քուն աներկեան։ Ձայն նորա ահագին ոչ ևս որոտայր յականջս իմ. և ոչ երկիւղն առաւելագոյն չարեաց անձին իմոյ և իմոց ծննդոց տագնապեցուցանէր զիս անողորմ ակնկալութեամբ։ Սակայն և այնպէս տակաւին յերկբայս կամ, թէ գուցէ ոչ մեռայց իսպառ. գուցէ անխառն շունչ կենաց՝ որ է հոգի մարդոյն փչեալ յԱստուծոյ, ոչ կորնչիցի ընդ հողանիւթ մարմնոյս։ Եւ գուցէ յայնժամ մեռանիցիմ ես զմահն կենդանի 'ի գերեզմանի անդ, կամ յայլ խաւարաբնակ տեղւոջ։ Ո՛վ սոսկալի կասկածանացս, եթէ իցեն ստոյգ։ Բայց առ իմէ՞ արդեօք։ Յանցեաւ միայն շունչն կե-

նաց․ և մահն կարգեալ է 'ի սահս նորա՝ որ ունի
զկեանս և զյանցանս։ Իսկ մարմինն չունի և ոչ
զմի 'ի նոցանէ։ Ապա ուրեմն ամենայն ինչ՝ զոր
յանձին ունիմ, հանդերձեալ է մեռանել։ Այս
եւեթ տայ զլուծումն տարակուսանացս, զի միտք
մարդոյ յառաւել ինչ քան զայս ոչ հասանեն։ Սա-
կայն՝ թէպէտև անսահման է Տէրն ամենայնի,
բայց միթէ նոյնպէս իցէ և բարկութիւն նորա։
Եւ թէ և նոյնպէս լինէր և նա, սակայն մարդն
ոչ է նոյնպիսի, այլ մահկանացու ոք դատապար-
տեալ։ Եւ զիա՞րդ հնար է նմա ցուցանել զան-
վախճան բարկութիւն 'ի վերայ մարդոյն՝ զոր վախ-
ճանելոց է մահն։ Եւ միթէ անմահացուցանելո՞ց
իցէ զմահն։ Այլ այս է անտեղութիւն անբերե-
լի․ և Աստուծոյ անմարթ է ցուցանել զայն յան-
ձին իբրև նշանակ տկարութեան, և ոչ զօրու-
թեան։ Կամ՝ միթէ 'ի պատժել անդ զմարդն կա-
միցի՞ նա առ սրտմտութեան ձգել զսահմանաւորն
առ անսահմանն՝ 'ի շատացուցանել զխստութիւն
իւր անողոքելի․ և այնպէս անցուցանել զդատա-
կնիք պատուհասի իւրոյ անդր քան զսահման հողոյ,
և քան զօրէնս բնութեան՝ որով գործեն այլ ամե-
նայն պատճառք ըստ տանելոյ ենթակային, և ոչ
ըստ մեծութեան զօրութեան իւրեանց։ Բայց
թերևս չիցէ մահն ըստ իմում կարծեաց միակ
հարուած 'ի բարձումն կենաց իմոց, այլ միայն
թշուառութիւն մշտատևակ՝ սկսեալ յօրէ յայս-
մանէ և առ յապա, որպէս զփորձ առնուլ յան-
ձին իմում և արտաքոյ։ Այլ աւա՜ղ ինձ, զի այդ-
խոկ երկիւղ կասկածանաց ահագին ևս որոտմամբ
դառնայ անդրէն 'ի վերայ անպատսպարան գլխոյ

իմոյ ։ Քանզի յայնժամ եթէ ես և եթէ մահն գտանիմք մշտնջենաւոր և անմահ ։ Եւ անիծապարտ գտանիմք ոչ միայն ես, այլև համօրէն որդիքն իմ ընդ իս ։ Ահա այս է՝ որդեակք իմ, գեղեցիկ ժառանգութիւնն հայրենի՝ զոր թողում ձեզ ։ Այլ երանի թէ կարող լինէի վատնել զայն, և չգանձել ինչ ձեզ ։ Զի յայնժամ առանց ժառանգութեան յիրաւի օրհնէիք զիս, որ այժմս կարգեալ կամ 'ի նպատակ ձերոց անիծից ։ Ահ, ընդէ՞ր սովին օրինակաւ տարապարտուց դատապարտեսցի ազգ մարդկան 'ի սակս յանցանաց միոյ մարդոյն՝ եթէ անպարտ են նոքա ։ Սակայն մի՞թէ մա՞րթ իցէ ինձ ծնանել զնոսա անարատս բոլորովին ։ Զի միտք նոցա և կամք թիւրեալ են ընդ իս՝ ոչ միայն յառնել անդ, այլև 'ի կամիլ զնոյն չարիս ։ Եւ զիա՞րդ հնար է նոցա կալ անպարտ առաջի Աստուծոյ ։ Զոր և զկնի ամենայն տարակուսական խնդրոյս բանադատիմ արդարացուցանել ։ Ամենայն հնարք իմ և մտածի բանք առ 'ի խուսափել յերեսաց արդար դատաստանի նորա՝ թէպէտև ընդ դժուարակնձիռն ելս, ձգեն զիս 'ի դատապարտութիւն անձին իմոյ և եթ ։ Ամենայն նախատինք առաջինք և վերջինք իրաւամբք անկանին յիմ վերայ իբրև 'ի վերայ առաջին պատճառի և աղբեր ամենայն ապականութեան ։ Այլ երանի թէ ածէր զայն 'ի վերայ իմ սրտմտութիւն նորա ։ Բայց ո՞վ անմիտ ցանկութեանս ։ Մի՞թէ կարո՞ղ իցես տանել ծանրութեանդ՝ որ է մեծագոյն քան զերկիր, և դժուարակիր քան զաշխարհ համօրէն, թէպէտև 'ի միասին ընդ չարեացապարտ կնոջն ։ Արդ՝ ամենայն ինչ՝ որում ցանկաս դու,

և յորմէ երկնչիս, միօրինակ բառնամ 'ի քէն ըղյոյս ակնկալութեան փախստեան, և ցուցանեն զքեզ եղկելի յոյժ քան զամենայն օրինակս յանցեալսն և յապագայս: Միայն նմանատիպ ես դու Սատանայի 'ի յանցանս նորա, և 'ի դատապարտութեան: Ո՞վ խիղճ իմում մտաց՝ յո՞ր անդունդըս երկիւղի և արհաւրաց արկեր զիս, յորմէ՝ ընկղմեալ խորոց 'ի խորս, չգտանեմ ելս երբէք:

Օ այսօրինակ ողբայ Ադամ առանձինն բարձրագոյն ձայնիւ զգիշերն ողջոյն. որ ոչ ևս էր քաջառողջ, զովագին և խաղաղաւէտ՝ որպէս մինչև էր անկեալ մարդոյն, այլ միգապատ, խոնաւ և աղջամղջին. որ և ահարկու տեսլեամբ յանդիման առնէր մեղապարտ խղճի մտաց նորա զամենայն ինչ կրկին զարհուրանօք: Ընկեալ կայր տարածեալ 'ի վերայ ցրտագին երկրի. և բազում անգամ անէծ զարարչութիւն իւր, և մեղադիր ևս եղև մահու 'ի սակս յամեցուցանելոյ նորա զկատարումն դատակնքոյն՝ որ քարոզեալն էր յաւուր յանցանաց նորա: Ընդէ՞ր ո՛չ վաղ հասանէ մահն՝ ասէր նա ցանձն իւր, երիցս անձկալի հարուածովն իւրով, առ 'ի տալ վախճան իմում կենաց: Միթէ մա՞րթ իցէ ճշմարտութեանն վրիպել 'ի բանս իւր. և մի՞թէ ո՛չ փութասցի արդարութիւնն Աստուծոյ 'ի ցուցանել զիրաւունս իւր: Սակայն և այնպէս ո՛չ գայ մահն՝ զոր կոչեմ առ իս. և արդարութիւնն ոչ երագէ զյամրաքայլ ընթացս իւր 'ի ձայն պաղատանաց և աղաղակի իմոյ: Ո՞վ անտա՛ռք, աղբե՛րք, լերի՛նք, հովի՛տք, և հովանաւոր տեղի՛ք՝ յա՛յլ արձագանգս ուսուցեալ էր իմ զձեզ յառաջագոյն տալ պատասխանի իմում ձայնի, և

յեղանակել զկարի տարօրինակ երգս ։ Տեսեալ ցաւագին Եւայի յայնօրինակ վիշտս աղետից զԱդամ՝ մատեաւ առ նա ՚ի տեղւոջէն, ուր կայր առանձինն, և սկսաւ քաղցր բանիւք ամոքել ըզդառնութիւնն ցաւոց նորա ։ Բայց նորա հայեցեալ ՚ի նա խոժոռ դիմօք՝ մերժեաց ՚ի բաց սովին բանիւք ։

Ի բաց գնա յերեսաց իմոց օձ դու ։ Եւ այդ անուն քաջ ՚ի դէպ գայ քեզ դաշնակցիդ ընդ օձի ․ զի և դու ստախօս ես և ատելի ըստ օրինակի նորա ։ Եւ ոչ այլ ինչ պակաս է ՚ի քեզ, բայց միայն կերպարանդ օձանման՝ ՚ի ցուցանել զդաւաճանութիւն քո գաղտնի, առ ՚ի զգուշութիւն յայսմհետէ ամենայն արարածոց յերեսաց քոց ։ Ո՜հ մի՛ եւս պատրեսցէ զնոսա տեսիլ քո կարծեցեալ երկնանմանն՝ որ հակամիտեալն է ՚ի ստութիւն տարտարոսական ։ Այլ ես միայն տակաւին ընդ քեզ յերջանկութեան անդ, եթէ ամբարտաւանութիւն քո, և շրջմոլիկ ցանկութիւն՝ մինչդեռ ոչ էիր աներկեւան, չէին ՚ի բաց մերժեալ զյառաջագոյն ազդեցութիւնն իմ, և արհամարհեալ զվստահութիւնն ընդ բանս իմ՝ ՚ի ցանկալ քո երեւիլ, և այն առաջի դիւին, և ՚ի դնել ՚ի մտի յաղթող նմին հանդիսանալ ։ Սակայն ելեալ քո ընդ առաջ օձին՝ ծաղածանակ գտար, և պատրեցար ․ դու ՚ի նմանէ, և ես ՚ի քէն՝ կարի իմն վըստահացեալ ՚ի քեզ ՚ի քումդ բացակայութեան ։ Ո՜հ համարեցայ զքեզ իմաստուն, անդրդուելի և քաջակիրթ ընդդէմ յարձակմանց ․ և ոչ առի ՚ի միտ, թէ ամենայն ինչ երեւեալ ՚ի քեզ՝ էր յաւէտ տեսիլ սնոտի, քան առաքինութիւն ճշմա-

բիտ ։ Ո՛չ այլ ինչ էր բովանդակն , բայց միայն կող Թիւրեալ 'ի բնէ . և որպէս արդ ցուցաւ , յաւէտ խոնկարհեալ 'ի ձախակողմն՝ ուստի առաւմն ։ Երանի թէ ընկեցեալ էր զնա Հաստչին 'ի բաց 'ի Թուոյ անտի անդամոցս իբրև աւելորդ ինչ և անպիտան ։ Ո՞վ, ընդէ՞ր ամենիմաստ Արարիչն՝ որ ելից զբարձրագոյն երկինս արու հրեշտակօք , կամեցաւ զկնի ստեղծանել յերկրի զայլանդակ հրէշդ զայդ՝ զգեղեցիկ պակասութիւնն բնութեան . և ոչ ելից զերկիր միայն արամբք , որպէս զերկինս հրեշտակօք ։ Եւ կամ ընդէ՞ր ոչ եգիտ զայլ ճանապարհ 'ի բազմացուցանել զազգ մարդկան ։ Յայնժամ չէր հանդիպեալ չարեացս , և ոչ առաւելագոյնն մնայր առյապայս՝ անթիւ ասեմ խռովութիւն 'ի վերայ երկրի 'ի ձեռն Թակարդից կնոջ ։ Քանզի այրն ոչ երբէք գտցէ զկին քաջայարմար և առաքինի , այլ զմեղանչականն և ըղձխասապարտն և եթ ։ Կամ դժուարաւ 'ի ձեռս բերցէ զանձկալին իւր 'ի սակս խոտորնակութեան բարուց նորա ։ Եւ կամ՝ թէ և գտցէ զկին միաբան և սիրելի , սակայն տակաւին ծնողք նորա խափան լիցին նմին ։ Իսկ զկնի կապելոյ նորա զանձն ընդ ժանտաբարոյ կնոջ՝ որ նպատակ է ատելութեան նորա կամ նախատանաց , յայնժամ անագան ուրեմն ծանիցէ նա զչարաբաստիկ ընտրութիւն իւր ։ Եւ այնպէս կինն գտցի պատճառ անբաւ աղետից կենաց մարդկան , և անբերելի խռովութեան ընտանեացն խաղաղութեան [58] ։

Զայս ասացեալ Ադամայ՝ ոչ ևս յաւել ինչ , այլ դարձոյց զերեսս իւր 'ի նմանէ ։ Սակայն Եւայ ոչ մեկնեցաւ 'ի բաց , այլ զխախուռիւ և յոր-

զաւհրս արտասուօք անկաւ առ ոտս նորա. և կա-
լեալ զնոցանէ՝ ժտեաց զԱդամ հաշտիլ ընդ նմա.
որ և յառաջեաց 'ի ցաւալին բանս իւր՝ օրինակ
զայս ։

Ադամ մի թողուր զիս զայսօրինակ ։ Ակայ են երկինք ընդ անկեղծութիւն սիրոյն , և ընդ մեծաբանսն՝ զոր ունիմ առ քեզ 'ի սրտի իմում ։ Յանձցեայ յանդգնաս ողորմ պատրանօք . և այժմ խընդրեմ զթողութիւն 'ի համբոյր ոտիցդ ։ Մի զըրկեր զիս յերեսաց քոց՝ որով կեամս . և մի յօգնականութենէ քում խորհրդոյ 'ի վերջին աղետիս՝ որ ես զօրութիւն իմ և հաստատութիւն միայն ։ 'Ի զրկիլ իմում 'ի քէն՝ ո՞ւր ունիմ ես գնալ , կամ ուրանօ՞ր կեալ , Մինչդեռ տակաւին կենդանի եմք՝ թէպէտև ժամ մի ևեթ , հաշտեսցուք ընդ միմեանս ։ Այլ որպէս միաբանեցաք 'ի յանցանս , նոյնպէս միաբանեսցուք յանհաշտ ատելութիւն ընդդէմ անագորոյն օձին մերում թշնամւոյ՝ որպէս յայտնաբարբառ ծանոյց դատակնիքն Աստուծոյ ։ Մի 'ի սակս չարեացն պատահելոց ցուցաներ զատելութիւն քո 'ի վերայ իմ՝ որ այժմէն իսկ կորուսեալ կամ , և թշուառագոյն ևս գտանիմ քան զքեզ ։ Մեղաք երկոքեանս . դու ընդդէմ Աստուծոյ միայն , ես ընդդէմ քեզ և նմա ։ Վասն որոյ կամիմ գնալ 'ի տեղի դատակնքոյն՝ զոր ընկալաք, և անդ թախանձել զերկինս աղաղակաւ՝ զի պատիժն ողջոյն հեռասցեալ 'ի գլխոյ քումմէ՝ անկցի միայն յիմ վերայ՝ որ եմ պատճառ համօրէն աղետից քոց , յիմ վերայ միայն , զի ես եմ նպատակ արդարացի ցասման նորա ։

Աւարտեաց նա զբանս իւր հեծեծանօք . այլ առա-

կալին եկաց 'ի ծունկս անդ խոնարհութեան. մինչև զկնի տեսեալ Ադամայ զարտասուալից խոստովանութիւն նորա՝ գթացաւ 'ի վերայ նորա, և զիջաւ 'ի հաշտութիւն։ Քանզի անդէն վաղվաղակի մեղմացաւ սիրտ նորա 'ի վերայ նորուն՝ որ սակաւ մի յառաջ էր կեանք նորա և միակ ընկերութիւն, և յայնժամ անկեալ կայր ցաւագին առ ոտս նորա։ Եւ մեղապարտ յանցաւորն այնչափ գեղեցիկ՝ խնդրէր զհաշտութիւն նորա, զխորհուրդ և զօգնականութիւն։ Նմին իրի զոգցես 'ի բաց եղեալ զզէնս թշնամութեան՝ դադարեցոյց զսրտմտութիւն իւր. և փութանակի կանգնեաց զԵւայ խաղաղաւէտ բանիւք՝ օրինակ զայս։ Որպէս յառաջագոյն, նոյնպէս և այժմ վարկպարազի ցանկաս դու այնմ՝ զոր ոչն գիտես. և խնդրես անկանիլ համօրէն պատժոց 'ի վերայ քո։ Ահ, տար նախ քոյումդ. զի անհնար է քեզ հանդուրժել բովանդակ սրտմտութեանն Աստուծոյ՝ զորոյ մասամբ ևեթ առնուս զփորձ յանձին. և դժուարաւ իսկ կարող ես տանել իմում բարկութեան։ Այլ եթէ մարթ է պաղատանացն նհանջել յետս զդատակնիք նորա, ես փութացայց անդր յառաջքան զքեզ. և խնդրեցից մեծապաղատ՝ զի պատուհասն անկցի բոլորովին 'ի վերայ գլխոյ իմոյ, և ներումն շնորհեսցի քումդ տկարութեան, և դիւրագայթ սեռի՝ որ թողեալն էր իմում խնամոց, և ես մատուցի զնա 'ի փորձ վտանգաց։ Վասն որոյ մի ևս յանդիմանեսցուք զմիմեանս հակառակութեամբ, զի արդէն իսկ յանդիմանեալ կամք ըստ բաւականին։ Այլ յաւէտ փութասցուք 'ի պարտիս սիրոյ. զի կարող լիցուք բառնալ զբեռն միմեանց 'ի

վիճակիս թշուառութեան ։ Քանզի որպէս ինձ թուի, մահն քարոզեալ 'ի նմին աւուր՝ հանդերձեալ է լինել աղէտք յամրաքայլ, այլ ոչ յանկարծահաս. մահ երկայնօրեայ՝ յաւաելութիւն վշտաց մերոց, և չարաքաստիկ ծննդոցս ։

Իսկ Եւայ քաջալերեալ 'ի բանից նորա՝ արար նմա պատասխանի՝ օրինակ զայս ։ Գիտեմ Ադամ 'ի ցաւագին փորձոյ անտի, զի բանք իմ ոչ ևս ունին զտանել շնորհս առաջի քո. քանզի կարի իմն վրիպեցայ, և թշուառացեալ գտայ ըստ արդարադատ վճռոյն Աստուծոյ ։ Սակայն վերստին արժանացեալ ընդունելութեան 'ի քէն, և քաջալերեալ 'ի յոյս անդրէն գտանելոյ զսէր քո՝ զմիակ մխիթարութիւն սրտի իմոյ 'ի կենդանութեան անդ և 'ի մահու, ոչ կամիմ թաքուցանել 'ի քէն զխորհուրդ՝ որք յածին 'ի բազմատագնապ միտս իմ, 'ի թեթևութիւն վերջին աղետից մերոց, կամ վախճանի կենաց ։ Եւ թէպէտ դառն են և տխրագին, այլ հեշտընկալ և տանելի յառաջիկայ թշուառութեանս ։ Արդ՝ եթէ կարի իմն տագնապեն զմեզ գութք որդւոց մերոց՝ որք հանդերձեալ են ծնանել յաղէտս, և զկնի մատնիլ 'ի կուր մահու. և կամ՝ եթէ կարի իմն ցաւագին է պատճառ լինել աղետից այլոց, և այն մերոց ծննդոց՝ բերեալ զնոսա յայս աշխարհ անիծից առ'ի լինել զկնի աղցաւոր կենացս կերակուր այնպիսումն այլանդակ գազանի, խափանումն ծննդեան անիծապարտ որդւոյդ, և թողուլն զնոսա 'ի վիճակի անդ անծնելութեան, եղեալ կան 'ի քում իշխանութեան ։ Կա՛ց՝ որպէս եսդ, անզաւակ. և յայնժամ մահն 'ի դերև ելցէ յորսոյ իւրմէ, և ստիպեսցի

երկոքումբքս ևեթ շատացուցանել զորովայն իւր անյագուրդ։ Նոյա եթէ խիստ թուեսցի քեզ և դժուարին 'ի կցորդութեան անդ կենաց, տեսութեան և սիրոյ ընդ միմեանս՝ հրաժարելն յօրինաց անտի սիրոյն և ըստ պատշաճի լծակցութեան, և այնպէս թալկանալ յանդիմանն սիրելւոյն (որ և ոչ փոքր ինչ թշուառութիւն է և տանջանք՝ քան յորմէ երկնչիմք) աղէ առ'ի զերծուցանել զանձինս մեր և զորդիս միանգամայն յամենայն կառկածանաց՝ կալցուք զայս ճանապարհ 'ի կարճոյ, ելցուք 'ի խնդիր մահու. և 'ի չգտանել մեր զայն՝ ինքնին իսկ լցցուք զպաշտօն նորա յանձինս մեր։ Ով ի ընդէր է մեզ կեալ ընդ երկար յերկիւղի անդ, որոյ վախճանն է նոյն իսկ մահն անձանց մերոց։ 'Ի ձեռս մեր է ընտրութիւնն համառօտագոյն մահու՝ կորստեամբ սատակեալ զկորուստ [59]։

Վախճանեաց նա զբան իւր աստանօր, և կամ վերջին անյուսութիւնն կարճեաց 'ի բերանոյ նորա զմնացեալսն. զի այնչափ կալեալ էր երկիւղ մահու զմիտս նորա, մինչև պլլագունիլ երեսացն։ Բայց Եզամնայ ոչինչ տեղի տուեալ անհանճար խորհրդոց նորա՝ բազում ճգամբ ամբարձ զազնուական միտս իւր 'ի վսեմագոյն խորհուրդս. և ետ պատասխանի Դաւթի՝ օրինակ զայս։

Արհամարհութիւնն կենաց, և հեշտութեան մարմնոյ՝ զոր ցուցանես յանձին քում ով Դաւ, յայտ առնեն 'ի քեզ բարձրագոյն ինչ և առաւել գերազանց՝ քան զոր արհամարհեն միտք քո։ Բայց բարձումն կենաց անձին՝ զոր յայն սակս խնդրես, մերժէ 'ի քէն զկարծեցեալ ազնուականութիւնդ. և ցուցանէ մեզ զարհամարհութիւն անձինդ, այլ

յաւէտ զտագնապ քո և զվիշտ ընդ կորուստ կե-
նաց քոց, և հեշտալի բերկրութեանն: Ապա եթէ
ցանկաս մահու իբրև վերջին վախճանի թշուա-
ռութեանց՝ կարծեցեալ զերծանիլ նովաւ 'ի կար-
գեալ պատուհասէն, մի երկմտիր 'ի միտս քո. զի
Բարձրեալն մեծագոյն ևս իմաստութեամբ զի-
նեալ է զբարկութիւն իւր վրէժխնդիր, մինչև
չկարել մեզ ունել զառաջս նորա: Վասն որոյ յա-
ւէտ երկնչիմ ես, թէ գուցէ հասեալ մահու յան-
կարծակի՝ ոչ զերծուսցէ զմեզ 'ի պատուհասէ ան-
տի, զոր ունիմք կրել ըստ դատակնքոյն: Այն զի՝
այնպիսի գործք յանդգնութեան առաւել ևս շար-
ժելոց են զԲարձրեալն անմահացուցանել 'ի մեզ
զմահն: Յայն սակս ելցուք յաւէտ 'ի խնդիր ան-
քոյթ ճանապարհին՝ որ ըստ իմում կարծեաց ե-
դեալ կայ առաջի մեր, եթէ 'ի յուշ բերցուք ըզ-
մասն դատակնքոյն Աստուծոյ՝ որ ասէ. » Զա-
ւակ քո խորտակեսցէ զգլուխ օձին «: Ապաքէն՝
որպէս ինձ թուի դուզնաքեայ ինչ լինէին այդ տու-
գանք յօձն, եթէ չէր բացածանուցեալ նովաւ ա-
նագորոյն թշնամին մեր Սատանայ՝ որ 'ի ձեռն օ-
ձին դարանակալ եղև մեզ: Խորտակումն գլխոյ
նորա է արդարև քէն վրէժուց մերոց 'ի նմանէ.
որում ոչ կարեմք հասանել մահուամբ՝ զոր ա-
ծեմք 'ի վերայ մեր, և ոչ կենօքն անզաւակութեան՝
զոր եդիր ինձ առաջի: Իսկ այնպէս զերծեալ թըշ-
նամւոյն 'ի պատուհասէն իւրմէ՝ մեք կրկնապատ-
կեմք և զնորայն 'ի գլուխս մեր: Արդ՝ մի ևս ըզ-
մտաւ ածցուք զիւրովի կորուստ անձանց, և մի զան-
զաւակութիւն հակառակ բնութեան. զի սոքա
բառնան 'ի մէնջ զամենայն յոյս կենաց, և ձգեն

զմեզ յոխակալութիւն, յամբարտաւանութիւն, յանժուժկալութիւն և 'ի նախատինս. որպէս և յընդդիմութիւն կամացն Աստուծոյ, և արդար լծոյ նորա՝ զոր եդ 'ի վերայ պարանոցաց մերոց: Զմտաւ ած, թէ քանի քաղցրութեամբ և մարդասիրութեամբ՝ առանց ինչ բարկութեան և կըշտամբանաց, լուաւ նա զպատասխանիս մեր, և դատեաց զմեզ: Մինչդեռ ակն ունէաք յանկարծակի սատակման՝ զոր եդեալ էր մեր 'ի մտի լսել մահուն սահմանելոյ 'ի նմին աւուր, ծանոյց նա քեզ յառաջագոյն զցաւս երկանց քոց, այլ անդէն 'ի վերայ եած զփոխարէն խնդութիւնն ընդ պտուղ որովայնի քո: Առաւել խեթիւ հայեցան յիս անէծք նորա. մնայ ինձ դատանել զհաց իմ աշխատութեամբ յերկրի: Եւ զի՞նչ վնաս այտի: Դատարկութիւնն անտանելի ևս է: Զի աշխատութիւնն համդերձեալ է զօրացուցանել զկեանս իմ: Այլ զի մի ցրտութիւն կամ ջերմութիւն վնաս ինչ բերցեն կենաց մերոց, խնամք նորա ինքնին հոգացան վասն մեր յառաջագոյն. և ձեռք նորա գըթացեալ 'ի վերայ մեր 'ի դատաստանի անդ՝ զգեցուցին զմեզ 'ի ժամու: Անի՞ծն ապա լուիցեն ականջք նորա 'ի պաղատել մերում. և սիրտ նորա խոնարհեալ 'ի գթութիւն՝ ուսուցէ մեզ դեղանակ զգուշութեան յարկածից օդոյ, անձրևաց, սառնամանեաց, կարկտի և ձեան: Զորս այժմէն իսկ սկիզբն առնեն երկինք ցուցանել 'ի լերինս՝ 'ի շնչել անդ խոնաւ և սաստիկ հողմոց, և 'ի ցրուել զգեղեցիկ փունջս հերաց չքնաղագեղ ծառոց: Եւ ծանուցանեն մեզ 'ի խնդիր լինել կարևորագոյն ծածկութի և հրոյ՝ 'ի պատսպարել

և ջերմացուցանել զցրտացեալ անդամս մեր ։ Նաև ուսուցանէին ևս, թէ զիա՞րդ մարթ է մեզ՝ մինչև է լուսաւորին տունջեան տեղի տուեալ ցրտագին գիշերոյ, արծարծել վերստին զցոլացեալ ճառագայթս նորա՝ հաւաքեալ զնոսին 'ի նիւթ դիւրավառ ։ Նաև կամ բաղխեալ ընդ միմեանս զկրկին մարմինս՝ շփել զօղն առ 'ի հանել զհուր ։ Որպէս սակաւ մի յառաջ բաղխեալ ամպոց ընդ միմեանս, և կամ հարեալ 'ի սաստկագոյն հողմոց՝ լուցին զփայլակն խստորնակի. որոյ բոց իջեալ 'ի խոնարհ բորբոքեաց զխեժալից կեղևն եղևնի կամ թեղոշի, և արձակեաց 'ի հեռագոյն վայրս զջերմութիւն ըստ բաւականին՝ որում մարթ էր լնուլ զպակասութիւն արեգական ։ Արդ՝ վարել հրով և նմանեօք 'ի դարման աղխտից՝ զորս յանցանքն ածին 'ի վերայ մեր, ուսուցէ նա մեզ 'ի կալ մերում յաղօթս առ նա, և 'ի խնդրել 'ի նմանէ ըզշնորհս ։ Նաև այնպէս բազում մխիթարութեամբ խնամարկեալ 'ի նմանէ՝ ոչ ևս ունիցիմք տեղի կասկածանաց ընդ անցուցանել մեր զկեանս խաղաղութեամբ. մինչև դարձցուք անդրէն 'ի հող՝ 'ի վերջին հանգիստ մեր, և 'ի տուն սեպհական ։ Այլ արդ զի՞նչ ևս մնայ մեզ. բայց դառնալ 'ի տեղին՝ ուրանօր դատեաց նա զմեզ յառաջագոյն ։ Նաև անդ անկեալ առաջի նորա՝ խոստովան լինել ըզյանցանս մեր, և խնդրել զթողութիւն. ոռոգեալ զերկիր արտասուօք, և բաղխեալ զօղն հառաչանօք բեկեալ սրտի 'ի նշանակ անկեղծ ցաւոց, և յետին խոնարհութեան ։ Որով մեղմասցի նա անշուշտ, և դարձցի 'ի բարկութենէ իւրմէ ։ Զի 'ի պայծառափայլ դէմս նորա՝ այն ինչ երևէին ա-

հագինս սրտմտեալ, զի՞նչ այլ ինչ տեսաք ցոլացեալ՝ բայց միայն զերախտիս, զշնորհս և զողորմութիւն ։

Զայսօրինակ խօսեցաւ Հայրն մեր ապաշխարող. և Եւայ ոչինչ ընդհատ 'ի նմանէ եցոյց յանձին զխայթ մտացն խղճի ։ Նման որոյ և դարձան փութանակի 'ի տեղին դատակնքոյ իւրեանց. և անդ անկեալ առաջի Աստուծոյ յերկիր 'ի խոնարհ՝ խոստովան եղեն զյանցանս իւրեանց. և խնդրեալ զթողութիւն՝ ոռոգեցին զերկիր արտասուօք, և հեծութեամբք իւրեանց բաղխեցին զօդն 'ի նշանակ անկեղծ ցաւոց և խոնարհութեան բեկեալ սրտի [60] ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Որդին Աստուծոյ մատուցանէ Հօր իւրում զաղօթս Նահապետաց մերոց ապաշխարողաց, և լինի բարեխօս վասն նոցա։ Ընդունի Հայր զխնդրուածս նորա. բայց ծանուցանէ, թէ ոչ ևս արժան է Նախահարց մնալ 'ի դրախտի անդ։ Առաքէ նա զՄիքայէլ հանդերձ քրովբէական գնդաւն հանել զնոսա անտի. բայց յայտնել Ադամայ յառաջագոյն ըզհանդերձեալսն։ Իջանէ Միքայէլ 'ի դրախտ անդր։ Ադամ ցուցանէ Եւայի զնշանսն բարեգուշակ. և տեսեալ 'ի հեռաստանէ զգալուստ Միքայէլի՝ գնայ ընդ առաջ նորա։ Ծանուցանէ նա Նախահարց զհրամանն մեկնելոյ նոցա 'ի դրախտէ անտի։ Ողբս առնու Եւայ։ Ադամ զկնի պաշտպան կալոյ անձին՝ հնազանդի։ Տանի զնա հրեշտակն 'ի լեառն, և անդ ցուցանէ նմա 'ի տեսլեան զանցս՝ որք հանդերձեալ էին անցանել մինչև ցՋրհեղեղն։

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ

## ԳԻՐՔ. ԺԱ։

Այս օրինակ կային նոքա յաղօթս՝ իջեալ՚ի ծունկս ապաշխարութեան. զի խոնարհեալ նախաժամանն շնորհացն ՚ի բարձանց՝ յաթոռոյ անտի գթութեանն Աստուծոյ, ՚ի բաց արար ՚ի նոցանէ զխիստն քարեղէն, և փոխանակ նորա աճեցոյց անդրէն զմարմնեղէնն վերստին ծննդեամբ։ Որ և բղխէր յայնժամ զանմռունչ հեծութիւնս՝ զորս հոգին աղօթից ազդէր ՚ի նոսա, և տայր նոցին թևս յարագագոյն թռիչս յերկինս քան ըզբարձրագոչ աղաղակս։ Սակայն եղանակ աղօթից նոցա ոչ էր իբրև զնուաստախոհ աղաչաւորաց. և խնդրուածք նոցա ոչ սակաւ կարևոր էին քան զեռանդագին մաղթանս ամոլիցն նախնեաց ՚ի հին առասպելս՝ բայց յետնագունից քան զսոսա, Դևկաղիոնի [1] ասեմ և ողջախոհին Պիւռրայ [2] առաջի տապանակին Թեմիսայ [3] ՚ի նորոգութիւն մարդկան ազգի ընկղմելոցն ՚ի ջուր [4]։ Սլացան աղօթք նոցա շեշտակի յերկինս, և ոչ խոտորեցան երբէք զճանապարհայն յերեսաց նախանձաբեկ հողմոցն՝

որք վայրապար և 'ի տարապարտուց շնչէին հակառակ նոցին ։ Նոցին հոգեպէս ընդ դրունս երկնից . և անդէն շուրջ պատեալ բուրվառք անուշահոտ խնկոց ոսկի սեղանոյն՝ 'ի ձեռն գերագոյն Միջնորդին յանդիման եղեն առաջի աթոռոյ Հօրն երկնաւորի ։ Զորս և խնդութեամբ ընծայեալ նմա Որդւոյն՝ սկսաւ լինել բարեխօս՝ օրինակ զայս [5] ։

Հայեաց Հայր ընդ երախայրիս պտղոցն՝ որք բուսան 'ի վերայ երկրի 'ի ձեռն շնորհացն, զոր տնկեցեր 'ի մարդն ։ Հայեաց ընդ հեծութիւնս և ընդ պաղատանս նորա՝ զորս ես քահանայ քո կնդրուկախառն մատուցանեմ քեզ յայս բուրուառ ոսկի ։ Հայեաց ընդ պտուղս՝ որք գոլով աճեցեալ 'ի սերմանէ անտի ապաշխարութեան արկելոյ 'ի սիրտ նորա, առաւել քաղցրահամ են քան զորս միանգամ մխրթ էր բուսուցանել ծառոց դրախտին նորուն իսկ մշակութեամբ ձեռաց՝ մինչև էր անկեալ նորա յերանութենէ անտի ։ Խոնարհեցո զունկն քո 'ի պաղատանս նորա, և լուր անբարբառ հեծութեանն ։ Այլ քանզի ոչ գիտէ նա զարժանին եղանակ մաղթանաց, ես ինքնին եղէց թարգման վասն նորա՝ որ եմ փաստաբան նորա և քաւութիւն ։ Զամենայն գործք նորա՝ բարի և կամ ոչ, պատուաստեսցին յիմ վերայ . և արդասիքն իմ ընտիր ընծայեսցեն զնոսա առաջի քո, և մահն իմ հատուսցէ փոխանակ նոցա ։ Ընկալ զիս, և ինև ընկալ 'ի նոցանէ զհոտ հաշտութեան ընդ մարդկան ազգի ։ Կեցցէ նա գէթ զթուով սահմանեալ աւուրս իւր՝ թէպէտև 'ի տրտմութեան, սակայն հաշտեալ առաջի քո . մինչև դա-

տակնիք նորա մահուն (զոր մեղմացուցանել եւեթ, և ոչ նհանջել յետոյ խնդրեմ) ձգեսցէ զնա 'ի լաւագոյն կեանս: Ուրանօր ամենայն փրկեալքն իմ կացցեն ընդ իս 'ի խնդութեան և յերանութեան. և եղիցին մի ընդ իս, որպէս և ես մի եմ ընդ քեզ:

Որում արար պատասխանի Հայրն անաղօտ պարզութեամբ՝ օրինակ զայս: Կատարեսցին ամենայն խնդրուածք քո 'ի սակս մարդոյն՝ ով Որդի իմ հաճոյական, զի հայցուածք քո իմ իսկ են վճիռք: Բայց օրէնքն՝ զոր ետու բնութեանն, ոչ ևս ներեն նմա մնալ 'ի դրախտի անդ: Զի մաքուր և անմահական տարերք նորա 'ի բաց մերժեն անտի զաղտեղեալդ. և իբրև զխառնուրդ ինչ թանձրագոյն վարեն զնա 'ի թանձրագոյն օդ, և 'ի կերակուր մահկանացու. զի նոքօք կարգեսցի նա ըստ արժանեաց յապականութիւնն՝ որ մուծաւ 'ի ձեռն մեղաց. որ և զառաջինն վարակեաց զամենայն ինչ, և յանապականացուէն արար ապականացու: Նա 'ի սկզբան անդ արարչութեանն զարդարեցի զնա կրկին գեղեցիկ պարգևօք երանութեան և անմահութեան: Իսկ նա զառաջինն կորոյս անմտութեամբ իւրով, և երկրորդն պահեցաւ նմին 'ի մշտնջենաւորել զաղէտս նորին: Մինչև զկնի հոգացայ զմահ՝ որ է վերջին և միակ դարման նորա: Զի սա ինքն՝ զկնի փորձելոյ նորա 'ի վիշտս, և մաքրելոյ հաւատովք և հաւատարիմ գործովք, աւանդեսցէ զնա երկրորդ կենաց՝ զարթուցեալ 'ի յարութեան արդարոց, և նորոգութեան երկնից և երկրի: Նալ արդ կոչեսցուք 'ի սահմանաց երկնից զհամօրէն երանեալս 'ի խոր-

հուրդ. զի ոչ կամիմ թագուցանել 'ի նոցանէ զդատաստանն իմ՝ զոր կամիմ ցուցանել մարդկան ազգի ։ Զոր և տեսեալ նոցա յառաջագոյն ընդ յանցուցեալ հրեշտակս՝ առաւել ևս հաստատեցան յանշարժութեան անդ խրբեանց ։

Անքեաց նա զբան իւր ։ Իսկ Որդին ետ զմերնական նշանն լուսապայծառ պաշտօնէին՝ որ կարգեալ էր 'ի պահպանութիւն ։ Եւ նա եհար ըղփողն՝ որ զկնի լսելի եղև 'ի Քորեբ յիջանել անդ Աստուծոյ. և միւսանգամ հնչեսցի 'ի հասարակաց դատաստանին ։ Ելից հնչիւնն հրեշտակային զգաւառսն համօրէն ։ Եւ 'ի ձայն վերին հրամանին փութացան որդիքն լուսոյ յիւրաքանչիւր հովանեաց անթառամ ստուերին, յաղբերականց և 'ի վտակաց առընթեր ջրոյն կենաց՝ ուրանօր միաբանեալ կային յընկերշակութիւն ուրախութեան, և եկեալ կալան զաթոռս խրբեանց ։ Եւ յայնժամ ապա ծանոյց Ամենակալն 'ի գերաստիճանեալ գահոյիցն զիշխանական կամս իւր՝ օրէնակ զայս ։

Ով որդիք երկնից՝ զկնի ճաշակելոյ մարդոյն զպտուղն արգելեալ, գտաւ նա իբրև զմի 'ի մէնջ՝ ճանաչել զբարի և զչար ։ Այլ պարծեսցի նա ընդ գիտութիւն բարւոյն՝ զոր կորոյս, և չարին՝ զոր եգիտ ։ Զի արդարև լինէր նա յաւէտ երջանիկ, եթէ շատացեալ էր ընդ գիտութիւն բարւոյն և եթ, և չէր առեալ զփորձ չարին ։ Ընդ որ այժմ ապաշաւէ նա, և արտասուօք մաղթէ զգթութիւնս իմ ։ Սակայն ես յառաջնմէ իսկ շարժեալ կայի 'ի գութ՝ գիտելով չափ զանհաստատութիւն և զընդունայնութիւն սրտի նորա, 'ի թողուլ իմում

զնա 'ի ձեռանէ ։ Այլ արդ դուցէ ձգեսցէ նա և այժմ զյանդուգն ձեռն իւր 'ի ծառն կենաց, և ճաշակեալ անտի՝ կեցցէ 'ի յաւիտեան, և կամ գէթ այնպէս համարեսցէ 'ի միտս, տամ աւադիկ զդատակնիքն հեռանալոյ անտի ։ Վասնզի նա արտաքս 'ի դրախտէն գործել զերկիր՝ ուստի առաւ. որ և է տեղի քաջավայելուչ նմին ։

Արդ՝ Միքայէլ, այս է իմ պատուէր առ քեզ. Ընտրեա քեզ 'ի միջոյ Քրովբէիցն զընտրեղէն զօրս, դուցէ վերստին յարուսցէ Թշնամին զխռովութիւնս՝ կամ 'ի շնորհս մարդոյն, և կամ առ 'ի տիրել պարապորդ ժառանգութեան նորա ։ Փութա և հան արտաքս 'ի դրախտէն Աստուծոյ զամոլդ յանցաւոր. հան անխնայ զանսուրբսդ 'ի վայրացն սրբութեան ։ Այլ ծանո նոցա, և ծննդոց նոցա առհասարակ՝ զհրամանն իմ որ վասն մշտնջենաւոր տարագրութեան նոցա 'ի տեղւոջէ անտի ։ Այլ զի մի անկցի սիրտ նոցա ընդ սաստկութիւն ցաւագին հրամանիդ (զի տեսանեմ զնոսա խոնարհեալս, և արտասուօք ապաշաւեալս զյանցանս իւրեանց) Թագուցջիր յերեսաց նոցա զամենայն ահարկութիւն ։ Եթէ հնազանդին հրամանաց քոց համբերութեամբ, մի արձակեր զնոսա անմխիթարս, այլ յայտնեա Ադամայ զհանդերձեալսըն՝ որպէս և զիարդ լուսաւորեցից զքեզ ։ Խառնեա ընդ բանս քո և զուխտն իմ որ ընդ նորոգեալ զաւակի կնոջն ։ Միով բանիւ՝ այնպէս հան արտաքս զնոսա 'ի դրախտէն, զի գնասցեն տխրագին, այլ ոչ խռովեալ ։ Իսկ յարեւելից կողմանէ պարտիզին՝ ուրանօր դիւրին են ելք յԵդեմայ, կացո զՔրովբէական պահպանութիւնն, և զբո-

ցածուցեալ հուրն յանհարկութիւն 'ի հեռաստանէ մտից նորա , և 'ի զգուշութիւն Ճանապարհի ծառոյն կենաց ։ Պուցէ գոցի դրախտ բնակութիւն այսոցն չարաց . և այնպէս կողոպտեալ նոցա զհամօրէն ծառս իմ՝ 'ի ձեռն պտղոց նոցա վերստին պատրեսցեն զմարդն ։

Պատարեկոյց նա զբանս իւր . և հրեշտակապետական զօրութիւնն պատրաստեցաւ յարագ արագ էջս . ընդ նմին և պայծառատեսիլ զունդն Քրովբէից զուարթնոց ։ Որք և ունէին քառեակ դէմս ըստ օրինակի երկկերպարանն Յանոսի [6] ։ Իսկ տեսիլ կերպարանաց նոցա յաւէտ աստեղազարդ էր բազմագոյն աչօք քան զԱրգոս [7] ։ Իսկ էին նոքա յաւէտ արթուն , քան 'ի նինջ խոնարհեալ ընդ քաղցրահնչիւն ձայն Արկադեանն [8] սրնգի՝ հովուական եղեգան Հերմեայ [9] , և կամ դիւթական գաւազանի նորա ։ Յայնժամ պահու զարթեաւ Լևկոթիա [10] ողջունել վերստին զաշխարհ 'ի լոյս մաքրափայլ , և զմուսել զերկիր 'ի ցօղ զովագին ։ Այն ինչ աւարտեալ Ադամայ և նախամօրն Եւայի զաղօթս իւրեանց՝ ընկալան 'ի բարձանց զառաւելութիւն զօրութեան , և զքաջալերութիւն վերստին կանգնելոյ յանյուսութենէ իւրեանց . և գտին զխնդութիւն սրտի , թէպէտ տակաւին կապեալ ընդ երկիւղի ։ Վասն որոյ և Ադամ զայս օրինակ երկրորդեաց առ Եւայ զբանս ողջունի իւրոյ ։

Ապաքէն ով Եւայ դիւրին իմն է մեզ հաւատալ , թէ ամենայն բարիք՝ յոր վայելեմքս , իջանեն 'ի վերուստ . բայց թէ մարթ իցէ աղօթադունի իմիք վերանալ 'ի մէնջ յերկինս՝ մինչև կա-

րող լինել շարժել զխորան Աստուծոյ, որ օրհ-
նեալն է 'ի յաւիտեան, և խոնարհեցուցանել ըղ-
կամս նորա, այդ դժուարին թուի ինձ 'ի հաւա-
տալ։ Սակայն և այնպէս մարթ է աղօթից և
դոյզն հառաչանաց սրտի մարդկան կատարել զայն՝
սլացեալ 'ի վեր 'ի նոյն իսկ յաթոռն Աստուծոյ։
Քանզի յորմէհետէ անկեալ յերկիր, և հեղեալ
զսիրտ իմ առաջի Աստուծոյ՝ 'ի խնդիր եղէ զիջու-
ցանել զցասումն նորա, թուի ինձ տեսանել զնա
հաշտեալ ընդ իս, և գթութեամբ խոնարհեցու-
ցեալ առ իս զունկն իւր։ Յորմէ և առաւելա
յանձին իմում հաւանութիւն մտացս՝ թէ լուա
ինձ մարդասիրապէս։ Դարձաւ անդրէն 'ի սիրտ
իմ խաղաղութիւնն կորուսեալ. և 'ի միտս իմ
խոստումն նորա՝ թէ զաւակ քո խորտակեսցէ ըղ-
գլուխ թշնամւոյն։ Զոր յայնժամ առ անհնա-
րին երկիւղի ոչ կարացի առնուլ 'ի միտ. այլ այժմ
հաւաստեաւ տեսանեմ զանցանել նովաւ 'ի մէնջ
դառնութեան մահուն, և զկենդանութիւն մեր։
Եւ արդ՝ ուրախ լեր Եւայ՝ որ իրաւամբք կոչիս
մայր մարդկան ազգի, և մայր ամենայն կենդա-
նեաց. զի քև կենդանի է մարդն, և քև կեան
ամենայն արարածք՝ որք կարգեալ են 'ի պէտս
մարդոյն։

Որում Եւայ ետ զայս պատասխանի ցաւագին
իմն խոնարհութեամբ։ Ես ոչ համարիմ զանձն
իմ մեղապարտ՝ արժանի այնպիսումն անուանա-
կոչութեան, զի կարգեալ յօգնականութիւն քո՝
դաւադիր եղէ քեզ. վասն որոյ և յաւէտ 'ի դէպ
են ինձ նախատինք, կշտամբանք և անուն չարու-
թեան։ Սակայն և այնպէս դատաւորն իմ երկ-

նաւոր կարի բազմառատ գտաւ ընդ իս 'ի Թօղութեան անդ. մինչև անձին իմոյ՝ որ զառաջինն ձգեաց զմահ 'ի վերայ ամենայն արարածոց, գտանել 'ի նմանէ զշնորհս լինելոյ աղբիւր կենաց ամենեցուն: Զկնի նորա դու ինքն ես բարերար անձին իմոյ, զի հաճեցար կոչել յայդ անուն պանծալի զարժանիս տարօրինակ կոչման: Բայց արդ հրաւիրէ զմեզ դաշտավայրն 'ի քրտնավաստակ աշխատութիւն՝ որ եդաւ 'ի վերայ մեր, թէպէտև զկնի անքուն գիշերոյս: Հայեաց, զի ոչինչ խռնայեալ առաւօտու յանհանգստութիւն մեր՝ խնդագինս սկսանի զծայրակարմիր իւրև զվարդ զգնացս իւր: Արդ՝ ելցուք արտաքս. բայց ոչ ևս մեկնեցայց 'ի քէն յորում վայրի և աշխատեսցուք յառօրեայ վաստակս մեր՝ որ քրտամբք երեսաց կարգեալ է մեզ այժմ մինչև ցխոնարհել աւուրն: Սակայն որպիսում վաստակոց մարթ է լինել դժուարաքիրտն 'ի դրախտիս փափկութեան՝ ցորչափ ունիմք աստանօր զբնակութիւն մեր: Վասն որոյ կացցուք աստ գոհութեամբ, թէպէտև 'ի վիճակի կործանման:

Զայսօրինակ խօսեցաւ, և փափաքեաց ամենախոնարհն Եւայ: Բայց տեսչութիւնն վերին ոչ կնքեաց զկամս նորա: Քանզի բնութիւնն անդէն սկսաւ տալ զառաջին նշանս ապականութեան՝ տպաւորեալ զնոսին յօդն վերին, 'ի թռչունս և 'ի կենդանիս: Զկնի կարճատև կարմրութեան առաւօտու՝ նսեմացաւ օդն: Թռչունն Արամազդայ ″ ոչինչ հեռագոյնս 'ի տեսութենէ աչաց նոցա դարձուցեալ զօդաճեմ գնացս իւր՝ հալածական վարեաց զառաջեաւ իւրով զերկին գեղեցկա-

փետուր թռչունս : Պատգամն թագաւոր անտա-
ռաց՝ [12] որ յայնժամ զառաջինն գտաւ որսորդ, պնդեցաւ 'ի լեռնէ անտի զհետ գեղեցիկ ամոլեցն այծեմանն և եղջերուի՝ և՛ս ցանկալի ընտանեացն անտառի : Որք և ուղղեցին զփախուստ իւրեանց յարևելեան դաշտն դրախտին : Ետես զնոսա Ադամ, և աչօքն զկնի ընթացեալ որսոյն՝ խօսեցաւ անտակցաբար ընդ Եւայի՝ օրինակ զայս :

Ո՞վ Եւայ՝ մեծ և՛ս փոփոխութիւն. Մնայ մեզ. զոր և ցուցանեն երկինք 'ի բնութեան անդ 'ի ձեռն անբարբառ նշանացս՝ որք են յառաջընթաց կարապետք կամաց Նորա : Կամ՝ թերևս հաւաստի ծանուցանէ մեզ զազատութիւն մեր 'ի պատուհասէ անտի, զի աւուրս ինչ զերծ գտաք 'ի մահուանէ : Եւ ո՞ գիտէ, թէ քանի՛ և՛ս ընդերկար, և զի՞նչ լինելոց են կեանք մեր մինչև ցայնժամ : Եւ մեք զի՞նչ գիտեմք առաւել քան զայս, զի հող եմք, և 'ի հող հանդերձեալ եմք դառնալ, և այնպէս ոչ և՛ս լինել : Ապա թէ ոչ՝ առ ի՞մ ցուցան կըր-
կին տեսարանքն փախստեան և հալածմանց նովին օրինակաւ և 'ի նոյն ժամու յօդն վերին և 'ի վերայ երկրի յանդիման աչաց մերոց : Ընդէ՞ր երևեցաւ մթութիւնդ 'ի կողման անդ արևելից յառաջ քան զմիջօրեայ ընթացս տունջեան : Եւ ընդէ՞ր լոյսն առաւօտու յաւէտ արևելեան ծագէ 'ի վերայ արևմտեան ամպոյդ՝ որ արկանէ 'ի վերայ կապուտակ հաստատութեան երկնից զլուսափայլութիւն ի՛ւր սպիտակ. և յամր իջանէ 'ի խոնարհ՝ զոգցես բարձեալ զծանրութիւն ինչ երկնային :

Ո՛չ սխալեցաւ նա 'ի տեսութեան անդ իւրում.

զի յայնմ պահու վայրաբերեալ զնդիքն երկնաւո-
րաց յասպախանմանն հաստատութենէ երկնից 'ի
դրախտն՝ եկաց 'ի վերայ լերին։ Որ էր արդարև
տեսիլ պայծառափայլ, եթէ երկմտութիւն և եր-
կիւղ մարմնական չէին ստուերացուցեալ 'ի նմին
աւուր զաչս Ադամայ։ Քանզի ոչ նուազ լուսա-
փայլ էր երևումն քան յորժամ ընդ առաջ ե-
լին հրեշտակք Յակոբայ 'ի Մահանայիմ[13]. ուր
ետես նա զդաշտն լի վրանօք լուսապայծառ պա-
հապանաց իւրոց։ Եւ ոչ նուազ ցուցաւ քան զայն՝
որ 'ի բոցավառ լերին 'ի Դովթայիմ[14] ծածկեալ
երևեցաւ 'ի բանակ հրոյ ընդդէմ արքային Ասոր-
ւոց՝ որ 'ի սակս ունելոյ զայր մի ևեթ, յարոյց
ըստ օրինի աւազակաց զպատերազմն առանց կան-
խազգեցիկ յայտարարութեան։ Եթող անդ Քա-
հանայապետն իշխանական զզօրութիւնս իւր 'ի
չքնաղ կայանս իւրեանց ունել զիշխանութիւն
դրախտին, և ինքն չոգաւ առանձինն 'ի խնդիր
Ադամայ՝ որ կայր 'ի թագստեան։ Եւ նորա տե-
սեալ 'ի հեռաստանէ զգալուստ Դիտապետին մե-
ծի՝ զայսօրինակ խօսեցաւ ընդ Եւայի։

Կա՛ց արդ ո՛վ Եւայ լսել զմեծամեծս 'ի բերա-
նոյ երկնաւոր պատգամաւորին, որ գայ թերևս
որոշել արագ արագ զվճիռ մեր, և կամ դնել
'ի վերայ մեր զնոր օրէնս 'ի պահպանութիւն։ Զի
տեսանեմ զմին յերկնային զօրացն իջանել 'ի լու-
սափայլ ամպոյդ՝ որ պատեալ կայ զլերամբս։ Եւ
ըստ երևութին ոչ է նա 'ի սոսկականաց անտի,
այլ մի յերևելի Իշխանաց կամ Աթոռոց յեր-
կինս. զի արկեալ է նորա զանձամբ զնոյնօրինակ
վայելչութիւն փառաց։ Բայց ոչ երևի այնչափ

ահեղ՝ մինչև երկնչել ինձ 'ի նմանէ, և ոչ այնչափ ընտելական ըստ Սոփայէլի՝ զի մարթացայց կարի իմն համարձակել ընդ նմա. այլ շքեղ է և վեհափառ: Արդ՝ զի մի շարժեցից զբարկութիւն նորա, արժան է ինձ գնալ ընդ առաջ նորա պատուասիրաբար. և դու տեղի տուր աստ:

Աւարտեաց նա զբան իւր. և Հրեշտակապետն անդէն մերձեցաւ առ նա, ոչ 'ի բնիկ կերպարան իւր երկնային, այլ զգեցեալ իբրև զմարդ՝ որ եկեալ է 'ի խնդիր մարդոյ: Արկեալ էր զլուսափայլ զրահիւքն զինուորական զգեստ ծիրանի, որ պայծառ փայլէր առաւել քան զՄեղիբէյեանն[15], և քան զորդանն կարմիր Սառայի՝[16] զոր նախնի Դիւցազունք և արքայք արկանէին զանձամբ 'ի ժամանակի անդ դադարման մարտի, զորոյ և ներկեալ էր Հիրիկ[17] զառէջս նորա: Աստեղազարդ սաղաւարտ նորա արձակ՝ ցուցանէր զառոյգութիւն հասակի նորա, յորում տեղի տայ պատանեկութիւն: Ի միջաց նորա իբրև զնշուլապեղ կենդանակամարէ[18] կախեալ կայր սուսերն յահարկութիւն Սատանայի: Եւ 'ի ձեռին իւրում ունէր զգեղարդն: Խոնարհեալ Ադամայ՝ երկիր եպագ նմա: Եւ նորա 'ի բաց թողեալ զարքայակերպ պերճութիւն իւր՝ զայսօրինակ ծանոյց նմա զպատճառ գալստեան իւրոյ:

Գերագոյն պատգամք երկնից չունին ինչ Ադամ պէտս նախերգանաց: Արդ՝ շատ է քեզ գիտել, զի լսելի եղեն աղօթք քո. և դատակնիք մահուն՝ որում արժանի գտար յանցանել ըզպատուիրանաւն, ոչ եդան անդէն 'ի գործ. այլ շնորհեցան քեզ ընդերկայն աւուրս, զի կարող

լցիս ապաշխարել 'ի նոսա, և ծանկել զչարութիւն միոյ յանցանաց 'ի ձեռն բազմապատիկ գործոց բարութեան։ Եւ յայնժամ հաշտեալ ընդ քեզ Տեառնդ արարչի՝ իրաւամբք փրկեսցէ զքեզ 'ի գիշատիչ ժանեաց մահուն։ Բայց արդ ոչ ես ներէ նա քեզ մնալ 'ի դրախտի աստ. վասն որոյ եկի ես հանել զքեզ և արձակել 'ի պարտիզէս, զի երթեալ գործեսցես զերկիր՝ ուստի առար. որ և է քաջավայելուչ տեղի անձինդ։

Եւ ոչ այլ ինչ յաւել նա. զի հարեալ Ադամայ անհնարին ցաւովք յերեսաց պատգամացն՝ լուծաւ, լքաւ, և անկաւ յերկիր նուաղեալ։ Իսկ Եւայ՝ որ լսէր զանխուլ 'ի նոցանէ զամենայն բանս, կական բարձեալ յանկարծակի՝ յայտնեաց զտեղի թագստեան իւրոյ սովլին ողբերգութեամբ։

Ո՞վ անակնկալ հարուածոյս չարագոյն քան ըզմահ։ Միթէ պա՞րտ իցէ ինձ զայսօրինակ թողուլ զքեզ ո՞վ դրախտ, զայսօրինակ թողուլ զքեզ՝ ըզհայրենիսդ, զվայրդ փափկութեան, և զհովանիդ զարժանին Աստուածոց՝ [19] յորում ակն ունէի անցուցանել հանգստեամբ թէպէտև ցաւագին կենօք, զժամանակն յերկարաձգութեան աւուրն՝ որ հանդերձեալ է լինել մահահրաւէր երկոցունցս։ Ո՞վ ծաղիկքդ՝ որոց անմարթ է բուսանել այլուր, դուք էք դարմանք իմուսն խնամոց վաղքաջ ընդ առաւօտս, և անագան ընդ երեկս. զորս խանդակաթ ձեռամբս մշակեցի անդստին 'ի պտկելոյ ձերմէ, և եդի անուանս։ Արդ՝ ո՞ ուղղեսցէ զձեզ յարեգակն կոյս, կամ ո՞ դիցէ 'ի դասակարգի զազգս ձեր, և ոռոգեսցէ յԱմբրոսեան [20] աւազանէն։ Իսկ զի՞արդ թողից զքեզ ո՞վ հովանոցդ իմուսն

հարսանեաց՝ զոր այնչափ գեղեցիկ անուշահոտութեամբ զարդարեցի ։ Ո՞րպէս մեկնեցայց 'ի քէն ։ Ուրանօ՞ր շրջեցայց 'ի խոնարհագոյն երկրի անդ՝ որ առ դրախտիւս խաւարաբնակ իմն է և ամայի ։ Եւ իւ մարթ է մեզ ձգել անդանօր զօդն անմաքուր, որք աստ սովորեցաք ճաշակել յանմահական պտղոց ։

Այլ Հրեշտակն դադարեցոյց զնա քաղցր բանիւք՝ օրինակ զայս ։ Մի՛ աշխարեր ո՛վ Եւայ, այլ տար համբերութեամբ այնմ՝ զոր իրաւամբք կորուսեր ։ Եւ մի կարի անձկանօք հաստատեր ըզսիրտ քո ընդ նմա՝ որ ոչ է քո ։ Այլ դու ոչ ես մեկնելոց առանձինն, երթայ ընդ քեզ և այր քո ։ Արժան է քեզ գնալ զհետ նորա ։ Ուրանօր և բնակեսցէ նա, համարեա՛ զայն 'ի հայրենիս քո, և տեղի սեպհական ։

Յայնմ վայրի զգաստացեալ Ադամայ յանհնարին ցաւոց անձին, և ժողովեալ առ ինքն զցրըուեալ ոգին՝ ուղղեաց զբան իւր առ Միքայէլ զայսօրինակ խոնարհութեամբ ։

Երկնաւո՛րդ յԱթոռոց անտի, և կամ զերագոյնդ 'ի նոցանէ (զի տեսիլ քո յայտ առնէ զքեզ իշխան իշխանաց), կարի քաղցրութեամբ ծանուցեր ինձ զպատգամաւորութիւն քո, զի մարթ էր նմա կարեվէր խոցել զմեզ, և վախճան տալ կենաց մերոց ։ Արդ՝ պատգամք քո բաց 'ի ցաւոց անտի, 'ի տրտմութենէ, և 'ի վհատութենէ սրտի՝ որոց մարթ էր հանդուրժել մերում տկարութեան, ածեն 'ի վերայ մեր և զանջատումն 'ի դրախտէս փափկութեան՝ որ է միակ տեղի ցանկալի մերում թագստեան. և ընտել գոլով աչաց

մերոց՝ թողեալ էր մեզ 'ի մխիթարութիւն ։ Ո՜ր այլ ամենայն տեղիք հանդերձեալ են երեւիլ մեզ անընտել եւ անապաստանական . քանզի ոչ ճանաչեն զմեզ , եւ անծանօթ են 'ի մէնջ ։ Վասն որոյ եթէ ակն ունէի շրջել զկամս Ամենակալին պաղատանօք , ոչ դադարէի 'ի թախանձելոյ զնա մեծագոչ աղաղակաւ ։ Սակայն պաղատանք չունին առաւել ինչ զօրել ընդդէմ անհրաժեշտ վճռոյ նորա , քան զփչումն բերանոյ ընդդէմ հողմոյ՝ որ սաստկագոյնս շնչէ հակառակ նորուն խեղդ փչողին ։ Սմին իրի հնազանդեալ կամ վերին հրամանաց նորա ։ Բայց ցաւիմ յոյժ ընդ այն՝ զի մեկնեալ աստի երբեք յերեսաց նորա , մնայ ինձ թագչել եւ զրկիլ յերանաւէտ տեսութենէ նորա ։ Մարթ էր ինձ աստանօր մատչել ստէպ 'ի պաշտօն նորին 'ի տեղւոջս՝ յորում հաճեցաւ նա ցուցանել ինձ բազում անգամ զաստուածային դէմս իւր . եւ պատմել որդւոց իմոց , թէ « երեւեցաւ նա 'ի լերինս յայսմիկ . եցոյց զանձն ընդ ծառովս ընդ այսուիկ . լուայ զձայն նորա 'ի միջոյ մայրոյիցս այսոցիկ . եւ խօսեցայ ընդ նմա առընթեր աղբերականս այսորիկ » ։ Մարթ էր ինձ աստանօր կանգնել 'ի դալարագեստ հողոյ զհաճոյական սեղանս , կուտել 'ի վերայ նոցա զողորկափայլ քարինս հեղեղատին , եւ այնպէս մատուցանել 'ի նոսա զնուէրս անուշահոտ կնդրկաց , ծաղկանց եւ պտղոց ։ Այլ 'ի ստորին աշխարհի անդ ուրանօ՞ր գտից զպայծառափայլ դէմս նորա , կամ զշաւիղս ոտից ։ Քանզի աստանօր թէպէտեւ խուսափեալ յերեսաց բարկութեան նորա , սակայն վերստին կոչեցեալ յերկարութիւն կենաց , եւ 'ի խոստումն ծննդոցս աճե-

լութեան՝ զէթ զստորոտս փառաց նորա խնդագին տեսանեմ, և երկիր պագանեմ հետոց գարշապարաց նորա՝ թէպէտև 'ի հեռաստանէ :

Որում Միքայէլ ետ պատասխանի գթալիր աչօք՝ օրինակ զայս : Քա՛ջ գիտես Ադամ, զի նորա են երկինք և երկիր առհասարակ, և ոչ լոկ լեառնս այս : Յանդիման երևի նա ամենայն ուրեք . և լնու զերկիր, զծով և զօդն . և զօրութեամբ իւրով արգասաւորէ զամենայն ազգս կենդանեաց : Նա ետ քեզ զամենայն երկիր 'ի ժառանգութիւն և յիշխանութիւն՝ որ ոչ է զուգնաքեայ ինչ պարգև : Արդ՝ մի համարիր զքեզ փակեալ միայն յանձուկ սահմանի անդ դրախտիդ կամ Եդեմայ : Որ թերևս հանդերձեալ էր լինել գահանիստ տեղի քո, և անդուստ սփռելոց էին ամենայն ազինք ընդ երեսս երկրի, և գալոց էին այսրէն յամենայն ծագաց 'ի պատուել և 'ի փառաւորել զքեզ իբրև զարժանայարգ Նախահայր իւրեանց, այլ դու կորուսեր զայդ պատիւ. վասն որոյ և լինիս այժմ վայրաբնակ ընդ որդւոց քոց 'ի վերայ դաշտագետին երկրի : Բայց մի երկմտիր 'ի միտս քո, թէ գուցէ չգտցի Աստուած 'ի դաշտի անդ կամ 'ի հովտի՝ որպէս պատանօր, և ոչ ցուցցէ զանձն իւր նովին օրինակաւ : Քանզի տակաւին բազմապատիկ նշանք յանդիմանութեան նորա ամենայն ուրեք՝ գնացեալ զհետ քո, և շուրջ պատեալ զքև հայրական խնամօք և գթութեամբ՝ ցուցցեն քեզ զդէմս նորա, և զշաւիղս աստուածային ոտից նորա : Եւ զի մինչչև է քո մեկնեալ աստի հաւաստի լիցիս ընդ այն, և քաջալերեսցիս, գիտասջիր՝ զի առաքեցայ ես ցուցանել քեզ ըզ-

հանդերձեալսն, որք անցանելոց են ընդ քեզ, և ընդ ծնունդս քո առյապայս ։ Արդ՝ պատրաստեա՛ զանձն քո յունկնդրութիւն բարեաց ընդ չարիս, և Թշնամութեան մեղաց մարդկան ընդ շնորհսն Աստուծոյ. զի կրթեալ զանձն քո 'ի ճշմարիտ համբերութեան, և խառնեալ զխնդութիւն ընդ առաքինի երկիւղի և տրտմութեան՝ տարցես անխռով մտօք ըստ կարի երկոցունց ևս՝ յաջողութեան և Թշուառութեան. և այնպէս անցուցեալ զկեանս՝ գտցիս քաջ պատրաստական 'ի հանդուրժել ևս մահահրաւէր անցից օրհասին, 'ի ժամանել նորա առ քեզ։ Այլ արդ ել դու 'ի վերայ լերինդ. և Եւայ (յորոյ վերայ արկի զԹմբրութիւն) կայցէ աստանօր 'ի քուն, մինչդեռ կաս դու յարԹմնի 'ի տեսութեան անդ հանդերձելոցն. զորօրինակ և դու ննջեցեր երբեմն, այն ինչ զգեցաւ նա զկերպարանս կենդանութեան։

Որում Ադամ ետ զայս պատասխանի ախորժ հաւնութեամբ։ Առաջնորդդ անմոլար՝ ել դու նախ, և ես եկից զկնի քումդ շաւղաց։ Ընդունեմ զանձն իմ 'ի ձեռս Աստուծոյ՝ որով և օրինակաւ կամի իցեն նմա խրատել զիս։ Ստադիւք մատուցանեմ զանձն իմ 'ի դիմի ամենայն չարեաց՝ զինեալ զիս համբերութեամբ. զի կարող եղէց յաղԹող հանդիսանալ ընդդէմ նոցին, և գտանել զհանգիստ անձին իմոյ 'ի քրտնաջան վաստակս իմ, միայն Թէ մարԹացայց հասանել այնմ։ Եւ այնպէս ապա ելին նոքա 'ի լեառն աստուածային տեսլեան. որ և էր բարձրագոյնն 'ի դրախտի անդ։ Ընդարձակութեան անդ տեսութեան աչաց 'ի գագաԹանէ նորա՝ տարածեալ կայր պայծառա-

տեսիլ կիսագունտն երկրի ։ Ո՛չ բարձրագոյն էր քան զայն, և ոչ ընդարձակատեսիլ լեառնն՝ յորոյ վերայ 'ի սակս տարօրինակ պատճառի կացոյց փորձիչն յանապատի անդ զերկրորդն մեր Ադամ, և եցոյց նմա զամենայն թագաւորութիւնս երկրի, և զփառս նոցա ։ Մարթ էր աչացն Ադամայ տեսանել անդուստ զհամօրէն սահմանս երկրի՝ յորս կառուցան կացին զկնի երևելի քաղաքք մեծահռչակք 'ի հին և 'ի նոր համբաւս, և աթոռք հըզօր ինքնակալութեանց [21] ։ Սկսեալ 'ի պարսպաց անտի Կամբաղու՝ որ էր աթոռ Կաթայեանն Խանի, և 'ի Սմրղանդայ առ ափամբք Ոքսոսի՝ ուր թագաւորեաց Թամուր, մինչև 'ի Փեքին արքայանիստ Սինէացւոց ։ Եւ անդուստ մինչև յԱգրա և 'ի Լահոռ մեծին Մողոլայ, և խոնարհագոյն ևս մինչև 'ի Քերսոնն ոսկի ։ Կամ՝ ուրանօր Պարսկականն նստաւ յԵկբատան, և 'ի Սպահան զկնի. կամ՝ ուր ինքնակալն Ռուսաց 'ի Մոսկով. և կամ Սուլտանն՝ որ է բնիկ ծնունդ Թուրքաստանի, 'ի Բիւզանդիոն ։ Մարթ էր աչաց նորա տեսանել ևս զինքնակալութիւնն Նեգուսայ մինչև 'ի վերջին նաւահանգիստն նորա Երկոկով. և ըզփոքրիկ ծովահայեաց թագաւորութիւնսն՝ Մոմբազայ, Պուիլովայ, Մեղինդայ, և Սոբաղայ՝ որ համարեալն է Ոփիր, մինչև 'ի սահմանսն Կոնգոյայ և Անգողայ. և հեռագոյն ևս 'ի կողմն հարաւոյ ։ Կամ անդուստ 'ի գետոյն Նիգերայ մինչև 'ի լեառն Ատղաս, և 'ի թագաւորութիւնս Աղմանսորայ, Փեզայ, Սուսայ, Մարոկեայ, Աղկերայ, և Տրեմիսինայ ։ Եւ անդուստ ապա զԵւրոպ՝ ուրանօր հանդերձեալ էր Հռովմ տիրապե-

տել աշխարհի ։ Թերեւս ետես նա հոգւոյն և զմե-ծագանձն Մեքսիկոյ զաթոռն Մոնտեզումայ. և զԿուսկոյն 'ի Պերու՝ զնս բազմահարուստ աթոռն Ատաբալիպայ. և զտակաւին անկապուտն Գուիա-նա, զորոյ զմայր քաղաքացն որդիքն Գերիոնեայ [22] կոչեն Էլ Դորադոյ ։ Բայց 'ի սակս կարևորագոյն ևս տեսլեանց 'ի բաց եհան Միքայէլ յաչացն Ա-դամայ զպատրուակն՝ զոր ձգեալ էր զնոքօք պտղ-ղոյն պատրանաց, խոստացեալ նոցին զպայծառա-գոյն ևս տեսութիւն ։ Եւ ապա սրբեաց եւփրա-սեաւ և փեգենայիւ զտեսանողական կարողու-թիւն նորա, զի տակաւին հանդերձեալ էր տեսա-նել բազում ինչ. և կաթեցոյց 'ի նմա զերրեակ շիթս 'ի Ջրհորոյն կենաց [23] ։ Այլ ազդեցութիւն նոցին այնչափ ներգործեաց 'ի ներքին տեսութիւն մտացն Ադամայ, մինչև ստիպեալ նորա փակել զաչս իւր՝ անկաւ յերկիր թմբրեալ ։ Բայց մար-դասէր Հրեշտակին անդէն վաղվաղակի ձեռն տր-ւեալ նմա՝ կանգնեաց վերստին. և զմտադիր ուն-կնդրութիւն նորա միւսանգամ առ ինքն ժողո-վեաց՝ օրինակ զայս ։

Բաց արդ Ադամ զաչս քո. և տես յառաջա-կայն զարգասիս սկզբնական մեղաց քոյ ներգոր-ծեալ յոմանս 'ի յետագայ ծննդոց քոց. որք թէ-պէտ ոչ մերձեցան ընդ քեզ 'ի ծառն արգելեալ, չեղեն դաշնակից ընդ օձին, և ոչ յանցեան զյան-ցանս քո, սակայն և այնպէս ելանէ ապականու-թիւնն 'ի մեղաց անտի, և ծնանի զդառնագոյն ծնունդս ։

Եբաց նա զաչս իւր, և ետես զդաշտն՝ որ էր մասամբ արօրադիր, և կային 'ի նմա որայք նորա

հաս հնձոց, և մասամբ կարգեալ յարօտ խաշանց և հօտից: 'Ի միջի նորա իբրև 'ի նշան կրկին սահմանաց՝ կանգնեալ կայր սեղան անզարդ 'ի դալարաւէտ հողոյ: Երկրագործն բազմավաստակ [24] եած անդր փուլթանակի զերախայրիս անդոյ իւրոյ՝ զհասկ դալարի, և զորայ սպիտակացեալ. բայց վեր'ի վերոյ առանց ընտրանաց: Եհաս անդր ապա և Հովիւն հեզահամբոյր՝ [25] բերեալ զանդրանիկս խաշանց իւրոց զընտիրս և զբարիս: Եւ մատուցեալ 'ի նուիրագործութիւն՝ եդ 'ի վերայ պատառեալ փայտիցն զփորոտիս նոցա և զճարպ կնդրկախառն. և կատարեաց ըստ օրինի զպաշտօն զոհին: Էջ յերկնից անդէն վաղվաղակի հուրն քաւութեան, և ծախեաց արագ արագ 'ի բոց և 'ի ծուխ անուշահոտ զպատարագ նորին: Իսկ զմիւսոյն ոչ նոյնպէս, զի ոչ էր անարատ: Ընդ այս դժուարեալ նորա՝ 'ի խօսել անդ ընդ եղբօր իւրում բրդեցաւ 'ի սրտմտութիւն բարկութեան 'ի վերայ նորա. և անդէն հարեալ զստոծանի նորա քարամբ՝ զրաւեաց զնա 'ի կենաց: Ընկաւ նա յերկիր այլադունեալ 'ի մահ, և եհան զոգի իւր սրսկմամբ հոսանաց արեան: Իսկ Ադամ կարի խիստ զդողանի հարաւ ընդ տեսիլն. վասն որոյ և անդէն աղաղակեաց առ հրեշտակն՝ օրինակ զայս:

Ո՞վ ուսուցիչդ իմ երկնային՝ ահագին չարեաց դիպաւ այրն հեզահամբոյր, որ բարւոքն պատարագեաց: Մի՞թէ այս իցէ փոխարէնն աստուածպաշտութեան, և ամբիծ նուիրանաց:

Որում Միքայէլ ինքնին իսկ աղէկիզեալ ընդ տեսիլն՝ արար զայս պատասխանի: Եղբարք են սոքա Ադամ, և հանդերձեալ են ելանել յեքա-

նաց քոց ։ Սպան առ նախանձու ամբարիշտն զար-
դարն, զի պատարագ եղբօր իւրոյ հաճոյ գտաւ
Աստուծոյ ։ Բայց ոչ կացցէ նա առանց վրիժուց
հեղման արեան եղբօր իւրոյ. և միւսոյն հաւատք
ընդունելի՝ ոչ կորուսցեն զվարձս. թէպէտև տե-
սանես մեռեալ աստանօր, և թաթաւեալ՝ի հող
արիւնաշաղախ ։ Առ այս երկրորդեաց Հայրն մեր ։

Աւաղ գործոյն, ընդ նմին և պատճառին ։ Ահա
այժմէն ականատես եղէ մահու ։ Մինթէ այս իցէ
ճանապարհն՝ ընդ որ հանդերձեալ եմ ես դառ-
նալ՝ի հողն իմ բնիկ ։ Ո՜վ ահագին և սոսկալի
տեսլեանս, որ անքերելին է յածել անդ զմտաւ,
և քանի՜ն առաւել յանցանելն ընդ փորձ ։

Որում Միքայէլ արար զայս պատասխանի ։
Տեսեր դու զմահ մարդոյ յայս առաջին օրինակ,
այլ բազմադիմի են շաւիղք նորա՝ որք տանին ընդ-
մարդիկ՝ի խորխորատն խաւարչտին ։ Իսկ թէ-
պէտ սոսկալի են ամենեքին առ հասարակ, այլ յա-
ւէտ ահ արկանեն՝ի մուտս անդ, քան՝ի ներքս ։
Որդ՝ որպէս տեսեր, ոմանք հանդերձեալ են մե-
ռանել բռնի հարուածովք, և ոմանք հրով, և
ջրով, և սովու ։ Այլ բազումք ևս յանչափս շը-
ւայտութեամբ՝ի կերակուրս և յըմպելիս. որք
և հանդերձեալ են ածել՝ի վերայ երկրի զչարա-
չար ախտս ։ Զորոց զանհամար բազմութիւն մնայ
քեզ արդ տեսանել զառաջեաւ, զի գիտասցես՝
թէ քանի՜ աղէտս չարեաց հասուցանելոց է մարդ-
կան անժուժկալութիւն Եւայի ։ Իսկ մինչդեռ խօ-
սէր Հրեշտակն, ահա յանդիման եղև աչաց Ադա-
մայ տեղի ինչ զարշատեսիլ և ստուերամած ։ Թո-
ւէր լինել անկելանոց իմն հիւանդաց ։ Յորում

անկեալ կային բազմութիւնք ախտաժետաց ըմբռնելոց յերեսաց անհնարին ջղացաւութեան, բազմատագնապ ցաւոց, ոգետանջ նուաղման սրտի, բազմապատիկ ջերման, ցնցման մկանանց, սաստկալի վերնատութեան, դժնդակ հարբղխի, ներքին քարանց, անյայտ վիրաց, ցաւոց աղեաց, մտաթափ մոլեգնութեան, թմրեցուցիչ սևամաղձի, լուսնոտ յիմարութեան, ծիւրիչ անտածութեան, յետին վտտակրութեան, համաձարակ ժանտախտի, ուռուցիկ ջրգողութեան, մահաբեր շնչարգելութեան, և անբերելի յօդուածացաւութեան: Նման որոյ և ահագին էր ընդոստումն 'ի վեր, և բարձրաբարբառ յոգւոցհանութիւնք տանջելոցն 'ի նոցանէ: Անյուսութիւնն փութաջան անցանէր մահճաց 'ի մահիճս հիւանդաց, և մահն յաղթական ստէպ արձակէր 'ի նոսա զնետս իւր. բայց յապաղէր զմահացուցիչ հարուածն, թէպէտև ուխտիւք խնդրէին նոքա զայն՝ իբրև զմիակ բարի, և վերջին ակնկալութիւն իւրեանց: Այլ որպիսի՞ ապառաժ սրտի մարթ էր տեսանել անթաց աչօք զայնպիսի տեսիլ աղետալի: Սմին իրի ոչ ժուժեաց և սիրտն Ադամայ, այլ արտասուեաց և նա՝ թէպէտև ոչ էր կանանցածին: Զի կարեկցութիւնն բռնացաւ 'ի վերայ գերազոյն մասին նորա, և ետ նմա լուծանիլ յարտօսր առվայր մի, մինչև զկնի խոհական ևս խորհուրդք արգելին զնա յանչափութենէ անտի: Եւ այնպէս ապա հազիւ ուրեմն գտեալ նորա զբանս՝ զայսօրինակ նորոգեաց վերստին զողբս իւր:

Ո՜վ եղկելի և թշուառական ազգ մարդկան՝ յո՞ր խորխորատ կորստեան կործանեցար, և յոր-

պխոյճ չարաչար վիճակ պահեցար ։ Ապաքէն երանելի են նոքա՝ որք ոչ ծնան ։ Եւ ընդէ՞ր տրւեալ եղեն մեզ կեանք՝ առ ’ի թափել զայն ’ի մէնջ սովին օրինակաւ ։ Մանաւանդ ընդէ՞ր բռնաբար մուծաւ նա ’ի մեզ ։ Զի եթէ գիտացեալ էր մեր զոր ընկալաքս , կամ ոչ ընդունէաք զտուեալ կեանս , և կամ անդէն խնդրէաք մերկանալ զայն ’ի մէնջ ։ Եւ մի՞թէ մա՞րթ իցէ պատկերին Աստուծոյ ’ի մարդն՝ որ երբեմն ստեղծաւ այնչափ բարի և անարատ , թէպէտև զկնի գտաւ մեղանչական , խոնարհել յայնպիսի ահագին աղէտս ընդ անագորոյն ցաւովք ։ Ընդէ՞ր ոչ գտցի մարդն ազատ ’ի զարշատեսիլ տգեղութեանց անտի , կամ գէթ մասամբ իմն պահեսցէ զնմանութիւնն Աստուծոյ , փոխանակ զի գտաւ նա պատկեր նորա ։

Որում ետ պատասխանի Միքայէլ ։ Պատկերն Աստուծոյ յայնժամ եթող զնոսա , յորժամ ինքեանք խոնարհեցուցին զանձինս ’ի ծառայութիւն անկարգ ախորժակաց · և ընկալան յանձինս իւրեանց զպատկեր նորա՝ որում անձնատուր եղեն ’ի ծառայութիւն , անբանական ասեմ ախտին՝ որ հրապուրիչն է առ մեղսն Եւայի ։ Նմին իրի և պատիժ նորին է կարի իմն գարշելի ։ Որ և ապականէ՝ ոչ զնմանութիւնն Աստուծոյ , այլ զնոցայն ։ Ապա եթէ և զԱստուծոյն եղծանէ , ինքեանք իսկ ապականեցին զայն՝ թիւրեալ զողջամիտ կանոնս անարատ բնութեան ’ի գարշութիւն ախտից ։ Եւ կարծէ յիրաւունս՝ զի ոչ պատուեն յանձինս իւրեանց զպատկերն Աստուծոյ ։

Նոյն այդ այդպէս է՝ ասաց Ադամ ցհրեշտակն , և ես կամ հնազանդեալ կամացն Աստուծոյ · բայց

միթէ չկայցէ՞ այլ ճանապարհ բաց 'ի բազմավիշտ անցից անտի՝ առ'ի հասանել մահու, և տալ զանձինս համաբնակից հողոյ:

Այլ արդարև՝ ասաց Անքայէլ, եթէ բարւոք պահեցեր զկանոնս՝ Ա՛յ չարչի էին, զոր ուսուցանէ քեզ չափաւորութիւնն 'ի կերակուրս և յըմպելիս. և խնդրեցեր 'ի նոցանէ զկարևոր ևեթ դարմանն կենաց, և ոչ զշուայտութիւն որկորոյ: Նաև յայնժամ յոլովութիւնք ամաց պատեսցեն զքեզ: Նաև այնպէս հասունացեալ քո իբրև զպտուղ՝ անկցիս 'ի գիրկս մօր քո. և քաղեալ ժողովեսցիս ինքեննին, և ոչ բռնաբար՝ ձեռամբ անագան մահուն կամ հասակի ծերութեան: Բայց յայնժամ ժամանակի կորուսցես զմանկութիւն քո, զզօրութիւն և զգեղեցկութիւն. զի դարձցին նոքա 'ի զառամութիւն, 'ի տկարութիւն, և 'ի սպիտակութիւն ալեաց: Նաև զզայութեանց քոց բթացեալ՝ ոչ ևս առցեն զճաշակ բերկրութեան. այլ փոխանակ յուսապատար, խնդալից և առոյգ մանկութեան՝ տիրեսցէ արեանդ սևամաղձ խոնաւութիւն ցրրտութեան և ցամաքութեան: Նաև այնպէս տկարացուցեալ զոգիդ՝ սպառեսցէ 'ի վախճանի զբալասան կենաց քոց:

Եւ այս յաւել ասել մերս Նախահայր: Ո՛չ երկնչիմ ես 'ի մահուանէ, և ոչ ցանկամ երկարութեան կենաց. այլ յաւէտ զայն խնդրեմ, թէ իւ մարթացայց ըստ արժանեաց և հեշտեաւ զերծանիլ 'ի տաժանաւոր ծանրութենէս՝ զոր պա՛րտ է ինձ կրել մինչև ցօրն սահմանեալ յաւանդ նորին, և սպասել համբերութեամբ լուծման անձինս:

Նա և Անքայէլ ետ նմա պատասխանի: Ա՛յ սի-

րեր, և մի՛ ատեր զկեանս քո․ այլ զոր ունիս՝ կեաց բարւոք ։ Իսկ զերկայնութիւն և զկարճութիւն նորին թո՛ղ 'ի խնամս Երկնից ։ Այլ դու այժմ պատրաստեա՛ զանձն քո յայլ տեսիլ ։

Հայեցաւ նա, և ետես զդաշտ ինչ լայնածաւալ, յորում հարեալ կային բազմութիւնք նկարակերտ խորանաց ։ Առ ոմամբք ճարակէին հօտք խաշանց․ և յայլոց լսելի լինէին ձայնք գեղեցկայարմար նուագարանաց՝ տաւղի և քնարի․ որք միանգամ լարէին զութակս նոցա, կամ հարկանէին զլարս 26, երևէին արտաքուստ ։ Որոց և արագ արագ բախումն յառաջ խաղացեալ ընդ ամենայն համեմատութիւնս դաշն և բարձր և թըռուցեալ խոտորնակի՝ զհետ երթայր վերահնչող փախստեան 27 ։ Այլուր կացեալ ուրումն 28 'ի գործս դարբնոցի՝ հալէր զերկին ստուարամարմին կանգուածս երկաթոյ և պղնձոյ ։ Զորս և գտեալ էր նորա՝ կամ 'ի լերին անդ և 'ի հովտի, ուրանօր ծախեալ հրոյն զանտառս, և մտեալ 'ի խորշս երկրի՝ անդուստ խաղացուցեալ էր զնոսա 'ի բերանս բովուցն, և կամ հեղեղաց ջուրց հանեալ արտաքս 'ի ստորերկրեայ խոռոչաց ։ Ձուլեաց նա զլուծեալ մետաղս 'ի քաջայարմար գաղափարս․ և յօրինեաց 'ի նոցանէ նախ զգործիս իւր, և ապա զամենայն անօթս՝ զորս մարթ էր ձուլել և կամ քանդակել 'ի մետաղաց անտի ։ Զկնի սոցա ետես Ադամ յայլում վայրի, զի տարօրինակ մարդիկ իջանէին 'ի դաշտ անդր 'ի բարձրութենէ մերձակայ լերանց՝ ուրանօր ունէին նոքա զբնակութիւն իւրեանց ։ Նոյն երևէին արդարակորովք, և յօժարամիտք 'ի պաշտօն ճշմարտին Աստուծոյ, և

անձնատուրք 'ի գիտութիւն երևելի արարածոց նորա, և ամենայնի՝ որոց մարթ է պահել զաղատութիւն և զխաղաղութիւն մարդկան ։ Բայց մինչև էր նոցա կացեալ ընդերկար 'ի դաշտի անդ, ահա անդէն ելեալ 'ի վրանաց նոցա չքնաղ պարու կանանց պճնելոց 'ի պատուական ականս, և 'ի թանգագին զգեստս անառակութեան՝ նուագեցին 'ի քնար զմեղկաղէտ ցուցս սիրոյ, և յօրինեցին զկաքաւս ոտից ։ Իսկ արքն՝ թէպէտև էին խոհական, սակայն և այնպէս արձակեցին զաչս իւրեանց 'ի նոսա, և թողին յածիլ համարձակ ։ Վասն որոյ ըմբռնեալ նոցա 'ի ցանցս սիրոյ՝ բորբոքեցան ցանկութեամբ. և այր իւրաքանչիւր ընտրեալ 'ի նոցանէ զցանկալին անձին իւրոյ, խօսակից եղև ընդ նմա մինչև ցերևումն աստեղն երեկոյի՝ որ կարապետն է սիրոյ ։ Եւ այնպէս ջեռուցեալ նոցա՝ լուցին զջահն հարսանեաց. և հրաման ետուն կոչել զՀիւմէնն՝ 29 որ յայնժամ զառաջինն կոչեցաւ յայն հանդէս ։ Յայնմ վայրի հնչէին վրանք նոցա 'ի ձայնէ խնջոյից, և երաժըշտական նուագաց ։ Այնպիսի տեսիլ զուարձալի, և հանդիպումն սիրոյ մանկութեան, երգոց նոցա, պարկաց, ծաղկանց, և սիրալի միաբանութեան նուագարանաց՝ խոնարհեցուցին զսիրտն Ադամայ յընդունելութիւն բերկրանաց. զոր և ծանոյց նա օրինակ զայս ։

Երջանիկ պետդ Հրեշտակաց, և տիրապէս բացող իմոցս աչաց՝ այս տեսիլ թուի ինձ յաւէտ ցանկալի քան զերկուս առաջինսն, և գուշակ իմն ակնկալութեան աւուրցն խաղաղութեան ։ Քանզի առաջինքն տեսարան էին ատելութեան և մա-

հու։ Իսկ 'ի սմա թուի բնութիւնն զոհ լինել ընդհաճոյս անձին իւրոյ ։

Որում Միքայէլ ետ զայս պատասխանի ։ Մի՛ թուեսցի քեզ հեշտութիւնն ցանկալի, և քաջայարմար բնութեան. զի յայլ ինչ ազնուագոյն, սուրբ և մաքուր՝ ստեղծար դու, 'ի նմանութիւն անեղ Աստուծոյ ։ Վրանքս զոր տեսեր բազմազուարճ, էին վրանք չարութեան 'ի բնակութիւն ծննդոց եղբայրասպանին ։ Նորա էին նոքա տալ զանձինս 'ի խնդիր արուեստից առ 'ի դիւրութիւն կենաց, և են հնարագէտք 'ի ճարտարութեան. բայց ոչ յիշեն զԱրարիչ իւրեանց, և զՀոգի նորա սուրբ՝ որ ուսոյց զնոսա. և ոչ իսկ ճանաչեն զպարգևս նորա ։ Սակայն և այնպէս հանդերձեալ են նոքա ծնանել զգեղեցիկ ծնունդս, զչքնաղ պարս կանանց՝ զոր տեսեր, և թուէին քեզ Աստուածուհիք ոմանք գեղաղէշք և փափկամարմինք ։ Բայց թափուր են նոքա 'ի բարեմասնութենէ անտի՝ յորում հաստատեալ կան պատիւ և առաջին պարծանք տնարար կնոջն ։ Վասնզի սնեալ են նոքա և կրթեալ միայն 'ի ճաշակս անառակ ցանկութեանց, երգոց, պարուց, պճնազարդութեան, շաղակրատանաց և աչարձակութեան ։ Սակայն պարկեշտասուն ծնունդք մարդկան՝ զորս աստուածպաշտութիւն և բարեկարգութիւն նոցա կոչեաց որդիս Աստուծոյ, սոցա ընծայեն 'ի նախատինս անձանց զամենայն առաքինութիւնս և ըղպարծանս իւրեանց՝ պատրեալք 'ի փաղաքշանաց գեղեցկացդ անաստուածից ։ Որք և այժմ ընկղմեալ կան 'ի հեշտութիւնս, այլ զկնի առաւել ևս ապականեսցին ։ Ծիծաղին արդ և խնդան, յոր

սակս ողբասցէ զկնի աշխարհ՝ աշխարհն արտասուաց ։

Որում արար պատասխանի Ադամ՝ վրէպ գտեալ 'ի կարճժամանակեայ զուարճութենէ անտի ։ Ո՜վ անտանելի աղետիցս, միանգամայն և ամօթոյս․ զի որք մտին յայս կեանս այնպիսի լաւութեամբ, հանդերձեալ են՝ կամ խոտորիլ յուղիղ շաւղաց անտի, և կամ անկանիլ 'ի կէս ճանապարհին ։ Այլ ես տակաւին տեսանեմ, զի ամենայն չարիք մարդոյ յառաջ գան 'ի կնոջէ անտի ։

Ո՛չ այնպէս՝ ասաց ցնա Հրեշտակն, այլ յաւէտ յառաջ գան 'ի կնատութենէ առնն՝ որում արժան էր կալ հաստատուն իմաստութեամբ իւրով, և առաւելագոյն պարգևօքն՝ զոր ընկալաւ 'ի վերուստ ։ Սակայն դու պատրաստեա զանձն քո յայլ նորոգ տեսարան ։

Հայեցաւ նա, և ետես զընդարձակ սահմանս ինչ երկրի տարածեալ առաջի իւր․ յորում կային անդաստանք, և քաղաքք մարդկան յօրինեալք հոյակապ դրամբք և բարձրաբերձ աշտարակօք ։ Տեսանէր անդ, զի ոմանք ընթանային 'ի զէնս, և ոմանք ցուցանէին զահագին դէմս՝ սպառնացեալ զպատերազմն․ և ամենեքին էին արք հսկայք ։ յաղթանդամք և արիք 'ի շահատակութիւնս ։ Այլք շողացուցանէին զսուսերս իւրեանց, և կէսք մարզեալ կրթէին զփրփրալից նժոյգս իւրեանց ։ Սոյն էին նոքա հեծելազօրք և հետևակամարտք ճակատեալք առանձինն, և կամ խառն 'ի միասին․ այլ ոչ կային դատարկ 'ի հանդիսի անդ ։ Յայլում վայրի գունդ ընտիր դառնայր յաւարէ՝ վարեալ զառաջեաւ զջոկս արջառոց՝

գեղեցիկ եզանց, և ընտիր կովուց, զորս յափըշ-տակեալ էր նոցա 'ի պարարտարօտ դաշտաց, և 'ի դալարագեղ մարգաց՝ զգեղմնաբարձ հօրանս մաքեաց և գառանց ։ Որոց հովիւք մազապուրծ ճողոպրեալ՝ կոչէին յօգնութիւն զարիւնախանձ մարտադիրսն . և գումարտակք նոցա անդէն հա-սանէին 'ի վերայ անողորմ զինուքն իւրեանց ։ Յորմէ և դաշտավայրն ճարակետղ խաշանց յա-ռաջագոյն՝ դառնայր յապականութիւն, ոռո-գեալ 'ի ճապաղիս արեանց, և ցանեցիր սփռմամբ դիականց և զինուց ։ Այլուր ոմանք պատնէշ պա-շարման դնէին զքաջամուր քաղաքօք, յարձակեալ 'ի վերայ նոցա մանգղիոնօք, սանդղօք և ականհա-տութեամբ ։ Իսկ այլք զդէմ ունէին նոցա 'ի պարսպաց անտի նետիւք, սուինօք, քարամբք և ծծմբալից հրով ։ Եւ այնպէս յերկոցունց կող-մանց գործէին անհնարին կոտորածք, և հսկայա-զօր շահատակութիւնք ։ Իսկ այլուր առ դրան քաղաքին քարոզքն գաւազանակիր կոչէին յա-տեան խորհրդոյ զժողովուրդն ։ Եւ անդէն վաղ-վաղակի գումարեալ ժողովեցան անդր ծերք և իմաստունք խառն ընդ մարտիկս ։ Եւ ամենեքին առհասարակ ունկն դնէին ատենաբանութեան՝ որ լսելի լինէր անդանօր ։ Սակայն փութանակի ան-ցանէր այն յաղմուկ խռովութեան յերեսաց հա-կառակութեան նոցա ընդ միմեանս ։ Մինչև յա-րեաւ զկնի ոմն իմաստուն և առաքինի[30]. և ճառ-արկեալ՝ խօսեցաւ երկարագոյնս յաղագս իրա-ւանց և անիրաւութեան, յաղագս արդարութեան և կրօնից, յաղագս ճշմարտութեան և խաղաղու-թեան, և յաղագս հանդերձեալ դատաստանացն

՚ի վերուստ ։ Սակայն նոքա ոչ անսացին նմա․ և ունէին ևս արկանել ՚ի նա զձեռս իւրեանց՝ եթէ չէր իջեալ ամպոյն ՚ի վերուստ, և յափշտակեալ զնա անտեսաբար ՚ի միջոյ անտի խուժանին ։ Որք և ՚ի զայրոյթ սրտից իւրեանց լցին զդաշտն համա-րէն հարստահարութեամբ և բռնութեամբ զի-նուց, և ոչ գոյր անդ տեղի ապաստանի ։ Յոյր սակս յարտասուս հարեալ Ադամայ յերեսաց տեսլեանս, և դարձեալ առ Հրեշտակն՝ ասաց ցնա ցաւագին կականոք ։ Ո՞վ զինչ են սոքա․ ոչ մարդիկ, այլ պաշտօնեայք մահու, զի այնչափ անհնարին մա-հունս ածեն ՚ի վերայ ազգի մարդկան, և բազմա-պատիկ առաւելուն զյանցանս առաջին եղբայրա-սպանին ։ Եւ ո՞ւմ ումեք հասուցանեն նոքա զայն չափ կոտորածս, եթէ ոչ եղբարց իւրեանց․ զի ա-մենեքին մարդիկ են առհասարակ ։ Ա՞յլ էր այրն այն իմաստուն՝ որ արդարև ունէր կորնչել յար-դարութեան իւրում, եթէ չէր Աստուծոյ յափշ-տակեալ զնա ։

Որում ետ պատասխանի Միքայէլ ։ Արդասիք են սոքա խառնակ ամուսնութեանցն՝ զոր տեսեր, որովք զուգեցան բարիքն ընդ չարաց՝ յորոց զա-տ չէին յառաջագոյն ։ Եւ այնպէս անխտիր խառնա-կեալ ընդ միմեանս՝ ծնան զանհեթեթ ծնունդս մարմնոյ և մտաց ։ Եւ սոքա են հսկայքն անուա-նիք ։ Քանզի յաւուրսն յայնոսիկ զարմացին մար-դիկ միայն ընդ զօրութիւնս մարմնոյ, և զայն եւեթ կոչեցին քաջութիւն և առաքինութիւն դիւցազ-նական ։ Զյաղթութիւն ՚ի մարտի, զնուաճումն ազգաց, և զաւարառութիւն բազմապատիկ կորս-տեամբ մարդկան՝ համարեցին նոքա բարձրագոյն

գագաթն փառաց ։ Վասն որոյ և ընծայեցեն հսկայիցդ զհանդէսս յաղթանակաց . և կոչեցեն զնոսա աշխարհակալս, պաշտպանս ազգի մարդկան, աստուածս, և ծնունդս աստուածոց, փոխանակ զի պարտ էր կոչել զնոսա իրաւամբք ժանտ ախտս , և ապականիչս մարդկան ։ Սովին օրինակաւ ստացին նոքա զանուն և զպարծանս 'ի վերայ երկրի ։ Իսկ որ միանգամ արժանին է տիրապէս գովութեան , ծածկեցի ընդ լռութեամբ ։ Նմին իրի և եւթներորդն 'ի քէն՝ զոր տեսեր միայն ուղիղ 'ի թիւրեալ աշխարհի անդ, առեալ 'ի նացանէ 'ի սակս իւրումն արդարութեան ։ Իսկ թըշնամիք նորա նեղեցեն զնա և հալածեցեն, փոխանակ զի պարծի նա ընդ արդարութիւն իւր , և ծանուցանէ նոցա զայս ճշմարտութիւն՝ որ ատելի է յաչս նոցա, թէ «Աստուած եկեսցէ Սրբովք իւրովք 'ի դատել զնոսա » [31] ։ Այլ որպէս տեսեր, յափշտակեալ զնա Բարձրելոյն թեւաւոր երիվարօքն՝ ընկալցի յամպն անմահական . զի ազատեալ նորա 'ի մահուանէ՝ շրջեսցի անդ 'ի բարձրութեան փրկութեան, և 'ի սահմանս երանութեան ։ Որով և ցուցցէ քեզ զվարձս արդարոց , և զհանդերձեալ պատիժս չարագործաց ։ Այդ՝ ուղղեա՛ զաչս քո, զի տեսցես զնոսա փութանակի ։

Հայեցաւ նա, և ետես՝ զի կերպարանափոխլեալ էին երեսք ամենայն երկրի ։ Ոչ ևս գոչէր պղնձի փողն մարտի ։ Ամենայն ինչ փոփոխեալ էր 'ի զուարճութիւն զբօսանաց , 'ի զեղխութիւն անառակութեանց , 'ի խնձոյս ուրախութեան և 'ի պարերգութիւն, յամուսնութիւն կամ 'ի պոռնկութիւն ըստ բերման, և 'ի յափշտակութիւն

կուսի կամ 'ի չնութիւն ըստ հրապուրանաց գեղեցիկ դիմացն՝ որ ելանէր նոցա ընդ առաջ։ Ապա անցանէին նոքա 'ի բաժակաց անտի 'ի հակառակութիւնս, և յաղմուկս խռովութեանց ընդ միմեանս։ Եւ 'ի վախճան ամենայնի եկն եկաց 'ի մէջ նոցա Հայրն մեծարու [32]։ Ո՛չ հաճեցաւ նա ընդ գործս նոցա. և յայտնեաց զանձն հակառակ անօրէնն գնացից նոցա։ Ընթացաւ նա բազում անգամ 'ի ժողովս նոցա և 'ի հանդէսս խրախութեանց՝ ուրանօր և եգիտ զնոսա. և քարոզեաց նոցա իբրև հոգւոցն 'ի բանտի զդարձ ապաշխարութեան ընդ արագահաս դատաստանօքն Աստուծոյ [33]։ Բայց ամենայնն գտաւ 'ի զուր։ Նմին իրի ոչ ևս յաւել նա խօսել ընդ նոսա, այլ հեռացոյնս մեկուսացոյց զխորան իւր 'ի նոցանէ։ Եւ ապա հատեալ 'ի լեռնէ զստուար և զերկայնաձիգ գերանս՝ սկսաւ շինել զնաւ իւր մեծակառոյց, չափեալ 'ի կանգուն զերկայնութիւն նորա, զլայնութիւն և զբարձրութիւն։ Ծեփեաց զնա շուրջանակի նաւթիւ. և արար 'ի կողմանէ նորա զդուռն։ Եւ ժողովեաց 'ի նմա զհամբար պաշարոյ բազմաւատ 'ի պէտս մարդոյ և անասնոյ։ Եւ ապա՝ ո՛վ սքանչելեացս, եկին անդր յամենայն անասնոց և 'ի թռչնոց և 'ի ձկանց որ եւթն եւթն, և որ զոյգ զոյգ մտանել 'ի նա ըստ հրամանին Աստուծոյ։ Զկնի նոցա եմուտ և Հայրն, և երեք որդիքն նորա հանդերձ կանամբք իւրեանց ընդ նմա։ Եւ Աստուած փակեաց զդուռնն արտաքուստ։ Յարեաւ յայնժամ հողմն հարաւոյ, և բաղխեալ զսևազգեցիկ և զլայնատարած թևս իւր՝ գումարեաց 'ի միասին զամենայն ամպս առ 'ի ներքոյ երկ-

նից ։ Այս լերինք յօգնականութիւն նոցին արձակեցին զահագին հոսանս խոնաւալից շոգեաց և մառախլոյ ։ Յայնմ վայրի նսեմացեալ հաստատութեան երկնից՝ եկաց 'ի վերայ իբրև զձեղուն ստուերամած ։ Յորմէ սկսան հոսել անձրևք յորդախաղացք . և ոչ դադարեցին , մինչև աներևութացաւ երկիր ։ Իսկ նաւն մշտատատան խաղայր զերեսօք ջուրց , և շրջէր 'ի վերայ ալեաց՝ աներկևան ցռուկաւոր յառաջակողմամբքն ։ Արծանեաց ջրհեղեղն զամենայն բնակութիւնս 'ի վերայ երկրի , և ընկղմեաց 'ի ջուր զփառս նոցա ։ Ծով ծածկեաց զծով , և ոչ եգիտ զցամաքս ։ Իսկ յապարանսն՝ յորս տիրեալ էին յառաջագոյն անառակութիւնք , որջացան հրէշք ծովայինք , և կալան 'ի նոսա զբնակութիւն իւրեանց ։ Այնքան սակաւաթիւ ապրեալքն յանչափ բազմութենէ մարդկան յառաջագոյն , մնեալ 'ի խորշ մի տապանին՝ շրջէին 'ի վերայ ջրոցն ։ Աւա՜ղ ո՜վ Ադամ՝ քանի՜ վիշտք եղեն քեզ 'ի տեսանել անդ զկատարած համօրէն ծննդոց քոց , զկատարածն ասեմ նոցա այնչափ բազմաղէտ , և զսատակումն համայնաջինջ ։ Ո՜րչափ ևս ջրհեղեղ արտասուաց և ցաւոց ընկղմեաց զքեզ յայնժամ ըստ օրինակի որդւոց քոց ։ Մինչև զկնի ձեռն տուեալ հրեշտակին՝ կանգնեաց զքեզ և եհան 'ի վեր զթուլթեամբ . թէպէտև անմխիթար կայիր իբրև զհայր՝ որ ողբս առնու 'ի վերայ կորստեան համօրէն զաւակաց իւրոց յանդիման աչաց ։ Սան որոյ և դժուարաւ կարող եղեր ծանուցանել հրեշտակին զցաւս սրտի քո՝ սովին օրինակաւ ։

Ո՜վ ցաւագին տեսլեանցս՝ որոց կանխագէտ լինիմ յառաջագոյն ։ Յանկալի ևս էր ինձ մնալ 'ի

տգիտութեան անդ հանդերձելոցն: Զի յայնժամ տանէի միայն զբեռն չարեաց անձին իմոյ՝ որ է բաժին ըստ բաւականին առ՚ի բառնալ յիւրաքանչիւր աւուր: Իսկ այժմ բեռինքն բաժանեալ յայլևայլ դարս՝ միանգամայն անկանին յիմ վերայ. և նախագիտութեամբս ծնանին տարաժամ ծնունդք՝ առ՚ի տանջել զիս յառաջքան զգոյութիւն իւրեանց, այն ինչ զմտաւ ածեմ՝ թէ հանդերձեալ են լինել: Մի՛ ոք յայսմհետէ ՚ի խնդիր լիցի յառաջգիտութեան հանդերձելոցն՝ որք հային ՚ի նա, կամ յորդիս իւր: Զի արդարև պատահելոց է նա չարեաց՝ զորոց ոչ կարէ ունել զառաջս կանխագիտութեամբ իւրով: Եւ ոչ նուազ կրեսցէ նա զհանդերձեալ չարիսն ՚ի խորհուրդս իւր, քան յարդիւնս անդ՝ որ ծանրագոյն ևս է առ ՚ի բառնալ: Այլ այս խրատ իմ չունի արդ զտեղի, զի ոչ ևս գտանի մարդ՝ առ՚ի զգուշացուցանել զնա: Իսկ սակաւաթիւ ապրեալքն՝ որք թափառին ՚ի ջրակուտակ անապատի անդ, հուսկ յետոյ սպառեսցին սովու և տուայտանօք: Ես ակն ունէի, թէ ՚ի դադարել անդ հարստահարութեանց և պատերազմաց ՚ի վերայ երկրի՝ ամենայն ինչ բարիոք յաջողեսցի, և խաղաղութիւնն պսակեսցէ զազգ մարդկան երկայնօրեայ երջանկութեամբ: Բայց կարի իմն վրիպեալ գտայ. զի տեսանեմ արդ ոչ նուազ ապականութիւն գործել խաղաղութեան, քան մարտի զկործանումն: Եւ զիա՞րդ մարթ է այդմ լինել. մեկնեա ինձ Առաջնորդդ իմ երկնային: Եւ մի՞թէ վախճա՞ն եղև աստանօր համօրէն ազգի մարդկան:

Որում ետ պատասխանի Միքայէլ՝ օրինակ

զայս ։ Որք միանգամ 'ի վերջոյ յանդիմանն եղեն քեզ 'ի փառս , և յառաւելութիւն մեծութեանց, նոքա են՝ զորս տեսեր զառաջինն երևելիս 'ի շահատակութեան անդ մրցանաց , բայց թափուր էին 'ի ճշմարիտ առաքինութենէ ։ Զկնի հեղլոյ նոցա զայնչափ ճապաղիս արեանց , և սատակելոյ զբազումս , և հնազանդեցուցանելոյ զազգս , և տանելոյ յայն սակս 'ի վերայ երկրի զանուն , զգերագոյն պատիւ , և զմեծագանձ հարստութիւն՝ դարձուցանելոց են զընթացս իւրեանց 'ի հեշտութիւն , 'ի հանգիստ , 'ի դատարկութիւն , 'ի շուայտութիւն և յանառակութիւն , մինչև անկարգութեան նոցին , և խրոխտ ամբարտաւանութեան յարուցանել թշնամիս 'ի բարեկամաց իւրեանց 'ի ժամանակի անդ խաղաղութեան ։ Այլ պարտելոցն 'ի նոցանէ , և գերելոցն 'ի մարտի՝ կորուսանել զազատութիւն իւրեանց , և թողուլ ես զամենայն առաքինութիւնս , և զերկիւղ Աստուծոյ ։ Յոր սակս և կեղծեալ բարեպաշտութիւն նոցա ոչ գտանէ զօգնութիւն ընդդէմ թշնամեաց յահագին պատերազմունս ։ Վասն որոյ թողեալ նոցա զեռանդն աստուածպաշտութեան՝ զամենայն փոյթ 'ի մէջ առնուն առ 'ի կեալ աներկևան ըստ աշխարհի , և կամ 'ի վայելս անառակութեան՝ զոր շնորհեն նոցա տեարք իւրեանց ։ Քանզի երկիրն առ 'ի փորձել զսակաւապիտութիւն նոցա՝ տացէ ըղպտուղ իւր անչափ առատութեամբ . որով և ամենայն ինչ գնասցէ յանկարգութիւն և 'ի խոտորնակութիւն ։ Այլ ամենեքին մոռասցին զարդարութիւն , զհամեստութիւն , զճշմարտութիւն , և զհաւատս . բաց 'ի միոյ անտի՝ որ է միայն որդի

լուսոյ 'ի խաւարային դարու անդ, և միայն բարի 'ի նախատինս չար օրինակաց, հրապուրանաց և գնացից աշխարհին սովորելոյ: Սակայն նա անվեհեր գոլով յերեսաց նախատանաց, արհամարհութեան և բռնութեան նոցա՝ խրատեսցէ զնոսա դառնալ 'ի ճանապարհաց իւրեանց չարաց: Եւ ցուցցէ նոցա զշաւիղս արդարութեան, և զխաղաղաւէտ անդորրութիւն նորա: Ծանուսցէ ևս նոցա զբարկութիւնն՝ որ հանդերձեալ է գալ 'ի վերայ անապաշխարութեան նոցա: Եւ թէպէտ ծաղր լեցի 'ի նոցանէ և կատակեսցի, սակայն Աստուած զնա միայն ծանիցէ այր արդար 'ի մէջ կենդանեաց: Շինեսցէ նա հրամանաւ նորա զտապանդ սքանչելի՝ զոր տեսանես, 'ի փրկութիւն տան իւրոյ և ընտանեաց իւրոց 'ի միջոյ աշխարհին՝ որ նուիրեալն է 'ի սատակումն համայնաջինջ: Զկնի մտանելոյ նորա 'ի տապանն հանդերձ մարդկամբ և անասնովքն ընտրելովք 'ի կեանս, և պատսպարելոյ յամենայն կողմանց՝ բացեալ համօրէն սահանաց երկնից, հոսեսցեն զանձրև յերկիր զտիւ և զգիշեր: Եւ պատառեալ ամենայն աղբերաց անդնդոց՝ բռնասցին 'ի վերայ Ովկիանու անցանել ըստ սահմանս իւր. մինչև յորդութեան ջրոցն ելանել բարձրանալ 'ի վերոյ քան զամենայն բարձրութիւնս լերանց: Յայնժամ և այս լեառն դրախտիս խեթկեալ 'ի բռնութենէ ալեաց եղջերաւոր[34] ջրհեղեղին՝ դղորդեսցի 'ի տեղւոջէ իւրմէ. և համօրէն դալարեօքն հանդերձ և ծառովքն ապականելովք ընկեսցի 'ի կոհակաց անտի ընդգետն մեծ[35] 'ի ծովն անդնդախոր. և անդ արմատասցի 'ի կղզի անբերրի, և յաղարտ վարեալ:

Յորում բազմասցին ձայնք աղաղակի որթուց ծովու, որկաց և նհանգաց. զի ծանիցես, թէ ոչ ընծայէ Աստուած զսրբութիւն տեղւոյ՝ եթէ ոչ տանին զայն մարդիկ ընդ իւրեանս, որ բնակեն 'ի նմա: Այլ այժմ տես և զայլ ինչ՝ որ հանդերձեալ է լինել:

Հայեցաւ նա, և ետես, զի տատանէր տապանն յերեսաց ալեաց ջրհեղեղին՝ որ յայնմ ժամու ակսեալ էր զիջանել: Վասնզի տեղի տուեալ էր ամպոց յերեսաց հիւսիսային հողմոյն. որոյ շնչեալ 'ի ցամաքութիւն երկրի՝ ծածանէր զերեսս ջրոյն 'ի նշանակ թողանալոյ նորա: Եւ պայծառափայլ արեգակն ցոլանայր ջերմութեամբ իւրով 'ի վերայ համատարած ջրեղէն ապակւոյն, և իբրև ըղձարաւի ոք յորդագայնս ըմպէր 'ի զովացուցիչ ալեաց նորա: Եւ այնպէս ստիպէր զհոսանս նոցա յանշարժութենէ անտի յարագ արագ տեղատուութիւն: Որք և ետուն տեղի թեթևընթաց ոտիւքն իւրեանց յանդունդս ծովուն՝ որ յայնմ պահու զադարեցոյց զսահանս իւր. և երկինք փակեցին ըզպատուհանս իւրեանց: Իսկ տապանն ոչ ևս գնայր 'ի վերայ ջրոց, այլ երևէր հաստատեալ 'ի վերայ երկրի 'ի գագաթան անդ բարձրաբերձ լերինն [36]: Եւ յայնժամ տեսանէր Ադամ զկատարս լերանց իբրև զքարաժայռս, յորոց ուժգին խոխոջմամբ ձգէին հոսանք ջրոցն զմոլեգին մակընթացութիւն իւրեանց 'ի ծովն հեռացեալ: Եւ անդէն վաղվաղակի արձակեալ խոյանայր 'ի տապանէ անտի ագռաւն և զկնի նորա աղաւնին՝ պատգամաբերն հաւատարիմ, միանգամ և երկիցս՝ առ 'ի դիտել ըզդալարութիւն ծառոց, և զցամաքութիւն երկրի՝

յորում մարթ իցէ նմա հաստատել զոտս իւր ։ Որ և յերկրորդումն նուագի ածեալ բերէր 'ի բերանի իւրում զշիւղ ձիթենւոյ՝ 'ի նշան հաշտութեանն Աստուծոյ ։ Այլ ահա փութանակի երևէր երկիրն ցամաքեալ . և Հայրն հինաւուրց իջանէր 'ի տապանէ անտի ուղեկցօքն հանդերձ ։ Այլ համբարձեալ զձեռս և զեռանդագին աչս իւր 'ի վեր 'ի շնորհակալութիւն զԱստուծոյ՝ տեսանէր նա 'ի վերայ գլխոյ իւրոյ զամպն ցօղագին . և 'ի նմա զաղեղն սքանչելի և պայծառատեսիլ յերեքկարգեան երանգս՝ որ էր նշան հաշտութեան, և նորոյ ուխտի յաստուածակոյս կողմանէ անտի ։ Ընդ որ կարի իմն զուարձացեալ սրտին Ադամայ՝ որ այնչափ տխրագին էր յառաջագոյն, զայսօրինակ յայտնեաց հրեշտակին զխնդութիւն իւր ։

ՈՎ Վարդապետդ երկնային՝ որ ցուցանես ինձ զհանդերձեալսն իբրև զորկանս, վերստին դառնամ ես 'ի կեանս ընդ տեսիլդ վերջին, և եմ քաջ հաւաստի ընդ կենդանութիւն մարդոյն հանդերձ համօրէն արարածովք, և ընդ պահպանութիւն սերնդոց նոցա ։ Այլ արդ՝ ոչ այնչափ ցաւիմ ես ընդ կորուստ համօրէն որդւոցս չարաց յաշխարհի, քան որչափ ուրախ եմ ընդ գիւտ առն միոյ՝ որ կատարեալն է և արդար, որով հաճի Աստուած յարուցանել միւս ևս աշխարհ, և արկանել 'ի մոռացօնս զբարկութիւն իւր ։ Այլ ասա աղաչեմ, թէ զինչ նշանակեն շառաւիղքդ արձակեալք յերկինս իբրև զարտևանունս Աստուծոյ խաղաղացելոյ ։ Այլ կամ թերևս կարգեալ իցեն նոքա իբրև զծաղկեայ վերջաւորս հանդերձից՝ առ 'ի հաստատել զհոսանուտ եզերս նորուն իսկ ջրալից ամ-

պոյն, զի մի լուծեալ նորա՝ տեղասցի յերկիր ։

Որում ետ պատասխանի Հրեշտակապետն ։ Այս րն քաջ գուշակեցեր զայդ. զի ահա սովին օրինակաւ մտադիւր 'ի բաց թողու Աստուած զբարկութիւն իւր, թէպէտև զզջացեալ էր յառաջագոյն, և սրտմտեալ ընդ խոտորումն մարդոյն. քանզի հայեցեալ նորա ընդ երկիր՝ ետես զնա լցեալ անիրաւութեամբ, և զամենայն մարմին առհասարակ ապականեալ զճանապարհ իւր ։ Այլ 'ի բառնիլ նոցա յերեսաց նորա՝ այր մի արդար եգիտ զայնչափ շնորհս առաջի նորա, մինչև զիջանել նմա 'ի բարկութենէ իւրմէ, և ոչ ջնջել զհամօրէն ազգմարդկան. և դնել ես ուխտ ընդ նոսա վասն ոչ ես ապականելոյ զերկիր ջրհեղեղաւ. և չթողուլ ծովու անցանել վերստին ըստ սահմանս իւր, և անձրևաց ողողել և ապականել զաշխարհ համդերձ մարդկամբ և անասնովք 'ի նմին ։ Եւ յածել իւրում զամպն 'ի վերայ երկրի՝ դնել 'ի նմա զերեքկարգեան աղեղն իւր, առ 'ի հայել ընդ նա, և յիշել զուխտ իւր ։ Օր կալցին անխափան զընթացս իւրեանց տիւ և գիշեր, ժամանակն սերմանելոյ և հնձելոյ, և ջերմութիւն և եղեամն սպիտակափայլ. մինչև հուրն մաքրեսցէ զամենայն արարածս, և երկինք և երկիր նորոգեսցին 'ի բնակութիւն արդարոց [37] ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Միքայէլ Հրեշտակապետն ձգէ զպատմութիւն հանդերձե-լոցն անցից եւ քան զՋրհեղեղն: Եւ 'ի յիշատակել անդ զԱբրահամ՝ համառօտ ըստ կարգի ծանուցանել զհանդերձեալ Զաւակ կնոջն՝ որ խոստացեալն էր Ադամայ եւ Եւայի՝ զկնի անկանելոյ նոցա: Մարդեղութիւն նորա, մահ, յարութիւն եւ համբարձումն. եւ վիճակ Եկեղեցւոյն՝ մինչեւ 'ի միւսան-գամ գալուստ նորա: Զուարճացեալ Ադամայ յոյժ յոյժ տեսլեամբքս, եւ քաջալերեալ խոստմամբքն՝ իջանէ 'ի լեռնէ անտի ընդ Միքայէլի: Զարթուցանէ զԵւայ՝ որ ցայն վայր ննջեալ կայր 'ի քուն քաղցր եւ անխռով անրջովք 'ի հանդար-տութիւն մտաց իւրոց, եւ 'ի պատրաստութիւն հնազան-դութեան կամացն Աստուծոյ: Կալեալ Միքայէլի զձեռա-նէ նոցա՝ հանէ զնոսա 'ի դրախտէ անտի: Սուրն բոցեղէն շո-ղայ 'ի յետուստ նոցա. եւ Քրովբէքն ունին զիւրաքանչիւր կայանս 'ի պահպանութիւն դրախտին:

# ԴՐԱԽՏ ԿՈՐՈՒՍԵԱԼ.

## ԳԻՐՔ. ԺԲ:

Զոր օրինակ ճանապարհորդ ոք՝ թէպէտև փութաջան 'ի գնացս, սակայն հանգիստ առնու 'ի միջօրէի, նոյնպէս հանգեաւ և Հրեշտակապետն 'ի մէջ ապականեալ և նորոգեալ աշխարհի. զի թերևս Ադամ ունիցի ինչ հարցանել ցնա: Ապա վերստին առեալ զբան իւր հեզութեամբ՝ սկսաւ խօսել ընդ նմա օրինակ զայս:

Ապաքէն տեսեր դու զսկիզբն և զկատարած աշխարհիս, և զվերստին ծագումն մարդոյն իբրև յերկրորդ արմատոյ: Այլ տակաւին բազում ինչ մնայ քեզ տեսանել: Սակայն ես քաջ 'ի միտ առնում զտկարութիւն մահկանացու տեսութեան քո. զի հարկ է աստուածային տեսլեանց տկարացուցանել և կարի իմն աշխատ առնել զզգայութիւնս մարդկան: Յայն սակս յայսմհետէ պատմեցից քեզ միայն զհանդերձեալսն. և դու ունկն դիր բանից իմոց [1]:

Երկրորդ սերունդս մարդկան ազգի՝ մինչդեռ տակաւին սակաւաթիւ են նոքա, և երկիւղ դա-

տաստանին անցելոյ կալեալ ունի անմոռաց զմիտս նոցա, զարհուրեալ յերեսացն Աստուծոյ, և պատկառ կացեալ ուղղութեան և արդարութեան՝ վարեն զկեանս իւրեանց անարատութեամբ, և բազմանան ընդ հուպ։ Այլ գործեալ զերկիր՝ ժողովեն զարդիւնս առատութեան ցորենոյ, գինւոյ և ձիթոյ։ Այլ 'ի հօտից անտի կամ 'ի խաշանց ստէպ մատուցեալ 'ի պատարագ զզուարակս, զգառինս և զալոջս՝ 'ի բազմառատ հեղումն նուիրանաց գինւոյ, և 'ի հանդէս տօնից սրբութեան անցուցանեն զկեանս իւրեանց անպարսաւ ուրախութեամբ։ Այլ բնակեն զերկայն աւուրս 'ի խաղաղութեան ընդ հայրենի իշխանութեամբ ըստ տանց իւրեանց և ըստ ազգատոհմից։ Մինչև յառնէ ամբարտաւանն մտօք, և ցանկասէրն փառաց[2]։ Որոյ ոչ շատացեալ ընդ գեղեցիկ հաւասարութիւն եղբայրականն վիճակի՝ անձին գրաւէ բռնութեամբ զիշխանութիւն անարժան 'ի վերայ եղբարց իւրոց. և հալածական առնէ յերկրէ զմիաբանութիւն սիրոյ, և զօրէնս բնութեան։ Այլ որսայ (և որսք նորա են մարդիկ, և ոչ անասունք) մարտիւ և թակարդիւք թշնամութեան զորս միանգամ չառնուն յանձն զհնազանդութիւն ընդ բռնակալ իշխանութեամբ նորա։ Այլ յայս սակս կոչեսցի նա Որսորդ հզօր առաջի Աստուծոյ՝[3] գոգցես 'ի նախատինս նորին, և թեկն ածեալ երկրորդ իշխանութեան նորա։ Այլ յապստամբութենէ անտի առցէ նա զանուն իւր, թէպէտև նա ինքն լեցի չարախօս զայլոց 'ի նոյն սակս։ Չուեալ նորա 'ի կողմն արևմտից ընդ խուժանի իւրում՝ զորս նոյնօրինակ ցանկութիւն փառաց միաբանէ ընդ նմա, կամ

ընդ նովաւ, զատանէ զդաշտն՝ յորում բղխէ սեաւ
ծամխ եռացեալ կպրոյ 'ի ներքուստ երկրի, գոդ-
ցես 'ի բերանոյ անտի դժոխոց: Եւ անդ առնու
խորհուրդ 'ի միասին ընդ նոսա՝ շինել 'ի նիւթոյ
անտի և յաղիւսոյ զքաղաք կամ զաշտարակ, որոյ
բարձրութիւն ժամանեսցէ յերկինս: Զի թող-
ցեն նովաւ զանուն իւրեանց, գուցէ սփռեալ նո-
ցա ընդ երեսս երկրի հեռաւորեսցին 'ի միմեանց՝ կո-
րիցէ յիշատակ նոցին: Եւ այսպէս չհային ընդ 'ի
լաւութիւն կամ 'ի վատթարութիւն համբաւոյ:
Այլ Աստուած՝ որ բազում անգամ յայտ եղանէ
անտեսաբար 'ի քննութիւն գործոց մարդկան, և
շրջի ընդ բնակութիւնս նոցա, անդէն ակնարկեալ՝
իջանէ յերկնից 'ի տեսանել զքաղաք նոցա, մինչև
է խափանեալ աշտարակի նոցա զաշտարակս երկ-
նից: Եւ 'ի նախատինս նոցին արկանէ 'ի լեզուս
նոցա զայլևայլ հնչումն ձայնից 'ի բնաջինջ բար-
ձումն բնիկ բարբառոյ նոցա: Եւ փոխանակ այնր
սփռէ 'ի նոսա զբարձրաբարբառ զօղանջիւն ան-
ծանօթ յառաջագոյն: Յորմէ անդէն վաղվաղակի
յառնէ 'ի մէջ շինողաց աշտարակին խառնաձայն
հնչիւն աղաղակի. զոչեն առ միմեանս, և ոչ իմա-
նան զխօսս իրերաց: Մինչև կերկերեալ ձայնից նո-
ցա, և ինքեանք յանհնարինս կատաղեալ՝ զոգցես
ընդ ծանակամս իւրեանց, խռովեալ տագնապին
յանձինս: Իսկ երկինք ծիծաղին 'ի վերուստ՝ տե-
սեալ զանհնազին աղմուկ խռովութեան նոցա, և
միանգամայն լուեալ զսոսկալի բարբառ աղաղա-
կին: Եւ այնպէս ծաղածանակ լեալ նոցա՝ լքա-
նեն զշինուածն. որ և յայն սակս կոչի Բաբելոն
կամ Խառնակութիւն:

Առ այս Ադամ ցուցեալ զհայրական աղէտս իւր՝ արար պատասխանի զայսօրինակ։ Ո՜վ անիծապարտ որդւոյն. զիա՞րդ ցանկայ նա գեր ՚ի վերոյ լինել քան զեղբարս իւր, և անձին գրաւել բռնութեամբ զիշխանութիւնն՝ որ ոչ է տուեալ նմա յԱստուծոյ. զի նա ՚ի վերայ անասնոց, ձկանց և թռչնոց միայն շնորհեաց մեզ զիշխանութիւն տէրական։ Եւ զայս իրաւունս ունիմք մեք ՚ի պարգևաց նորա։ Իսկ զմարդ ոչ կարգեաց նա տէր ՚ի վերայ մարդոյ. այլ անձին եւեթ պահեաց զայս պատիւ՝ թողեալ զմարդն ազատ ՚ի մարդկային իշխանութենէ անտի [4]։ Սակայն բռնաւորս այս ոչ միայն ՚ի վերայ մարդոյն արկանէ զբռնութիւն իւրում անիրաւութեան, այլև յԱստուածութիւն անդր ձգտեցուցանէ զաշտարակ իւր՝ մատուցեալ ՚ի պաշարումն, և հրաւէր տուեալ մարտի։ Ո՜վ անմտութեան առնս։ Զի զի՞նչ կերակուր մարթ է նմա տանել անդր ՚ի դարման անձին և յանդուգն խուժանի իւրոյ, ուր անօսրութիւն օդոյն ՚ի վերոյ քան զամպս՝ տանջելոց է ըզթանձրութիւն փորոտեաց նորա, և ինքն սովալլուկ սատակելոց է յերեսաց կարօտութեան շնչառութեան, թէ և ոչ հացի։

Որում Միքայէլ ետ զայս պատասխանի։ Իրաւամբք համարիս դու անիծապարտ զորդին՝ որ ՚ի խաղաղաւէտ վիճակի անդ մարդկան հաստուցանէ նոցա զայնչափ վիշտս, կամեցեալ նուաճել զազատութիւն նոցա բանական։ Բայց ծանիր քաջ, զի զկնի առաջին կործանմանն քո կորեաւ ազատութիւնն ճշմարիտ՝ որ հանգոյն երկուորեակի անբաժներ ՚ի բանէն, և չունէր զառանձին գոյութիւն։

Վասն որոյ յաղօտանալ անդ բանին 'ի մարդն, կամ յոչ հնազանդել նմա, ընթոստացեալ անկարգ ցանկութեանց և կրից՝ յափշտակեն 'ի բանէ անտի զիշխանութիւնն, և արկանեն ընդ ծառայութեամբ զմարդն՝ որ ազատն էր ցայն վայր։ Եւ զի թողու նա 'ի ներքս տիրել անարժան իշխանութեանց 'ի վերայ բանին, նմին իրի և Աստուած արկանէ զնա արտաքուստ ընդ բռնաւոր տերամբք՝ որք բազում անգամ գոգցես յանիրաւի վարեն 'ի գերութիւն զարտաքին ազատութիւն նորա։ Արդ՝ հարկ է զայլ բռնակալութեան. բայց բռնաւորն չունի յայն սակս արդարանալ։ Սակայն երբեմն այնչափ վատթարանան մարդիկ յառաքինութենէ անտի՝ որ է բանն բնական, մինչև ոչ անիրաւութեան, այլ արդարութեան և ցաւագին անիծից միանգամայն՝ զրկել զնոսա յարտաքին ազատութենէ իւրեանց։ Վկայ լիցի քեզ անպատկառ որդին Արկղակերտի[5]. որ 'ի սակս անարգանացն՝ զոր ընծայէ հօր իւրում, լուիցէ 'ի նմանէ զայս ցաւագին անէծս 'ի վերայ մեղապարտ ծննդոց իւրոց՝ ծառայ ծառայից[6]։ Զայսօրինակ և աշխարհս երկրորդ ըստ առաջնոյն ձգի միշտ 'ի չարեաց անտի 'ի վատթարագոյնն. մինչև զկնի ձանձրացեալ Աստուծոյ յերեսաց անիրաւութեանց նոցին՝ ոչ ևս երևի նոցա. և դարձուցանէ ևս զաչս իւր 'ի նոցանէ։ Եւ յայնմհետէ դնէ 'ի մտի իւրում թողուլ զնոսա գնալ ըստ ճանապարհաց իւրեանց չարաց. և ընտրել իւր ազգ սեպհական 'ի կարդալ զանուն նորա։ Եւ զայն յարուցէ 'ի հաւատարիմ առնէն՝ [7] զոր Եփրատես սնուցանէ 'ի կռապաշտութեան անդ, մինչդեռ տակաւին կայր նա յանկոյս։

Ո՞վ (մինթէ մա՞րթ էր քեզ հաւատալ զայն) այնպէս կրթեցին մարդիկ յանբանութիւն, մինչև առ կենդանութեամբ նորուն իսկ Նահապետին զերծելոյ 'ի Ջրհեղեղէ՝ թողուլ նոցա զԱստուածն կենդանի, և խոնարհիլ 'ի պաշտօն ձեռակերտաց իւրեանց փայտից և քարանց՝ իբրև Աստուածոց: Բայց Բարձրեալն հաճեսցի կոչել զնա տեսլեամբ 'ի տանէ հօր իւրոյ, և յազգատոհմէ իւրմէ, և 'ի սուտ աստուածոց յերկիրն՝ զոր հանդերձեալ է տալ նմա. և անդ յարուցանել 'ի նմանէ զազգ հզօր և զօրաւոր. և այնչափ առատութեամբ հեղուլ զօրհնութիւն իւր 'ի վերայ նորա, մինչև ամենայն ազանց օրհնիլ 'ի զաւակի նորին: Նոյնժամ փութանակի ունկնդիր լինի նա բանից նորա. և թէպէտ ոչ գիտէ զերկիրն՝ յոր հանդերձեալ է գնալ, սակայն և այնպէս հաւատայ աներկբայ: Տեսանեմ ես զհաւատս նորա (զոր քեզ ոչ է մարթ) որով թողու նա զաստուածս իւր, զբարեկամս, և զհայրենիսն՝ զՈւրն[8] Քաղդեացւոց, և անցանէ ընդ հունն 'ի Խառան: Նա զկնի նորա բազմութիւնք հօտից և խաշանց, և յոգնաթիւ ծառայից: Նա անցանէ ոչ իբրև զաղքատ ոք անօգնական, այլ թողեալ զամենայն մեծութիւնս իւր 'ի ձեռս Աստուծոյ՝ որ կոչէն զնա յերկիր օտարական: Արդ՝ հասանէ նա 'ի Քանան: Տեսանեմ զվրանս նորա հարեալ 'ի Սիւքէմ, և 'ի մերձակայ դաշտավայրին Մօրեհայ[9]: Նա խոստմամբ ընդունի նա յԱստուծոյ 'ի պարգև իւրում զաւակի զհամօրէն երկիրն 'ի Համաթայ հիւսիսոյ մինչև ցանապատն հարաւոյ (զտակաւին անանուանս կոչեմ 'ի հանդերձեալ անուանս նոցա), և 'ի Հերմոնէ արևելից

մինչև 'ի ծովն մեծ արևմտից։ Հերմոն է լեառն, և յայնկոյս նորա անկեալ կայ ծով։ Հայեաց 'ի կրկին տեղիսդ՝ զորս ցուցանեմ քեզ 'ի տեսլեան։ Սա ծովեզերըն լեառն Կարմեղոս, և Յորդանան կրկնավտակ՝ են անվրէպ սահմանք ընդ արևելս։ Սակայն որդիք նորա ձգեսցին և մինչև 'ի Սենիր ընդ երկայնութիւն լերանցդ։ Այլ դու քաջ 'ի միտ առ զօրհնութիւնն ամենայն ազանց 'ի զաւակի նորա։ Նոյն սովլին զաւակաւ իմն զհզօր Փրկիչն քո՝ որ հանդերձեալ է խորտակել զգլուխ օձին։ Որ և յայտնագոյն ևս ցուցցի քեզ հուպ ընդ հուպ։ Այս երանելի Աբրահամ՝ որ 'ի ժամանակի իւրում հանդերձեալ է կոչիլ Աբրահամ հաւատարիմ, Թողու իւր որդի, և յորդւոյ անտի Թոռն. երկոքին ևս նմանատիպք նմին 'ի հաւատս, յիմաստութեան, և 'ի համբաւ բարեաց։ Մնեալ Թոռինն յերկոտասան որդիս՝ անցանէ յերկրէն Քանանացւոց 'ի կոչեցեալն զենի Եգիպտոս. զոր և բաժանէ գետն Նեղոս։ Տես զտեղին՝ յորմէ հոսէ նա, և իջանէ 'ի ծով անդր ընդ եւթն բերանս։ 'Ի ժամանակի անդ սովուն գայ նա բնակել 'ի նմին երկրի՝ հրաւիրեալ 'ի կրտսեր որդւոյ իւրմէ, յորդւոյն ասեմ յայնմանէ՝ որոյ երախտիք կացուցանեն զնա երկրորդ 'ի Թագաւորութեան անդ Փարաւոնի։ Մեռանի նա անդանօր, և Թողու զզաւակ իւր աճեցեալ յազգ. Այլ 'ի կարի իմն բազմանալ նոցա՝ անկանի 'ի կասկածանս արքայն յաջորդ նորա. և խնդրէ խափանել զաճումն նոցա իբրև զբազմաթիւ բնակակից պանդխտաց։ Այն իրի և անողորմ օտարատեցութեամբ զերիս առնէ զնոսա 'ի հիւրոց անտի, և տայ ևս սպանա

նել զարու մանկանս նոցա ։ Մինչև 'ի ձեռն երկո-
ցունց եղբարց՝ (կոչեալ զանուանս նոցա Մովսէս
և Ահարոն) զորս առաքէ Աստուած 'ի փրկու-
թիւն ժողովրդեան իւրոյ, դառնան նոքա վերս-
տին յերկիրն խոստացեալ փառօք և աւարաւ ։
Բայց անօրէն թագաւորն՝ որ չառնու յանձն ճա-
նաչել զԱստուածն նոցա, և կամ ընդունել զպատ-
գամս նորա, ստիպեսցի նախ ահեղասաստ նշանօք
և դատաստանաւ ։ Գետքն դարձցին յարիւն ա-
ռանց հեղման արեան ։ Գորտք, ճճիք և ճանճք
լցցեն զազիր զարշութեամբ զապարանս նորա, և
զերկիրն առ հասարակ ։ Կեղ և խաղաւարտ ե-
ռասցի 'ի մարմնի նորա, և ամենայն ժողովրդեան ։
Որոտմունք կարկտախառն, և կարկուտ հրալից
պատառեսցեն զօդն Եգիպտացւոց, և հոսեալ
յերկիր՝ ճարակեսցին ընդ ամենայն տեղիս ։ Ըզ-
խոտ, զարմտիս և զծառեան՝ որ միանգամ մնացեալ
է 'ի նոցանէ, ծախեսցէ թխպագին ամպն մարա-
խոյ իջեալ 'ի խառնարհ, և ոչ թողցէ խոտ դալարի
'ի վերայ երկրի ։ Խաւար շօշափելի հովանասցի 'ի
վերայ համօրէն սահմանաց Եգիպտոսի, և ստուե-
րացուսցէ զնոսա աւուրս երիս ։ Ապա 'ի մի հարուած
սատակեսցին զհասարակ գիշերաւ ամենայն ան-
դրանիկք Եգիպտացւոց ։ Այսքիւք տասնեքումբք
հարուածովք զգաստացեալ Վիշապն գետոյն՝ 10
անսայ թողուլ զնժդեհսն, և բազում անգամ մեղ-
մացուցանէ զխստութիւն սրտի իւրոյ ։ Սակայն և
այնպէս անշարժ կայ իբրև զսառն՝ որ զկնի լուծա-
նելոյն առաւել ևս պնդանայ ։ Մինչև 'ի սրտմ-
տութեան անդ իւրում պնդեալ զկնի նոցա՝ զորս
եթող սակաւ մի յառաջ, ընկղմի զօրօքն համ-

դերձ 'ի ծով անդր ։ Եւ Թողու Իսրայէլացւոցն անցանել իբրեւ ընդ ցամաք ընդ մէջ կրկին բխո-րեղեան պարսպաց, որք ակն ածեալ 'ի գաւազա-նէն Մովսիսի՝ որ տայ նոցա զհրաման, կան բաժա-նեալ մինչեւ ցհասանել զերծելոցն 'ի ցամաք ։ Զայսպիսի սքանչելի զօրութիւն առաքեաց Աս-տուած Սրբոյ իւրում. Թէպէտեւ ինքն իսկ է 'ի Հրեշտակի անդ՝ որ գնայ առաջի նոցա յամպն եւ 'ի սիւն հրոյ, յամպն 'ի տուէ, եւ 'ի սիւն հրոյ 'ի գիշերի. եւ առաջնորդէ նոցա զճանապարհայն 'ի վանել զխստասիրտ արքայն՝ 'ի պնդիլ նորա զկնի նոցա ։ Որ եւ պնդեսցի զգիշերն ողջոյն. այլ մը-տեալ խաւարի ընդ մէջ՝ ոչ Թողցէ նմա մերձենալ 'ի նոսա մինչեւ ցժամ առաւօտուն ։ Յայնժամ հայեցեալ Աստուծոյ 'ի միջոյ հրեղէն սեան եւ ամ-պոյն՝ խռովեցուցեալ զԹշնամիս իւր, եւ խորտակեա-ցէ զանիւս կառաց նոցա ։ Յայնժամ վայրի վերստին ձգէ Մովսէս հրամանաւն Աստուծոյ զհզօր գա-ւազան իւր 'ի վերայ ծովուն ։ Հնազանդի նա գա-ւազանի նորա. եւ այնպէս ալիքն միւսանգամ ճա-կատեալ՝ ընկղմեն զպատերազմն նոցա ։ Իսկ զա-ւակն ընտրեալ յառաջ խաղայ 'ի ծովեզերէ ան-տի 'ի Քանան՝ անվտանգ ընդ անապատն ահա-գին ։ Այլ ոչ ընդ կարճոյ ճանապարհ, գուցէ 'ի մտանել նոցա 'ի բազմամարդով երկիրն Քանա-նացւոց՝ պատերազմն զարհուրեցուցէ զանփորձսն, եւ երկիւղն դարձուցէ զնոսա անդրէն յԵգիպ-տոս. եւ տացէ նոցա նախամեծար ընտրել զանփա-ռունակ կեանս ընդ նուաստ ծառայութեամբ ։ Զի կեանք կարի իմն քաղցր են ազնուականի եւ վատասահմի՝ որ անկրթականն է 'ի չէնս, եթէ ոչ

յանդգնութիւնն ձգեցէ զնա ։ 'Ի դեգերել նոցա յաՀագին անապատին՝ գտանեն և զայս օգուտ Հասարակաց ։ Զի Հաստատեն անդ զիշխանութիւն իւրեանց. և 'ի միջոյ երկոտասան ցեղիցն ընտրեն զգերագոյն ատեանն ծերակուտի՝ իշխել նոցա կարգեալ օրինօք ։ Եւ Աստուած ինքնին 'ի լեռնէն Սինայ՝ որոյ միգապատ գագաթն դողացեալ սասանի յիջանել նորա, տայ նոցա յորոտումն, 'ի փայլատակունս և յաՀագին բարբառփողոյ զօրէնս, կարգեալ զայնս մասամբ 'ի քաղաքական իրաւունս, և մասամբ 'ի պաշտամունս զոՀից աստուածպաշտութեան։ Եւ ծանուցանէ նոցա յառաջագոյն օրինակօք և ստուերօք զԶաւակն աւՀմանեալ՝ որ Հանդերձեալ է խորտակել ըզգլուխ օձին, և կատարել զփրկութիւն ազգի մարդկան ։ Այլ ձայնն Աստուծոյ աՀեղ իմն է 'ի լսելիս մարդկանացուաց. վասն որոյ խնդրեն նոքա, զի Մովսէս տարցէ առ նոսա զպատգամս նորա. և այնպէս լցին աներկիւղ ։ Կատարէ Աստուած զխնդրուածս նոցա, և ծանուցանէ ևս՝ թէ անՀնար է մատչել առ Աստուած առանց Միջնորդի ։ Զորոյ զգերագոյն պաշտօն բերէ Մովսէս օրինակաւ յանձին իւրում, և ցուցանէ զառաւելութիւն նորա քան զինքն ։ Պատմէ նա յառաջագոյն զօր նորա. և ամենայն Մարգարէք յիւրաքանչիւր դարս նախաձայնեալ քարոզեն զժամանակն Օծելոյն մեծի ։ Զկնի Հաստատելոյ սովլին օրինակաւ օրինաց և պաշտամանց զոՀից՝ այնչափ բերկրի Աստուած ընդ Հնազանդութիւն մարդկան, մինչև Հաճել նմա կանգնել զխորան իւր 'ի մէջ նոցա, և Սրբոյն բնակել ընդ մարդկանացուաց ։ Վասն որոյ շինեցին 'ի

հրամանէ նորա Սրբութիւնն սրբոց եղևնափայտիւք, և օծցի ոսկւով։ Դնիցի 'ի նմա տապանակն, և 'ի տապանակի անդ վկայութիւն նորա՝ 'ի յիշատակ ուխտին։ Եւ 'ի վերայ նորա աթոռ քաւութեան 'ի մէջ թևոց երկոցունց պայծառափայլ Քերովբէից։ Լուցցին առաջի նորա եւթն ճրագարանք իբրև 'ի նշանակ երկնային ղամբարացն 'ի կենդանակամարի [11] անդ։ 'Ի վերայ խորանին կացցէ ամպ 'ի տուէ, և լուսափայլութիւն հրոյ 'ի գիշերի՝ յապահովութիւն ճանապարհի նորա։ Եւ այնպէս առաջնորդութեամբ հրեշտակին հասնեն ապա յերկիրն խոստացեալ Աբրահամու և զաւակի նորա։ Թողում պատմել և զայլ ինչ բազում՝ զի երկար են յոյժ, թէ քանի պատերազմունս հանդերձեալ են նոքա մղել, քանի թագաւորս սատակել, և քանի տէրութիւնս գրաւել։ Եւ կամ որպէս արեգակն կացցէ անշարժ յերկինս զօր մի ողջոյն, անազանեալ զանվրէպ ընթացս գիշերոյն յայս ձայն հրամանի մարդոյն՝ թէ « Կաց արեգակն 'ի Գաբաւոն, և դու լուսին 'ի ձորն Եղոնայ՝ մինչև յաղթեսցէ Իսրայէլ » [12]։ Եւ յայս անուն կոչեալ զերրորդն յԱբրահամէ՝ զորդին Իսահակայ, և ըստ նմանէ զհամօրէն ծնունդս նորա՝ որք սովին օրինակաւ հանդերձեալ են տիրել երկրին Քանանացւոց։

Յայսմ վայրի Ադամ բանս 'ի մէջ եարկ, և ասաց ցհրեշտակն։ Ո՞վ առաքեալդ յերկնից, և լուսաւորիչդ իմաւումն խաւարի՝ զհաճոյականսն արդարև յայտնեցեր ինձ, և յաւէտ իմն՝ զորս հայրն յԱբրահամ և 'ի զաւակս նորա։ Արդ՝ յայս նուագ զառաջինն գտանեմ զաչս իմ բացեալ տիրապէս,

և զսիրտն իմ անդորրացեալ 'ի տատանմանական խորհրդոցս յայս վայր, թէ զինչ ինչ արդեօք անցանելոց իցեն ընդ իս, և ընդ համօրէն ազգ մարդկան։ Զի այժմ տեսանեմ զօրն նորա՝ յորում համադերձեալ են օրհնիլ ամենայն ազինք։ Չեմ արժանի երախտեացս՝ որ չարաչար 'ի խնդիր եղէ արգելեալ գիտութեան։ Սակայն տակաւին ոչ քաջ 'ի միտ առնում զպատճառն այնչափ՛ բազմապատիկ օրինաց՝ որք տուեալ լինին նոցա, յորոց միջի հաճի Աստուած բնակել 'ի վերայ երկրի։ Զի բազմութիւնք օրինաց յայտ առնեն և զբազմութիւն մեղաց 'ի նոսա։ Իսկ զիա՞րդ մարթ է Աստուծոյ բնակել ընդ մեղաւորաց։

Որում Միքայէլ արար պատասխանի։ Մի՛ երկնչիր ընդ թագաւորել մեղաց 'ի նոսա՝ իբրև 'ի ծնունդս քո։ Վասն որոյ տացին նոցա օրէնք 'ի սանձահարել զխստորնակութիւն բնութեան նոցա՝ որ շարժէ զմեղս 'ի պատերազմ ընդդէմ օրինաց։ Զի տեսեալ նոցա զօրէնսն բաւական լինել միայն 'ի յայտնել զմեղս, այլ ոչ բառնալ զայն 'ի ձեռն ստուերական քաւութեանց, և արեանց ցլուց և նոխազաց՝ 'ի միտ առցեն զկարևորութիւն պատուական ևս արեան 'ի հատուցումն փոխանակ մարդոյն, արդարոյն ընդ մեղաւորի։ Իսկ սովին արդարութեամբ՝ որ համարեալ է նոցին հաւատովք, գտցեն նոքա զհաշտութիւն ընդ Աստուծոյ, և զխաղաղութիւն խղճի մտաց իւրեանց՝ զոր օրէնքն ոչ կարեն խաղաղացուցանել 'ի ձեռն պաշտամանց, և մարդոյն անհնար է լնուլ զպարտիս բնութեան՝ առանց որոյ ոչ կարէ կեալ։ Վասն այսորիկ թերի երևին օրէնքն. և տուեալ են միայն

առ աւանդելոյ մարդկան 'ի լրման ժամանակի լաւագոյն եւս ուխտ զկնի ամբառնալոյ զնոսա 'ի ստուերական օրինակաց անտի 'ի ճշմարտութիւն , 'ի մարմնոյ 'ի հոգի , 'ի խիստ օրինադրութենէ յազատ ընդունելութիւն մեծագոյն եւս օրինաց , 'ի ծառայական երկիւղէ յորդիական , և 'ի գործոց օրինաց 'ի հաւատոցն ։ Նոյն յայն սակս Մովսէս՝ թէպէտև այնչափ սիրելին է Աստուծոյ , սակայն գոլով միայն պաշտօնեայ օրինաց՝ ոչ տարցի զժողովուրդն յերկիրն Քանանացւոց , այլ Յեսու՝ զոր Հեթանոսք կոչեն Յիսուս . բերեալ յանձին զանուն և զպաշտօն նորին՝ որ հանդերձեալ է սատակել զօձն հակառակորդ , և ողջամբ դարձուցանել անդրէն զմարդն երկարաժամանակեայ վտարանդի յանապատի աշխարհիս՝ 'ի դրախտն յաւերժական հանգստեան ։ Նոյն յայնժամ հաստատեալ նոցա 'ի Քանանու երկրաւոր՝ բնակեցին անդ երկայնօրեայ , և յաջողեցին . մինչև մեղք նոցա ազգովին՝ վրդովեցէ զխաղաղութիւնն հասարակաց , և շարժեցէ զԱստուած յարուցանել նոցա զթըշնամիս ։ Յորոց և բազում անգամ յապաշաւել նոցա փրկէ զնոսա՝ նախ 'ի ժամանակս Դատաւորաց , և ապա առ Թագաւորօքն ։ Յորոց երկրորդն մեծանուն աստուածպաշտութեամբ և քաջութեամբ՝ ընկալցի զանհրաժեշտ խոստումն ընդանշարժ հաստատութիւն թագաւորութեանն իւրոյ 'ի յաւիտեան ։ Զնոյն քարոզեցին և ամենայն Մարգարէք , թէ յարմատոյ թագաւորութեան Դաւթի՝ ( յայս անուն կոչեցի արքայդ ) ելցէ Որդի , և 'ի նա յուսասցեն ամենայն հեթանոսք ։ Որ է զաւակ կնոջն խոստացեալ քեզ , և

Մարտահամու, եւս և Թագաւորացն՝ իբրև վերջին 'ի նոցանէ. զի թագաւորութեան նորա վախճան մի լիցի: Սակայն պէտք են յառաջագոյն երկայնամիտ յաջողդութեան նոցա: Որդին Դաւթի գերահռչակ 'ի մեծութեան և յիմաստութեան՝ հանգուցեալ 'ի շքեղապանծ տաճարի զամպատապատ տապանակն Աստուծոյ՝ որ փառաբանդեալն է ցայս ժամ 'ի խորանս: Զկնի նորա մնացեն 'ի համար թագաւորաց բարիքն և չարք միանգամայն. այլ չարացն յոլովագոյն են անուանք: Որոց գարշելի կռապաշտութիւն, և այլ եւս յանցանք յաւելեալ ընդ ժողովրդեանն՝ այնպէս շարժեն զԱստուած 'ի սրամտութիւն բարկութեան, մինչև թողուլ լըքանել զնոսա յերեսաց, և դնել զերկիր նոցա և զքաղաք, զտաճար իւր և զտապանակ հանդերձ համօրէն կահիւքն սրբութեան՝ 'ի նախատինս և յաւար խոժոռապանծ քաղդէին, զորոյ զբարձրութիւն պարսպացն տեսեր դու յառաջագոյն կործեալ 'ի խառնակութիւն. որ և զկնի կոչի Բաբելոն: Նոյն թողու զնոսա 'ի գերութեան ամս եւթանասուն: Իսկ ապա դարձուցանէ անդրէն՝ 'ի յուշ բերեալ զգթութիւն իւր, և զուխտն՝ զոր երդուաւ Դաւթի, և հաստատեաց զայն իբրև զաւուրս երկնից: Դարձեալ նոցա 'ի Բաբելոնէ հրամանաւ թագաւորացն տեարց իւրեանց՝ զորոց ըզսիրտ լինքնին իսկ շարժէ Աստուած, շինեն վերստին զտաճար նորա. և կեան առժամանակ մի խոնարհութեամբ և զգաստութեամբ. մինչև աճեալ նոցա 'ի մեծութիւն և 'ի բազմութիւն՝ եղանեն հակառակ միմեանց: Բայց հակառակութիւնն սկսանի նախ 'ի Քահանայից անտի 'ի պաշտօնէից սե-

ղանոյն, որոյ պատիւ էր յաւէտ իմն փութալ 'ի պահպանութիւն խաղաղութեան: Սակայն հակառակութիւն նոցա ձգէ զպղծութիւնն և 'ի վերայ նորուն իսկ տաճարին Աստուծոյ: Հուսկ յետոյ գրաւեալ նոցա յանձինս զգաւազան արքայական՝ առոչինչ գրեն զորդիսն Դաւթի. և ապա յանձնեն զայն 'ի ձեռս օտարի՝ զի Մեսիայն կամ Ճշմարիտ Օծեալ արքայն ծնցի մերկ կողոպտեալ յիրաւանց անտի իւրոց: Այլ 'ի ծննդեան նորա աստղն նորատեսիլ յերկինս՝ ծանուցանէ զգալուստ նորա Իմաստնոցն արևելից, որք եկանեն 'ի խնդիր առ 'ի մատուցանել նմա խունկս, զմուռս և ոսկի: Զտեղի ծննդեան նորա յայտնէ և լուսապայծառ Հրեշտակն հովուացն անմեղաց՝ որք պահէին զպահպանութիւն գիշերոյ հօտից իւրեանց: Ընթանան նոքա փութանակի անդր լի խնդութեամբ, և լսեն 'ի համախմբեալ դասուց անտի հրեշտակաց զերգս փառաբանութեանց նորա: Մայր նորա օրիորդն Կոյս, և հայր նորա՝ զօրութիւն Բարձրելոյն: Նստցի նա յաթոռ ժառանգութեան իւրոյ. և սահմանք թագաւորութեան նորա լցցին ամենայն ծագս երկրի, և սահմանք փառաց նորա երկինք:

Դադարեցոյց նա զբանն իւր աստանօր, զի ետես զԱդամ առ խնդութեան հարեալ յողջս արտասուաց՝ իբրև յերևսաց ցաւոց: Որ և զկնի խօսեցաւ ընդ նմա՝ օրինակ զայս: Ո՞վ մարգարէ աւետաբեր խնդութեան, և ցուցիչ իմում ակնկալութեան: Արդ՝ քանզի 'ի միտ առնում ես զկոչումն Զաւակի կնոջն՝ վերջին յոյս ակնկալութեան մերոյ. զոր յառաջագոյն բաղձում անգամ

վայրապար խնդրեցին մտադիր խորհրդոցն իմ։ Ուրախ լեր կուսածին Մայր ամենասիրելի Երկնից՝ զի դու համբերձեալ ես ելանել յերանեաց իմոց, և 'ի քում որովայնէ Որդին Աստուծոյ։ Սովին օրինակաւ միացի Աստուած ընդ մարդկան, և օձն մնասցէ անշուշտ խորտակման իւրում գլխոյ մահաբեր հարուածովք։ Այլ ասա՛ ով Մարգարէ, ե՞րբ, և ուրանօ՞ր ունին նոքա մարտնչել ընդ միմեանս. և զի՞նչ հարուած մնայ զարշապարաց Յաղթողին։ Որում Միքայէլ ետ զայս պատասխանի։ Մի համարիր զպատերազմ նոցա իբրև զմենամարտութիւն ընդ միմեանս. և մի առեալ զվէրսն գլխոյ կամ զարշապարի նոցա։ Ոչ յայն սակս միաւորէ Որդին զմարդկութիւն ընդ աստուածութեան իւրում, զի առաւելագոյն զօրութեամբ յաղթեսցէ քումդ թշնամւոյ. և ոչ այնպէս յաղթահարի Սատանայ՝ (որոյ կործանումն յերկնից մահաբեր եւս ջախջախմանք են գլխոյ նորա) մինչև ոչ ևս կարող լինել նմա տալ քեզ վէրս մահու։ Այլ Փրկիչ քո համբերձեալ է գալ 'ի բժշկել զայն։ Ոչ գայ նա 'ի ջնջել զՍատանայ, այլ զգործս նորա՝ 'ի քեզ, և 'ի զաւակի քում։ Գայ նա 'ի լնուլ զթերութիւն քումդ հնազանդութեան յօրինացն Աստուծոյ՝ որ եդաւ 'ի վերայ քո ընդ պատժով մահու. և կրել յանձին զմահ՝ որ է պատիժ քումդ պատուիրանազանցութեան, և ծնելոցն 'ի քէն։ Սովին օրինակաւ և եթ հնար է առնել զվճարումն վերին արդարութեան։ Լցցէ նա ճշդիւ զօրէնս Աստուծոյ հնազանդութեամբ և սիրով. թէպէտև սէր նորա միայն բաւական էր 'ի լնուլ զայն։ Կրեսցէ զպատիժս քո 'ի

մարմնի իւրում՝ եկեալ յանապականն կեանս, և 'ի մահ անիծից : Նոյն քարոզեսցէ կեանս ամենեցուն՝ որոց հաւատան 'ի փրկութիւն նորա : Նոյն զի հնազանդութիւն նորա նոցին է համարեալ 'ի ձեռն հաւատոցն՝ ծանիցեն նոքա զփրկութիւն անձանց յերախտեաց նորա, և ոչ լոկ 'ի գործոց իւրեանց՝ Թէպէտև իցեն ըստ օրինաց : Արդ՝ ատեացի նա, հայհոյեցի, ըմբռնեցի, դատեցի, և 'ի մահ նախատանաց և անիծից դատապարտեցի. և եղեալ 'ի խաչ յազգէ իւրմէ՝ մեռցի 'ի նմա, առ'ի տալ նոցա զկեանս : Սակայն նա բևեռեսցէ ընդ խաչափայտն իւր զԹշնամիս քո, զօրէնսն ասեմ՝ որք կան քեզ հակառակ, և զմեղս համօրէն մարդկան ազգի՝ խաչակցեալ զնոսա ընդ իւր, զի մի ևս վնասեսցեն որոց ուղղութեամբ հաւատան 'ի հատուցումն նորա : Օ այս օրինակ մեռանի նա. այլ վերստին կենդանանայ ընդհուպ, զի մահն ոչ կարէ ընդերկար բռնակալել 'ի վերայ նորա: Մինչ չև է ցոլացեալ երրորդ ծագման լուսոյն՝ աստեղքն առաւօտու տեսցեն զնա ելեալ 'ի գերեզմանէն. և նորոգ ծագեալ լուսանման՝ զկնի հատուցանելոյ զփրկանս քո, զազատութեան ասեմ մարդոյն 'ի մահուանէ. որ է մահ նորա փոխանակ ամենեցուն՝ որք չառնեն անտես զկեանսն՝ զոր ընծայէ նա. և զերախտիս նորա ընդունին հաւատովք, այլ ոչ Թափուր 'ի գործոց անտի : Այս առաքք աստուածային բառնան 'ի բաց զդատապարտութիւն քո և զմահ՝ զոր հանդերձեալ էիր մեռանել յաւիտենական կորստեամբ 'ի մեղս : Այս գործ չնաշխարհիկ ջաղխեսցէ զգլուխն Սատանայի, և կոխեսցէ զզօրութիւն նորա՝ սատակեալ զմեղս

և զմահ, զերկուսին քաջագոր բազուկս նորա: Այլ խորագոյնս մնեսցէ նա 'ի գլուխ նորա զխայթոցս նոցին, քան զհարուածն առժամանակեայ մահուն՝ զոր տայ նա 'ի գարշապարս Յաղթողին [13], և փըրկելոց նորա: Որ և է մահ ոչինչ ընդհատ 'ի քնոյ անոտի, և անցք իմն ցանկալի յանմահականն 'ի կեանս: Բայց զկնի յարութեան իւրոյ ոչ մնայ նա ընդերկար 'ի վերայ երկրի, այլ առ ժամանակ մի եւեթ. և երևի Աշակերտաց իւրոց՝ որք չոգան զհետ նորա առ կենդանութեամբ նորին: Այլ պատուէր տայ նոցա ուսուցանել ամենայն ազգաց զոր ինչ միանգամ լուան 'ի նմանէ, և զփրկութիւն նորա: Մկրտել զորս հաւատան՝ 'ի ջուրն կենդանութեան, առ 'ի նշանակ աղտիցն լուացման 'ի կեանս սրբութեան, և պատրաստութեան նոցին առ 'ի մահ ըստ օրինակի Փրկչին՝ եթէ դէպք ինչ լինիցին: Այլ նոքա ուսուցանեն զամենայն ազգս, զի յայնմհետէ քարոզեսցի փրկութիւն նորա՝ ոչ միայն առ որդիս երանացն Աբրահամու, այլև հաւատոց նորա ընդ ամենայն աշխարհ: Այլ սովին օրինակաւ օրհնեսցին ամենայն ազինք 'ի զաւակի նորա: Ապա ելանէ նա յաղթանակաւ 'ի բարձունս երկնից՝ յաղթահարեալ ընդ օդն վերին զթշնամիս իւր և զքոյդ: Ըմբռնէ անդանօր զօձն զիշխան օդոյն, և շղթայակապ վարէ զնա յիշխանութիւն նորին, և անդ թողու ամօթապարտ: Այլ այնպէս ապա մտանէ նա 'ի փառս իւր, և ունի վերստին զաթոռն հայրենի ընդ աջմէ Աստուծոյ՝ բարձրացեալ գեր 'ի վերոյ քան զամենայն անուն: Այլ անդուստ՝ 'ի հասանել լուծման աշխարհի, գալոց է նա փառօք և զօրութեամբ 'ի դատել զկեն-

դանիս և զմեռեալս, դատապարտել ասեմ զմեռեալս յանհաւատութեան, և հատուցանել ըզվարձս հաւատացելոց իւրոց, և ընդունել զնոսա յերանութիւն յերկինս և յերկրի ։ Զի յայնժամ համօրէն երկիր եղիցի դրախտ, և տեղի առաւել երջանկաւէտ և երկայնօրեայ փափկութեան՝ քան զԵդեմ ։

Զայսօրինակ խօսեցեալ հրեշտակապետին Միքայելի՝ դադարեցոյց զբանս իւր 'ի դադարել անդ դարուց մեծի շրջանի աշխարհի [14] ։ Եւ Ադամ նախահայրն մեր լի խնդութեամբ և հիացմամբ՝ արար նմա զայս պատասխանի ։

Ո՜վ անսահմանելի և անբաւ բարութեանն՝ որ հանդերձեալ է 'ի ցուցակութիւն ածել զայս ամենայն բարիս 'ի չարեաց անտի, և զչարիսն դարձուցանել 'ի բարիս առաւել ևս զքանչելեօք՝ քան զոր եցոյց յարարչութեանն 'ի հանել անդ զառաջինն զլոյս 'ի խաւարէ անտի ։ Արդ ես պաշարեալ կամ այժմ յերեսաց տարակուսանաց, թէ զղջացայց արդեօք ընդ մեղսն՝ զոր գործեցի, կամ որում եղէ պատճառ, եթէ յաւէտ խնդացայց ընդ առաւելութիւն բարեացն՝ որք հանդերձեալ են ծագել 'ի նմանէ ։ Ընդ առաւելութիւն ասեմ փառացն Աստուծոյ, ընդ հաճութիւն նորա ընդ ազգի մարդկան, և ընդ բազմառատ հեղումն շնորհաց 'ի վերայ բարկութեան նորա ։ Բայց դու հրեշտակապետդ Աստուծոյ ասա ինձ աղաչեմ․ զի եթէ Փրկիչն մեր հանդերձեալ է միւսանգամ վերանալ յերկինս, զի՞նչ անցք անցանելոց են յայնժամ ընդ սակաւաթիւ հաւատացեալս նորա՝ որք թողեալ են 'ի մէջ անհաւատից թշնամեաց,

ճշմարտութեան ։ Ո՞ւնի յայնժամ հովուել ըզ-
հօտ նորա, և կամ պաշտպան կալ նմին ։ Մի՛թէ
թշնամիքն ո՞չ ունիցին անցուցանել զառաւել չարիս
ընդ Աշակերտս նորա՝ քան զոր անցուցին ընդ նմա ։
Այս անցուցանելոց են՝ ասաց ցնա Հրեշտակն.
այլ նա առաքէ յերկնից առ իւրս զՄխիթա-
րիչն՝ զաւետիս Հօր իւրոյ, և բնակեցուցանէ 'ի
նոսա զՀոգի իւր ։ Գրէ 'ի սիրտս նոցա զօրէնս
հաւատոյն՝ որ յաջողեալն է սիրով, զի առաջնոր-
դեսցէ նոցա յամենայն ճշմարտութիւն ։ Եւ վառ-
եալ զնոսա սպառազինութեամբ Հոգեւոյն՝ առ'ի
կարող լինել ընդդէմ կալ ամենայն պատերազ-
մաց Սատանայի, և շիջուցանել զհրեղէն նետս
նորա ։ Եւ այնպէս զտանիցին նոքա աներկիւղ յե-
րեսաց հակառակութեան մարդկան և մահու ։ Եւ
փոխանակ անգթութեան մարդկան տացի նոցա
ներքին քաջալերութիւն. և բազում անգամ այն-
չափ արիասցին նոքա, մինչև յապշութիւն կրթել
զխորոխտ հալածիչս իւրեանց ։ Վասնզի Հոգին
սուրբ հեղեալ նախ յԱռաքեալսն՝ զորս առաքէ
նա աւետարանել ազգաց, և ապա յամենայն հաւա-
տացեալս՝ զօրացուցանէ զնոսա վերին պարգևօք.
զի խօսեսցին յամենայն լեզուս, և գործեսցեն սքան-
չելիս՝ որպէս արար Տէրն նոցա յառաջագոյն ։ Սո-
վին օրինակաւ ձգեսցեն նոքա զբազմութիւն ա-
զանց 'ի խնդագին ընդունելութիւն երկնաւոր ա-
ւետեացն ։ Եւ ապա կատարեալ նոցա զպաշտօն
իւրեանց, և ընթացեալ յասպարիսի, և թողեալ
զվարդապետութիւն և զպատմութիւն իւրեանց
'ի գիր՝ եղանեն յաշխարհէ աստի ։ Բայց զկնի նո-
ցա ըստ յառաջագոյն զգուշացուցանելոյ նոցին՝ յա-

ջորդեսցեն զայլք 'ի տեղի Վարդապետաց ... [15]: Եւ ճշմարտութիւնն հարեալ 'ի նետից անտի զըր-պարտութեան՝ տեղի տացէ. և գործք ճշմարիտ հաւատոց դուն ուրեք գտցին: Օ՜ այսօրինակ յառաջ խաղացէ աշխարհ՝ որ ատելի է բարեաց, և սիրելի չարաց, գոլով յոգիս ապաստան ընդ իւրով իսկ ծանրաբեռնութեամբ: Մինչև ծագեսցի օրն հանգստեան արդարոց, և վրէժխնդրութեան չարաց 'ի միւսանգամ գալստեան Օ՜ւակի կնոջն՝ որ յառաջագոյն խոստացեալ եղև քեզ 'ի մխիթարութիւն: Յայնժամ ընդ աղօտ միայն էր նախաձայնեալ, իսկ այժմ պայծառափայլ ցուցանի Փըրկիչ քո և Տէր: Որ և 'ի վախճանի հանդերձեալ է երևիլ փառօք՝ որ յամպս երկնից, և լուծանել զՍատանայ ընդ ապականեալ աշխարհիս: Յայնժամ յարիցեն 'ի բոցակեզ զանգուածոյ անտի նոր երկինք և նոր երկիր՝ մաքրեալ և սրբեալ ընդ անվախճան յաւիտեանս, և հաստատեալ յարդարութիւն, 'ի խաղաղութիւն և 'ի սէր՝ առ'ի պտղաբերութիւն խնդութեան և յաւերժական երանութեան:

Աւարտեալ կնքեաց նա զբան իւր: Եւ Ադամ զայս ետ նմա պատասխանի 'ի վերջոյ: Ո՛վ երանելի Տեսանող՝ զիարդ փութանակի չափեաց նախաձայնութիւն քո զաշխարհս անցաւոր, և զընթացս ժամանակին մինչև ցանշարժութիւնն վերջին: Ամենայն ինչ անդր քան զայն՝ անդունդք են և յաւիտենականութիւն, յորոյ 'ի կատարած անհնար է ձգտիլ տեսութեան աչաց: ՙԱմէն իրի սովին վարդապետութեամբ, և սովին հանդարտութեամբ մնաց մեկնեցայց աստի. և կալայց յանձին զկեու-

թիւն գիտութեան ըստ տանելոյ անօթոյս. զի ցան-
կութիւն առաւելագունին ձգեաց զիս յանմտու-
թիւն : Արդ՝ քաջ ուսանիմ, զի լաւ ևս է հնա-
զանդութիւն, սիրել զԱստուած միայն, գնալ ա-
ռաջի նորա երկիւղիւ, պատկառ կալ միշտ նախախ-
նամութեան նորա, և ապաւինել 'ի բարեգութ
կամս նորա՝ զոր ունի 'ի վերայ արարածոց իւրոց.
որ միշտ յաղթէ բարեաւն չարին, և փոքումբք կա-
տարէ զմեծամեծս. որ 'ի ձեռն տկարաց և խոնար-
հաց կործանէ զզօրութիւն և զիմաստութիւն աշ-
խարհիս : Այն զի համբերութիւն 'ի սակս ճշմար-
տութեան՝ է արիապանծ յաղթութիւն, և մահ
հաւատացելոյն՝ է դուռն կենաց. Զայն ուսու-
ցանէ օրինակաւ իւրով և նա ինքն՝ զոր արդ խոս-
տովանիմ Փրկիչ իմ օրհնեալ 'ի յաւիտեանս :

Որում և Հրեշտակն ետ զայս պատասխանի վեր-
ջին : Զայսոսիկ ուսեալ՝ ահա արդ հասեր 'ի կա-
տար իմաստութեան : Զանց որոյ մի՛ յուսար ժա-
մանել յևս բարձրագոյն, թէպէտև գիտիցես զա-
մենայն աստեղս յանուանէ, զամենայն եթերական
զօրութիւնս, զամենայն գաղտնիս անդնդոց, և
զամենայն գործս բնութեան կամ Աստուծոյ յեր-
կինս, յօդն վերին, յերկրի և 'ի ծովու. և վայե-
լեսցես յամենայն մեծութիւնս աշխարհի, և տիրես-
ցես նմին ինքնակալ իշխանութեամբ : Յաւել
միայն 'ի գիտութիւն քո զվայելուչ գործս՝ զհա-
ւատ, զառաքինութիւն, զհամբերութիւն, զժուժ-
կալութիւն, և զսէր՝ որ հոգին է ամենայն առա-
քինութեանց : Յայնժամ ոչ ևս դժուարիս ընդ-
թողուլ քո զդրախտդ, այլ երջանկագոյն ևս ժա-
ռանգես զայն յանձինդ : Յայն սակս իջցուք արդ

'ի բարձրութենէ տեսութեանս, զի կարգեալ ժամն սպասեալ մնայ մերում մեկնելոյ աստի ։ Տէս, զի պահապանքն՝ զորս բանակեցուցի 'ի լերին անդ, մնան յառաջ խաղալ. և 'ի նշանակ նորին ահա- գինս շողայ զառաջեաւ նոցին բոցեղէն սուրն շըր- ջանակաւ ։ Իսկ չէ հնար մեզ այլ ևս մնալ 'ի դրախ- տիս ։ Արդ՝ Երթ, և զարթո՛ զԵւայ, զի և զնա խաղաղացուցի քաղցր և բարեգուշակ երազովք, և պատրաստեցի զանձն նորա 'ի խոնարհ հպատա- կութիւն ։ Հաղորդեալ դու նմա 'ի ժամու զոր միանգամ լուար՛ յինէն, մանաւանդ զարժանին գի- տութեան հաւատոց նորա, զփրկութիւնն ասեմ մեծ 'ի ձեռն Զաւակի նորա՝ որ հանդերձեալ է հասանել 'ի ձեռն Զաւակի կնոջ 'ի վերայ ազգի մարդկան. զի կեցջիք՝ և այն երկայնօրեայ, միա- բան 'ի մի հաւատ. և թէպէտ 'ի տրտմութեան անդ 'ի սակս չարեացն որ դիպան ձեզ, այլ առաւել ևս խնդութեամբ՝ զմտաւ ածեալ զբարերջանիկ ելս իրացն ։

Վախճանեաց նա զբանն իւր. և ապա իջին եր- կոքեան ևս 'ի լեռնէ անտի ։ Իսկ Ադամ ընթա- ցաւ յառաջագոյն 'ի հովանոց անդր՝ ուր ննջէր Եւ- այ 'ի քուն ։ Բայց եգիտ զնա զարթուցեալ ։ Որ և ընկալաւ զԱդամ զուարթագին բանիւք՝ օրի- նակ զայս ։ Գիտեմ Ադամ զտեղին՝ յորմէ դաս, և ուր գնացեր դու. զի Աստուած գտանի և 'ի քուն անդ, և ցուցանէ զխորհուրդս իւր տեսլեամբք երազոց ։ Զորս և ինձ եցոյց մարդասիրապէս 'ի գուշակութիւն մեծամեծ բարեաց՝ յորմէհետէ ծանրացեալ ցաւովք և տրտմութեամբ, անկայ 'ի քուն ։ Արդ՝ տար զիս ուրանօր և կամք են քեզ,

զի ոչ դանդաղիմ գալ զհետ քո։ Լինալ ընդ քեզ՝ է ինձ մնալ աստանօր. և մնալ առանց քո՝ է ինձ ակամայ մեկնիլ 'ի դրախտէս։ Դու ես ինձ ամենայն ինչ 'ի ներքոյ երկնից, և դու ամենայն տեղի՝ որ 'ի սակս ոճրոյ յանցանաց իմոց արտաքսեցար 'ի դրախտէս։ Սակայն ես անշուշտ տանիմ ընդ իս զայս միակ մխիթարութիւն. զի թէպէտ ամենայն ինչ կորեաւ ինև, բայց տակաւին անարժանս գտի զայս շնորհ՝ զի Զաւակն խոստացեալ ինև՝ հանդերձեալ է նորոգել զամենայն արարածս։

Զայսօրինակ խօսեցաւ նախամայրն մեր Եւայ։ Եւ Ադամ ունկնդիր եղև բազում հաճութեամբ, այլ ոչ արար նմա պատասխանի. զի հասեալ կայր յայնժամ հրեշտակապետն. և պայծառափայլ Քրովբէքն 'ի կարգ անկեալ՝ իջանէին 'ի լեռնէ անտի 'ի կարգեալ կայանս պահպանութեան իւրեանց։ Եւ յառաջ խաղացեալ նոցա՝ քերէին զերկրաւ իբրև զմէտէորայ լուսափայլ, ըստ օրինակի երեկոյեան միգի, որոյ ելեալ 'ի գետոյ անտի՝ սփռի զճախնայինն ափամբք, և պնդագոյնս հաւաքէ զհողն զգարշապարօք երկրագործին՝ որ դառնայ 'ի տուն։ Սուրն Աստուածային շողացեալ 'ի վեր զառաջեաւ նոցա՝ յառաջ խաղայր հանգոյն պայծառատեսիլ գիսաւորի։ Որ և ահագին ջերմութեամբ և գոլորշեօքն իւրովք՝ իբրև զլիբեական օդ կիզանող, սկսաւ տապացուցանել զկլիմայն բարեխառն։ Յայն սակս փութացեալ հրեշտակին՝ կալաւ զձեռանէ երկոցունց հանդարտաքայլ նախահարցն մերոց, և փութանակի առաջնորդեաց նոցա 'ի դուռն արևելից. և անդուստ արագ արագ իջոյց զնոսա ընդ քարաժայռն 'ի դաշ-

տավայրն ստորանկեալ։ Նա ապա եղև աներևոյթ 'ի նոցանէ։ Որոց հայեցեալ յետս՝ տեսին, զի յարևելեան կողմն դրախտին՝ որ սակաւ մի յառաջ էր երջանկաւէտ տեղի բնակութեան նոցա, շողայր 'ի վերուստ սուրն բոցեղէն. և դրունն դրախտին խռունեալ կայր ահագին տեսլեամբք, և հրավառ զինուք։ Յայն տեսիլ ցաւագին՝ բնութիւնն ստիպեաց զնոսա յարտօսր, այլ ընդ հուպ ջնջեցին զայն յաչաց իւրեանց։ Երկիրս համօրէն անկեալ կայր առաջի նոցա յընտրութիւն տեղւոյ 'ի հանգիստ իւրեանց, և նախախնամութիւնն Աստուծոյ էր նոցին առաջնորդ։ Որք և ձեռն տուեալ միմեանց՝ կալան զվտարանդի և զհանդարտ գնացս իւրեանց յառանձնութեան անդ՝ ընդ սահմանս Եդեմայ[16]։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

---

## ԳԻՐՔ. Ա.

1 Greater Man, Մեծագոյն Մարդոյ՝ Քրիստոսի, Աստուծոյ մարդացելոյ։

2 Զդրախտն։

3 Ցոյն μοῦσα կամ μῶσα, չաստուածուհի հանճարոյ, բանաստեղծութեան և երգոց։

4 Կրկին լերինք յերջանիկն Արաբիա առ երի միմեանց։

5 Մովսիսի նախամարգարէին։

6 Որդւոցն Իսրայէլի։

7 Chaos, անդունդք, վիհ, դատարկութիւն։

8 Յերուսաղէմ։

9 Ուր էր յառաջագոյն տապանակն և խորանն Աստուծոյ։

10 Լեառն Մուսայից 'ի Յունաստան՝ հանգոյն Պառնասայ։

11 Զոր 'ի վերոյ կոչեաց Մուսայ երկնային։

12 Զայս իմաստ առնու Միլտոնն յեբրայական բնագրէ Ծննդոց ա. 2։

13 Եւ զինչ քան զայս գեղեցիկ և պիտանի նպատակ բանաստեղծութեան, և ընտիր նախերգանք։

14 Իմա՛, անկաւ Սատանայ յերկնից ընդ ինն տիւ և ընդ ինն գիշեր։

15 Իշխան դիւաց։ Սկսանի Միլտոնն նմանեցուցանել զանկեալ հրեշտակս Կռոցն հեթանոսաց։

16 Սատան չար, հակառակորդ, բանսարկու։

17 Ամենայն բանք բանաստեղծութեանս 'ի բերանոյ Սատանայի՝ քաջավայելուչ են հակառակորդին Աստուծոյ, և ապստամբելոյն 'ի նմանէ. վասն որոյ և չունին ինչ սասանել բարեպաշտ լսելեաց։

18 Տեսչութիւն վերին, կամքն Աստուծոյ։

19 Հրեշտակաց։

20 Խորին հիմնարկութիւն վրէժխնդրութեան յԱստուծոյ, և պատրանաց մարդոյն։

21 Կեղծէ Միլտոնն 'ի հրեղէն ծովու անդ դժոխոց զսահման ինչ ցամաք և խաւարչային։

22 Տիտան ըստ առասպելաց էր որդի Ուրանեայ և Դեմետրի, այսինքն՝ Երկնի և Երկրի։

23 Երկրածինք կամ Հսկայք՝ էին որդիք Տիտանայ, և տուին պատերազմ ընդ Արամազդայ։

24 Արամազդ կամ Դիոս էր որդի Կռոնոսի և Ռէայ, և էր առաջին չաստուած հեթանոսաց։

25 Բրիարիոս կամ Բրիար էր մի 'ի մարտադիր հսկայից, և կոչի և Եգէոն։

26 Տիւփոն կամ Տիւփէ էր հսկայ անձոանի ելեալ յերկրէ։

27 Քաղաք 'ի Կիլիկիա։

28 Կէտ ռոսկամլիթխար։

29 Ծով համատարած։

30 Նորվեգիա է գաւառ 'ի հիւսիսային կողման Եւրոպիոյ։

31 Ծովու։

32 Սովին բանիւ գեղեցիկս ցուցանէ Միլտոնն զարդարութիւն իրաւանցն Աստուծոյ։

33 Դարաւանդ 'ի Սիկիլիա։

34 Հրաբուղխ լեառն 'ի Սիկիլիա։

35 Ստիւգս ըստ առասպելաց է աղբիւր կամ գետ 'ի դժոխս կամ 'ի սանդարամետս։

36 Կամի ասել հայհոյելն, թէ հեռի գոլով յԱստուծոյ, և իշխան գոլով՝ առաւել եւս երջանիկ համարիմ զանձն իմ։ Բայց այս է բարբառ անյուսութեան։

37 Սատակացուցանէ Միլտոնն զանհանճար խորհուրդս ամբարտաւանին, և անյոյս կորուսելոյն։

38 Ըստ առասպելաց Լէթէ՝ գետ մոռացութեան 'ի դժոխս։

39 Որ է դիտակն աստեղաբաշխական։

40 Գալիլէոս աստեղաբաշխ և դիտակաշէն Թոսկանացի կամ Իտալացի։

41 Անուն գեղջ 'ի Փլորենտիա։

42 Իտալերէն Val d'Arno, այն է՝ ձոր Արնոյ։ Իսկ Արնոն կամ Արնոս է անուն գետոյ 'ի Թոսկանա։

43 Զի Գալիլէոս և այլք յաստեղաբաշխից զկնի նորա նորագիւտ դիտակամբն բազում և մեծամեծ բիծս նշմարեցին 'ի լուսնի անդ՝ նման երկրի, լերանց և գետոց։

44 Ծովակալ կամ ծովապետական կոչի մեծագոյն նաւն պատերազմական, որոյ հրամանատար իշխէ այլոց նաւուց 'ի ծովի անդ։

45 Իտալերէն Vallombrosa կամ Valle ombrosa, որ է՝ ձոր հովանաւոր. և է անուն տեղւոյ յԻտալիա։

46 Թոսկանեան։

47 Orion համաստեղութիւն ըստ այլոց։

48 Որ յԵգիպտոս։

49 Փարաւոն արքայ ըստ սուրբ գրոց։

50 Մեմփիս մայրաքաղաք էր Եգիպտոսի։

51 Գաւառ յԵգիպտոս՝ ուր պանդխտեցան Իսրայէլացիք։

52 Ելք. ԺԴ. 28-31։

53 Հայր Մովսիսի մարգարէի։

54 Գետ յԵգիպտոս. Ելից Ժ. 13-15։

55 Այլաբանութիւն հիւսիսային կողման Եւրոպիոյ։
56 Գետ մեծ յԵւրոպիա։
57 Լատիներէն Danubius, մեծագոյն եւս գետ յԵւրոպիա։
58 Անուն քաղաքի և նաւահանգստի 'ի նեղուցին Սպանիոյ՝ որ բաժանէ զԱփրիկէ յԵւրոպիոյ, Իտալերէն Gibilterra.
59 Անապատին Ափրիկոյ կամ Լիբիոյ։
60 Դարձեալ պաշտպանութիւն իրաւանցն Աստուծոյ։
61 Գեղեցիկ գիւտ բանաստեղծական։
62 Հոգին սուրբ տուիչ աստուածաշունչ պատգամաց։
63 Բառ եբրայական, և նշանակէ՝ Աստուած, որ էն։
64 Գ. Թագ. ԺԹ. 15։ և Երեմ. Է. 30։
65 Կոչի եւս Մեղքոմ. Գ. Թագ. Թ. 7։
66 Տառադարձութեամբ եւեթ գնեմք զյատուկ անուանս, զորս բերէ Միլտոն ըստ եբրայական հնչման։
67 *Եւ շինեցին բագին Տափեթայ՝ որ 'ի ձոր որդւոցն Ենովմայ, այրել զուստերս և զդստերս իւրեանց 'ի հուր||. Երեմ. Է. 31։
68 *Լացցուք զքեզ այգիդ Սաբեմայ||. Երեմ. ԽԸ. 32։
69 Asphaltic, նաւթի կամ կպրաձիւթոյ։
70 Եղանէր յԵգիպտոսէ։
71 *Եւ բնակեցաւ Իսրայէլ 'ի Սատտիմ ... և նուիրեցաւ Բէլփեգովրայ։ Եւ բարկացաւ Տէր 'ի վերայ Իսրայէլի ... և եղեն մեռեալքն 'ի հարուածոցն յայնցանէ քսան և չորք հազարք||. Թիւք. ԻԵ. 1-9։
72 Գ. Թագ. 5-7։
73 Դատ. Գ. 7։
74 Կերպարանօք եւեթ։
75 Ճշմարիտն Աստուած։
76 *Նաև զտունն՝ որ 'ի դիմաց Երուսաղեմի ընդաջմէ լերինն Մոսաթայ, զոր շինեաց Սողոմոն արքայ Իսրայէլի Աստարտայ գարշելւոյ Սիդոնացւոց, և Քամովսայ զազրելւոյ Մովաբայ, և Մելքոմայ գարշելւոյ որդւոցն Ամոնայ, պղծեաց արքայ (Յովսիա)։ Եւ խորտակեաց զարձանսն, և կոտորեաց զանտառսն||. Դ. Թագ. ԻԳ. 13-14։
77 Անուն գեղեցիկ չաստուծոյ, եւս և գետոյ 'ի Փիւնիկիա։
78 Խառն ընդ կարմիր աւազոյ Լիբանանու։
79 *Նստէին անդ կանայք, և ողբային զԹամուզ||. Եզեկ. Ը. 14։
80 Ա. Թագ. Ե. 2-4։
81 *'Ի մտանել Տեառն իմոյ 'ի տուն Ռեմմանայ՝ երկիր պագանել նմա||. Դ. Թագ. Ե. 18։
82 Ըստ մեզ Նաբանա. Դ. Թագ. Ե. 12։
83 Նեեման Ասորի. Դ. Թագ. Ե. 17։
84 Բ. Մնաց. ԻԸ. 23։
85 Զաստուած Եգիպտացւոց ընդ կերպարանօք եզին։
86 Զաստուածուհի ընդ կերպարանօք կովու։
87 Ծնունդ Ովսիրիդեայ և Իսիդեայ։

88 Սաղմ. ՃԺ. 19 - 20։

89 Գ. Թագ. ԺԸ. 28 - 29։

90 Ելք. ԺԶ. 12։

91 Ըստ Եբրայեցւոց Բէլիալ, և նշանակէ՝ ապստամբ, բանսարկու, ժանտ, անօրէն։ Էր չաստուած Սիդոնացւոց։ Դատ. ԺԹ. 22։ Բ. Կորնթ. Զ. 15։

92 Բ. Օրէնք. ԺԳ. 13։ Ա. Թագ. Բ. 12։

93 Ծննդ. ԺԸ. 20. և ԺԹ. 4։

94 Դատ. ԺԹ. 22։

95 Յոնիա է երկիր գաւառ 'ի Յունաստան և յԱսիա։

96 Յաւան որդի Յաբեթի՝ որդւոյ Նոյի։ 'Ի սմանէ ասեն սերեալ զՅոյնս։

97 Երկինք։

98 Երկիր։

99 Որդի Ուրանեայ և Գեմերի։

100 Ժամանակ։ Լատինք կոչեն զնա Saturnus.

101 Հռեա էր կին Կռոնոսի, և մայր Արամազդայ՝ հօրն Աստուածոց։ Ըստ աւանդելոց հեթանոսաց Կռոնոս կլանէր զորդիս իւր՝ զորս ծնանէր նմա Հռեա, առ երկիւղի թագաւորելոյ ուրուք 'ի նոցանէ։ Բայց Հռեա թագոյց պատրանօք զԱրամազդ. որ և յարբունս հասեալ՝ խնդրեաց ընդվզեալ 'ի հօրէ իւրմէ. և այնպէս թագաւորեաց ինքնին։

102 Կղզի 'ի Միջերկրական ծովու։

103 Լեառն 'ի Տրովադա։

104 Բարձրաբերձ լեառն 'ի Թեսաղիա։

105 Քաղաք առ ստորոտով լերինն Պառնասայ. ուր տայր Ապողոն պատգամս։

106 Քաղաք յԵպիրոս. ուր էին կաղնիքն եւս և մեհեանն Արամազդայ։

107 Դորիս է քաղաք յԱքայիա։

108 Ադրիա է քաղաք 'ի սահմանս Վենետկոյ. յորմէ և ծոց նորա կոչի Ադրիական ծով. ըստ մեզ՝ Հանդրին անդունդք. Գործ. ԻԷ. 27։

109 Ցարեմտեան կողմն Յունաստանի՝ որ է Իտալիա։ Ըստ աւանդելոց Կռոնոս փախուցեալ յերեսաց Արամազդայ՝ էանց յԻտալիա։

110 յԱնդղիա, և այլն։

111 Սպանիա։

112 Կեղծեալ անուն Հրեշտակի։

113 Սպարապետական։

114 Նկարեալ էին 'ի վերայ դրօշակին զէնք և յաղթանակք Հրեշտակացն անկելոց։

115 Վիհ կամ դատարկութիւն անսահման։

116 Ըստ աւանդելոց հեթանոսաց է դուստր Վհի, և աստուածուհի խաւարի. և Բանաստեղծք իմանան նովաւ զվիճակն ոչնչութեան։

117 Կամ Դորիկեան, իմա Յունական։

118 Յոյն Ἥρως, կիսաստուած, քաջ, քաջամարտիկ։

119 'Ի սրտից Պիւցաղանց։ Սոյին բանիւք ցուցանէ Միլ- տոն զպիտանութիւն երաժշտական նուագաց։

120 Անուն քաղաքի 'ի Մակեդոնիա։

121 Քաղաք 'ի Յունաստան։

122 Կոչի եւ Տրովադա։ Զառասպելս մարտի Թզկաց ընդ խորդս կամ ընդ կռնկունս առնու Միլտոն 'ի Հոմերայ։

123 Ասպետ ոմն առասպելեալ յԵւրոպիա։

124 Անգղիական։

125 Ծովաբնակ կամ կղզեցի՝ որպիսի են Անգղիացիք։

126 Քաղաք յԻտալիա։

127 Քաղաք 'ի Գաղղիա։

128 Մայրաքաղաք յԱսորիս։

129 Թագաւորութիւն և մայրաքաղաք յԱփրիկէ՝ յաշ- խարհին Բարբարոսաց։

130 Քաղաք 'ի փոքուն Ասիա կամ 'ի Պոնտոս։

131 Ծովահայեաց քաղաք յԱփրիկէ։

132 Թագաւոր Գաղղիոյ, և առաջին ինքնակալ յԵւրոպիա։

133 Քաղաք 'ի Սպանիա։ Զնախակարգեալ առասպելս կամ զպատմութիւնս զինուորութեանց յաշխարհի յառաջ բերէ Միլտոն, առ 'ի ցուցանել զնուաղութիւն կամ ըզ- տկարութիւն նոցա առ համեմատութեամբ գժոխային զօրաց Սատանայի։

134 Ըստ կարծեաց ոգւոց՝ որք ոչ են հմուտ աստեղա- բաշխութեան, ձեւացուցանէ Միլտոն զբան իւր։

135 Հրեշտակաց։

136 Զնախասահմանեալն Աստուծոյ 'ի յաւիտենից զարար- չագործութիւն աշխարհի՝ սովին ճարտարութեամբ դնէ Միլ- տոն 'ի բերան Սատանայի։

137 Կամ Մամոնայ՝ չաստուած Ասորւոց, և ոստիկան ընչից և մեծութեանց։

138 Կշտամբանք մեծատանց։

139 Նախատինք ընչից։

140 Զաշտարակէն Բաբելոնի։

141 Զբրգանց, և զհոյակապ շինուածոց Եգիպտոսի։

142 Հարիւր ամ։

143 Անուն միոյ 'ի չորից ճարտարապետական կարգաց։

144 Եգիպտոս։

145 Տապանակ, բագին, տաճար, մեհեան, և կամ բուրգն։

146 Կուռք Բաբելացւոց։

147 Սերափիս կամ Ապիս՝ չաստուած Եգիպտացւոց։

148 Հրամանատար։

149 Իտալական. զի Աւսոնիա մասն է Իտալիոյ։

150 Կանգնացուցիչ. է մի յանուանց Հեփեստեայ չաստուա- ծոյն՝ որ էր ճարտարապետ դարբին։

151 Կոչի եւ գագաթնակէտ ըստ Աստեղաբաշխից։

152 Յայս կղզի ընկեցաւ ըստ առասպելաց դարշատե-

ոխլ որդին Արամազդայ Հեփեստոս՝ առ 'ի պատրաստել անդ զշանթս նորա ։

153 'Ի Յունաստան ։

154 Պանդեմոն կամ Պանդեմոնիոն 'ի յունական բարբառ. նշանակէ ամենադև, զոր գեղեցիկ հնարեաց Միլտոն ։

155 Banim. զոր այլք թարգմանեն Հեթանոսական ։

156 Կենդանակերպք ։

157 Երկրէ ։

158 Ոմանց ոչ թուի ընտիր այս գիւտ բանաստեղծական ։

159 Ըստ առասպելաց ։

160 Ըստ պատմութեան պատուաւորաց ։

161 Lords. Ըստ ոմանց յայս անուն ակնարկէ Միլտոն զաւագ Ատենակալս խորհրդարանին Անգղիոյ ։

162 Առաջին գիրքս ըստ Տըլիլայ գաղղիացի թարգմանչէ բանաստեղծութեանս * թէպէտ ոչ է զերծ 'ի թերութեանց անտի, սակայն խրատամբք համարի երբեմն զմի յընտրելագոյն մասանց նորա ||։

---

## ԳԻՐՔ. Բ։

1 Անուն կղզւոյ 'ի ծովուն Պարսից՝ յորում ելանէ Մարգարիտ ։

2 Աշխարհ մեծագանձ ։

3 Առաւել բազմահարուստ քան զայլ մասունս աշխարհի ։

4 Ընդ Աստուծոյ ։

5 Մողոք նշանակէ Թագաւոր ։ Եւ Հոմերոս ևս զաւազանակիր կոչէ զարքայս 'ի նշանակ իշխանութեան և զօրութեան նոցա ։

6 Տես 'ի (38) ծանօթ. ա. գրոց ։

7 Ակնարկէ 'ի դիմաց այլոց ։

8 Տայ պատասխանի 'ի դիմաց իւրոց ։

9 Կարի 'ի դէպ են բանքս մոլեգին բնաւորութեան Մողոքայ ։ Եւ ըստ Տըլիլայ՝ * միայն Միլտոնի խռովայոյզ, և կարի խիստ սիրող ազատութեան՝ կարող էր դնել զայգոսիկ 'ի բերան նորա ||։

10 Զքաղցրութիւն ։

11 Մողոք ։

12 Յաներևոյթ կամ յանյայտ թռիչս ։

13 'Ի միջոցի անդ դժոխոց և երկնից ։

14 Ոչնչութեան ։

15 Հրեղէն ծով դժոխոց ։

16 Խօսի 'ի դիմաց այլոց ։

17 Ինքնին տայ պատասխանի ։

18 Ճարտար են բանք հեշտասիրին Բելիարայ ։

19 Ոչնչութիւն։
20 Սաղմ. ԺԷ. 11-13. և ՂԷ. 2։
21 Ատլաս ըստ առասպելաց էր Թագաւոր Մաւրիտանիոյ, և բառնայր զերկինս 'ի վերայ ուսոց իւրոց. որ և փոխարկեցաւ 'ի լեառն։
22 Որպէս և Սատանայ ծանոյց յառաջագոյն։
23 Դարձեալ իրաւունք անքննելի դատաստանացն Աստուծոյ։
24 Խօսք ըստ ոճոյ Աշխարհագրաց։
25 Սպեղանի անուշահոտ։
26 Ցաշխարհն նորաստեղծ 'ի բնակութիւն մարդկայն։
27 Ոչնչութեան։
28 'Ի խառնխուռն սահման ոչէից կամ դատարկութեան։
29 Գեղեցիկ խորան գահակալաց։
30 Ընտիր է և այս խորան Միլտոնին։ Այլ ըստ Տըրլագուբայ Գաղղիացի Թարգմանչի՝ լաւ ևս առնէր նա, եթէ *փոխանակ միաբանութեան դժոխայնոց՝ նկարագրէր զերկպառակութիւն նոցա, զխայթ խղճի մտաց, և զկշտամբանս միմեանց 'ի սակս ապստամբութեան||։
31 Տես 'ի ծանօթութեան (35) Ա գրոց։
32 Ողիմպոս է լեառն 'ի Յունաստան. առ ստորոտով նորա 'ի չորս ամս միանգամ կատարէին զհանդէսս արշաւանաց, ձիընթացից և ըմբշամարտութեանց։
33 Նոյնպէս յօրինէին 'ի Յունաստան երգս և հանդէսս խաղուց 'ի շնորհս Պիւթեան Արամազդայ։
34 Այլաբանութեամբ խօսի Միլտոն։
35 Տիւփոն կամ Տիւփէոս ըստ առասպելաց էր Հսկայ երկրածին ընդդիմամարտ երկնից։
36 Այն է Հերակլէս կամ Հերքիւլէս։
37 Քաղաք 'ի Յունաստան։
38 Գաւառ 'ի Յունաստան։
39 Կամ Լիքաս՝ արբանեակ Հերակլեայ, որ եբեր առ նա զպատմուճանն Թունաւոր՝ զոր առաքեաց կինն իւր։
40 Անուն լերին 'ի Կրետէ։
41 Անուն ծովու 'ի Յունաստան։
42 'Ի զգուշութիւն Աստուածաբանից կարգէ Միլտոն զբանս իւր։
43 Որպէս յաստուածաբանութեան անդ, նոյնպէս և յիմաստասիրութեան պախարակէ Միլտոն զսնոտի նրբութիւն և զճարտարութիւն բանից։
44 Առաջին գետ 'ի դժոխս ըստ առասպելաց հեթանոսաց։
45 Երկրորդ գետ։
46 Կամ Կոկիւտ՝ երրորդ գետ. և նշանակէ՝ ողբ կամ հեծութիւն։
47 Չորրորդ գետ՝ յորդեռանդն կոչեցեալ։
48 Հինգերորդ գետ՝ անյուշ կարդացեալ։
49 Ցայս անուն կոչէր Ճահիճդ։

50 Քաղաք յԵգիպտոս։

51 Անուն լերին յԵգիպտոս։

52 Յայս անուն կոչին ըստ աւանդելոյ վրէժխնդիր Աստուածքն 'ի գժոխս։

53 Անուն միոյ յերից Գորգոնեան անուանեալ քերց՝ որք ըստ աւանդելոյ ունէին գժնեայ աչս, և փոխարկէին 'ի քարինս զորս միանգամ հայէին ընդ նոսա։

54 Որդի Արամազդայ դատապարտեալ 'ի գժոխս, որոյ ծարաւ ըստ աւանդելոյ ոչ շիջանէր անդ։

55 Բարձրաբերձ լերինք յԵւրոպիա։

56 Երեք ժանտատեսիլ քորք ըստ աւանդելոյ, զորոց զհերս Աթենաս փոխարկեաց յօձս։

57 Եւթնագլխեան օձք ըստ աւանդելոյ։

58 Մտացածին հրէշք։

59 Յայսոսիկ զբօսանս գիւղաց՝ ոչ գտանի ըստ Տղելոյ զաղղիացւոյ ընտիր ճաշակ բանաստեղծութեան։

60 Որ լինի երկիցս 'ի տարւոջն. 'ի 21 Մարտի, և 'ի 21 Սեպտեմբերի։

61 Սահման երկրի յարեւելեան Հնդիկս։

62 Մին 'ի Մողոքեան կղզեաց 'ի Հնդիկս։

63 Միւս ևս կղզի անդանօր։

64 Նահանգ մեծ յԱփրիկէ։

65 Ծովահայեաց կողմն Ափրիկոյ՝ կոչեցեալ Սարաւանդ կամ Գըլուխ բարի յուսոյ։

66 Կողմն երկնից ըստ Աշխարհագրաց։

67 Ըստ աւանդելոցն մականուն եռագլուխ շանն՝ պահապանի դրանց գժոխոց։

68 Հրէշք ծովային փոխարկեալ 'ի ժայռ առ երի Սիկիլիոյ. յորոյ արգանդէ ելանէին կատաղի շունք։

69 Գաւառ յԻտալիա։

70 Այն է Սիկիլիա։

71 Կոչի ևս Լապոնիա, երկիր 'ի հիւսիսակողման Եւրոպիոյ։

72 Նախահաստատ պատուանաց։

73 Տես 'ի ծանօթ. (52)։

74 Օժտեալ համաստեղութիւն յարջային բևեռի երկնից։

75 Անուն ծովու 'ի Պարսկաստան։

76 Ըստ աւանդելոց հեթանոսաց Աթենաս չաստուածուհի զայսօրինակ ծնաւ յուղղոյն Արամազդայ։

77 * Ցանկութիւնն յղացեալ՝ զմեղս ծնանի. և մեղքն կատարեալ՝ զմահ ծնանին ||. Յակոբ. ա. 15։ Այլ ընդ այսանիկ այլաբանութիւնս Միլտոնի ոմանք կարի իմն զարմանան, և ոմանք ոչ հաճին։

78 Զխայթ մտացն խղճի գեղեցիկ իմն նմանեցուցանէ Միլտոնն հաչման շանց 'ի գժոխս։

79 Մեղսասիրաց։

80 Տես 'ի (35) ծանօթ. ա դրոց։

81 Անուն գետոյ 'ի գժոխս. դնի և փոխանակ գժոխոց։

82 Ծով համատարած՝ օրինակ անսահման անգնդոց կամ դատարկութեան ։

83 Ոչնչութիւն ։

84 Դատարկութիւն կամ խառնակութիւն ։

85 Արարածոց, եղելոց յոչնչէ ։

86 Խառնիխուռն և անկարգ իշխանութիւն ։

87 Մանր կամ առաջին մասունք տարերց, շամանդաղք ։

88 Անուն աւազին անապատի յԱփրիկէ ։

89 Նախկին անուն Բարկայ ։

90 Դատարկութիւնն կամ խառնակութիւնն ։

91 Զոր աստուածացուցին հեթանոսք ։

92 Գոլով տակաւին յոչնչութեան անդ, կամ յանկերպարան վիճակի արարածոց ։

93 Զերկիր, ընդ որում իմանայ և զգունտս Լուսաւորաց ։

94 Ըստ առասպելաց չաստուածուհի մարտի, և դուստր Արեայ ։

95 Ծխոյն կամ գոլորշեաց ։

96 Զի 'ի խորասոյզ լինել նորա՝ ոչ ևս կորուսանէին մարդիկ զերջանկութիւն իւրեանց ։

97 Gryphon, առասպելեալ կենդանի խառն ընդ արծուի և ընդ առիւծ՝ կարգեալ 'ի պահպանութիւն գանձուց ։

98 Անուն առասպելեալ ժողովրդեան ։

99 Գեղեցիկ նկարագրութիւն համատարած գիշերոյ կամ դատարկութեան ։

100 Զի յոչնչէց կամ 'ի խաւարէ անտի ծագեցան արարածք ։

101 Մականուն Պղուտոնի չաստուածոյն դժոխոց ։

102 Միւս ևս չաստուած դժոխոց ։

103 Ընկեր Գիշերոյ և Յաւիտենականութեան ․ զորոյ զանուն առ ահի ոչ առնուին հեթանոսք 'ի բերան ։

104 Զաստուածք են սոքա ըստ հեթանոսաց ․ և պաշտօնեայք վհի՝ ըստ Բանաստեղծից ։

105 Անուն նաւուն՝ որ էած զԱրգոնաւորդս 'ի Կողքիս ։

106 Նեղուց Կոստանդնուպոլսոյ ։

107 Լատիներէն Ulysses, էր մի 'ի քաջազանց Տրոյական մարտի ։

108 Անուն յորձանուտի 'ի ծովուն Սիկիլիոյ հանդէպ Սկիւղեան ժայռի ։

109 Դարձեալ պաշտպանութիւն աստուածային արդարութեան ։

110 Այն ինչ պատուական ոսկիտակափայլ ։

111 Ըստ Տըլիլլայ գաղղիացւոյ՝ *յայս երգ սակաւ են թերութիւնք, և բազմապատիկ գեղեցկութիւնք ։ Եւ որպէս յառաջնումն, նոյնպէս և 'ի սմա սքանչելի են բանք և նկարագրութիւնք Միլտոնին ։ Եւ երևակայութիւնն բանաստեղծական ոչ ցուցաւ երբէք այնչափ բազմաբեղուն և ինքնաբուղխ, որպէս 'ի սմա || ։

# ԳԻՐՔ. Գ:

1 Ջերմանք սրտի զաւչացու բանաստեղծին Միլտոնի ցանկան գովել ըլլալն զգալի կամ եղական՝ ընդ իմանալւոյն և աներևականին:

2 ա. Յովհ. ա. 5: ա. Տիմոթ. զ. 16:

3 Յովբ. լէ. 19:

4 Ծննդ. ա. 1-3:

5 'ի դժոխոց. ամս (35) ծանօթ. ա գրոց:

6 'ի դժոխս, և յանդունդս դատապարտութեան:

7 Ըստ առասպելաց Որփէոս որդի Արամազդայ զմայլեցուցանէր զանշունչս 'ի ձայն քաղցրանուագ քնարի իւրոյ:

8 Յաստուածաշունչ գրոց, 'ի պատգամաց Հոգւոյն սրբոյ:

9 'ի կուրութեան անդ աչացս ոչ կորուսի զտեսութիւն մտացս:

10 Drop serene, այսպէս կոչի ըստ Բժշկաց տկարութիւնն աչաց ցաւագին Միլտոնի:

11 Ընդ հովանաւ Մուսային ոչ թողում ասէ և զարտաքինսն:

12 Տաճարին Երուսաղէմի՝ տեղի պատգամացն Աստուծոյ:

13 'ի կուրութեան անդ, ես և յանկուն գիշերի:

14 'ի Կեդրոն և 'ի Սելովմ:

15 Ըստ առասպելաց էր գեղեցկանուագ Թոան Ապողոնի. զորոյ զաչս հանին Մուսայք առ նախանձու:

16 Մականուն Հոմերոսի կուրի, զի հայր նորա կոչէր Մէոն:

17 Զորոյ զաչս կուրացոյց Հերա ըստ առասպելաց. բայց Արամազդ շնորհեաց նմա զհոգի մարգարէութեան:

18 Եւ զսորա զաչս զրկեաց 'ի լուսոյ Բորէաս. բայց զհնի գտաւ մարգարէ:

19 Զբանաստեղծութեան յօրանաւոր բան:

20 Լուսաւորութիւն աստուածային:

21 Ընտիր են գործոլալից նախերգանքս. և թէպէտ արտաքոյ ընթացից բանաստեղծութեանս, այլ վայելուչ անցք 'ի խաւարէ անտի դժոխոց 'ի լոյսն վերին:

22 Եսայ. զ. 1:

23 *Որ է լոյս փառաց, և նկարագիր էութեան նորա ... նստաւ ընդ աջմէ մեծութեանն 'ի բարձունս||. Եբր. ա. 3:

24 Խաւարային անդնդոց կամ դատապարտութեան:

25 Այս բանք երկայնաձիգ՝ յաւէտ աստուածաբանական քան բանաստեղծական, որպէս և փաստաբանութիւնն 'ի բերանն Ամենակալին՝ ոչ այնչափ ընտիր երևին ոմանց 'ի քննչաց, թէպէտև քաջ ցուցանեն զարդարութիւնն Աստուծոյ: Այլ զխորին վարդապետութիւնն անձնիշխանութեան մարթ է յուղիղ միտս իմանալ:

26 Ambrosial, Ամբրոսեան։
27 Քրիստոսի՝ որ եղև արդարութիւն մեր։
28 Նոյնպէս և այս բանք Հօրն երկնաւորի երկարապատումեն ըստ քննչաց, և ոչ այնչափ վսեմ։
29 Յայտ. Ը. 1։
30 * Զի որպէս Հայր ունի կեանս յանձին իւրում, նոյնպէս ետ և Որդւոյ ունել կեանս յանձին իւրում||. Յովհ. Ե. 26։
31 * Վասն որոյ և Աստուած զնա առաւել բարձրացոյց. և շնորհեաց նմա անուն՝ որ ՚ի վեր է քան զամենայն անուն||. Փիլիպ. Բ. 9։
32 Ժամանակ երջանկութեան ըստ Բանաստեղծից։
33 Ա. Կորնթ. ԺԵ. 28։
34 Նոյնպէս և յայս բան Հօր սակաւ է վսեմութիւնն բանաստեղծական։
35 Զայնիւ ցնծութեան։
36 Օրհնաւաք։
37 Ականակիտ։
38 Երկնային կամ երանական դաշտք ըստ Բանաստեղծից։
39 Ընտիր է յաւելուածս Միլտոնի ընդ երգս Հրեշտակաց։
40 Բարձրաբերձ լեառն ՚ի Սկիւթս։
41 Որք են բնակիչք հիւսիսային կողման Ասիոյ։
42 Գետ Հնդկաց։
43 Hydaspes, միւս ևս գետ ՚ի Հնդիկս։
44 Անուն գաւառի յԱսիա։
45 Կոչին ևս Սինեացիք կամ Քինեցիք։
46 Այն է՝ զնաւակս։
47 Օդոյ կամ հաստատութեան երկնից։
48 Արիոստ խելացնոր բանաստեղծ Իտալացի. որում յայսմ մասին նմանող գտաւ Միլտոն ՚ի դրախտի անդ Յիմարաց։
49 Իմա՝ ՚ի դրախտն Յիմարաց կամ զակատելոց զկնի մտուեաց՝ զոր ըստ օրինակի Արիոստեայ ձևացուցանէ Միլտոն յօդն վերին կամ ՚ի հաստատութեան երկնից։ Գեղեցիկ իմն է արդարև գիւտ բանաստեղծիս, եթէ աղանդ նորա ոչ ձգէր զնա ՚ի կատականս Ճշմարտութեան։
50 Ծննդ. Զ. 2-5։
51 Ծննդ. ԺԱ. 4։
52 Աշտարակս ընդունայնութեան կամ խառնակութեան։
53 Իմաստասէր յոյն։
54 Հրաբուղխ լեառն ՚ի Սիկիլիա։
55 Միւս ևս յոյն Իմաստասէր։
56 Արքայութեանն կամ երջանկութեանն՝ զոր խոստանայր Պղատոն աշակերտաց իւրոց զկնի մահուան։ Եղիւսիոն ըստ առասպելաց է դաշտ կամ տեղի բնակութեան երանելեաց։

57 Միլտոնն տատանօր երկայնէ զնկարագրութիւնն դրախ_տի կամ լիմպոսի Ցիմարաց, այլ լաւ ևս ասել՝ խրտուճի օտար մտածութեան. զի ինչ ինչ 'ի Քրիստոսական աւանդութեանց անարի համարի սնոտիապաշտութիւնս. և 'ի շնորհս աղան_դակցաց իւրոց ծիծաղի զնոքօք՝ ոչինչ ընդհատ 'ի սնոտի գործոց հեթանոսաց: Վասն որոյ և մեք խրատեմք 'ի բաց թողուլ զթարգմանութիւն այնր հատուածոյ, որպէս և բա_զումք յուղղափառ Թարգմանչաց Եւրոպացւոց: Որ և ըստ Տըլէլայ՝ է յաւէտ նուաստաբան և փանաքի մասն ողջոյն բա_նաստեղծութեանս: Եւ ըստ Տըլադուրայ՝ Միլտոնն 'ի Լիմ_պոսի անդ խնդրեաց աւանձին իմն զիւր տեղի:

58 Վերին օդոյ կամ հաստատութեան երկնից:

59 Padan-Aram.

60 Կամ Բեթէլայ. Ծննդ. ԻԸ. 12-19:

61 Որ է օդն հաստատութեան երկնից:

62 Գ. Թագ. Է. 11:

63 Իսրայէլացւոց. զի Հրեշտակք իջեալ յերկնից 'ի Սինա՝ պատգամաբեր լինէին նոցին:

64 Եւ այս է սահման ողջոյն երկրին աւետեաց:

65 Համատարած ծովու. զի որպէս ալեաց սորա, նոյն_պէս և սահմանաց խաւարի հրաման տուեալ էր Աստուծոյ չելանել ըստ չափ:

66 Կշիռ կենդանակերպ ըստ Աստեղաբաշխից:

67 Խոյ կենդանակերպ:

68 Ըստ առասպելաց կին Պերսեայ. և ըստ Աստեղաբաշ_խից համաստեղութիւն յերկինս:

69 Այսպէս կոչէ Ովկիանոսն ընդ մէջ Եւրոպիոյ, Ափ_րիկոյ և Ամերիկոյ:

70 Հիւսիսային և հարաւային ծայրք աշխարհի:

71 Գիւտք Բանաստեղծից, բայց այժմ անցանեն 'ի կար_ծիս փիլիսոփայից:

72 Իտալական, ըստ Խորենացւոյն Էրէնջրնական:

73 Գեղեցիկ խորատ հին և նոր փիլիսոփայից. որոց թո_ղեալ զգործանս ընդ գեղեցկութիւն Մոլորակաց՝ զմտացա_ծին բնակիչս խնդրեին 'ի նոսա:

74 Զի պէսպէս են կարծիք Աստեղաբաշխից վասն սոցին:

75 Որ է շարժմունք մոլորակաց և աստեղաց. զորս կա_քաւու ոտից նմանեցուցանեն Բանաստեղծք:

76 Այն է գիտակն աստեղաբաշխական: Գեղեցիկ է նմա_նութիւնն խուարապղած դիւի ընդ բծի արեգական:

77 Եզք. ԻԸ. 17-20:

78 Այն է ոսկին քիմիական՝ զոր կոչեն փիլիսոփայա_կան քար:

79 Լատիներէն Mercurius, որ նշանակէ պատգամաւորն աստուածոց, ևս և՝ զանդիկ:

80 Ըստ առասպելաց որդի Ովկիանու. որ ընդունէր զա_մենայն կերպարանս:

81 Թորանոց Քիմիականաց :
82 'ի գնտի անդ արեգական :
83 Գեղեցիկ է անուանակոչութիւնս :
84 Որպիսի են ոսկի և արծաթ և քարինք պատուականք : Ջարտարապետութիւն մետաղաց նոցա ընծայէ Միլտոն ազդեցութեան արեգական :
85 Որպէս ուսուցանէ Տեսաբանութիւնն :
86 Եւ այս ևս յայտնի է 'ի Տեսաբանութենէ :
87 Յայտ. ԺԹ. 17 :
88 Գեղեցիկ է խորհրդածութիւնս :
89 Եբրայեցերէն նշանակէ Հուր Աստուծոյ. և զայս անուն վայելուչս ընծայէ Միլտոն Հրեշտակապետի ոսկեանի արեգական :
90 Յայտ. Ը. 2 :
91 Մոլորակաց կամ երկնային մարմնոց :
92 Կեղծաւորք ոչ ամաչեն ստութեամբ խոստովանել զճշմարտութիւնն :
93 Պատրանքն Ուրիէլի բանաստեղծօրէն ևեթ ունի զտեղի. սակայն բանքն Միլտոնի ազդու խրատ են իմաստնոց և պարզամտաց ընդդէմ գաւաճանութեան կեղծաւորաց :
94 Արժան է խնդրել 'ի բանս Միլտոնի զբանաստեղծութիւն, և ոչ զճշգրիտ աստեղաբանութիւն :
95 Մի է և այս 'ի գեղեցիկ խրատուց բանաստեղծութեանս :
96 Կամ Հասարակածի ըստ Աստեղաբաշխից :
97 Կամ Նիփատայ. որ է մի 'ի լերանցն Կորդուաց 'ի Հայաստան աշխարհի : - Այս երգ ըստ Տըլէնայ ստորին է քան զերկուս առաջինսն, մանաւանդ 'ի բանս անդ Հօրն ամենակալի. թէպէտև լի բազմապատիկ գեղեցկութեամբ : Եւ ըստ Տըլագուրայ՝ Միլտոն քաջ բանաստեղծ է, յաւէտ 'ի դժոխս՝ քան յերկինս :

---

## ԳԻՐՔ. Դ:

1 Յայտ. ԺԲ. 12 :
2 Յայտ. ԺԲ. 10 :
3 Քաջայարմար են բանքս 'ի բերան Սատանայի :
4 Կորդուաց. իմա 'ի սահմանակցութեան անդ երկրին Ասորւոց, և Հայաստան աշխարհի :
5 Նախահօրն Ադամայ :
6 Ծխածանն :
7 Տես 'ի (65) ծանօթ. Ա գրոց :
8 Թագաւորութիւն յԱփրիկէ :
9 Կնդրկաբեր երկիր յԱփրիկէ :

10 Խնկաբուղխ երկիր յԱսիա։

11 Ծով համատարած։

12 Կամ Ասմոդեւս. Տոբ. Գ. 8։

13 Տոբ. Ը. 2։

14 Բանք Միլտոնի արգարանման յուէտ իմն 'ի Հերե-սիովտապետս անդ։

15 Վայելուչս նմանեցուցանէ զՍատանայ հողամաղի՝ գե-շատիչ թռչնոյ։

16 Գեղեցիկ են խորհրդածութիւնքս, և ազդու խրատա-բանութիւնք Միլտոնի։

17 Թերևս Ալորան 'ի Հայաստան աշխարհի։

18 Քաղաք 'ի Միջագետս։

19 Կամ Թեղաղար՝ սահման յերկրին Ասորւոց. որ 'ի Դ. Թագ. ԺԹ. 12. կոչի Ծովեղր ըստ Թարգմանութեան մերում։

20 Անուշահոտ ըմպելիք Դից ըստ առասպելաց։

21 Անուն առասպելեալ պարտիզին՝ որ բերէր զոսկի խնձորս։

22 Զաստուած հովուաց ըստ առասպելաց, որ եգիտ զսրինգ։

23 Կոչին և Խարիթեանք. ըստ առասպելաց երեք գե-ղաղէշ դստերք Արամազդայ, և ընկերք Մուսայից։

24 Զորեքին եղանակք տարւոյ՝ Աստուածուհիք։

25 'Ի մշտագարուն եղանակի։

26 Քաղաք 'ի Սիկիլիա։

27 Կամ Պրոսերպինա, դուստր Արամազդայ և Դեմե-տերայ. զոր յափշտակեալ Պղուտոնի՝ տարաւ 'ի դժոխս, և արար իւր կին։

28 Այն է Պղուտոն չաստուած դժոխոց։

29 Մայր Պերսեփոնեայ՝ չաստուածուհի երկրագործու-թեան։

30 Դուստր Պենեայ գետոյն՝ որ դարձաւ 'ի դափնիդեայ ծառ։

31 Գետ յԱսորիս։

32 Անուն աղբեր 'ի Պառնասոս լերան Մուսայից։

33 Դիոնիսեան կամ Բաքոսեան։

34 Գետ կամ ծովակ յԱփրիկէ։

35 Որդի Նոյի։

36 Անուն այծի զորոյ զստինս ծծեաց Արամազդ։

37 Որդի Արամազդայ՝ չաստուած գինւոյ։

38 Կամ Հերա՝ քոյր և կին Արամազդայ։

39 Քաղաք յԱփրիկէ։

40 Եթէովպացի։

41 Գետ յԵգիպտոս։

42 Յասորիս դնէ Միլտոն զդրախտն Եդեմայ. բայց նո-վաւ իմանայ և զՀայաստան աշխարհ՝ ուր են ակունք գե-տոց Դրախտին.

43 Անուշակ ըստ Բանաստեղծից։

44 Գորդիոս էր այր հողագործ, և բարձրացաւ յաթոռ

Թագաւորութեան։ Հիւսեալ էր նորա զառասպան անխզելի. զորոյ զոլորս ոչ կարացեալ քակել մեծին Աղեքսանդրի՝ եհատ սուսերբ, առ՚ի կարող լինելոյ տիրել Ասիոյ ըստ պատգամաց։

45 Գեղեցիկ նախերգանք հանդերձեալ չարութեան օձին կամ Սատանայի։

46 Ըստ կարծեաց տխմարաց, և Բանաստեղծից։

47 Կարի քաջադէպ են և այս իմաստք ՚ի բերան Սատանայի։

48 Զայս գիւտ բանաստեղծական առնու Միլտոն յառասպելաց Նարկիսեայ մանկանն՝ որոյ տեսեալ զգեղեցկութիւն պատկերի իւրոյ ՚ի ջուր անդր, և առ սիրոյն ընկղմեալ՝ փոխեցաւ ՚ի համանուն ծաղիկ։

49 Ոչ զանց առնէ Միլտոն և ՚ի կիրս անդ սիրոյ զկարևոր խրատուքն։

50 Հայր չաստուածոց։

51 Կին Արամազդայ։

52 ՚ի նկարագրութեան անդ գեղեցկութեան կերպարանաց Նախահարց, և սիրոյ նոցա ՚ի դրախտին՝ անհարատ են միտք Միլտոնի։ Զնոյն պարտ է ունել և որոց վերծանեն զբանաստեղծութիւն նորա։

53 Ոչ նուազ ընտիր են և այս իմաստք ՚ի բերան Սատանայի։

54 Ծովու։

55 Կամ քաջամարտիկ։

56 Առ արեգակն։

57 Սատանայ ՚ի խօսել իւրում ընդ Ուրիէլի ՚ի գնտի անդ արեգական՝ փոխեաց զանձն ՚ի հրեշտակ լուսոյ. բայց ՚ի վերայ Նպատ լերին կայր ՚ի կերպարան իւր դատապարտեալ, որ էր կարի իմն այլանդակեալ յերեսաց դժոխային կրից։

58 Անուն կղզեաց ընդ մէջ Եւրոպիոյ և Ամերիկայ։

59 Բանաստեղծօրէն աստեղաբանէ Միլտոն։

60 Մոլորակն, որ կոչի եւս Արուսեակ։

61 Յայս անուն կոչէին հեթանոսք զլուսինն։

62 Միլտոն վերստին կրկնէ սատանօր զառաջին բանսն. այլ քանզի ՚ի ձանձրոյթ լինէր լսելեաց ՚ի հայկական բարբառ, նմին իրի համառօտեցաք բառիւքս և ոչ մի ՚ի նոցանէ։

63 Բոյս ինչ անուշահոտ։

64 Յօրինեալ ՚ի մանրիկ կիտուածախառն քարանց. Իտալերէն Mosaico.

65 Զաստուած հովուաց կամ դաշտաց։

66 Կամ Սիւղվանոս և կամ Սիլվանոս, չաստուած անտառաց։

67 Զաստուածուհի աղբերաց։

68 Զաստուած անդաստանաց։

69 Առաջին կին ըստ առասպելաց՝ որ նշանակէ Ամենապարգև, զի Դիք տուեալ էին նմա օժիտս և ընծայս։ Բայց Արամազդ ետ նմին զտապանակ լի թշուառութեամբք։

70 Ըստ առասպելաց հեթանոսաց ։
71 Պատգամաւոր Դից ։
72 Կամ Հեփեստեայ ։
73 'Ի Պրոմեթեայ ։
74 Երկնային կամ աստուածային ։
75 Հօրն աստուածոց ։
76 Բանքդ ամփոփեալ 'ի փակագծի են համառօտութիւն երկայնաձիգ հատուածոյ Միլտոնին, զոր թողաք 'ի բաց ։
77 Ձև երկրաչափական ։
78 Եբրայական անուն՝ զոր ընծայէ կեղծեալ Հրեշտակս ։
79 Նոյնպէս են և այս անուանք ։
80 Toad, գորտ թունաւոր, գեղեցիկ նմանութիւն փորձողին՝ այլ անքերելի հայկական լսելեաց ։
81 Վառօդոյ ։
82 Կամ իշխանապետին դժոխոց ։
83 Գունդն Իթուրիելի և Զեփոնի ։
84 Զաստուածուհի երկրագործութեան ։
85 Կղզի յԱմերիկա՝ որ ունի զբարձրաբերձ լերինս ։
86 Ահագին լեառն յԱփրիկէ ։
87 Astrea, կոյս համաստեղութիւն ըստ Աստեղաբաշխից ։
88 Համաստեղութիւն յերկինս ։
89 Դան. Ե. 27 ։ Զայս նմանութիւն կշռոյ 'ի կիր արկանեն և Հոմերոս և Վիրգիլիոս բանաստեղծք ։
90 Այս երգ ըստ Տոլլեայ՝ 'ի բաց առեալ զհատուածս ինչ, է մի յընտրելագոյն մասանց բանաստեղծութեանս ։

---

## ԳԻՐՔ. Ե ։

1 Քաղցրաշունչ հողմն արևմտեան, սիրելի Փլորայ ըստ առասպելաց ։
2 Զաստուածուհի ծաղկանց ։
3 Երգ. Բ. 10-13. և Է. 11-12 ։
4 Հրապոյրք գիւական մարգելուղութեան ։
5 Երևէր Սատանայ 'ի կերպարանս Հրեշտակի ։
6 Ambrosia, անուշակ կամ անմահարար կերակուր Դից ըստ հեթանոսաց ։
7 'Ի հրեշտակաց ։
8 Միլտոնն յայտնի բանս գտանի յաւէտ մթնախօս փիլիսոփայ, քան քաջ Բանաստեղծ ։
9 Արուսեակ, կամ աստղ առաւօտու ։
10 Առ ժամանակօք Միլտոնին ծանուցեալ էին միայն հնգեքին մոլորակք ։
11 Այս օրհնութիւն Նախաստեղծից է գեղեցիկ իմն բանաստեղծական բացատրութիւն ՃԽԸ Սաղմոսի ։

12 Գեղեցիկ է այս իմաստ 'ի ջատագովութիւն արդարութեան Աստուծոյ։

13 Սերովբէից։

14 Աստեղաբաշխական դիտակն Գալիլէոսի իտալացւոյ։

15 Արշիպեղագեան կղզիք 'ի Յունաստան։

16 Մի 'ի կղզեաց անտի։

17 Միւս ևս 'ի նոցանէ։

18 Ընդ գունտս մոլորակաց։

19 Կոչի ևս Արմաւ հաւ։

20 Արեգ քաղաքին։

21 Մայրաքաղաք էր երբեմն 'ի վերինն Եգիպտոս։

22 Ըստ առասպելաց էր մայր Հերմեայ՝ պատգամաւորին Դից, որ կրէր զթևս յոտս իւր։

23 Երկրագործաց կամ պարտիզպանաց։

24 Անմահական, անուշակ, քաղցրահամ։

25 Կրկին մեծամեծ սահմանք երկրի յԱսիա յայս կոյս և յայնկոյս Գանգէս գետոյն։ կամ՝ Հնդկաստան և Ամերիկայ։

26 Սեաւ ծով։

27 Ափրիկէ։

28 Վաղեմի Թագաւոր Յունաստանի։

29 Berry, նշանակէ զհատապտուղ՝ որք ունին զկեղև մաշկատեսակ, և լի են հիւթովք. զորս և մարթ է ճմլել, և 'ի հիւթոյ նոցա յօրինել զօշարակս և զքաղցրաւենիս։

30 Զատուածուհի բուրաստանաց և ծաղկանց։

31 Լեառն 'ի Յունաստան։

32 Զի էր տակաւին 'ի վիճակի անմեղութեան։

33 Իմա համօրէն պտուղք հասունացեալք յաշնան։

34 Կամի ասել, թէ 'ի դրախտի անդ գարուն և աշուն 'ի միասին գտանէին, և բերէին զամենայն ազգս պտղոց։

35 Հրեշտակայինն բնութիւնն իմանալի եւեթ օրինակաւ, և մարդկայինն նիւթականաւ։

36 Մոլորակաց։

37 Անմահական, քաղցր։

38 Անուշակ կամ քաղցրահամ ըմպելի։

39 Մանանայ։

40 Յայտնի է 'ի նախընթաց բանս Միլտոնի 'ի բերան Հրեշտակին՝ գտանին ոչ սակաւ նիւթաբանութիւնք և իմաստակութիւնք. որք չունին զճաշակ բանաստեղծութեան։

41 Զի Ադամ էր աստուածաստեղծ և հողածին։

42 Կարէ յիրաւունս զառաջս առնուլ Միլտոնի զիւրոց ընթերցանելեաց բանիւ Հրեշտակին. զի որովհետև բանաստեղծութիւն նորա հանդերձեալ էր նկարագրել զարարս երկնաւորաց և զանմարմնոց, հարկաւ պէտք էին նմա երկրաւոր և մարմնական գաղափարաց, առ 'ի դիւրիմաց գործելոյ զայն։

43 Որ նախայաւիտեան, անսկիզբն և անկատարած, և միշտ ներկայ 'ի յաւիտենից մինչև յաւիտեանս. յորում ծնայ զորդին իմ համագոյակից ըստ Աստուածութեանս. և

տուհմանեցի զնա լինել մարդ, և կոչել Մեսիայ կամ Օծեալ ըստ բանի Սաղմոսին Բ. 7. *Տէր ասաց ցիս՝ որդի իմ ես դու, և ես այսօր ծնայ զքեզ||: Սովին մտօք մարթ է ուղիղ իմանալ զբանս Միլտոնի, թէպէտև ոմանք զԱրիոսեան աղանդ նշմարեն 'ի բանս նորա:

44 Աստեղաց:

45 Բանաստեղծօրէն ձևացուցանէ զբանն, և ոչ ըստ ճըշմարտութեան. որպէս և 'ի յաջորդսդ:

46 Գինին անուշահոտ:

47 Անմահական:

48 Տես զծանօթութիւնն (43):

49 *Դու ասէիր 'ի միտ քում. ելից յերկինս, 'ի վերոյ քան զաստեղս երկնից արկից զաթոռ իմ. նստայց 'ի լերինն բարձու, 'ի վերոյ լերանց բարձանց հիւսիսոյ: Ելից 'ի վեր քան զամպս, եղէց նմանող Բարձրելոյն||. Եսայ. ԺԴ. 13-15: Ըստ այսց բանից Մարգարէին ձևացուցանէ Միլտոն ըզբանս իւր բաղում ուրեք, և այն՝ կարի իմն չափազանցութեամբ:

50 Արուսեկի:

51 Ջորուսեակն Գաղղիացիք կոչեն Աստղ հովուի, յորոց առեալ է Միլտոն:

52 Յայտ. ԺԲ. 4:

53 Իշխանապետին զիւաց:

54 Ըստ ոմանց Արիոսեան են և այս բանք բանաստեղծին Միլտոնի 'ի բերան Սատանայի. տես զծանօթութիւնն (43) 'ի վերոյ:

55 Քաջադէպ են բանքս ոչ միայն 'ի բերան Սատանայի, այլև նորուն իսկ Միլտոնի՝ որ կարի իմն զակատեալ էր զկնի աղանդութեան:

56 Յայտնապէս անմիտ և հայհոյիչ բանս ոչ միայն աստուածամարտ հանդիսանայ ամբարտաւանն Սատանայ, այլև անաստուած:

57 Անհաւատարմից, ուխտանենգաց, ապստամբաց:

58 Ըստ Տրլելայ գաղղիացւոյ՝ *Այս երգ 'ի բովանդակ մատուենս իւր է մի 'ի գեղեցկագունից բանաստեղծութեանս՝ յաւէտ 'ի սակս սիրալի պէսպիսութեանցն բովանդակելոց 'ի նմա: Յոյր սակս և յայս գիրս առանձին իմն գեր 'ի վերոյ դասէ նա զՄիլտոն քան զՀոմերոս և զՎիրգիլիոս:

# ԳԻՐՔ. Զ։

1 'Ի գոյն գինւոյ, կամրերանգ։

2 Ցայսոսիկ բանս Միլտոնի ոչ միայն չգտանի ընտիր բանաստեղծութիւն, այլեւ ոչ ուղղապէս իմաստասիրութիւն կամ աստուածաբանութիւն։

3 Տես 'ի ծանօթութեան (65) ա գրոց։

4 Անուն կռոց ազգացն Սեփարուիմայ. դ. Թագ. ժէ. 31։

5 Թերեւս Ազմոդ կամ Ասմոդէոս դեւն 'ի Տովբիթ գ. 25. զոր պաշտէին Եգիպտացիք 'ի կերպարանս օձի կամ վիշապի։

6 Զաստուած Մովաբացւոց։

7 Էր չաստուած վրէժխնդրութեան։

8 Միւս ես չաստուած հեթանոսաց. զորոց զանուանս ընծայէ Միլտոն դիւաց կամ հրեշտակացն ապստամբաց։

9 Դիւական ամբարտաւանութիւնն մայր է եւ անաստուած հայհոյութեան։

10 կամ Նեսրաք՝ չաստուած Ասորեստանեայց. դ. Թագ. ժթ. 37։

11 Անմահական, երկնային։

12 Զաստուած։ Ըստ հեթանոսաց է մակագրական անուն Արամազդայ։

13 Վառօդոյ, ռմբոյ եւ Թնդանօթի։

14 Սովին օրինակաւ նկարագրէ Միլտոն զյօրինումն վառօդոյ։

15 Այս է եղէգն կամ ձողն՝ որով մերձեցուցանեն զհուր 'ի ծակս Թնդանօթից։

16 Որպէս 'ի դժոխս, նոյնպէս եւ յերկինս համարձակի Միլտոն յանդիման առնել զարարս երկրաւորաց. եւ յայսմ մասին գտանի նա բանաստեղծ անձոռնի։

17 Միւս ես կեղծեալ անուն Հրեշտակի յեբրայականն բարբառ։

18 Այն է սայլաձեւ եւ յարկածածուկ յենարանն Թնդանօթից։

19 Թնդանօթքն յայլեւայլ ձոյլս կամ ձեւս իբրեւ զբունս ծառոց բարձեալ էին երկքկարգեան 'ի վերայ անուաւոր սայլից։

20 Տես 'ի ծանօթութեան (91) ա գրոց։

21 Այս կատակ դիւաց ընդ միմեանս 'ի սակս տկարութեան յաղթող հրեշտակաց ծաղու արժանի թուի ոմանց 'ի բանաստեղծութեան Միլտոնի։

22 Զառանցանք են բանաստեղծին Միլտոնի մարմնացուցանել զդեւս։

23 'Ի յաւիտենից ըստ աստուածութեանդ։ Տես 'ի ծանօթութեան (44) ե գրոց։

24 Որպէս այլուր, նոյնպէս եւ աստ ընծայէ բանաստեղծն

Միլտոնի աստուածութեանն Քրիստոսի զգործս՝ զորս կատարեաց նա զկնի մարդեղութեան ։

25 Զայսոսիկ առնու Միլտոն 'ի տեսլենէ անտի Եզեկիելի ։

26 Ծխածանի ։

27 Urim, ըստ Եբրայեցւոց նշանակէ հուր կամ լոյս ․ Ելից ԻԸ ․ 30 ․ ուր ըստ մեզ դնի՝ վերջ շղթայագործ կամ յանդիմանութիւն ։

28 Ժանտախտաւ, համաճարակ սատակմամբ ։

29 Թերեւս ըստ իննաստիճանեայ դասու կարգութեանցն Հրեշտակաց ։

30 Զհանդէս համբարձմանն Քրիստոսի զկնի մարդեղութեան նկարագրէ աստանօր Միլտոն ․ որ ներելի է բանաստեղծական ազատութեան ։

31 Գեղեցիկ է այս խրատ զգուշութեան մարդասէր Հրեշտակին ։ Յայս երգ Միլտոնի բազումք պախարակեցին զանճոռնի նկարագրութիւնն պատերազմին Հրեշտակաց յերկինս ։ Բայց ըստ Տըլիլեայ * ստգտանելի է գաղափարն, և գովելի բանաստեղծութիւնն || ։ Եւ ըստ Տըլլագուրայ յաւէտ իմն ցուցանէ Միլտոն 'ի սմա * զբեղնաւորութիւն մտաց իւրոց․ զառաւելութիւն հանճարոյն, և զզօրութիւն հոգւոյն ․ և երեւի քաջ նախանձաւոր Հոմերոսի || ։

---

## ԳԻՐՔ․ Ե։

1 Է բառ յունական, և նշանակէ՝ երկինք ։ Ըստ առասպելաց էր նա մի 'ի Մուսայից՝ հմուտ աստեղաբաշխութեան ․ զոր կոչէին եւս Աստղիկ կամ Ափրոդիտէ երկնային ։ Որով իմանայ Միլտոն զիմաստութիւնն վերին ։

2 Որ է 'ի Յունաստան ։

3 Էր Թեւաւոր նժոյգ Ապողոնի և Մուսայից ։

4 Ուրանիա կոչէր իններորդն 'ի Մուսայս ։

5 Լեառն Մուսայից ։

6 Առակ․ Ը․ 24 ։

7 Երգեցի զերկնայինսն մարդկեղէն բանաստեղծութեամբ ։

8 Յերկիր ։

9 'Ի Պեգասուէ ։

10 Առաջին ձիավար ըստ առասպելաց ․ որոյ կամեցեալ յանդուգն ձիավարել յերկինս՝ անկաւ 'ի Պեգասոս երիվարէն ։

11 'Ի փոքուն Ասիա ։

12 Եւթներորդ երգս է սկիզբն միւսոյ մասին երկոտասան գրոց բանաստեղծութեանս, բայց է համառօտ քան զառաջին կէսն, և նիւթ նորա ընտել երկրաւորացս ։

13 Հաստատութեան երկնից ։

14 Բաղում էին Թշնամիք Միլտոնի 'ի խռովայոյզ ժամանակի իւրում ։

15 'Ի կուրութեան անդ լքեալ կայր 'ի մարդկանէ ։

16 Որ է Բաքոս ըստ այլոց՝ չաստուած արբեցութեան և պարուց ։

17 Լեառն 'ի Թրակիա ։

18 Որփէոս քնարահար ։

19 Կաղղիոպէ՝ որ էր մայր Որփեայ ։

20 Գովելի է այս իմաստ Միլտոնի, զի զարտաքին բանաստեղծութիւնն կոչէ սնոտի, և զհոգևորն՝ երկնային կամ անմահական ։

21 Հաստատութիւնն վերին ։

22 Յոչնչութեան անդ ։

23 Գիշերավար ։

24 'Ի գաղտնի մթութեան, յանդխաութեան ։

25 Արուսեակ կոչի աստղն առաւօտեան, և բանսարկուն Սատանայ ։

26 Ղուկ. Ա. 35 ։

27 Ղուկ. Բ. 14 ։

28 Զաք. Դ. 1 ։

29 Ոչնչութեան կամ դատարկութեան ։

30 Ոչնչութեան ։

31 Անդնդոց դատարկութեան ։

32 Զայսոսիկ իմաստասիրական կարծիս Թողումք երևակայութեան բանաստեղծին Միլտոնի ։

33 Յօդս ։

34 Դատարկութեան կամ ոչնչութեան ։

35 Ծովն մեծ ։

36 Զերկիր ։

37 Կուտակութիւն ջուրց սառնանման ։

38 Զջրեղէն հոսանս իւրեանց անսպառելի ։

39 Արուսեակն ։

40 Կոչին ևս ըստ աստեղաբաշխից Բոյլք կամ Ալասունք. և են գումարք աստեղաց՝ որք երևին 'ի գարնան 'ի Ցուլ կենդանակերպի ։

41 Փուլ ըստ Թուրքաց բարբառոյ ։

42 Որ է արու մեղուն, զի ոչ կազմէ նա զմեղր ։

43 Այս է հանդէս համբարձմանն Քրիստոսի զկնի մարդեղութեան ։

44 Մարդկօրէն ձևացուցանէ Միլտոն. զի Որդին արարչակից եղև Հօր ։

45 Dulcimer ըստ բնագրին ։

46 'Ի հաստատութեան երկնից, ընդ օդն ։

47 Զայս կարծիս ունէին և ոմանք 'ի նախնի Փիլիսոփայից ։

48 Օդն ։

49 Համառօտ նկարագրութիւնն վեցօրեայ արարչութեան յայս գիրս է ըստ Տըլագուրայ * Ճշգրիտ օրինակ ընտիր բանաստեղծութեան ||: Եւ ըստ Տըլիլայ՝ * եթէ կայցէ թերութիւն ինչ յայս երգ, է յամեցումն եւեթ 'ի ձեռն նախերգանաց. թէպէտեւ նորին իսկ առանձինն են սքանչելի ||:

---

## Գ Ի Ր Ք. Ը:

1 Աստուծոյ՝ որ է արարիչ բնութեան:
2 Ուղեկցութեան նաժշտաց եւ ծառայից:
3 Զերկնագունան:
4 Այսոքիկ են կազմածք երկնագնտոյն ըստ այլ եւ այլ կարծեաց եւ դրից Աստեղաբաշխից:
5 Ադամ բնակէր միայն 'ի դրախտի անդ, իսկ այլ սահմանք երկրի կարգեալ էին առ'ի պէտս կամաց Արարչին:
6 Նեւտոն անգղիացի համարի առաջնորդ այսր կարծեաց՝ որ յետոյ էր ժամանակաւ քան զՄիլտոնն:
7 Այս էր թիւ մոլորակաց ըստ նախնեաց:
8 Ըստ Պտղոմեան դրից:
9 Ըստ Կոպեռնիկեան դրից:
10 Հողագունտ երկրի:
11 Արեգակն իբրեւ արու, եւ լուսին իբրեւ էգ:
12 Բնակիչք 'ի մոլորակս:
13 Արարչագործութեան քո:
14 Հանգստեան Աստուծոյ յարարչագործութենէ:
15 Ցոչնչութիւն, 'ի չիք դառնալ, կորնչիլ, մեռանել:
16 Ըստ աստուածային բնութեանն պարտ է իմանալ ըզբանս Միլտոնին, եւ ոչ ըստ անձանց որոց Երրորդութեանն. թէպէտեւ ոչ ճիշդ աստուածաբանէ Բանաստեղծս:
17 Որպէս արար 'ի մարդեղութեան խորում:
18 Այս էր երբեմն վարդապետութիւն աղթարմոլաց:
19 Սոխակ:
20 Որ է գիշերավար:
21 Այլ այս բանք Միլտոնին 'ի բերանոյ Ադամայ ունին զտեղի յաւէտ 'ի վիճակի անդ կործանման, քան անմեղութեան:
22 Եւ այս էր սեպհական անմեղութեան վիճակի:
23 Գոգցես իմաստակական են բանքս:
24 Թողումք Միլտոնին զմիտս այսոցիկ բանից:
25 Որ է յարեւմտեան ծովափն Ափրիկոյ:
26 Արեւմտեան:
27 Զողջոյն հրաժարական, զբարեմաղթութիւն ճանապարհի՝ հանդերձ շնորհակալութեամբ:

28 Այս երգ ըստ Տըլխըլայ և ըստ Տըլագուրայ է մի 'ի սխրալի մասանց բանաստեղծութեանս. Թէպէտև ունի Թե- րութիւնս ինչ, և այն՝ յաւէտ 'ի սկզբան անդ:

---

## ԳԻՐՔ. Թ:

1 Էր քաջամարտիկ Դիւցազն ընդդէմ Հեկտորի 'ի Տրոյա- կան մարտի. զորոյ զքաջութիւնս նուագեաց Հոմերոս յԵ- ղիական կամ յԵղիոնական բանաստեղծութեան իւրում:

2 Քաղաք 'ի Յունաստան, կոչի ևս Եղիոն:

3 Թագաւոր էր յԻտալիա, և մենամարտեալ ընդ Ենէա- սայ՝ անկաւ:

4 Դուստր էր Լատինոսի արքային, և եղև կին Ենէասայ:

5 Զաստուած ծովու:

6 Քոյր և կին Արամազդայ:

7 Որ կոչի ևս Աֆրոդիտէ: Զայսոսիկ նուագեաց Վիր- գիլիոս յԵնէական բանաստեղծութեան իւրում:

8 Յաստուածային Մուսայէ կամ 'ի Բանաստեղծութենէ:

9 'ի կուրութեան անդ, և 'ի քուն գիշերոյ յածէին միտք Միլտոնին զբանաստեղծութեամբս:

10 'ի հասակի ծերութեան:

11 Այլ յայմհետէ նոյնպէս համարեսցի և այս բանաս- տեղծութիւն:

12 Գեղեցիկս առդասնէ Միլտոնն զատայօդ երգս առաս- պելաց:

13 Արքոց և Մարտիրոսաց:

14 'ի սակս վսեմութեան ձեռնարկութեանս:

15 Զի յետոյ էր Միլտոնն ժամանակաւ քան զՀոմերոս, զՎիրգիլիոս, և զՏասոս՝ Դիւցազնական բանաստեղծս:

16 Անգղիա:

17 Անցեալ զվաթսնամենիւք:

18 Այն է Մուսայն երկնաւոր, կամ Հոգին սուրբ ա- ռաջնորդ Աստուածաշունչ գրոց՝ յորոյ վերայ հաստատէ Միլտոնն զբանաստեղծութիւն իւր:

19 Կոչի ևս Համարակած ըստ Աստեղաբաշխից:

20 Է մի 'ի համաստեղութեանց երկնից:

21 Են կրկին շրջանակք՝ որք ինննուն աստիճանօք հեռի են 'ի կիտէ Գիշերահաւասարին:

22 Սեաւ ծով:

23 Յերկրին Ռուսաց:

24 'ի Թաթարաստան:

25 Կամ հարաւային՝ ըստ Աստեղաբաշխից:

26 Գետ յԱսորիս:

27 Ծոց կամ Գոգ ծովու յԱմերիկա:

28 Կրկին գետք 'ի Հնդիկս ։

29 Վերջին գօտի արարչագործութեան աշխարհի քան զերկինս՝ պատուականագոյն համարի զայն քան զառաջինն ։

30 Աստեղաց կամ Մոլորակաց ։

31 Դարձեալ սատակացուցանէ Միլտոն զհայհոյութիւնս Սատանայի ։

32 Ծննդոց սերելոց 'ի մէնջ ։

33 Կամի ասել, յանդիման տեսութիւն քո տայ ինձ լինել յաւէտ իմն առաքինի ։

34 Ցայս անուն կոչէին հեթանոսք զԶաստուածուհիս լերանց, գետոց, ծառոց և անտառաց ։

35 Կամ Ովրէադէս՝ յաւերժահարսն լերին ։

36 Կամ Դրիադէս՝ յաւերժահարսն անտառի ։

37 Տեղի պատգամաց Ապողոնի 'ի Յունաստան ։

38 Որ է Անահիտ, զոր Լատինք կոչեն Diana.

39 Այսինքն՝ ոչ էր երկաթեղէն, կամ յօրինեալ 'ի հուր գարբնոցի ։

40 Էր չաստուածուհի հովուաց ըստ առասպելաց ։

41 Զաստուածուհի պարտիզաց ։

42 Որ էր տարփածու Պոմոնայ ։

43 Զաստուածուհի երկրագործութեան ։

44 Էր դուստր Արամազդայ և Դեմետրի ։

45 Հայր չաստուածոց ըստ հեթանոսաց ։

46 Որ ըստ առասպելաց զկնի մահուանն վերակենցաղեաց 'ի ծաղիկ ։

47 Էր որդի արքային Կորկիւրայ՝ որ ունէր զգեղեցիկ պարտէզս ։

48 Որ է հայր Ոդիսեայ ։

49 Զի խորհրդաւոր պարտէզ Սողոմոնի է եկեղեցի Աստուծոյ ։

50 Սողոմոն ։

51 Գաւառ յԵւրոպիա ։

52 Անուն կնոջն Կադմեայ ։

53 Էր Թագաւոր փիւնիկեցւոյ՝ որ ընդ կնոջ իւրում դարձաւ յօձ ըստ առասպելաց ։

54 Սահման երկրի յԵւրոպիա ։

55 Մականուն Արամազդայ՝ զոր պաշտէին յԱփրիկէ ։

56 Մականուն Արամազդայ՝ զոր պաշտէին 'ի Հռովմ ։

57 Այլևայլ ազգք հեթանոսաց ունէին զառանձին Արամազդ՝ հայր չաստուածոց իւրեանց ։

58 Մայր Աղէքսանդրի ։

59 Քաջ զօրավար Հռովմայեցւոց՝ որ յաղթեաց Կարքեդոնացւոց ։

60 Պարծանաց ։

61 Անուն Վհկի՝ որ ըստ առասպելաց փոխէր զմարդիկ յանասունս ։

62 Ըստ առասպելաց պառաւանց ։

63 Որպէս Դեմոսթենէս ։
64 Որպէս Տուղղիոս Կիկերոն ։
65 Կամի ասել՝ թերեւս Հրեշտակք միայն տեսեալ իցեն զճաշակելն իմ 'ի ծառոյ անտի, և ոչ Աստուած ։
66 Սովորութիւն էր առ Նախնիս զկնի հնձոց պսակաւ զարդարել զգեղեցկագոյնն 'ի մէջ օրիորդացն հնձողաց ։
67 Սովին բանիւք գեղեցիկս նկարագրէ Միլտոն զծուփ խորհրդոց, զխայթ մտաց, և զսնոտի պատճառաբանութիւնս նորա՝ որ կամի մեղանչել, և խնդրէ կուրացուցանել զլոյս բանին ։
68 Գաւառ յարեւելեան Հնդիկս ։
69 Միւս ևս գաւառ անդանօր ։
70 Կամ միասին քաղամարտիկ կանանց ։
71 Նաւապետ իտալացի՝ որ եգիտ զԱմերիկա կամ զնոր աշխարհ ։
72 Այս երգ ըստ Տըլխըլայ է առաւել գեղեցիկ և կարեւոր քան զայլս, թէպէտև ունի զթերութիւնս ինչ ։ Եւ ըստ Տըլադուրայ՝ համարեալ եղև միշտ ընտրելագոյն քան զայլ մասունս բանաստեղծութեանս՝ իբրև պսակ նորին ։ Որպէս և Ադդիսոն անգղիացի գերազանց ևս դասէ զհանճար Միլտոնի յայս գիրս ։

---

## ԳԻՐՔ. Ժ ։

1 * Եւ զհաճոյս նորա առնեմ հանապազ ||․ Յովհ․ Ը․ 29 ։
2 Դեն՝ որ զկնի պատրելոյ զՆախահարս խոյս տուեալ էր յերեսաց նոցա ։
3 Ըստ օրինաց Անգղիոյ դատապարտեալ համարի փախուցեալ յանցաւորն ։
4 Զի նա ոչ փորձեաց ինքնին զՆախահարս մեր, այլ գործի միայն գտաւ չարութեան դիւին ։
5 Երկնաւորաց, Աստուծոյ, Հրեշտակաց ։
6 Դատարկութիւն կամ միջոցն ձգեալ 'ի դժոխոց անտի յաշխարհս ։
7 Թերեւս Ովկիանոս ։
8 Անուն քաղաքի յԱսիա ։
9 Գետ յաշխարհին Ռուսաց ։
10 Կղզի յԱրշիպեղագոսի 'ի Յունաստան ։
11 Գորգոնք ըստ առասպելաց էին դստերք Փորկայ և Կետայ, և փոխարկէին 'ի քար զորս միանգամ հայէին 'ի նոսա ։
12 Արքայ Պարսից ։
13 Քաղաք 'ի Պարսս ։
14 Կամ Տիտանեան, երեւելի, աթոռանիստ ։

15 Կիրճ ծովու 'ի Ցունաստան, բաժանէ զԱսիա յԵւրոպիոյ։

16 Որ և զագաթնակէտ ըստ Աստեղաբաշխից։

17 Մահն ծնունդ է Սատանայի, միանգամայն և մեղաց՝ որ նոյնպէս ծնունդ է նորա։

18 Անուն բազմամարդ ազգի յԱսիա և յԵւրոպիա։

19 Որ է Մոսկով։

20 Կոչի եւս Աժդերխան։

21 Անուն քաղաքի կամ երկրի 'ի Պարս։

22 Շահ կամ Թագաւոր Պարսից։

23 կամ Թուրքաց։

24 Դրօշակի նոցա՝ որ կրէ զնշան մահեկաձև կամ եղջերաւոր լուսնի։

25 Այն է Մարաշ։

26 Մայրաքաղաք 'ի Պարս։

27 Քաղաք է Պարսից։

28 Դժոխային. Պղուտոն ըստ առասպելաց է չաստուած դժոխոց։

29 Դժոխային։

30 Անանցանելի, անգնալի։

31 Տեսչութիւնն աստուածային։

31 Անուանք են այսոքիկ այլ և այլ օձից։

32 Անուն գաւերն Փորկայ՝ որ կախեալ ունէր օձս զհերաց իւրոց։

33 Կղզի 'ի Կրետէ։

34 Անուն օձի կամ վիշապի՝ զոր սպան Ապողոն ըստ առասպելաց։

35 Էր մի 'ի կատաղեացն դժոխոց։

36 Որ էր հսկայ անարի։

37 Որ էր կին Ովփիոնի։

38 կամ Կրետեան։

39 Կոչի եւս Կռոնոս։

40 Դուստր և կին Կռոնոսի ըստ առասպելաց։

41 Իմա անմարմին։

42 Աստեղաց։

43 Եւթանեքին աստեղք յերկինս՝ որք կոչին Բոյլք, Բազմաստեղք և Ալաւսունք ըստ Աստեղաբաշխից։

44 Երկուորեակ համաստեղութիւն կամ կենդանակերպ յերկինս, համարեալ ըստ առասպելաց կրկին Սպարտացի եղբարք։

45 Կենդանակերպ յերկինս. 'ի ժամանել արեգական անդ՝ դարձ առնէ անդրէն։

46 Անուանք են այսոքիկ կենդանակերպից 'ի Զոդիակոսէ կամ 'ի Կենդանակամարի երկնից։

47 Երկնից։

48 Կոչի եւս Լաբրադոր՝ երկիր 'ի հիւսիսակողման Ամերիկոյ։

49 Նեղուց ծովու յՈվկիանու ։
50 Թիւեստէս ընթրիս կազմեալ էր եղբօր իւրում զորդին ծնեալ 'ի կնոջէ նորա. զոր տեսեալ արեգական ըստ առասպելաց զարհուրեցաւ, և դարձոյց զկառս իւր ։
51 Այսոքիկ Յունական անուանք են հողմոց ։
52 Սահման երկրի 'ի հիւսիսակողման ։
53 Նոյնպէս և այս յաշխարհին Ռուսաց ։
54 Անուանք հողմոց ։
55 Sierra Leona, անուն գետոյ յԱփրիկէ ։
56 Անուանք հողմոց ։
57 Բաղխումն հողմոց ։ Կամի ասել Միլտոն, թէ չորեքին գլխաւոր հողմք՝ հիւսիսային, հարաւային, արևելեան և արևմտեան՝ հանդերձ կողմնականօքն իւրեանց հակառակ կացին միմեանց յապականութիւն աշխարհի ։
58 Յայսոսիկ բանս նկարագրէ Միլտոն զկիրս անձին իւրոյ, զի կարի վշտացեալ էր նորա յերեսաց առաջին կնոջ իւրոյ, որ զկնի թողլոյ զնա՝ վերստին հաշտեցաւ ընդ նմա արտասուօք ։
59 Զայսոսիկ խորհուրդս յիմարութեան ճարտարութեամբ իմն դնէ Միլտոն 'ի բերան կնոջն՝ առ 'ի բարձրացուցանել զիմաստութիւնն Ադամայ ։
60 Այս երգ զոդցես բովանդակութիւն իմն է ամենայն երևելի մասանց բանաստեղծութեանս, իմա՝ Աստուծոյ, հրեշտակաց, դիւաց, նախահարց, երկնից, երկրի, դժոխոց, և այլն ։ Եւ ըստ Տըլիլայ յայս երգ ուրեք ուրեք առաւել ցուցանէ Միլտոն զաշխոյժս մտաց իւրոց քան յայլ գիրս իւր ։

---

## ԳԻՐՔ. ԺԱ.

1 Էր Թագաւոր Թեսաղիոյ. և ըստ առասպելաց զերծաւ յընդհանուր ջրհեղեղէ. և դատաւ նորոգիչ մարդկան ազգի իբրև զՆոյ ։
2 Անուն կնոջ Դևկալիոնի ։
3 Էր չաստուածուհի արդարութեան ըստ հեթանոսաց ։
4 Ոմանք մեղադիր եղեն Միլտոնի վասն առասպելացն՝ զորս մուծանէ նա յիւրումն հոգևոր բանաստեղծութեան. սակայն այլք արդարացուցանեն զնա. զի 'ի կիր արկանէ զեգիպտական ոսկին 'ի զարդ խորանին ։
5 Յայտ. Է. 3 ։
6 Էր չաստուած հեթանոսաց, զոր նկարէին 'ի կրկին դէմս՝ յառաջոյ և զկնի ։
7 Ըստ առասպելաց հովիւ էր հարիւրաչեայ ։
8 Անուն գաւառի Հերմեայ ։

9 Չաստուած տաւաղակաց՝ որ սպան զԱրգոս ։

10 Կամ Լեւկոթոյէ՝ դուստր Որքամեայ, որ թաղեաց զնա կենդանւոյն. այլ Ապողոն դարձոյց զնա 'ի խնկենի ։ Միլտոնի իմանայ սովաւ զառաւօտն ։

11 Այն է արծուի ։

12 Այն է առիւծ ։

13 Ծննդ. ԼԲ. 2. ուր 'ի մեզ զնի Բանակս ։

14 Դ. Թագ. Զ. 13. և այլն ։

15 Անուն գաւառի 'ի Յունաստան՝ որոյ ծիրանին անուանի էր առ նախնիս ։

16 Անուն քաղաքի 'ի Փիւնիկէ, որ կոչի եւ Տիւրոս ։

17 Անուն ծաղկի, և չաստուածուհւոյ՝ որ ըստ առասպելաց դարձաւ 'ի ծիածան ։

18 Ջկամար միջաց Հրեշտակապետին նմանեցուցանէ Միլտոնի կենդանակամարին կամ Զոդիակոսին երկնից ։

19 Հրեշտակաց, երկնաւորաց ։

20 Անմահական ։

21 Աստանօր Միլտոնի սկսանի յառաջ բերել զանուանս երեւելի թագաւորութեանց և քաղաքաց 'ի չորեսին մասունս աշխարհի՝ յԱսիա, յԱփրիկէ, յԵւրոպիա, և յԱմերիկա ։ Զորոց զքննութիւն թողումք Աշխարհագրաց և Վիպասանից. և ընթերցանելեացն Միլտոնի՝ ուսանել 'ի գրոց նոցին ։

22 Որք են Սպանիացիք ։

23 Թերեւս ոքջոք իմանայ Միլտոնի զերրեակ յետագայ պատմութիւնս Աստուածաշունչ գրոց՝ զորս հանդերձեալ է Հրեշտակն յանդիման առնել աչացն Ադամայ, իմա՛ Աբելի, Ենովքայ, և Նոյի ։

24 Կային. Ծննդ. Դ. 1. և այլն ։

25 Հաբէլ ։

26 Յովբէլ և Յովբաղ. Ծննդ. Դ. 20 - 21 ։

27 Օրէնք են այսոքիկ երաժշտութեան ։

28 Թոբէլ. Ծննդ. Դ. 22 ։

29 Չաստուած սիրոյ, և հարսանեաց ։

30 Ենովք. Ծննդ. Ե. 24 ։

31 Յուդայ. 14 - 15 ։

32 Նոյ. Ծննդ. Զ. 9 ։

33 Բ. Պետ. Բ. 5 ։ և Ա. Պետ. Գ. 19 - 20 ։

34 Հզօր, համակործան ։

35 Եփրատ կամ Տիգրիս ։

36 Որ է Արարատ կամ Մասիս լեառն 'ի Հայաստան աշխարհի ։

37 Ըստ Տըլիւլայ՝ * Գուցէ համօրէն քննիչք բանաստեղծութեանս սորին համարեցան զերկուսին վերջին երգս քան զառաջինսն, սակայն և այնպէս բովանդակեալ ունին նոքա զմեծամեծ և զգեղեցիկ իմաստս ||։ Այլ ըստ Ադդիսոնի՝ * Անմարթ է համարել զայսոսիկ վերջին գիրս իբրեւ անվայելուչ մասունս չնաշխարհիկ բանաստեղծութեանն Միլտոնի ||։

# ԳԻՐՔ. ԺԲ։

1 Ըստ քննչաց Միլտոնի՝ սոսկ պատմութիւն նորա աստանօր, ոչ ունի զշնորհս բանաստեղծական հանճարոյ։

2 Ներբովթ. Ծննդ. Ժ. 8. և այլն։

3 Ծննդ. Ժ. 9։

4 Իմա յայնմանէ՝ որ է բռնաւորական կամ անիրաւ։

5 Նոյի։

6 Ըստ մեզ՝ * Ծառայ եղբարց իւրոց ||. Ծննդ. Թ. 25։

7 Որ է Աբրահամ.

8 Ծննդ. ԺԱ. 31։ Ըստ մեզ՝ * Յաշխարհէն Քաղդէացւոց ||։ Հուր կամ Ուր է անուն քաղաքի։

9 Ըստ մեզ՝ * 'Ի կաղնին բարձր ||. Ծննդ. ԺԲ. 6։

10 Այն է՝ Կոկորդիլոս, որում նմանեցուցանէ Եզեկիէլ գլ. ԻԹ. 3. զփարաւոն արքայ Եգիպտացւոց։

11 Որ կոչի և Զոդիակոս ըստ Աստեղաբաշխից։

12 Յեսու Ժ. 12։

13 Քրիստոսի։

14 Զի չափեաց զաշխարհս 'ի պատմութեան իւրում՝ սկսեալ յարարչութենէ մինչև ցվախճան նորին՝ անցեալ ընդ ամենայն դարս նորա։

15 Աստանօր թողաք 'ի բաց զթարգմանութիւն երկայն հատուածոյ բանից Միլտոնի, որոյ յեցեալ 'ի զաղփաղփուն սկզբունս աղանդոյ իւրոյ՝ լուտանօք խօսի ընդդէմ Վարդապետաց Առաքելական եկեղեցւոյ, մանաւանդ ընդդէմ յաջորդաց Առաքելապետին Պետրոսի։ Որոյ բանք դիւրաւ շրջին 'ի վերայ աղանդակցաց նորա, և համօրէն աղանդապետաց։

16 Այս վերջին երգ Միլտոնի ըստ Տըլիլայ է սառրին քան զառաջինսն։ Եւ ըստ Տըլադուրայ՝ զկնի երկարատև արշաւանաց երևակայութիւնն Միլտոնի յայս երգ երևի վաստակեալ։ Սակայն և այնպէս ոչ դադարեսցի Գաղղիա նախանձաւորն Անգղիոյ՝ սքանչանալ ընդ անմահ Բանաստեղծ նորա. որոյ անկումն ուրեք ուրեք ըստ օրինակի Հոմերոսի և Փայետոնի՝ ցուցանէ միշտ զբարձրագոյն թռիչս նորա։

---

*Tip. ed Edit. li Monaci Armeni di S. Lazzaro in Venezia.*

